# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 9

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ДРЕВНЕГРЕЧЕСКИЕ ИСТОЧНИКИ

I

# ИОСИФ ФЛАВИЙ
# ДИОН КАССИЙ

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
С. М. КРКЯШАРЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1976

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԻՆ ՀՈՒՆԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Ա

# ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍ
# ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
Ս. Մ. ԿՐԿՅԱՇԱՐՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1976

«Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» մատենաշարով հրատարակվել են.

1. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքերեն բնագրից, ներածությունով, ծանոթագրություններով, տերմինաբանական բառարանով և հավելվածով, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, հատոր Ա, Երևան, 1961։

2. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքերեն բնագրից, ներածական ակնարկով, ծանոթագրություններով և հավելվածով, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, հատոր Բ, Երևան, 1964։

3. Թուրքական աղբյուրներ. Էվլիյա Չելեբի, գիրք Գ, թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Ա. Խ. Սաֆրաստյանի, Երևան, 1967։

4. Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին. կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965։

5. Բյուզանդական աղբյուրներ. գիրք Ա, Պրոկոպիոս Կեսարացի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ՝ Հրաչ Բարթիկյանի։

6. Բյուզանդական աղբյուրներ. գիրք Բ, Կոստանդին Ծիրանածին։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ՝ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1970։

7. Թուրքական աղբյուրներ, Դ, թարգմանություն բնագրից Ա. Խ. Սաֆրաստյանի և Գ. Հ. Սանթուրջյանի։

8. Ասորական աղբյուրներ, Ա, թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Հ. Գ. Մելքոնյանի, Երևան, 1976։

902 (09)
Կ—85

МАТЕНАШАРИ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ս. ԵՐԵՄՅԱՆ (գլխ. խմբագիր), Ա. ՂԱՐԻԲՅԱՆ, Լ. ԽԱՉԻԿՅԱՆ, Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Գ. ՍԱՐԳՍՅԱՆ (գլխ. խմբագրի տեղակալ), Հ. ԻՆՃԻԿՅԱՆ, Հ. ՓԱՓԱԶՅԱՆ, Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆ (գիտական քարտուղար)։

Հատորի խմբագիր
Գ. Խ. ՍԱՐԳՍՅԱՆ

Կ $\frac{10604}{703\ (02)-75}$ 22—75

# ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍ

## ԸՆԴԴԵՄ ԱՊԻՈՆԻ
(հատվածներ)

## ՀՐԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ
(հատվածներ)

## ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ
(հատվածներ)

# ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍԸ ԵՎ ՆՐԱ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Մ. թ. ա. I—մ. թ. I դարերում հռոմեական տերության քաղաքական ու տնտեսական հզորությունը հասավ իր գագաթնակետին։ Օգոստոս կայսեր ժամանակ (մ. թ. ա. 31—մ. թ. 14 թթ.) արդեն Միջերկրական ծովի ամբողջ ավազանն իր առափնյա երկրներով գտնվում էր Հռոմի գերիշխանության տակ, ուստի և հռոմայեցիները Միջերկրականը կոչում էին* mare nostrum—*մեր ծովը։ Տիրակալ Հռոմն իր ճիրանները տարածել էր արևմուտքից արևելք՝ Պիրենյան թերակղզուց մինչև Եփրատ գետը, իսկ հյուսիսից հարավ՝ Բրիտանական կղզիներից ու Հռենոսից մինչև Նումիդիան, իր սահմաններում ընդգրկելով մի ժամանակ հզորագույն այնպիսի պետություններ, ինչպիսիք Հաննիբալի հայրենիքն էր՝ Կարթագենը, տնտեսական և մշակութային բարձր զարգացման հասած այնպիսի երկրներ, ինչպիսիք Հունաստանը, Պտղոմեոսյանների Եգիպտոսը, Սելևկյանների պետությունը, Պերգամոնը, Պոնտոսը և այլն։ Միակ տերությունը, որը փոքրիշատե կարողանում էր հակադրվել Հռոմին, Պարթև Արշակունիների պետությունն էր, որը, սակայն, բզկտվելով ներքին երկպառակություններից, հիմնական ուշադրությունը դարձնում էր իր սահմանների անձեռնմխելիության վրա։ Մինչդեռ Հռոմը Օգոստոսի կայսրության ժամանակ դուրս գալով երկարատև քաղաքացիական կռիվներից, որոնք ուղեկցվում էին ականավոր գործիչների պրոսկրիպցիաներով, հողերի և հարստության բռնագրավումներով, ճնշելով ստրուկների ապստամբությունները և սանձելով զինվորականության կամայականությունները, ձգտեց իրագործել «*Pax Romana*» (հռոմեական խաղաղություն) կարգախոսը, որի դրոշի տակ միանում էին հռոմեական տերության ստրկատիրական վերնախավի տարբեր խմբակցությունները։*

*Քաղաքական և տնտեսական այդ հզորության ժամանակա-*

շրջանում էլ իր զարգացման բարձրակետին հասավ հռոմեական մշակույթն ընդհանրապես։ Ստեղծվեցին գրականության և արվեստի այնպիսի կոթողներ, որոնք ստացան համաշխարհային պատմական նշանակություն։ Եթե Վերգիլիոսը, Հորատիոսը և Օվիդիոսը չքեղ բարձրության հասցրին լատինական պոեզիան, ապա Տիտոս Լիվիոսը, Պլինիոս Ավագը և Կոռնելիոս Տակիտոսը հռոմեական պատմագրությունը և գիտական գրականությունը բարձրացրին գասական աստիճանի։ Նրանց, ինչպես նաև հռոմայեցի այլ մատենագիրների գործերում Հռոմի պատմությունն արտացոլված է այդ ժամանակ հռոմայեցիներին հայտնի աշխարհի պատմության ընդհանուր հետնախորքի վրա։ Պատմագրությունը զարգանում է ոչ միայն բուն Հռոմում, այլև հռոմեական տերության ենթակա արևելյան երկրներում, որտեղ մինչ այգ բարձր զարգացման էր հասել հելլենիստական մշակույթը։ Եթե Հռոմում մատյանները գրվում էին լատիներեն, ապա Արևելքում Դիոդորոս Սիկիլիացին, Ստրաբոնը, Դիոն Ոսկեբերանը և ուրիշներ դեռևս շարունակում էին հելլեն դասական պատմագրության լավագույն ավանդները։ Արևելքի հունալեզու ականավոր հեղինակներից է նաև հրեա Հովսեպոս Փլավիոսը, որը հայտնի է նաև Հովսեպոս Եբրայեցի անունով։

Հովսեպոս Փլավիոսի (Հովսեփ բեն Մաթաթիա) գործունեությունը վերաբերում է մ. թ. I դարի երկրորդ կեսին։ Նրա կենսագրությունը մեզ լավ հայտնի է իր իսկ գրած ծավալուն ինքնակենսագրությունից, որը բովանդակում է պատմական արժեք ներկայացնող մեծաքանակ տվյալներ, ինչպես նաև նրա մյուս երկերում հանդիպող կենսագրական տեղեկություններից։ Նա ծնվել է Երուսաղեմում, Գայոս Կալիգուլա կայսեր իշխանության առաջին տարում (37/38 թ.), հրեա քահանայապետի ընտանիքում, որտեղ և ստացել է անբասիր ռաբբիական դաստիարակություն։ 64 թ., 26 տարեկան հասակում, նա մեկնում է Հռոմ, որտեղ և ականատես է լինում կայսրության մայրաքաղաքի հրկիզմանը Ներոնի ձեռքով։ Հովսեպոսի Հռոմ ճանապարհվելու նպատակն էր պաշտպանել մի խումբ մեղադրվող հրեա քահանաների։ Նա իր այդ առաքելությունը կատարում է մեծ հաջողությամբ՝ կայսրուհի Պոպեայի միջոցով, որից հետո, նրանից առատ պարգևներ ստանալով, վերադառնում է Երուսաղեմ։

Բայց շատ ժամանակ չէր անցել, երբ 66 թ. ծագեց Հրեական կոչված պատերազմը, որն ըստ էության հրեաների ապստամբու-

թյունն էր հռոմեական տիրապետության դեմ, հետևյալ պայմաններում։ I դարում Պաղեստինը ենթարկվել էր Հռոմին և կառավարվում էր Հռոմի նշանակած կուսակալների միջոցով, որոնցից մեկն էր Պոնտացի Պիղատոսը։ Սա 37 թ. ետ կանչվեց Պաղեստինից, և նոր կայսր Կալիգուլան Հրեաստանի թագավոր կարգեց Հռոմում դաստիարակված Հերովդես Ագրիպպասին, որը հլու գործիք էր լինելու Հռոմի ձեռքին։ Հրեաները մինչ այդ ազատված էին կայսեր պաշտամունքին մասնակցելու պարտավորություններից։ Սակայն, Կալիգուլայի կամքով, Երուսաղեմի տաճարում պետք է կանգնեցվեր կայսեր հսկայական արձանը։ Եհովայի երկրպագուների կրոնական նախանձախնդրությունն արհամարհող կայսերական այս հրամանը հանգեցնելու էր հրեաների բացարձակ ապստամբության, սակայն Կալիգուլայի սպանությունը 41 թ. կանխեց դեպքերի հախուռն զարգացումը։

Հրեաստանի Հերովդես Ագրիպպաս թագավորի մահից հետո (44 թ.) Պաղեստինը միացվել էր պրովինցիա Սիրիային և կառավարվում էր հռոմեական պրոկուրատորի կողմից։ Այսուհանդերձ, հրեաները վայելում էին մի շարք առանձնաշնորհումներ. նրանք ազատված էին զինվորական ծառայությունից, և կայսրը հաշվի էր նստում նրանց կրոնական ավանդությունների հետ։ Սակայն հռոմեական իշխանությունների և տեղական բնակչության միջև տարբեր առիթներով ծագող վեճերն անպակաս էին։ Հրեաստանի բնակչությունը ևս, մյուս պրովինցիաներում ապրող ժողովուրդների նման, մեծապես տառապում էր հարկերից, որոնց հիմնական ծանրությունն ընկնում էր գյուղացիության վրա։ Պրովինցիայի հրեաները ճնշվում էին օտար լծի տակ և միաժամանակ երկյուղ էին կրում իրենց կրոնական հավատալիքների ոտնահարման համար, հավատալիքներ, որոնք ոչ մի ընդհանուր բան չունեին ուրիշ ժողովուրդների ավանդությունների հետ։ Այդ իսկ պատճառով հրեաները չէին հանդուրժում այլակրոնների միջամտումը իրենց պաշտամունքային ծիսակատարություններին, մինչդեռ Հռոմի նշանակած պրոկուրատորները և Հրեաստանում տեղակայված հռոմեական զորքերը հաճախ էին ոտնահարում հրեաների կրոնական առանձնաշնորհումները։

Ինչ վերաբերում է հրեական համայնքի ներքին կյանքին, ապա այն ևս խաղաղ չէր ընթանում։ Հրեաստանում ծայր առած ներքին պայքարը արտացոլումն էր հրեա ազգաբնակչության սոցիալական խորը շերտավորման։ Քաղաքական գլխավոր խմբակցու-

թյունները հրեաների մոտ առաջացել էին դեռևս հռոմեական նվաճումից առաջ, իսկ ավանդական տարաձայնություններն ու ներհակությունները նրանց միջև գնալով ավելի խորացան հռոմեական տիրապետության հանդեպ այդ խմբակցությունների ունեցած տարբեր վերաբերմունքով։

Սադուկեցիները՝ Հերովդեսի թագավորական գերդաստանի կողմնակիցները, հռոմեական տիրապետության հենարանն էին Հրեաստանում։ Սրանց գլխավորում էր հրեական բարձր հոգևորականությունը, որի ականավոր ներկայացուցիչները խոշորագույն հողատերեր էին։ Սադուկեցիները բնակչության լայն խավերի մեջ ժողովրդականություն չէին վայելում։ Դեռևս մ. թ. ա. I դարում Պաղեստինում նշանակալից հեղինակություն էին ձեռք բերել փարիսեցիները, որոնք մեծ նախանձախնդրությամբ պահպանում էին կրոնական ավանդությունները և բծախնդիր կերպով հետևում ծիսական արարողություններին ու սովորույթներին։ Սրանք, ընդհանրապես, հենվում էին քաղաքային բնակչության բարձր և միջին խավերի վրա։ Փարիսեցիների հանդեպ բացասաբար էին տրամադրված գյուղացիական լայն զանգվածները։ Վերջիններս հարել էին մասամբ զելոտների դեմոկրատական խմբավորմանը, մասամբ էլ հակված էին դեպի հեսսեյականները, որոնք կազմած լինելով կրոնական հատուկ մի կազմակերպություն, ընդհանրապես հեռու էին մնում քաղաքական շարժումներից։

Այս խմբակցությունների առկայության պայմաններում էլ Պաղեստինի հռոմեական իշխանությունների և տեղի հրեա ժողովրդի միջև հարաբերությունները գնալով սրվում էին։ Դեպքերը զարգանում էին մեծ արագությամբ, և արդեն 66 թ. զինված ընդհարումը դարձավ անխուսափելի։ Դրա առիթը եղավ այն, որ Հրեաստանի Կեսարիա քաղաքում հելլենականացված բնակչության առանձնաշնորհյալ խավերի օգնությամբ հրեաները հեռացվեցին քաղաքային ինքնավարության օրգաններից։ Գործի դրվեց զենքը։ Շուտով ապստամբություն բռնկվեց նաև բուն Երուսաղեմում, որի սանձազերծմանը նպաստեցին Հրեաստանի կուսակալ Գեսսիոս Ֆլորոսի կամայականությունները։ Հռոմեական ոչ մեծաթիվ կայազորը անկարող եղավ դիմադրել մոլեգնած ապստամբներին ու ջախջախվեց։ Ռազմաբեմ ուղարկվեց Սիրիայի հռոմեական կառավարիչ Կեստիոս Գալլոսը, որի պարտությունը Երուսաղեմի տակ ավելի ևս բորբոքեց ապստամբությունը և նպաստեց դրա ծավալվելուն ամբողջ Հրեաստանով մեկ։

Երիտասարդ Հովսեպոս Փլավիոսը, որը Հռոմում գտնված ժամանակ ականատես էր եղել նրա հարստության և հզորության և հռոմեական բանակը համարում էր անպարտելի, սկզբում ջանաց մեղմել զայրացած հրեաների տրամադրությունը և կանխել ապստամբությունը, բայց նրա բոլոր հորդորներն ու պատճառաբանությունները ապարդյուն մնացին։

Հանդամանքների բերումով, Հովսեպոսը ստիպված եղավ գործոն մասնակցություն ունենալ արդեն սկսված ապստամբությանը և հետագայում խաղաց նշանակալից դեր։ Քսանիննամյա հրեա հոգևորականը, ուրիշ երկու հոգու հետ, որպես զորահրամանատար ուղարկվեց Գալիլեա և իր ձեռքը վերցրեց այդ շրջանում գտնվող Յոտապատա բերդի պաշտպանությունը։ Այդ պաշտպանության դրվագների նկարագրությունը լցնում է Հովսեպոսի գրած «Կենսագրության» բազմաթիվ էջերը, ինչպես նաև «Հրեական պատերազմի» որոշ մասերը։ Թեկուզև միևնույն գրչով գրված այդ նկարագրությունները մի շարք մասերում իրարից տարբերվում են։ Նման փաստը պայմանավորված է նրանով, որ «Կենսագրության» մեջ հեղինակը վիճում է հակառակորդ մի հրեա հեղինակի դեմ, որը Հովսեպոսին և գալիլեացիներին մեղադրում էր ապստամբությունը սանձազերծելու գործում, մինչդեռ «Հրեական պատերազմը» տալիս է դեպքերի կարճառոտ շարադրանքը, գրված հռոմեական հովանավորության տակ։

Հովսեպոսի գործունեությունը, սակայն, որպես զորահրամանատարի, երկար չտևեց, քանի որ հռոմայեցիները շուտով գրավեցին Յոտապատան և Հովսեպոսին էլ գերի վերցրին։ Այս դեպքը վճռական նշանակություն ունեցավ Հովսեպոսի համար երկու տեսակետից։ Նախ, որ նրա զինակիցները, կասկածելով նրան դավաճանության մեջ, դավադրություն էին նյութել իր դեմ, սակայն գերի ընկնելը ֆիզիկապես փրկեց Հովսեպոսին։ Այնուհետև, գերի ընկած Հովսեպոսը, առաջնորդվելով հրեական ապստամբությունը ճնշելու համար Ներոնի կողմից Պաղեստին ուղարկված հռոմեական զորավար Վեսպասիանոսի մոտ, կանխագուշակեց նրա բարձրանալը Հռոմի կայսերական գահին։ Եվ իրոք, երկու տարի անց իրականացան Հովսեպոսի խոսքերը։ Վեսպասիանոսը դարձավ Հռոմի կայսր և, հիշելով ապագա մատենագրի մարգարեությունը, ազատեց նրան գերությունից։ Որպես երախտագիտության նշան իր բարերարի հանդեպ, Հովսեպոսը իր անվանն ավելացրեց Վեսպասիանոսի մականունը՝ Փլավիոս։

Հովսեպոսի կենսագրության այս տվյալները զարմանալիորեն նման են մ. թ. ա. II դարի խոշորագույն հույն մատենագիր Պոլիբիոսի կյանքի ուղուն։ Ե՛վ Պոլիբիոսը, և՛ Հովսեպոսը նախապես եղել են հռոմեական նվաճման դեմ կռվող իրենց հայրենակիցների զորահրամանատար, իսկ հետագայում, գերության մեջ շփվելով Հռոմի տիրող դասերի ներկայացուցիչների հետ, դառնում են հռոմեական քաղաքականության ջատագովներ։ Այս մատենագիրների հռոմեական կողմնորոշումը բոլորովին էլ պատահական չէր. այն պայմանավորված էր երկու կողմերի դասակարգային շահերի ընդհանրությամբ։ Հանուն իր ազատության զենքի դիմած ժողովրդական զանգվածներին զսպելու ամենահուսալի երաշխիքը հռոմեական զորքն էր։

Երբ զորքի կողմից կայսր հռչակված Վեսպասիանոսն արդեն մեկնում էր Հռոմ իշխանությունը վերցնելու համար, նրա ճամբարում գտնվող Հովսեպոսը ևս ուղեկցեց նրան մինչև Ալեքսանդրիա, որտեղից և նոր կայսեր որդի Տիտոսի հետ, որը նշանակվել էր Հրեաստանում պատերազմ մղող հռոմեական զորքերի գլխավոր հրամանատար, վերադարձավ Պաղեստին, որտեղ և մինչև հրեական պատերազմի վերջը, այն է՝ մինչև Տիտոսի կողմից Երուսաղեմի գրավումը և ավերումը, մնաց նրա ռազմական ճամբարում։ Երուսաղեմ քաղաքի պաշարման ընթացքում, իր իսկ Տիտոսի թելադրանքով, Հովսեպոսը բազմիցս փորձեց համոզել պաշարված հրեաներին դադարեցնել դիմադրությունը և անձնատուր լինել, դարձյալ միևնույն պատճառաբանությամբ, թե անօգուտ է պայքարել ամենազոր Հռոմի դեմ։ Նրա այդպիսի դիրքորոշումը ավելի ևս բորբոքեց ապստամբ հրեաների ատելությունը, որոնք մի անգամ չէ, որ նրան սպանելու փորձ արեցին, բայց անհաջող։ Ապստամբության վերջնական ճնշումից հետո Հովսեպոսը կայսերորդի Տիտոսի հետ միասին մեկնեց Հռոմ, որտեղ արժանացավ կայսեր ջերմ ընդունելությանը։

Որպես վարձատրություն Հռոմին մատուցած ծառայությունների, Հովսեպոսին թույլատրվեց բնակվել կայսերական արքունիքում, նրան շնորհվեց հռոմեական քաղաքացու իրավունք, միաժամանակ նա կայսրից ստացավ դրամական թոշակ, ինչպես նաև «ոչ փոքր հողակտոր Հրեաստանում»։ Նման հովանավորություն նրա հանդեպ ցուցաբերեց նաև Վեսպասիանոսի հաջորդ Տիտոսը, իսկ Դոմիտիանոսի մասին կխոսենք քիչ հետո։

Ավելի քան հավանական է, որ այդ ժամանակ էլ Հովսեպոսը

հնարավորություն է ունեցել անձամբ ծանոթանալու հռոմեական պատմագրության խոշորագույն ներկայացուցչին՝ Կոռնելիոս Տակիտոսին, քանի որ եբրայեցի մատենագրին հովանավորող նույն այգ Փլավիոսների օրոք, «Տարեգրությունների» հեղինակը վարել է մի շարք բարձրագույն պետական պաշտոններ հռոմեական կայսրության մեջ։ Հովսեպոսի կյանքի հետագա տարիների մասին մենք ոչինչ չգիտենք։ Մեզ անհայտ է մնում նույնիսկ նրա մահվան թվականը։ Այնուամենայնիվ, իր իսկ գրած ծավալուն կենսագրությունից հետևում է, որ նա մ. թ. II դարի առաջին տասնամյակում դեռևս կենդանի էր։

Հռոմում, վայելելով Վեսպասիանոսի և Տիտոսի հովանավորությունը և բազմապիսի աջակցությունը, Հովսեպոսը ձեռնամուխ եղավ մինչև մեր օրերը հասած իր հետևյալ երկերի շարադրմանը՝ «Հրեական պատերազմի մասին», «Հրեական հնախոսություն», «Կյանքը» (Βιος) —Հովսեպոսի ինքնակենսագրությունը և «Ընդդեմ Ապիոնի»։

«Հրեական պատերազմի մասին» մատյանը եբրայեցի մատենագրի վաղագույն և առավել հռչակավոր աշխատությունն է։ Պատերազմից հետո Հռոմում նրա գտած հանգստի որպես առաջին արգասիք, այն գրված էր իրազեկ մարգուն և ականատեսին հատուկ բոլոր առավելություններով, որը հիմա հովանավորություն էր գտել Վեսպասիանոսի պալատում, իր տրամագրության տակ ունենալով իր կայսերական տերերի՝ տվյալ արշավանքների անմիջական հրամանատարների զեկուցագրերը և բացատրությունները։

Հեղինակն իր երկը վերնագրել է «Հրեական պատերազմի մասին» (Περι τοῦ ιουδαϊκοῦ πολέμου)։ Այս վերնագիրն ինքնին մատնում է հրեական ապստամբության մասին հռոմեական կողմի տեսակետը։ Հովսեպոսի գրած նախաբանից պարզվում է, որ մեզ հասած հունարեն բնագիրը աշխատության առաջին շարադրանքը չէր։ Դրան նախորդել էր արամեերեն գրված և «վերին բարբարոսներին» ուղղված շարադրանքը։ Հաջորդ պարբերության մեջ «վերին բարբարոսներ» ասելով հեղինակը նկատի ունի Պարթիայի, Բաբելոնիայի և Արարիայի բնիկներին, Միջագետքի հրեական գաղութը, ինչպես նաև Ադիաբենեի բնակիչներին, այն իշխանության, որի թագավորական տունը, ինչպես հպարտորեն նշում է Հովսեպոսը, հարել էր հրեականությանը։ Հունարեն բնագիրը, հեղինակի բնորոշմամբ, արամեերեն սկզբնօրինակի տարբերակն

է սոսկ, և գրված է հռոմեական կայսրության հպատակների, այսինքն՝ հունա-հռոմեական աշխարհի համար։ Հիշյալ արամեերեն բնագիրը, որը, հավանաբար, պետք է գրված լիներ ավելի անկողմնակալ, դժբախտաբար, մեզ չի հասել։ Ինչ վերաբերում է «Հրեական պատերազմի» հունարեն բնագրին, ապա կարելի է ենթադրել, որ նախկին գործը նորից գրվել է հույն օգնականների մասնակցությամբ, որի մասին մի անգամ չէ, որ հիշատակում է Հովսեպոսն իր շարադրանքի մեջ։

Ի՞նչ նպատակ էր հետապնդում հեղինակն իր այդ գրքով։ Պիտի ենթադրել, որ գրված լինելով պատերազմից անմիջապես հետո՝ իր իսկ Վեսպասիանոսի հովանավորության տակ, այն պետք է որ պաշտոնապես ներշնչված կամ թելադրված լիներ կայսեր կողմից։ Դա ընդարձակ մի զեկույց էր, որի հիմնական նպատակն էր մի կողմից՝ նախազգուշացնել Արևելքի ժողովուրդներին այն բանում, որ հնտագա գիմադրությունը Հռոմին անմիտ է, մյուս կողմից՝ մեղմել պատերազմից հետո հրեաների միջավայրում նկատվող վրեժխնդրության ծարավը, որն ի վերջո Տրայանոսի և Ադրիանոսի ժամանակ հանգեցրեց ընդվզումների։

Հռոմեական կողմի համար պարթևների ուժեղացման վտանգը մշտական սպառնալիք էր ներկայացնում, ուստի և պատահական չէ, որ պարթևները հիշատակված են Հովսեպոսի հավանական ընթերցողների ցուցակի սկզբում։

Հունարեն շարադրանքի առաջին ուրվագիծը գրված է եղել մաս առ մաս, որպես հետևանք հեղինակի և Հրեաստանի Ագրիպպաս թագավորի միջև եղած երկար նամակագրության։ Ագրիպպասը, հավանաբար, ծանոթ էր «Պատմության» արամեերեն տարբերակին։ Հովսեպոսն իր հունարեն գործերը ավարտուն վիճակով ներկայացրել է իրեն հովանավորող կայսրերին, ինչպես նաև արքունիքին մոտ կանգնած հեղինակավոր այլ մարդկանց և ստացել Տիտոսի արտոնությունը դրանք հրապարակելու համար։

Հովսեպոսի «Պատմության» հրապարակման ստույգ թվականը մեզ հայտնի չէ, բայց, անկասկած, այն ընկնում է Վեսպասիանոսի գահակալման վերջին կեսին, խաղաղության տաճարի կառուցումից հետո[1], Վեսպասիանոսի մահից առաջ, քանի

---

[1] Խաղաղության տաճարը Հռոմում կառուցվել է 75 թ. (հմմտ. Dio Cassius, LXVI, 15).

որ կայսրը ստացել էր մատյանի մի օրինակը։ Հետևաբար, այն պետք է որ ավարտված լիներ 75—79 թթ. ընթացքում։

«Պատմության» կարճ նախաբանում շարադրված է ամբողջ աշխատության ոչ ճշգրիտ և անսիստեմ ամփոփումը։ Նախաբանում հիշատակված հարցերը ի մի են կենտրոնացվել հավանաբար այն նկատառումով, որպեսզի հեղինակը գրավի կայսեր ուշադրությունը, ինչպես նաև հրապուրի սովորական ընթերցողին։ Նախաբանին հետևում է չափազանց երկար մի ներածություն, որը կազմում է ամբողջ առաջին գրքի և երկրորդ գրքի մի մասի բովանդակությունը։ Այնտեղ շարադրվում է Հրեաստանի պատմությունը, Սելևկյան Անտիոքոս Եպիփանես թագավորի կողմից Երուսաղեմի տաճարի գրավումից մինչև Հռոմի դեմ ապստամբության ծագելը մոտ 250 տարի հետո։ Հետագայում, երբ Հովսեպոսը ձեռնարկեց իր ժողովրդի հանգամանալից պատմությունը գրելուն, այս դեպքերի շարադրանքը ծավալվեց «Հնախոսության» մեջ, կազմելով դրա 8 գրքի բովանդակությունը։

Առաջին գիրքն ընդգրկում է Անտիոքոս Եպիփանեսի ժամանակից (170 մ.թ.ա.) մինչև Հերովդեսի մահն ընկած ժամանակահատվածը։ Երկրորդ գրքում շարադրված է հրեից պատմությունը մինչև ապստամբության սկիզբը (66 թ.), Կեստիոսի պարտությունը և Գալիլեա արշավելու համար Հովսեպոսի տեսած նախապատրաստությունները։ Երրորդ դիրքը պատմում է Վեսպասիանոսի դեպի Գալիլեա կատարած 67 թ. արշավանքի մասին, ներառյալ Յոտապատա ամրոցի պաշարումը և Հովսեպոսի գերեվարումը։ Չորրորդը՝ այդ արշավանքի ավարտը, Երուսաղեմի մեկուսացվելը և պատերազմական գործողությունների ժամանակավոր ընդհատումը Վեսպասիանոսի կայսր հռչակվելու կապակցությամբ (66—69 թթ.)։ Հինգերորդ և վեցերորդ գրքերում նկարագրվում են Երուսաղեմի պաշարումը և գրավումը Տիտոսի կողմից 70 թ., իսկ վերջին, յոթերորդ գրքում՝ նվաճողների վերադարձը Հռոմ, շքերթը, ապստամբների վերջին ամրությունների ոչնչացումը և մի շարք հետագա դեպքեր։

Հովսեպոսի «Հրեական պատերազմը» ամբողջությամբ վերցրած որպես գրական երկ ունի խոշոր արժանիքներ։ Նրա ոճը գերազանց մի նմուշ է առաջին դարում արդեն լայնորեն տարածված ատտիկիստական[2] հունարենի, որի կրողները ձգտում էին կասեց-

---

2 Չշփոթել ատտիկյանի հետ։ Ատտիկիստական կոչվում էր հելլենիզմի և

նել ալեքսանդրյան շրջանում տիրապետող դարձած լեզվի զարգացումը և վերածնել Պերիկլեսի ժամանակի ատտիկյան հունարենի ոճը։ Ճաշակով ընտրված բառամթերքը, դասական համաչափ ու շքեղ ոճը մեծապես պարտավորեցնում են թարգմանչին և ոժվարին խնդիրներ հարուցում նրա առաջ։

Հելլենականացած ոչ շարքային ընթերցողների համար գրելու ձգտումը Հովսեպոսին ստիպել է խորամուխ լինել հույն գրականությանը։ Նա այդ մասին հպարտությամբ է նշում և ավելացնում, որ արտակարգ դժվարություններ է կրել իր ոճը մշակելու համար։ «Ընդդեմ Ապիոնի» երկում, որը, հավանաբար, գրել է «Հրեական պատերազմ»-ից քառորդ դար հետո, Հովսեպոսը երախտագիտություն է հայտնում այն օժանդակության համար, որ ստացել է հույն մտավորականներից իր նախորդ երկը շարադրելիս։ «Հրեական պատերազմի» վեց գրքերի վրա ուժեղ կերպով զգացվում է Հովսեպոսի հույն գործակիցների աշխատանքը, մինչդեռ վերջին՝ յոթերորդ գիրքն իր ոճով տարբերվում է նախորդներից։ Այստեղ նկատվում են «Հրեական հնախոսության» բնորոշ ոճական առանձնահատկությունները և թվում է, թե հեղինակն իր շարադրանքի այս մասում առավել չափով կախում ունի իր սեփական գրառումներից։ Հեղինակի անհատական ոճը նկատելի է նաև ինքնակենսագրական մի շարք հատվածներում։

Հովսեպոսն իր երկը հեղինակելուց առաջ ուսումնասիրել է հույն խոշորագույն մատենագիրներին՝ ոչ միայն նրանց գերազանց ոճին հաղորդակից դառնալու, այլև օգտվելու համար մեթոդաբանական այն սկզբունքներից, որոնք առկա էին հին հունական պատմագրության լավագույն ներկայացուցիչներ Հերոդոտոսի, Թուկիդիդեսի, Քսենոփոնի և Պոլիբիոսի մոտ։ Հովսեպոսի վրա նկատելի է նաև հունական պոեզիայի խոշորագույն վարպետների՝ Հոմերոսի, Սոփոկլեսի և մյուս ողբերգակների ազդեցությունը։ Դրա լավագույն վկայությունը Հրեաստանի թագավոր Հերովդես Մեծի ընտանեկան աղետները պատմելու եղանակն է։

«Հրեական պատերազմի» մեջ մենք չենք հանդիպում հեղինակների վկայակոչումների, մինչդեռ այդպիսիք ցրված են «Հնախոսության» մեջ։ Մատենագիրն իր առաջին աշխատության մեջ

---

հռոմեական տիրապետության ժամանակ հունարենում տարածված այն ոճը, որի կրողները ձգտում էին արհեստականորեն վերականգնել մ. թ. ա. V դարի աթենական հեղինակների դասական լեզուն։

լություն է պահպանում իր աղբյուրների նկատմամբ, ստիպելով մեզ պարզապես իր նախաբանից եզրակացնել, որ իր հաղորդած տեղեկությունները մեծ մասամբ առաջին ձեռքից են, հիմնված որպես ականատեսի և դեպքերին մասնակցի իր իսկ անձնական հիշողությունների վրա։ Նա նշում է, որ իր ձեռքի տակ ունեցել է բոլորովին նոր նյութեր և պատմության ուրվագիծը ինքն է կազմել և ինքն էլ բոլոր փաստերը հավաքել է մեծ խնամքով։

Այս ավելի քան ժլատ ակնարկությունները կարող են լրացվել իր կյանքի ուշ շրջանում հեղինակած երկերում («Ընդդեմ Ապիոնի», «Կենսագրություն») հանդիպող նշումներով։ Այստեղ հեղինակը կրկին շեշտում է անձնական այն մասնակցությունը, որ ունեցել է ապստամբության մեջ որպես հրամանատար Գալիլեայում։ Երուսաղեմի պաշարման ժամանակ Հովսեպոսը հարաբերություններ է հաստատում Տիտոսի հետ։ Նա պատմում է, որ այդ պաշարման ընթացքում, հռոմեական ճամբարում նստած, կատարել է դեպքերի մանրամասն գրառումներ, քանի որ իրազեկ է եղել քաղաքի իրադրությանը դասալիքների միջոցով, որոնց հաղորդումները մենակ ինքն էր ի վիճակի հասկանալու։

Հովսեպոսի վկայություններից հետևում է, որ թագավոր Ագրիպպասը, որը ապստամբության ճնշումից հետո Հռոմի կողմից հաստատված էր Հրեաստանի գահի վրա, միշտ ստացել է «Հրեական պատերազմը» մաս առ մաս և նամակագրական անընդմեջ կապ է ունեցել հեղինակի հետ երկի ամբողջ շարադրման ընթացքում, միաժամանակ պատրաստակամություն է հայտնել նրան տրամադրելու ընդհանուրին անհայտ փաստեր։

Բացի իր սեփական գրառումներից և հիշողություններից, ինչպես նաև Ագրիպպասից ստացած հետագա հաղորդումներից, իր երկը հեղինակելիս, Հովսեպոսն, ամենայն հավանականությամբ, օգտվել է նաև առաջնակարգ նշանակություն ունեցող այլ վավերագրերից, ինչպիսիք կարող էին լինել արշավանքը գլխավորող զորահրամանատարներ Վեսպասիանոսի և Տիտոսի հուշերը։ Պետք է ենթադրել, որ այդ հուշերը հիմնված էին պատերազմի դաշտում տեղի ունեցած դեպքերի անմիջական գրառումների վրա։ Հրեա մատենագիրը, սակայն, այս երկում ոչ մի անգամ չի հիշատակում այդ հուշերի մասին։ Այսպիսի վերաբերմունքը լիովին համապատասխանում է պատմագրի հետևողական այն պրակտիկային, ըստ որի, այդ երկում չի անվանվում օգտագործված և ոչ մի աղբյուր։ Այսուհանդերձ, այդ հուշերի օգտագործման մասին ակ-

նարկություններ կան Հովսեպոսի հետագա երկերում։ Բերենք մի օրինակ։ Պատասխանելով իր հասցեին արված տիբերիասցի Յուստոսի քննադատություններին, Հովսեպոսը հիշեցնում է նրան այն թշնամությունները, որոնց համար ինքը և իր համաքաղաքացիները պատասխանատու էին պատերազմը սանձազերծելու գործում՝ նախքան կժամաներ Վեսպասիանոսը, և ավելացնում. «Այս ամենը միայն ես չէ, որ ասում եմ, այլ նաև կայսր Վեսպասիանոսի հուշերում այդպես է գրված»[3]։

Կարելի է համարձակորեն ենթադրել, որ հրեական ապստամբությանը նախորդած ժամանակահատվածի համար, որի պատմությունը շարադրված է «Հրեական պատերազմի» I—II գրքերում, Հովսեպոսին որպես աղբյուր ծառայել է նաև մ. թ. ա. I դարի հույն հեղինակ Նիկողայոս Դամասկոսցին, որի անունը հաճախ է հիշատակվում եբրայեցի մատենագրի հաջորդ խոշոր երկի՝ «Հնախոսության» մեջ։ Նիկողայոս Դամասկոսցին եղել է Օգոստոս կայսեր և հրեից թագավոր Հերովդես Մեծի մտերիմը և հեղինակել 144 գրքից բաղկացած «Ընդհանուր պատմություն» և այլ գործեր։ Այս դեպքում ևս Հովսեպոսի վկայությունները պիտի համարել հավաստի, քանի որ նա օգտվել է դեպքերին ժամանակակից հեղինակի գործերից։

Այսպիսով, եթե նկատի առնենք, որ Հովսեպոսը ոչ միայն դեպքերի ժամանակակիցն է եղել ու մասնակիցը, այլև այն, որ նա օգտվել է հավաստի աղբյուրներից, ապա նա մեր առաջ կանգնում է իբրև հին աշխարհի բացառիկ արժանահավատ հեղինակներից մեկը։ Ուստի դժվար է գերագնահատել նրա վկայությունների պատմագիտական արժեքը և՛ այն դեպքում, երբ դրանք չեն հանդիպում այլ հեղինակների մոտ, և՛ այն դեպքում, երբ դրանք իրենց զուգահեռներն ունեն անտիկ պատմիչների մոտ, դրանով իսկ հնարավորություն ստեղծում ստուգելու վերջիններիս հավաստիությունը։

«Հրեական պատերազմ»-ից ավելի քան 16 տարի անց, 94 թ., հայտնվեց Հովսեպոսի հաջորդ մեծ երկը՝ «Հրեական հնախոսությունը», եբրայեցի հեղինակի magnus opus-ը՝ մեծ գործը։ Պատմական այս երկու աշխատությունների երևան գալու միջև նկատվող 16-ամյա ժամանակահատվածը, անկասկած, հեղինակը ծախսել է իր ծավալուն երկի շարադրանքին անհրաժեշտ նյութեր հա-

[3] Jos. Flav., Vita, 342.

վաքելու համար։ Այստեղ, իհարկե, պետք է դեր խաղացած լինի նաև այն, որ Հովսեպոսին հովանավորող Տիտոս կայսեր մահից հետո կայսերական գահին նստած դաժան բռնակալ Դոմիտիանոսը (81—96 թթ.) հեռու էր գրականությունն ու գիտությունը հովանավորելուց, ուստի և նրա օրոք պատմագրի վիճակը անապահով էր։ Եվ պատահական պիտի չհամարել այն երևույթը, որ հռոմեական մշակույթի այնպիսի խոշոր ներկայացուցիչներ, ինչպիսիք էին Տակիտոսը, Պլինիոս Կրտսերը, Յուվենալը և ուրիշներ, Դոմիտիանոսի բռնատիրության տարիներին նախընտրել էին լռել և միայն նրա սպանությունից հետո մագաղաթին հանձնեցին իրենց ստեղծագործությունները։

Որպես փաստ հիշենք թեկուզ այն, որ Տակիտոսը, որը Փլավիոս կայսրերի ժամանակ պետական բարձր պաշտոններ էր վարել, իր անդրանիկ երկը՝ «Հռետորների զրուցագրությունը» գրել էր դեռևս 81 թ., բայց այն հրապարակ հանեց միայն 95 թ. հետո։ Տակիտոսը, Պլինիոս Կրտսերը և Յուվենալը եղել են մտերիմ բարեկամներ, ուստի բացառված չէ, որ Տակիտոսը, կանգնած լինելով կայսերական արքունիքին մոտիկ, շատ լավ ծանոթ էր Դոմիտիանոսի տրամադրություններին, հետևաբար և խորհուրդ էր տվել իր ընկերներին լռություն պահպանել դաժան կայսեր գահակալության տարիներին։

Դոմիտիանոսի սպանությամբ վերացվեց Փլավիոսների տոհմը, և Հովսեպոսը, զրկվելով Հռոմում կայսերական հովանավորությունից, գտավ նոր մեկենաս, հանձին ոմն Եպափրոդիտոսի, որն այդ ժամանակ քերականի համբավ էր վայելում, իր տրամադրության տակ ուներ մեծ գրադարան և զբաղվում էր Հոմերոսի ուսումնասիրությամբ։ Սրան էլ Հովսեպոսը նվիրում է իր հետագա բոլոր գործերը։

«Հրեական հնախոսությունը» բաղկացած է քսան գրքից։ Դրա հիմնական բովանդակությունը կազմում է հրեա ժողովրդի պատմությունը սկզբնավորումից մինչև հրեական պատերազմի ծագումը՝ այն է՝ 66 թվականը։ Հասկանալի է, որ այս աշխատությունը շարադրելիս Փլավիոսի հիմնական աղբյուրը եղել է Աստվածաշունչը, որին հետևելով, սակայն, Հովսեպոսը իր երկը հեղինակել է որպես պատմագիր և ոչ թե հրեա ժողովրդի զրույցները պարզապես դրի առնող։ Նրա նպատակն է եղել հռոմայեցիների և հույների, ինչպես նաև Արևելքի հունալեզու ընթերցողների աչքին բարձրացնել հրեաներին և նրանց պատմությունն ու մշակույ-

թը։ Ջատագովական այդ առաջադրանքին տուրք տալով, Հովսեպոսը իր երկը շարադրելիս ղանց է առել հրեաների պատմությունից շատ իրողություններ, որոնք հազիվ թե նպաստեին իր առաջադրած նպատակին, ուստի և հաճախ փոփոխության է ենթարկել իրեն հասած զրույցներր և պատումները դրանց առավել փայլ ու շքեղություն հաղորդելու մտումով։ Այդ է պատճառը, որ նրա «Հնախոսությունը» Աստվածաշնչի վերապատմությունը չէ սոսկ։ «Հնախոսության» հեղինակն օգտվել է իրենից առաջ ստեղծագործած տարբեր մատենագիրների երկերից, ինչպիսիք են Հերոդոտոսը, Պոլիբիոսը, Բերոսոսը, Նիկողայոս Դամասկոսցին և ուրիշներ։ Ինչպես հայտնի է, վերջին երկուսի աշխատությունները մեզ չեն հասել, և միայն հետագա հեղինակների գործերում պահպանված վկայությունների շնորհիվ ենք իմանում նրանց մասին։ Հավանաբար Հովսեպոսն օգտվել է նաև Ստրաբոնի մեզ չհասած «Պատմական հիշատակարաններ» (Ἱστορικὰ ὑπομνήματα) անփոխարինելի երկից, քանի որ նրա մոտ Ստրաբոնից բերված քաղվածքները չեն հանդիպում պոնտացի մատենագրի մեզ լրիվ հասած «Աշխարհագրություն» երկում։

Իրենց ընդհանուր նպատակադրման տեսանկյունից եթե համեմատելու լինենք Հովսեպոսի երկու ծավալուն գործերը, ապա դժվար չէ նկատել շատ էական մի տարբերություն։ Եթե «Հնախոսության» յուրաքանչյուր էջը ներծծված է հրեական բարքերի ու մշակույթի գերազանցությունը ցուցադրելու ձգտումով, ապա «Հրեական պատերազմը» տոգորված է Հռոմի ըստ ամենայնի գերազանցությանր տուրք տալու, հրեական ապստամբության ապարդյուն լինելու մեջ իր հայրենակիցներին համոզելու, ինչպես նաև ապստամբության ընթացքում որպես հրեաների զորահրամանատարներից մեկը իր անհետևողականությունն ու հռոմայեցիների կողմն անցնելը արդարացնելու մտումով։

Վերոհիշյալ երկու գործից բացի, Հովսեպոսի գրչին են պատկանում նաև լրիվ պահպանված, ծավալով համեմատաբար ոչ մեծ, բայց պատմական որոշակի արժեք ներկայացնող երկու շարադրանք՝ «Կենսագրություն» (Βίος) և «Ընդդեմ Ապիոնի»։ Իրենց բովանդակությամբ և ունեցած նշանակությամբ դրանցից առաջինը ձայնակցում է «Հրեական պատերազմ»-ին, իսկ երկրորդը՝ «Հրեական հնախոսությանը»։ Գրված լինելով հեղինակի առաջացած տարիքում, դրանք նրա վերջին ստեղծագործություններն են։ Գրված են I—II դարերի սահմանագծին, Տրայանոս կայսեր (98—117 թթ.)

գահակալման տարիներին։ «Կենսագրությունը» դեպքերի նկարագրությունը հասցնում է մինչև II դարի սկիզբը, քանի որ դրանում հիշատակություն կա Հովսեպոսին հակառակ դիրքերից հրեական ապստամբությունը շարադրած ոմն Յուստոսի դեմ, Հրեաստանի Ագրիպպաս Բ թագավորի մահից հետո, որը, ինչպես հայտնի է, տեղի էր ունեցել 100 թ.։

«Ընդդեմ Ապիոնի» հակաճառության շարադրանքը, համենայնդեպս, պետք է սկսված լինի «Հնախոսությունը» ավարտելուց հետո (95 թ.)։ Բացառված չէ, որ այն ևս շարադրված է II դարի սկզբին, քանի որ դրանում ևս հիշատակություն կա Հովսեպոսի հակառակորդ պատմագրի մասին, որն անկասկած միևնույն Յուստոսն է։

Բովանդակությամբ ու շարադրանքի ոճով իրարից զգալիորեն տարբեր լինելով հանդերձ, այնքան տարբեր, որ դժվար է հավատալ, թե դրանք իրար ժամանակակից են և միևնույն ձեռքով գրված, Հովսեպոսի «Կենսագրությունը» և «Ընդդեմ Ապիոնի» երկերը իրենց բնույթով զարմանալիորեն նման են։ Դրանք ունեն շեշտված ջատագովական բնույթ։ Առաջինը հեղինակի անձնական կյանքի ջատագովությունն է, երկրորդը՝ հրեական ցեղի փառաբանությունը։

«Կենսագրությունը» իր բովանդակությամբ մի հավելված է «Հրեական հնախոսության», քանի որ վերջինիս մեջ Հովսեպոսը չի շարադրել հրեական պատերազմի պատմությունը, իսկ կենսագրության մեջ նա մեկ անգամ ևս հանգամանորեն անդրադառնում է դրան։ Այդ «հավելվածի» երևան գալը պայմանավորված էր նրանով, որ Հովսեպոսի հայրենակիցներից Յուստոսը հրապարակել էր հրեական պատերազմի պատմությունը, որի մեջ մեղադրում էր Հովսեպոսին Տիբերիաս քաղաքը Հռոմի դեմ ապստամբության մղելու մեջ։ Յուստոսի խիստ քննադատությունը նպատակ ուներ ոչ միայն արժեքազրկել Հովսեպոսի գործերը, այլև վտանգել նրա ապահովությունը Հռոմում։ Ուստի անհրաժեշտ էր անհապաղ պատասխանել։

Այդ նպատակադրումից մղված լինելով, Հովսեպոսի շարադրանքը չի կազմում հեղինակի լիակատար կենսագրությունը։ Իր ամբողջության մեջ այն հեղինակի ջանքն է արդարացնելու իր վարքագիծը կիսամյա այն ժամանակահատվածում, երբ ինքը Գալիլեայում հրեական զորքերի հրամանատարն էր։ Ուստի և Պաղեստինում անցկացրած իր պատանեկության տարիների և հետագա-

յում Հռոմում իր վարած կյանքի կարճառոտ ուրվագծումը կազմում են ամբողջ շարադրանքի նախաբանն ու վերջաբանը։ «Կենսագրությունը» որպես գրական երկ միջակություն է և չի փայլում իր ոճական արժանիքներով։

Որպես հակադրություն «Կենսագրության», երկու գրքից բաղկացած «Ընդդեմ Ապիոնի» գործը Հովսեպոսի ամենահրապուրիչ երկն է։ Դրան հատուկ է խնամքով մշակված ծրագիր, գրական մեծ հմտություն, հելլեն փիլիսոփայության և պոեզիայի լավ ծանոթություն և այդ ամենին գումարած հեղինակի անկեղծ սերը իր հայրենի բարքերի հանդեպ։

«Ընդդեմ Ապիոնի» վերնագիրը թերևս հեղինակի ընտրածը չէ, քանի որ այն չի արտահայտում գրքի բովանդակությունը, որը ամբողջապես նվիրված է հույների հարձակումներից իր հայրենակիցներին պաշտպանելու հարցին։ Իսկ ալեքսանդրիացի հույն Ապիոնը պարզապես խսրայելացիների սովորական հակառակորդներից մեկն էր միայն։ Ծրագրված լինելով իբրև պատասխան «Հնախոսության» դեմ երևան եկած քննադատություններին, ինչպես նաև նպատակ ունենալով հերքել տարածված կանխակալ կարծիքները, Հովսեպոսի այս շարադրանքը համակված է հրեական օրենքները և ավանդությունները ջատագովելու և հրեաների հնագույն ծագումը ցուցադրելու ոգով։ Այդ իսկ պատճառով, այն բացահայտում է I դարում լայնորեն տարածված հակասեմականության ներքին ծալքերը և հաջող կերպով վիճարկում հակասեմականների թշնամական և անմիտ հերյուրանքները հրեաների դեմ։ Այսուհանդերձ, «Ընդդեմ Ապիոնի» գիրքը մեծ նշանակություն ունի Արևելքի երկրների պատմության հնագույն շրջանն ուսումնասիրելու համար, քանի որ Հովսեպոսն իր դրույթներն ապացուցելիս հարկադրված է եղել ընդարձակ վկայություններ բերել (դրանով իսկ կորստից փրկել) մեզ չհասած այնպիսի սյատմագիրներից, ինչպիսիք են Եգիպտոսի պատմության հեղինակ Մանեթոնը, Բաբելոնի պատմության հեղինակ Բերոսոսը և ուրիշներ։

* * *

Մեզ համար դժվար է գերագնահատել Հովսեպոսի պատմության հատկապես այն հատվածները, որոնք վերաբերում են Տիգրան Բ-ին, Արտավազդին (մ. թ. ա. I դար) և Տրդատ Արշակունուն (մ. թ. I դար)։ Նրա վկայությունների բացառիկ նշանակու-

թյունը պայմանավորված է մի շարք հանգամանքներով, որոնցից նշենք թեկուզ միայն երկուսը։

1) Հովսեպոսը, Ստրաբոնից հետո, ժամանակով առավել մոտ է Տիգրանին և վերջին Արտաշեսյաններին։ Ինչ վերաբերում է Տրդատին, ապա Փլավիոսն այն պատմիչն է, որի քաղաքական գործունեության և գրական ստեղծագործության տարիները համընկնում են Հայաստանում Արշակունյաց հարստության հիմնադրի գահակալության տարիներին։

2) Ինչքան էլ Հովսեպոսի գործերում սուր կերպով զգացվում է նրա սուբյեկտիվ վերաբերմունքը նկարագրված դեպքերի նկատմամբ, որոնց հաճախ ինքը անմիջական մասնակցություն է ունեցել, այնուամենայնիվ, հայոց թագավորներին, առանձնապես Տիգրանին և Արտավազդին վերաբերող նրա վկայությունները առավել անաչառ են։ Այսպես, եթե հույն հեղինակների, հատկապես Պլուտարքոսի, ուրվագծած Տիգրանը դաժան ու կամակոր միապետ է, ապա Հովսեպոսի գրչի տակ հայոց թագավորը պատկերված է մեղմաբարո և մարդկային։ Եբրայեցի պատմիչի՝ Տիգրանին տված այս գնահատականը առանձնապես արժեքավորվում է, եթե նկատի առնենք, որ հայոց թագավորը, հայ մատենագրության տվյալներով, մեծ թվով հրեաների գերեվարել ու տարել էր Հայաստան։ Տալով Արտավազդին, Պլուտարքոսը նրան ներկայացնում է իբրև նենգամիտ և հռոմեական շահերին դավաճանած մարդ, մինչդեռ Հովսեպոսի մոտ նա ներկայացված է իբրև զոհ Անտոնիոսի մեքենայությունների և փառասիրության։

Հովսեպոսը նոր անուն չէ հայ մատենագրության համար։ Դեռևս հայկական դպրության արշալույսին նրա անունը մուտք էր գործել մեսրոպատառ մատյանների մեջ։ Մովսես Խորենացին իր «Հայոց Պատմությունը» շարադրելիս, ի թիվս այլ հեղինակների, մեծապես օգտվել է նաև եբրայեցի հեղինակի երկերից։ Պատմահայրը երկակի է մոտեցել Հովսեպոսի մատյաններին։ Որոշ դեպքերում վկայակոչելով նրան, համարյա բառացի մեջ է բերում Հովսեպոսի խոսքերը, մինչև իսկ նշելով աղբյուրը։ Այլ դեպքերում, վերցնելով հրեա պատմիչի շարադրանքի ընդհանուր հենքը, Խորենացին վերաշարադրում է այն և հարմարեցնում իր պատմության ընդհանուր ոգուն, հաճախ փոխելով գործող անձերի անուններն ու ազգային պատկանելիությունը։

Վերոհիշյալ հարցին անդրադարձավ Գ. Սարգսյանն առանձին հոդվածով, փորձելով բացատրել Խորենացու մատյանում

հրեա պատմիչի վկայություններից կատարված շեղումները[4]։ Համառոտակի ծանոթանանք այդ հոդվածի էությանը։

Հայտնի է, որ մ. թ. ա. I դարում հայոց թագավորների մղած պատերազմները հրեաների գերեվարության երկու ալիք բերեցին Հայաստան. առաջինը և առավել նշանակալիցը՝ Տիգրան Բ-ի արշավանքների հետևանքով, երկրորդը՝ նրա որդի Արտավազդի թագավորության ժամանակ։ Այս երկուսն էլ հայտնի են Խորենացուն։ Երկրորդ գերեվարության նկարագրությունը պատմահայրը վերցրել է Հովսեպոսից, բայց իր շարադրանքի մեջ մտցրել է լուրջ փոփոխություններ և դործողությունը տեղափոխել Տիգրանի ժամանակաշրջանը։ Հովսեպոսի պատմածում հայերն ու Հայաստանը ընդհանրապես չեն հիշատակվում։ Իսկ մնացածը ընդհանուր է երկու հեղինակների մոտ։ Համընկնում են, մասնավորապես, թվական տվյալները և տեղանունները։ Գ. Սարգսյանը գտնում է, որ Խորենացու թույլ տված շեղումների մի մասը կարելի է բացատրել, հավանորեն, իր աղբյուրի անգիր օգտագործումով, իսկ թվերը կարող էին նախօրոք գրի առնված լինել[5]։

Հովսեպոսի պատմածից Խորենացու մյուս շեղումները Գ. Սարգսյանը բացատրում է նրանով, որ Հայաստանում արդեն այդ բոլոր դեպքերի մասին Տիգրանի կողմից փոխադրված հրեական զանգվածների ոլորտում ավանդություն էր առաջացել, որտեղ Արտավազդն ու պարթևները մոռացության են տրվել և ամեն ինչ վերագրվել է Տիգրանին։ Խորենացին իր ձեռքի տակ ունենալով մի կողմից՝ Հովսեպոսի, մյուս կողմից՝ հայկական ավանդության տարբերակները, նախապատվությունը տվել է հայերին դրվատող վերջին տարբերակին և Հովսեպոսի պատմածը հարմարեցրել այս մեկին։ «Դրանով պետք է բացատրել,— հետևցնում է Գ. Սարգսյանը,— այն հանգամանքը, որ Խորենացին, ընդհանուր առմամբ հետևելով Հովսեպոսի պատմածին, ամենուրեք, սակայն, պարթևներին փոխարինել է հայերով. ընդ որում, իրական պատմական դեմքերը ... վերածվել են ոչ ռեալ պերսոնաժների»[6]։

Սա լիովին հավանական է։ Պատմահոր շեղումների մի մասն էլ կարելի է վերագրել այն բանին, որ Խորենացին իր ձեռքի

---

4 Գ. Խ. Սարգսյան, Աղբյուրների օգտագործման եղանակը Մովսես Խորենացու մոտ, «Բանբեր Մատենադարանի», № 3, 1956, էջ 31—42։

5 Նույն տեղում, էջ 33։

6 Նույն տեղում, էջ 33—34։

տակ ունեցել է Հովսեպոսի երկի մի այլ տարբերակը, քան այն, ինչ հասել է մեզ։ Այսպիսի հավանականության օգտին է հուշում իր իսկ Հովսեպոսի խոստովանությունը։ Ինչպես արդեն նշել ենք, «Հրեական պատերազմի» հեղինակը առաջին պարբերությունով հայտնում է, որ իր պատմությունն ինքը նախ գրել է արամեերեն, որպեսզի այն կարողանան կարդալ հրեաները, ինչպես նաև Եփրատից այն կողմ բնակվող իր ցեղակիցներն ու հավատակիցները։ Եթե մեր այս ենթադրությունը ճիշտ է, ապա սխալված չենք լինի, եթե ասենք, որ Խորենացու ձեռքի տակ եղել է մի ձեռագիր, որը առնվազն 500 տարով ավելի հին էր, քան Հովսեպոսի երկերի ներկա ձեռագրերը, որոնցից ամենահինը X դարից այն կողմ չի գնում։

Բացառված չէ այն, որ Բերոսոսից քաղված Մովսես Խորենացու վկայությունների հիմքում ընկած են դարձյալ Հովսեպոսի երկերի համապատասխան հատվածները։

Այս ամենից ակնհայտ է դառնում, որ Պատմահայրը շատ բարձր է գնահատել եբրայեցի մատենագրի երկերը։

Հովսեպոս Փլավիոսի երկերը թարգմանվել են մի շարք լեզուներով, առաջին հերթին՝ լատիներեն։ XVII—XVIII դարերում հայ մատենագրության մեջ ևս մեծ հետաքրքրություն է նկատվում այդ երկերի նկատմամբ։ Եվ ահա Ստեփանոս Լեհացին 1660 թ. լատիներեն թարգմանությունից հայերեն է թարգմանում եբրայեցու «Հրեական պատերազմի մասին» մատյանը, որը և տպագրվում է 1787 թ.[7]։ Այս թարգմանության մի քանի ձեռագրեր պահվում են Երևանի Մաշտոցի անվան Մատենադարանում[8]։ 1760—1761 թթ. Տայի-Սիմոնյան Աթանաս վարդապետը ևս իտալերեն թարգմանությունից թարգմանում է Հովսեպոսի մյուս գործը՝ «Հրեական հնախոսությունը», որը մնում է ձեռագիր վիճակում[9]։

---

7 Գիրք Պատմութեանց Յովսեպոսի Եբրայեցւոյ արարեալ ի լատինացւոյ բարբառոյ ի հայոց լեզուի, ի ձեռն ուրումն Իլովացւոյ Ստեփաննոսի։

8 Ձեռագրեր՝ 1489, 1728, 1729, 1909։ Այս ձեռագրերից վերջինի գրիչը ինքը Ստեփանոս Լեհացին է։ Ձեռագրի վրա կատարված են ուղղումներ, իր իսկ թարգմանչի ձեռքով։ Մյուս ձեռագրերը վերջինից կատարված արտագրություններ են։

9 Գիրք Մատենի հնագոյն պատմութեանց։ Շարագրեալ և արարեալ ի Յովսեպոսէ Փլավիանոսէ Եբրայեցւոյ քահանայի Երուսաղէմացւոյ... Թարգմանութեամբ ի լոյս ածեալ յիտալացւոյ բարբառոյ, ի հայ լեզու, ի Կոստանդնուպոլսեցւոյ Տայի-Սիմոնեան Աթանաս վարդապետէ և եպիսկոպոսէ (ձեռագրեր 2720 և 2747)։

Ստեփանոս Լեհացու թարգմանությունը պիտի համարել առավել հաջող։ Բայց և՛ այս, և՛ Տայի-Սիմոնյանի թարգմանությունը, իրենց որոշ արժանիքներով հանդերձ, չեն կարող բավարարել ժամանակակից բանասիրության ու պատմագրության պահանջները։ Գրաբար այս թարգմանություններում կան ոչ քիչ անճշտություններ և աղավաղումներ, որոնք պայմանավորված են, ընդհանրապես, XVII—XVIII դդ. պատմա-բանասիրության մակարդակով, ինչպես նաև այն հանգամանքով, որ թարգմանությունները կատարվել են ոչ ուղղակիորեն բնագրից։ Նկատված շեղումների մի որոշ մասն էլ հետևանք է այն բանի, որ և՛ Ստեփանոս Լեհացին, և՛ Ա. Տայի-Սիմոնյանը Հովսեպոսին թարգմանելիս միշտ նկատի են ունեցել Խորենացու մատյանը, որտեղ Պատմահայրը ամեն անգամ չէ, որ ճշտությամբ է վերարտադրում հրեա մատենագրին։ Վերոհիշյալ թարգմանություններում մեր նկատած անճշտությունները կարելի է բաժանել երեք խմբի. 1) հատուկ անունների սխալ տառադարձումներ, 2) իմաստային աղավաղումներ և 3) բացթողումներ։

Ներկա թարգմանությունը կատարել ենք „Loeb Classical Library“ շարքով հրատարակված Հովսեպոս Փլավիոսի ամբողջական գործերի բնագրից, ընտրելով նրա բոլոր երկերից այն հատվածները միայն, որոնք վերաբերում են պատմական Հայաստանին և հարևան երկրներին, որոնց հետ հայերը հնագույն ժամանակներից ունեցել են քաղաքական, տնտեսական և մշակութային հարաբերություններ։

Մեր թարգմանության մեջ փակագծերում առնված բառերը ընթերցվածը պարզ դարձնելու նպատակով մեր կատարած հավելումներն են։

Հատուկ անունները հայերեն տառադարձնելիս, մենք հավատարիմ ենք մնացել բնագրի ուղղագրությանը, մի սկզբունք, որին հետևել են դեռևս Ագաթանգեղոսը, Խորենացին և մեր մյուս պատմիչները։ Նկատվող հազվադեպ շեղումները վերաբերում են հայկական կամ արդեն հայկականացած անուններին, որոնք ըստ հունարենի փոխելը համարեցինք ոչ նպատակահարմար։

## ԸՆԴԴԵՄ ԱՊԻՈՆԻ[1]

### ԽՈՍՔ ԱՌԱՋԻՆ

37 Հիրավի, քանի որ ամեն մեկին իրավունք չի տրված
գրելու տարեգրությունները, և տարաձայնություններ չկան
գրվածների վերաբերյալ, այլ ընդհակառակը, քանի որ աստ-
վածային ներշնչման միջոցով ամենահեռավոր և հնագույն
պատմություններն իմանալը մարգարեներին է վիճակված,
38 որոնք հստակորեն գրել են նաև իրենց ժամանակակից դեպքե-
րի մասին, բնական է, որ մենք չունենք բյուրավոր գրքեր,
որոնք անհամաձայն լինեին իրար և վիճեին, այլ միայն քսան
և երկու, որոնք բովանդակում են բոլոր ժամանակների տարե-
39 գրությունը և իրավացի կերպով հավաստի են համարվում[2]։
Ու դրանցից հինգը Մովսեսի գրքերն են, որոնք բովանդակում
են օրենքները և մարդու ծագումից մինչև Մովսեսի մահը եղած
40 պատմությունը։ Այդ ժամանակը փոքր ինչ պակաս է երեք հա-
զար տարուց։ Իսկ Մովսեսի վախճանվելուց մինչև պարսից
արքա Քսերքսեսի հաջորդ Արտաքսերքսեսը[3] Մովսեսից հետո
եկած մարգարեներն են գրել տասներեք գրքում։ Իսկ մնա-
ցած չորսը բովանդակում են օրհներգություններ առ աստ-
41 ված և կենցաղային խրատներ՝ առ մարդիկ։ Իսկ Արտա-
քսերքսեսից մինչև մեր օրերի (պատմությունը) գրվել է լրիվ,
բայց չի համարվում նախորդ տարեգրություններին հավա-
սար հավաստի, որովհետև չի եղել մարգարեների ճշգրիտ
հաջորդականություն։

* * *

63 Փյունիկեցիները կանխավ հայտնի դարձան հույներին,
որովհետև իրենց նավերով լողացին դեպի հույները՝ առևտրի

նպատակով, և նրանց միջոցով (հայտնի դարձան) եգիպտա-
ցիներին. ու բոլոր նրանք, որոնցից բեռներ էին բերում հույ-
64 ներին, մեծ ծովեր անցնելով։ Հետագայում մեդացիներն ու
պարսիկները հայտնի դարձան, տիրելով Ասիային. պարսիկ-
ները մինչև իսկ մյուս մայր ցամաքը կատարած արշավանք-
ներով[4]։

* * *

128 Իսկ այժմ ես արդեն կասեմ մեր մասին քաղդեացիների
մոտ գրվածները և պատմվածները, որոնք շատ բաներում
համաձայն են մեր սեփական գրքերին։ Այս բոլորի վկան է
129 Բերոսոսը[5], ծագումով քաղդեացի, սակայն ուսումնական
շրջաններին հայտնի մի մարդ, որովհետև նա հույներին մա-
տուցել է քաղդեացիների մոտ աստղագիտության և իմաս-
130 տասիրության մասին եղած երկերը։ Ահա այս Բերոսոսը,
հետևելով և՛ տեղի ունեցած ջրհեղեղի, և՛ դրա ժամանակ
պատահած մարդկանց կործանման մասին եղած հնագույն
տարեգրություններին, Մովսեսի նման ինքը ևս պատմել է
տապանի մասին, որի մեջ Նոքոսը[6], մեր ցեղի նահապետը,
փրկվեց, երբ այն քշվեց ու կանգ առավ Հայկական լեռների
131 բարձունքներում։ Այնուհետև նա կարգավ թվարկելով Նոքոսի
հետնորդներին և նրանց տարիները գումարելով, հասնում է,
մինչև Նաբուպալասարը[7], Բաբելոնի և քաղդեացիների թա-
գավորը և պատմելով նրա գործերի մասին, ասում է, թե
ինչպես նա իր որդի Նաբուքոդոնոսորին[8] մեծ զորքով ուղար-
132 կեց Եգիպտոսի և մեր երկրի վրա, լսելով, որ այդ ժողո-
վուրդներն ապստամբել են իր դեմ, բոլորին ճնշեց, հրկիզեց
Երուսաղեմի տաճարը, իսկ մեր ամբողջ ժողովրդին տեղա-
հանելով, վերաբնակեցրեց Բաբելոնում։ Դրա հետևանքով
իսկ քաղաքն ամայի մնաց յոթանասուն տարի, մինչև պար-
133 սից Կյուրոս թագավորը[9]։ Բերոսոսը ավելացնում է, թե Բա-
բելոնացին[10] նվաճեց Եգիպտոսը, Սիրիան, Փյունիկեն, Արա-
բիան, իր գործունեությամբ գերազանցելով իրեն նախորդած
քաղդեացիների և բաբելոնացիների բոլոր թագավորներին։
134 Այդ դեպքերը ես կշարադրեմ իր իսկ Բերոսոսի խոսքերով,
135 որոնք այսպիսին են. «Նրա հայր Նաբուպալասարը, լսելով
Եգիպտոսում և Կելե-Սիրիայում և Փյունիկեում իր իսկ նշա-
նակած սատրապի ապստամբության մասին, և ինքն ի վի-

ճակի չլինելով դիմանալու արշավանքի դժվարություններին,
իր որդի Նաբուքոդոնոսորին, որն ապրում էր իր կյանքի ծաղ-
կուն շրջանը, հանձնարարելով զորքերի մի մասը, ուղարկեց
136 նրա դեմ։ Նաբուքոդոնոսորը, հանդիպելով ապստամբին և
ջախջախելով նրան, նվաճեց երկիրը և այն միացրեց Բաբե-
լոնի թագավորի տիրությանը։ Այդ ժամանակ պատահեց
այնպես, որ Բաբելոն քաղաքում քսանմեկ տարի թագավորե-
լուց հետո, նրա հայր Նաբուպալասարը հիվանդացավ ու մա-
137 հացավ։ Ոչ շատ ժամանակ անց, Նաբուքոդոնոսորը, տեղե-
կանալով իր հոր մահվան մասին, կարգավորեց պետական
գործերը Եգիպտոսում և մյուս երկրներում, հրեա, փյունի-
կեցի, սիրիացի և եգիպտական ժողովուրդներից վերցրած
գերիներին հանձնելով իր մերձավորներից մի քանիսին, կար-
գադրեց ծանրազեն զորքերի և մյուս միավորումների հետ
նրանց ևս առաջնորդել Բաբելոնիա։ Իսկ ինքը փոքր հեծե-
138 լախմբով ճեղքեց անապատը և ժամանեց Բաբելոն։ Այնտեղ
նա պետության կառավարումը գտավ քաղդեացիների ձեռքին,
և նրանցից լավագույնները թագավորական իշխանությունը
պահել էին իր համար։ Արդեն դառնալով իր հայրենական իշ-
խանության տերը, գերվածներին բերվելուց հետո հրամայեց
նրանցից գաղութներ հաստատել Բաբելոնիայի ամենատար-
139 բեր վայրերում, իսկ ինքը պատերազմից ձեռք բերած ավար-
ներով Բելի տաճարը և մյուս տաճարները նախանձախնդրու-
թյամբ զարդարելով, հնում եղած քաղաքը վերակառուցեց և դը-
րանից դուրս մի նորը ավելացրեց, և հետագայում քաղաքի պա-
շարման ժամանակ դետի հունի ուղղությամբ ներխուժման մի-
ջոցով քաղաքի գրավման ամեն մի հնարավորություն խափա-
նելու նպատակով, ներքին քաղաքը պատեց երեք պարսպով,
արտաքին քաղաքը ևս երեք պարսպով. դրանցից ներքին քա-
ղաքի պարիսպները թրծած աղյուսից և կուպրից, իսկ արտա-
140 քին քաղաքի պարիսպները՝ հասարակ աղյուսից։ Եվ քաղա-
քըն ինչպես հարկն է ամրացնելուց ու դարպասները սրբա-
վայրին վայել ձևով զարդարելուց հետո, իր հոր պալատի շա-
րունակությամբ կառուցեց մի երկրորդ պալատ, որի բարձ-
րությունը և այլ շքեղությունները նկարագրելը գուցե ձանձ-
րալի կլիներ. միայն ասենք, որ հակառակ իր հսկայական և
141 ահռելի չափերին, այն կառուցվել է տասնհինգ օրում։ Այս
պալատների մեջ քարե բարձր հենարաններ պատրաստելով

և լեռներին նմանվող տեսք տալով, բազմապիսի ծառեր տըն-
կելով, զարդարեց ու կառուցեց կախյալ կոչված պարտեզը[11],
որը ցանկացել էր Մեդիայում մեծացած և լեռնային վայրե-
րին սովոր նրա կինը»[12]։
142 Այսպիսի բաներ է նա պատմում վերոհիշյալ թագավորի
մասին ու դրանից բացի նաև շատ ուրիշ բաներ իր «Քաղդեա-
կանք»-ի երրորդ գրքում, որտեղ կշտամբում է հույն հեղի-
նակներին[13] այն առնչությամբ, որ նրանք իզուր են կարծում,
թե Ասորեստանի Սեմիրամիս (թագուհու) կողմից է հիմնվել
143 Բաբելոնը և անճիշտ կերպով գրել են, որ նրա ձեռքով են կա-
ռուցվել քաղաքի հրաշալիքները։ Այս բոլորի կապակցու-
թյամբ քաղդեական տարեգրությունները արժանահավատ
պիտի համարել։ Առավել ևս այն պատճառով, որ Բաբելոնի
այս թագավորի մասին փյունիկյան մատյաններում գրված-
ները ևս համաձայն են Բերոսոսի պատմածներին այն մա-
սին, թե ինչպես նա Սիրիան և ամբողջ Փյունիկեն ավե-
144 րեց։ Այդ դեպքերի մասին նույնպես գրել է Փիլոստրատոսն
իր պատմության մեջ, հիշատակելով Տյուրոսի պաշարումը[14],
նաև Մեգասթենեսը իր Հնդկաստանի պատմության չոր-
րորդ գրքում, որտեղ փորձում է ապացուցել, որ բաբելոնա-
ցիների հիշյալ թագավորը իր քաջությամբ և արարքների մե-
ծությամբ գերազանցել է Հերակլեսին[15]։ Որովհետև, ասում
է, նա նվաճել է Լիբիայի մեծ մասը և Իբերիան[16]։
145 Այն, ինչ վերևում ասվեց Երուսաղեմի տաճարի մասին,
թե այն հրկիզվեց արշավող բաբելոնացիների կողմից, ապա
նրա վերակառուցումը սկսվեց, երբ Ասիայի գահն անցավ
Կյուրոսին, այդ բոլորը պարզորեն ցույց կտանք Բերոսոսի
խոսքերով։ Նա իր պատմության երրորդ գրքում հետևյալն
146 է գրում. «Այսպիսով Նաբուքոդոնոսորը, վերևում հիշատակ-
ված պարսպի (շինարարությունն) սկսելուց հետո, հիվան-
դացավ ու մահացավ, թագավորելով քառասուներեք տարի,
147 իսկ թագավորության տեր դարձավ նրա որդի Եվիլմարադու-
քոսը։ Սա անօրենությամբ ու անառակությամբ կառավարեց,
որի համար էլ, երկու տարի թագավորելուց հետո, զոհ գնաց
իր քեռայրի՝ Ներիգլիսարոսի կազմակերպած դավադրությա-
նը։ Նրա կործանվելուց հետո գահի վրա նրան հաջորդեց դա-
148 վագիր Ներիգլիսարոսը, թագավորելով չորս տարի։ Սրա որ-
դի Լաբորոսոարդոքոսը, որը դեռ պատանի էր, գրավեց իշխա-

նությունն ինն ամիս և շատ վատ բարքեր դրսևորելով, դա-
վադրության զոհ գնաց. նա բրածեծ արվելով սպանվեց իր
149 մերձավորների կողմից։ Նրան վերացնելուց հետո, դավադիր-
ները խորհուրդ գումարելով, որոշեցին թագավորական իշ-
խանությունը հանձնել բաբելոնացի Նաբոնիդոսին, որը դա-
վադրության մասնակիցներից էր։ Սրա թագավորության ըն-
թացքում Բաբելոն քաղաքի գետամերձ պարիսպները վերաշին-
150 վեցին թրծված աղյուսով և կուպրով։ Իսկ նրա թագավորու-
թյան տասնյոթերորդ տարում Կյուրոսը խոշոր բանակով առաջ
շարժվեց Պերսիսից[17] և ամբողջ թագավորությունը նվաճե-
151 լուց հետո, արշավեց Բաբելոնիայի դեմ։ Իսկ Նաբոնիդոսը,
տեղեկանալով նրա հարձակման մասին, իր զորքով դուրս
եկավ նրա դեմ, բայց ճակատամարտում պարտվելով, սակավ
152 մարդկանց հետ փախավ ու փակվեց Բորսիպա քաղաքում[18]։
Իսկ Կյուրոսը Բաբելոնը նվաճելուց հետո հրամայեց քաղաքի
արտաքին պարիսպները քանդել, որովհետև դրանք քաղա-
քը իսկապես դարձնում էին դժվարամատույց, առաջ շարժ-
վեց դեպի Բորսիպա, Նաբոնիդոսին պաշարելու համար։
153 Մինչդեռ Նաբոնիդոսը, առանց պաշարման սպասելու, նա-
խօրոք հանձնվեց, իսկ Կյուրոսը մարդասիրաբար վերաբերվե-
լով, (Նաբոնիդոսին) հեռացրեց Բաբելոնիայից, բայց փոխա-
րենը Կարմանիայում[19] նրան բնակավայր հատկացրեց, որ-
տեղ և (Նաբոնիդոսը) անցկացրեց իր կյանքի մնացած տարի-
ները, մինչև մահանալը»։

154 Այս բոլորը ճիշտ է և մեր մատյաններին համաձայն։
Քանզի դրանց մեջ գրված է, որ Նաբուքոդոնոսորը իր գահա-
կալության տասնութերորդ տարում ավերեց մեր տաճարը,
որը և հիսուն տարի դադարեց գոյություն ունենալուց, իսկ
Կյուրոսի թագավորության երկրորդ տարում հիմքերը նորից
դրվեցին, ու Դարեհի թագավորության երկրորդ տարում կա-
155 ռուցումը ավարտվեց։ Դրանց ես կավելացնեմ նաև փյու-
նիկյան մատյաններում գրվածները. որովհետև պատշաճ չէ
156 պիտանի ապացույցների առատության անտեսումը։ Իսկ
դրանց մեջ տարիների հաշվումն այսպիսին է. Իթոբալոս
թագավորի օրոք Նաբուքոդոնոսորը Տյուրոսը պաշարեց
157 տասներեք տարի։ Նրանից հետո թագավորեց Բաալը տասը
տարի։ Նրանից հետո նշանակվեցին դատավորներ ու այդ

պաշտոնը վարեցին Եկնիբալոսը՝ Բասլեքոսի որդին, երկու
ամիս, Քելբեսը՝ Աբդեոսի որդին, տասը ամիս, քրմապետ
Աբբարոսը՝ երեք ամիս, Մյուտյունոսը և Աբդելիմոսի որդի
Գերաստրատոսը դատավոր են եղել վեց տարի, դրանցից հե-
158 տո թագավորեց Բալատորոսը մի տարի։ Երբ սա մահացավ,
դեսպաններ ուղարկեցին և Բաբելոնից հրավիրեցին Մերբալո-
սին, որը և թագավորեց չորս տարի։ Իսկ սրա մահանալուց
հետո (հրավիրեցին) նրա եղբորը՝ Հեյրոմոսին, որը թագավո-
րեց քսան տարի։ Սրա ժամանակ էր, որ Կյուրոսը դարձավ
159 պարսից տիրակալը։ Այսպիսով, ամբողջ ժամանակը կազ-
մում է քառասուն և չորս տարի և երեք ամիս. որովհետև, իր
գահակալության յոթերորդ տարում Նաբուքոդոնոսորը պա-
շարեց Տյուրոսը, իսկ պարսիկ Կյուրոսը Հեյրոմոսի թագավո-
րության տասնչորսերորդ տարում էր, որ տիրացավ գահին։

* * *

168 Այնուհետև Հերոդոտոս Հալիկառնասեցին ևս անտեղյակ
չի եղել մեր ազգին, այլ ինչ-որ առիթով հիշատակում է նրան։
Քանզի խոսելով կոլխերի մասին իր պատմության երկրորդ
169 գրքում, այսպես է ասում[20]. «Բոլոր (ժողովուրդների) մեջ
սկզբնապես միայն կոլխերի և եգիպտացիների և եթովպացի-
ների մոտ էր թլփատությունն ընդունված։ Իսկ փյունիկեցի-
ները և Պաղեստինում ապրող ասորիներն ընդունում են, որ
170 այդ բանը սովորել են եգիպտացիներից։ Մինչդեռ Թերմոդոնտ
և Պարթենիոս գետերի[21] եզերքին ապրող ասորիները և նրանց
հարևան մակրոնները[22] ասում են, թե այն դեռ նորերս են սո-
վորել կոլխերից։ Համայն մարդկության մեջ միայն սրանք
են, որ թլփատվում են, և պարզորոշ է, որ բոլորն էլ այս սո-
վորությունը վերցրել են եգիպտացիներից։ Ինչ վերաբերում է
եգիպտացիներին ու եթովպացիներին, ապա չեմ կարող ա-
171 սել, թե նրանցից ո՞ր մեկն է մյուսից սովորել»։ Այսպիսով,
Հերոդոտոսը պատմում է, թե Պաղեստինի բնակիչներից միայն
հրեաներն են, որ ունեն թլփատման սովորությունը։ Հետևա-
բար նա այս բանին տեղյակ էր և նրա ակնարկությունը նրանց
է վերաբերում։
172 Հնագույն բանաստեղծ Խոյրիլոսը[23] ևս հիշատակում է
մեր ազգը այն կապակցությամբ, որ այն մասնակից է եղել

պարսից թագավոր Քսերքսեսի՝ Հունաստան կատարած արշավանքին։

* * *

205 Սակայն Հեկատեոսի[24] վկայություններից շատ հիշատակվեց։ Իսկ ով ցանկանում է ավելին իմանալ այդ մասին,
կարող է հեշտությամբ ձեռք բերել նրա գիրքը։ Ու ես չեմ ծուլանա նաև Ագաթարքիդեսին[25] հիշատակելուց, թեկուզ և սա
206 հեգնում է մեզ իբրև անմիտների։ Նա պատմում է Ստրատոնիկեի[26] մասին, թե ինչպես նա, լքելով իր ամուսին Դեմետրիոսին[27], Մակեդոնիայից եկավ Սիրիա[28], իսկ երբ Սելևկոսը[29] հրաժարվեց իր հետ ամուսնանալ, ինչն ինքը ակնկալում էր, Անտիոքում ապստամբություն բարձրացրեց, երբ (Սե-
207 լևկոսը) արշավել էր Բաբելոնի վրա։ Այնուհետև, երբ թագավորը վերադարձավ ու վերցրեց Անտիոքը, (Ստրատոնիկեն) փախավ Սելևկիա, որպեսզի այնտեղից անմիջապես մեկնի, սակայն ինչ-որ երազի պատճառով նա ետ կանգնեց, բռնվեց և սպանվեց։

ԽՈՍՔ ԵՐԿՐՈՐԴ

269 Նույնիսկ սկյութացիները, որոնք զվարճանում են մարդկանց սպանելով և քիչ բանով են տարբերվում վայրի գազաններից, պարտք են համարում չհրաժարվել իրենց բարքերից, ուստի և Անաքարսիսին[30], որի իմաստությունը հիացրել էր հույներին, երբ սա վերադարձավ սկյութացիների մոտ, սպանեցին, որովհետև նրանց թվում էր, թե նա ժամանել է հունական բարքերով համակված[31]։ Պարսկաստանում ևս կա-
270 րելի է գտնել շատերին, որոնք նույն պատճառով ոչնչացվել են։ Սակայն հայտնի է, որ Ապոլլոնիոսը[32] համակրում էր պարսկական օրենքները և հիացած էր պարսիկներով, որովհետև Հունաստանը ճաշակել էր նրանց քաջությունը և աստվածների նկատմամբ նրանց ունեցած համերաշխության արդյունքները. այս վերջինն այն ժամանակ, երբ նրանք հրկիզում էին սրբավայրերը, իսկ քաջությունը՝ երբ քիչ էր մնացել հույները դառնային նրանց ստրուկները[33]։ Ապոլլոնիոսը դարձավ պարսկական բոլոր սովորությունների ընդօրինակողը, անարգելով օտարների կանանց և ներքինացնելով նրանց երեխաներին[34]։

# ՀՐԵԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

4 Ինչպես ասացի, խոշորագույն ապստամբությունն սկըս-
վեց[35]. իսկ Հռոմում ներքին խռովություններ էին ծագել։ Ուս-
տի հրեաների ապստամը (կուսակցությունը), որը այդ խռո-
վությունների ժամանակ արգեն աճել էր քանակապես և
հարստացել, առիթից օգտվելով ապստամբեց։ Իբրև հե-
տևանք Արևելքի խոշորագույն խռովության, ապստամբները
հույս ունեին (ազատություն) նվաճելու, իսկ նրանց հակա-
ռակորդները վախենում էին այն կորցնելուց։ Քանի որ հրեա-
5 ները հուսով էին, որ Եփրատից այն կողմ բնակվող բոլոր ի-
րենց ցեղակիցները կհարեն ապստամբությանը, մինչդեռ
հռոմայեցիներին անհանգստացնում էին սահմանակից գա-
լատները[36], իսկ կելտերը չէին խաղաղվում։ Ներոնի մահից
հետո ամեն ինչ խռովությամբ էր համակված, և շատերը ա-
ռիթը պատեհ էին համարում գահը (գրավելու) համար, իսկ
զինվորականությունը ձգտում էր փոփոխությունների, ավար
ձեռք բերելու նպատակով։
6 (Որոշեցի այդ մասին գրել) քանի որ հրեշավոր է տեսնել,
թե այդպիսի դեպքերի նկատմամբ եղած ճշմարտությունը
շեղվում է ճանապարհից, և որպեսզի պարթևներն ու բա-
բելոնացիները և հեռավոր Արաբիայում ապրողները և Եփ-
րատից այն կողմ բնակվող մեր ցեղակից ադիաբենցիները իմ
իսկ ջանասիրությամբ ճշմարտապես իմանան, թե որտեղից
սկսվեց և ինչպիսի ընթացք և հետևանքներ ունեցավ պատե-
րազմը, մինչդեռ այն հույներն ու հռոմայեցիները, որոնք չեն
մասնակցել այդ արշավանքին, լսելով միայն կեղծիք ու հեր-
յուրանքներ, անգիտակ են (իրական) դեպքերին։

* * *

115 Իսկ Ալեքսանդրան[37] (Արիստոբուլոսի գլխավորությամբ)
զորք ուղարկեց Դամասկոս այն պատճառով, որ Պտղոմեոսը[38]
անդադար ճնշում էր քաղաքը, սակայն զորքը վերադարձավ
116 իր մոտ, առանց որևէ նշանակալից բան անելու։ Մյուս կող-
մից հայոց թագավոր Տիգրանին, որը բանակել էր Պտղոմա-
յիս քաղաքի առջև և պաշարել էր այնտեղ (փակված) Կլեո-
պատրային[39], դաշինքով ու նվերներով հեռացրեց։ Իսկ Տիգ-
րանը Լուկուլլոսի արշավանքների հետևանքով տանն սկսված
անկարգությունների պատճառով վերացնում է պաշարումը և
հասնում Հայաստան։

* * *

126 Պետրա քաղաքում Հյուրկանոսին[40] մատնելով Արետա-
սի[41] ձեռքը, չքմեղանքի բազում խոսքերով ու շլացնող բա-
զում նվերներով (Անտիպատրոսը) համոզում է (Արետաս)
թագավորին զորք գումարել և հրամանատարությունը հանձ-
նել իրեն։ Այն կազմված էր հինգ բյուր հետևակից և հեծ-
յալներից, որին չկարողացավ դիմադրել Արիստոբուլոսը, այլ
առաջին իսկ ընդհարման ժամանակ պարտվելով, փախավ
Երուսաղեմ, որտեղ և հարձակվողները նրան շուտով գերի
կվերցնեին, եթե հռոմեայեցի զորավար Սկավրոսը ժամա-
127 նակին չհասներ ու չվերացներ պաշարումը։ Սրան Հայաս-
տանից ուղարկել էր Սիրիա Պոմպեոս Մեծը, որն այդ ժա-
մանակ պատերազմում էր Տիգրանի դեմ։ Հասնելով Դամաս-
կոս, որը դեռ նոր էր նվաճվել Մետելլոսի և Լոլլիոսի կողմից,
վերջիններից վերցրեց իշխանությունը և տեղեկանալով
Հրեաստանում տիրող դրության մասին, շտապեց այնտեղ,
խլելու այն, ինչ թվում էր նրան աստվածառաք պարգև[42]։

* * *

138 Իսկ (Պոմպեոսը) ուղղակի հետապնդում էր (Անտի-
պատրոսին), ժամանակ չտալով պատրաստություններ տեսնելու, և նրա թափն առավել ուժեղացրեց Միհրդատի մահվան լուրը, որն ստացավ, երբ ինքը գտնվում էր Երիքովում[43], որտեղ առատորեն աճում են Հրեաստանի լավագույն արմավը և բալասանը։

* * *

175 Պարթևների դեմ արշավանքի պատրաստվող Գաբինիո-
սին[44] խանգարում է Պտղոմեոսը[45], որին վերադառնալով Եփ-
րատից, տարավ Եգիպտոս և նորից վերականգնեց գահի
վրա[46]։ Այդ արշավանքի ժամանակ նա ամբողջապես օգտ-
վեց Հյուրկանոսի և Անտիպատրոսի մատուցած ծառայու-
թյուններից։ Դրամ և զենք, ցորեն և օժանդակ զորք տրա-
մադրելուց բացի, Անտիպատրոսը համոզեց Պելուսիոնի
սահմանամերձ մուտքը պահպանող հրեական կայազորին
176 թույլ տալ Գաբինիոսին անցնելու։ Մյուս կողմից, Գաբինիո-
սի մեկնելուց հետո Սիրիան ապստամբել էր. ուստի և Արիս-
տոբուլոսի որդի Ալեքսանդրը նորից ոտքի հանեց հրեաներին
և խոշոր բանակ հավաքելով, ձեռնամուխ եղավ երկրում
177 գտնվող բոլոր հռոմայեցիներին կոտորելու գործին։ Այս բո-
լոր անկարգությունների պատճառով վախեցած Գաբինիոսը
անհապաղ վերադարձավ Եգիպտոսից, ապստամբների մի
մասի մոտ ուղարկելով Անտիպատրոսին, նրան համոզեց ետ
կանգնել, սակայն Ալեքսանդրի հետ դեռևս մնաց երեք բյուր
զորք, պատերազմի պատրաստ։ Այսպիսով, դուրս եկան մար-
տի։ Հրեաները դիմադրեցին Գաբինիոսին ու ճակատամարտ
տալով Իտաբյուրիոն լեռան մոտ, մի բյուր մարդ կորցրին,
178 իսկ մնացածները փախուստի մատնվեցին։ Եվ Գաբինիոսը
Երուսաղեմ գալով, քաղաքի կառավարումը փոխեց Անտի-
պատրոսի խորհրդի համաձայն։ Այնտեղից արշավելով, պա-
տերազմում հաղթում է նաբաթեացիներին, և պարթև փա-
խըստականներ Միհրդատին ու Օրսանեսին[47] գաղտնաբար ա-
զատելով, ետ ուղարկեց, մինչդեռ զինվորներին ասում էր, թե
նրանց հաջողվել է փախչել։
179 Այդ ժամանակ նրան փոխարինեց Կրասսոսը[48], որը գա-
լով ստանձնում է Սիրիայի (կառավարումը)։ Սա պարթևների
դեմ արշավանքի կարիքները հոգալու համար հափշտակեց
Երուսաղեմի տաճարում մնացած ամբողջ ոսկին, վերցնելով
նաև այն երկու հազար տաղանդը, որին ձեռք չէր տվել Պոմ-
պեոսը։ Այնուհետև նա, անցնելով Եփրատը, թե՛ ինքը կոր-
ծանվեց և թե՛ իր բանակը[49]։ Սակայն այդ մասին ժամանակը
180 չէ խոսելու։ Կրասսոսի (մահից) հետո պարթևներին, որոնք
փորձեցին (Եփրատն) անցնելով ասպատակել Սիրիան, կա-
սեցրեց Կասսիոսը[50], որն ապաստանել էր այդ պրովինցիա-

յում։ Այդ երկիրն ապահովելուց հետո, նա շտապեց արշավել
Հրեաստանի վրա և Տարիքեա (քաղաքը) գրավելով, մոտ ե-
րեք բյուր հրեաների գերեվարեց և սպանեց Պեյթոլաոսին,
որը փորձում էր Արիստոբուլոսի ապստամբներին վերահա-
181 վաքել։ Այդ սպանության խորհրդատուն Անտիպատրոսն էր։
Սա ամուսնացել էր Արաբիայի մեծատոհմիկներից մեկի
աղջկա հետ, Կիպրոս անունով, որից ունեցավ չորս որդի՝
Փասայելոսին, հետագայում թագավոր դարձած Հերովդեսին,
նաև Հովսեպոսին ու Փերորային և մի դուստր՝ Սալոմեին։ Բո-
լոր վայրերի հզոր մարդկանց ծառայություններ մատուցելով
և նվիրատվությունների միջոցով սիրաշահելով, իսկ բոլորից
առավել Արաբիայի թագավորին, որին նա փեսայացել էր,
այդ իսկ պատճառով էլ Արիստոբուլոսի դեմ պատերազմ ձեռ-
նարկելիս, իր երեխաներին ուղարկել էր նրա մոտ պահպա-
182 նության։ Իսկ Կասսիոսը, դաշնագրի միջոցով Ալեքսանդրին
հանգիստ մնալ պարտադրելուց հետո, վերադարձավ Եփրատ,
արգելելու համար պարթևների անցումը։ Այս դեպքերի մա-
սին կխոսենք ուրիշ տեղում[51]։

* * *

248 Իսկ երկու տարի հետո պարթևների սատրապ Բար-
զափրանեսը, արքայորդի Պակորոսի հետ, նվաճեց Սիրիան։
Լյուսանիասը[52], որը մինչ այդ ժառանգել էր իր մահացած
հոր՝ Մեննայոսի որդի Պտղոմեոսի իշխանությունը, խոստա-
նալով սատրապին հազար տաղանդ և հինգ հարյուր կին,
համոզում է նրան դահը նորից հանձնել Անտիգոնոսին, իսկ
249 Հյուրկանոսին գահընկեց անել։ Այս առաջարկը լսելով, Պա-
կորոսն ինքը առաջանում է ծովափով, իսկ Բարզափրանեսին
կարգադրում է միջնաշխարհով արշավել։ Առափնյա բնակիչ-
ներից տյուրոսցիները Պակորոսին չընդունեցին, մինչդեռ
Պտղոմայիսի և Սիդոնի բնակիչներն ընդունեցին։ Իսկ նա ի-
րեն անվանակից արքունի տակառապետին հեծելազորի մի
մասը հանձնելով, պատվիրեց արշավել Հրեաստան, ուսում-
նասիրել թշնամու դիրքերը և, ի պահանջել հարկին, օգնել
Անտիգոնոսին[53]։

* * *

253 Երբ վրա հասավ այն տոնը, որը կոչվում է պենտեկոս-
տե[54], տաճարի[55] ամբողջ շրջակայքը, ինչպես նաև ամբողջ

քաղաքը լցվել էր քորայից[56] եկած բազմությամբ, որի մեծ
մասը սպառազինված էր։ Փասայելոսը պահպանում էր պա-
րիսպները, իսկ Հերովդեսը փոքրաթիվ զորքով՝ ապարանքը.
և հարձակվելով քաղաքի արվարձանում գտնվող թշնամու
անկազմակերպ ուժերի վրա, շատերին կոտորում է, մնացած
բոլորին փախուստի մատնում, ոմանց փակում քաղաքում,
ոմանց տաճարում, իսկ մյուսներին՝ արտաքաղաքային ճամ-
254 բարում։ Դրանից հետո Անտիգոնոսը խնդրում է որպես (խա-
ղաղության) միջնորդ ներս թողնել Պակորոսին[57]։ Իսկ Փասա-
յելոսը համոզվելով, հյուրընկալություն է կազմակերպում և
քաղաքից ներս է ընդունում պարթևին հինգ հարյուր հեծյալ-
ներով, որն իբր ժամանել էր խռովությունը զսպելու նպատա-
կով, սակայն իրականում Անտիգոնոսին օգնելու համար։
255 Որովհետև նա խորամանկորեն համոզեց Փասայելոսին, որ-
պեսզի սա ուղևորվի Բարզափրանեսի մոտ, թշնամություն-
ները դադարեցնելու համար բանակցություններ վարելու,
թեև Հերովդեսը դիմադրում էր և խորհուրդ տալիս ոչնչաց-
նել խարդախին և իրեն չմատնել խաբեությունների, քանի որ
բարբարոսները բնականից անվստահելի են, սակայն նա մեկ-
նեց, իր հետ վերցնելով Հյուրկանոսին։ Եվ Պակորոսը, որ-
պեսզի պակաս կասկածեն, Հերովդեսի մոտ թողեց այսպես
կոչված ազատագունդ հեծյալներից[58] ոմանց, իսկ մյուսնե-
րին Փասայելոսի հետ դրեց որպես ուղեկից։
256 Ժամանելով Գալիլեա[59], նրանք տեսան, որ բնակիչներն
ապստամբել էին ու սպառազինվել։ Այնտեղ հանդիպեցին
խիստ խորամանկ սատրապ (Բարզափրանեսին), որը սիրա-
լիրության քողի տակ թաքցնում էր իր նենգությունը։ Նախա-
պես նրանց նվերներ տալով, ծուղակ է լարում մեկնելիս
257 նրանց ձերբակալելու համար։ Մինչդեռ նրանք դավադրու-
թյան մասին իմացան, երբ հասան առափնյա մի գյուղ, որը
կոչվում էր Եկդիպոն, որովհետև այնտեղ լսեցին հազար տա-
ղանդի խոստումը և այն, թե Անտիգոնոսը իրենց մոտ գտնվող
կանանց մեծ մասին հինգ հարյուրի թվում խոստացել է պար-
258 գևել պարթևներին, և թե բարբարոսների կողմից գիշերները
նրանք միշտ պաշարվում էին, և թե նրանք վաղուց կձերբա-
կալվեին, եթե (դավադիրները) չսպասեին նախապես Երու-
սաղեմում գտնվող Հերովդեսին ձեռք գցելու, որպեսզի վեր-
ջինս նրանց ձերբակալության մասին լսելով, ապահովության

միջոցներ չձեռնարկի։ Այս բոլորն արդեն սոսկ խոսքեր չէին,
քանի որ իրենք արդեն նկատում էին հեռվում նշանակված
պահակներին։
259 Այսուհանդերձ, Փասայելոսը, թեպետև նրան համառո-
րեն փախչել էր համոզում ոմն Օփելլիոս, որը դավադրության
ամբողջ ծրագիրն իմացել էր այդ ժամանակի մեծատուն սի-
րիացի Սարամալլայից, որոշեց չլքել Հյուրկանոսին, այլ ընդ-
հակառակը, գալով սատրապին դեմ հանդիման, նախատում
էր նրան (կազմակերպված) դավադրության համար և հատ-
կապես այն պատճառով, որ նա այդ ամենը արել էր հանուն
փողի։ Ուստի խոստացավ իր փրկության համար ավելին տալ,
260 քան Անտիգոնոսը կտար իր թագավորության համար։ Այս
բոլորից հետո պարթևը խորամանկորեն արդարանալով և եր-
դումներով կասկածներն իր վրայից հեռացնելով, մեկնեց
(արքայորդի) Պակորոսի մոտ։ Անմիջապես հետո, այնտեղ
մնացած պարթևները, ինչպես իրենց հրամայված էր անել,
ձերբակալեցին Փասայելոսին և Հյուրկանոսին, որոնք անի-
ծում էին նրանց, ցուցաբերած երդմնազանցության և անհա-
վատարմության համար։
261 Նույն ժամանակ (այդ նպատակով) ուղարկված տակա-
ռապետը[60] դավեր էր նյութում Հերովդեսին ևս ձերբակալելու
համար, իր ստացած հրահանգների համաձայն, խաբեությամբ
նրան պարիսպներից դուրս բերելու։ Իսկ սա սկզբից ևեթ
կասկածելով բարբարոսներին և հիմա էլ իմանալով, որ դա-
վադրությունը բացահայտող իրեն ուղղված նամակներն ըն-
կել են թշնամու ձեռքը, չէր ցանկանում դուրս գալ (պարիսպ-
ներից), թեև Պակորոսը ճարտար խոսքերով հավաստիաց-
նում էր, թե նա պետք է ընդառաջ գա սուրհանդակներին, քա-
նի որ նամակները չեն ընկել թշնամու ձեռքը և դրանք ոչ թե
դավադրություն են բովանդակում, այլ Փասայելոսի ամբողջ
262 գործունեությունը։ Սակայն (Հերովդեսն) արդեն ուրիշներից
լսել էր իր եղբոր ձերբակալման մասին, և նրա մոտ է գալիս
Հյուրկանոսի դուստր Մարիամեն, ամենախելամիտը կանանց
մեջ, աղաչելով չգնալ ընդառաջ և իր անձը չվստահել արդեն
բացահայտ (թշնամությամբ) գործող բարբարոսների ձեռքը։
263 Ու քանի դեռ Պակորոսն ու նրա մերձավորները խոր-
հուրդ էին անում, թե ինչպե՞ս գաղտնաբար կազմակերպեն
դավադրությունը, քանի որ անհնար էր այդպիսի ուժեղ մար-

դուն բացահայտ (պայքարում) գերազանցել, Հերովդեսն իր
մերձավորագույն բարեկամների հետ գիշերով, թշնամուց
264 գաղտնի, հեռացավ Իդումեա[61]։ Պարթևներն իմանալով այդ,
ձկսեցին հետապնդել նրան։ Իսկ նա իր մորը և քույրերին և
իր խոսեցյալ աղջկան նրա մոր և կրտսեր եղբոր հետ հրա-
մայեց շարունակել իրենց ճանապարհը, մինչդեռ ինքը իր զի-
նակիցների հետ կասեցնում էր բարբարոսներին։ Եվ յուրա-
քանչյուր ընդհարման ժամանակ շատերին սպանելով, հասավ
Մասադա բերդը։

* * *

268 Իսկ պարթևները Երուսաղեմում կողոպուտի ետևից ընկ-
նելով, ներխուժում էին փախստականների տները և արքունի
պալատը, ձեռք չտալով միայն Հյուրկանոսի դրամին, որը
երեք հարյուր տաղանդից ավելի չէր։ Մյուս վայրերում էլ
նրանք իրենց ակնկալածից պակաս գտան։ Որովհետև Հե-
րովդեսը վաղուց ի վեր կասկածելով բարբարոսներին անհա-
վատարմության մեջ, իր գանձերից ամենաշքեղները նախա-
պես փոխադրել էր Իդումեա. այդպես էին վարվել նաև իր
269 մերձավորները։ Կողոպուտից հետո պարթևների ամբար-
տավանությունն այն աստիճանի հասավ, որ նրանք ամբողջ
երկրում տարածեցին չհայտարարված պատերազմի արհա-
վիրքները, գերեվարեցին Մարիսա քաղաքը, և Անտիգոնոսին
թագավոր հայտարարելը բավական չհամարելով, միաժամա-
նակ պարտադրեցին Փասայելոսին և Հյուրկանոսին Անտիգո-
270 նոսի ձեռքը հանձնել շղթայակապ։ Ու երբ գանահարված
Հյուրկանոսն ընկավ Անտիգոնոսի ոտքերի առաջ, սա ատամ-
ներով պոկեց նրա ականջները, այն նպատակով, որ հետա-
գայում եթե հանգամանքները փոխվեն իսկ (և նա ազատ ար-
ձակվի), չկարողանա զբաղեցնել քահանայապետության
(պաշտոնը), որովհետև, (ըստ օրենքի) ողջանդամները միայն
կարող են քահանայապետ լինել։
271 Իսկ համարձակ Փասայելոսը (թագավորի) չարամտու-
թյունը կռահելով, գլուխը խփում է ժայռին, քանի որ զրկված
էր ձեռքերից և դաշույնից։ Եվ նա իրեն դրսևորելով որպես
Հերովդեսի հարազատ եղբայր, իսկ Հյուրկանոսին (ներկա-
յացնելով) իբրև ամենից անտոհմիկ, մեռնում է քաջաբար, իր
կործանումը դարձնելով իր իսկ կյանքի արարքներին արժա-
272 նի։ Մեկ այլ զրույց ևս կա, որ իբր (Փասայելոսը) բուժվում

*էր իր այդ վերքից, իսկ բժիշկը, որին ուղարկել էր Անտիգո-
նոսը իբրև թե նրան բուժելու, վերքի վրա լցրել էր թունավոր
273 դեղեր և սպանել նրան։ Եվ նա մահանում է այդպես։ Իսկ
պարթևները, թեկուզ և հուսախաբվել էին իրենց համար ա-
ռավել ցանկալի կանանց որպես պարգև ստանալու հարցում,
Երուսաղեմում Անտիգոնոսին նստեցրին գահին, մինչդեռ
Հյուրկանոսին շղթայակապ գերի տարան Պարթյունենե (եր-
կիրը)*[62]։

* * *

288 *Մինչ այդ հռոմայեցի զորավար Բենտիդիոսը, որն ու-
ղարկվել էր պարթևներին Սիրիայից դուրս վտարելու համար.
նրանց հետ միասին ժամանեց Հրեաստան, խոսքով Հովսե-
պոսին ու նրա մերձավորներին օգնելու, մինչդեռ գործնակա-
նում Անտիգոնոսից արծաթ պոկելու (նպատակով)։ Ուստի
289 Երուսաղեմին շատ մոտիկ բանակելուց հետո, երբ արդեն հա-
գեցավ փողից, ինքը ետ վերադարձավ իր զորքերի մեծ մա-
սով, իսկ Սիլոնին զորքի մի մասի հետ թողեց այնտեղ, քանի
որ ամբողջ զորքը (իր հետ) տանելու դեպքում կբացահայտ-
վեր նրա շահադիտական հանցանքը։ Իսկ Անտիգոնոսը դարձ-
յալ հույս դնելով պարթևների օգնության վրա, միաժամանակ
Սիլոնին ծառայում էր առաջվա նման (ինչպես Բենտիդիոսին),
որպեսզի սա ոչնչով իրեն չխանգարի նախքան իր ակնկալու-
թյունների (իրականացումը)*[63]։

* * *

320 *Այս դեպքերի վրա Հերովդեսը զայրանալով, շտապեց
հարձակվել Մաքայրասի վրա որպես թշնամու, բայց սանձե-
լով իր զայրույթը, ուղևորվեց Անտոնիոսի մոտ*[64]*, որպեսզի
մեղադրի նրա առաջ (Մաքայրասին) կատարած անօրենու-
թյունների համար։ Իսկ Մաքայրասը մտորելով իր հան-
ցանքների մասին, հետևեց (Հերովդես) թագավորին և բա-
321 զում խնդրանքով հաշտվեց նրա հետ։ Հերովդեսն, այսու-
հանդերձ, չընդհատեց իր արշավը դեպի Անտոնիոսը։ Լսած
լինելով, որ սա մեծ զորքով հարձակվել է Սամոսատայի
վրա*[65]*. որը ամրացած քաղաք է Եփրատի մոտ, արագացրեց
իր ընթացքը, ժամանակը պատեհ համարելով իր քաջությու-
նը ցուցադրելու, առավել ևս Անտոնիոսին հաճոյանալու հա-
322 մար։ Նրա ժամանումից հետո վերջացավ պաշարումը։ Բար-*

բարոսներից[66] շատերին նա սպանեց և մեծ քանակությամբ ավար ապահովեց, որով և Անտոնիոսր, որը նախապես ևս նրա առաքինությամբ հիանում էր, այժմ ավելի է հարգում նրան և հուսադրում գահակալման մասին, մինչդեռ Անտիոքոս թագավորը[67] ստիպված եղավ հանձնել Սամոսատը[68]։

* * *

327 Սամոսատը նվաճելուց հետո Անտոնիոսր Սոսսիոսին Սիրիայի կառավարիչ նշանակելով, կարգադրեց նրան օգնել Հերովդեսին Անտիգոնոսի դեմ, իսկ ինքը մեկնեց գնաց Եգիպտոս։ Սոսսիոսր առջևից երկու լեգեոն ուղարկեց Հրեաստան, Հերովդեսին օգնելու, իսկ ինքը իր մնացած ուժերով ընդհուպ հետևում էր[69]։

* * *

363 Ո՛չ շատ ժամանակ անց Անտոնիոսը վերադարձավ Պարթիայից։ Կլեոպատրայի համար որպես նվեր բերելով Տիգրանի որդի Արտաբազեսին, քանի որ դրամների և (պատերազմական) ամբողջ ավարի հետ միասին պարթևին նրան պարգևեց[70]։

* * *

445 (Իսկ Հերովդեսի) որդիները ժառանգում են իրենց մոր
զայրույթը և տեղեկանալով կատարված անօրենությանը, ի-
րենց հորը դիտում էին որպես թշնամի թե՛ նախկինում, երբ
Հռոմում էին դաստիարակվում, առավել ևս հիմա, երբ վերա-
դարձան Հրեաստան։ Նրանց թշնամանքը աճում էր իրենց տա-
446 րիքի հետ։ Ու քանի որ հասել էր նրանց ամուսնանալու ժա-
մանակը, մեկը՝ Արիստոբուլոսը, ամուսնացավ իրենց մորը
մեղադրող հորաքույր Սալոմեի դստեր, մյուսը՝ Ալեքսանդրը,
Կապպադովկիայի թագավոր Արքելաոսի[71] դստեր հետ. ուստի
447 նրանց ատելությանը ավելացավ նաև համարձակ խոսելը։
Նրանց հանդգնությունը պատեհ առիթ ընձեռեց զրպարտիչնե-
րին, և արդեն ոմանք ավելի բացահայտ էին թագավորի ա-
ռաջ ակնարկում, թե երկու որդիները դավադրություն էին
նյութում նրա դեմ, և թե Արքելաոսի փեսան, ապավինելով իր
աներոջը, փախուստի էր պատրաստվում, որպեսզի հորը
մեղադրի Կեսարի առաջ։

* * *

552 Քանզի Ալեքսանդրը Գլափյուրայից[72] ուներ երկու որդի՝ Տիգրան[73] և Ալեքսանդր, իսկ Սալոմեի դուստր Բեռնիկեից

Արիստոբուլոսի ունեցած որդիներն էին՝ Հերովդես և Ագրիպպաս և Արիստոբուլոս, իսկ դստրերը՝ Հերովդիաս և Մարիամմե։ Ալեքսանդրին սպանելուց հետո Հերովդեսը Գլափյուրային իր օժիտի հետ միասին ետ ուղարկեց Կապպադովկիա, իսկ Արիստոբուլոսի այրուն ամուսնացրեց իր մորեղբայր Անտիպատրոսի հետ։

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

144 Կարծում եմ, հիշատակության արժանի է նաև (Ալեքսանդրի) կնոջ՝ Գլափյուրայի երազը, որը Կապպադովկիայի թագավոր Արքելաոսի դուստրն էր և առաջին կինը Ալեքսանդրի. սա Արքելաոսի եղբայրն էր, որի մասին խոսել ենք, որդին Հերովդես թագավորի, որի կողմից սպանվեց, ինչպես արդեն ասել ենք։

* * *

221 Այս բոլորից հետո մահանում է նաև Քաղկիսի թագա-
վոր Հերովդեսը իր զարմուհի Բեռնիկեի հետ ունեցած ամուս-
նությունից թողնելով երկու որդի՝ Բեռնիկիանոսին և Հյուր-
կանոսին, իսկ նախորդ կնոջից, Մարիամմեից՝ Արիստոբու-
լոսին։ Նրա մի ուրիշ եղբայրը (դարձյալ) Արիստոբուլոս (ա-
նունով) մահանում է որպես մասնավոր մարդ[74], թողնելով
222 Յոտապե անունով դուստր։ Ուրեմն սրանք էին, ինչպես նախ-
կինում ասել եմ, Հերովդեսի որդի Արիստոբուլոսի զավակնե-
րը. իսկ Արիստոբուլոսը և Ալեքսանդրը Հերովդեսի որդիներն
էին՝ ծնված Մարիամմեից, որոնց սպանեց իրենց հայրը։ Եվ
Ալեքսանդրի սերունդը թագավորեց Մեծ Հայքում[75]։

* * *

252 Այսպիսով, Փոքր Հայքի թագավորությունը (Ներոնը) տալիս է Հերովդեսի որդի Արիստոբուլոսին, իսկ Ագրիպպասի[76] թագավորությանը ավելացնում է ևս չորս քաղաք՝ Աբբելան. Յուլիասը Պերեայում[77], Տարիքեան և Գալիլեայի Տիբերիասը իրենց շրջաններով, իսկ Փելիքսին նշանակում է մնացյալ Հրեաստանի պրոկուրատոր[78]։

* * *

363 Որովհետև հռոմայեցիներին չէր բավարարում Եփրատի սահմանն արևելքում, Իստրոսը[79] հյուսիսում, հարավում մինչև

անբնակ վայրերը հետախուզված Լիբիան և արևմուտքում
Գադեյրան[80], այլ նրանք օվկիանոսից այն կողմ փնտրեցին
մի այլ աշխարհ ևս և իրենց զենքը տարան մինչև նախապես
պատմությանն անհայտ բրիտանացիները։ Ուրեմն ի՞նչ. դուք
364 գալլերից ավելի հարո՞ւստ եք, գերմաններից ավելի հզո՞ր.
հելլեններից ավելի խելամի՞տ, ավելի մեծաթի՞վ, քան աշ-
խարհի բոլոր մյուս ժողովուրդները։ Ի՞նչն է ձեզ հուսադրել
365 հռոմայեցիների դեմ ապստամբելու։ Ստրկությունը ծանր է
կասեք դուք։ Ինչքա՞ն առավել (այն ծանր է) հելլենների հա-
մար, որոնք արևի տակ (ապրող) բոլոր մարդկանցից վեհա-
գույն են իրենց ազնվականությամբ և բնակեցրել են այսքան
ընդարձակ երկիր, ենթարկվում են հռոմայեցի (կառավարչի)
վեց ձողիկներին[81]։ Նույնքան (ձողիկների ենթարկվում են)
նաև մակեդոնացիները, որոնք, առավել քան դուք, իրավունք
366 ունեն ազատություն վիճարկելու։ Ապա ի՞նչ ասել Ասիայի
հինգ հարյուր պոլիսների մասին։ Մի՞թե նրանք, կայազոր
չունենալով, չեն խոնարհվում մի միակ հեգեմոնի և հյուպա-
տոսական ձողիկների առաջ։ Ի՞նչ պիտի ասել հենիոքների և
կոլխերի և Տավրիկյան ցեղերի մասին, Բոսփորում և Պոն-
տոսի շրջակայքում և Մեոտիսի լճի[82] մոտ ապրող ժողո-
367 վուրդների մասին։ Նրանք, որ նախկինում ոչ մի տիրակալի
չէին ճանաչում նույնիսկ իրենց ցեղակիցներից, այժմ են-
թարկվում են երեք հազար հոպլիտների և քառասուն երկար
նավեր խաղաղության մեջ են պահում նախկինում աննավար-
368 կելի և վայրի ծովը։ Իսկ ազատության համար ինչպիսի՞ պա-
հանջներ կարող են ներկայացնել Բյութանիան ու Կապպա-
դովկիան և պամփիլիական ազգը և լիկիացիներն ու կիլի-
կիացիները, որոնք (բոլորն էլ) առանց զենքի դիմելու, այժմ
հարկ են վճարում։

* * *

379 Բայց ի՞նչ հարկ ավելին ասելու, երբ նույնիսկ պարթևնե-
րը, բոլորից առավել ռազմունակ այդ ցեղը, այսքան շատ ազ-
գերի տիրելով և այսքան մեծ զորք ունենալով հանդերձ, պա-
տանդներ են ուղարկում հռոմայեցիների մոտ[83], և Արևելքի
ազնվականությանը կարելի է հանդիպել Իտալիայում, խաղա-
ղություն (պահպանելու) պատրվակով ծառայելիս։

* * *

388 Հետևաբար, անբնակ տարածություններից ո՞ւմ կարող
եք դուք դաշնակից վերցնել այս պատերազմում։ Չէ՞ որ բնա-
կեցված երկրի[84] բոլոր մարդիկ հռոմայեցիներ են[85]։ Գուցե
ձեզանից որևէ մեկը իր հույսերը տարածում է Եփրատից այն
կողմ և պաշտպանություն է ակնկալում Ադիաբենեի մեր
ցեղակիցներից[86]։ Բայց նրանք ևս որևէ անմիտ առիթով իրենց
գլխին այդպիսի պատերազմ չեն փաթաթի, իսկ եթե նրանք
ցանկանան իսկ, պարթև (թագավորը այդ) թույլ չի տա նրանց։
Քանի որ նա մտածում է հռոմայեցիների հանդեպ զինադա-
դարի պայմանները պահպանելու, և եթե նրա հպատակներից
որևէ մեկը հռոմայեցիների դեմ արշավի, ապա նա այդ բա-
նը կդիտի որպես դաշինքի խախտում։

## ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

460 Այդ ընթացքում ժամանում է Անտիոքոս Եպիփանեսը[87],
բերելով իր հետ բացի մեծաթիվ այլ զորքից, նաև իր թիկնա-
պահ գունդը, որը կոչվում էր «մակեդոնացիներ», բոլորը տա-
րեկից, բարձրահասակ, ավելի քան երիտասարդ, սպառա-
զինված ու մարզված մակեդոնական եղանակով, որի համար
էլ ստացել էին իրենց այդ անվանումը, նրանց մեծ մասը այդ
461 ցեղի հետ առնչություն չունենալով հանդերձ։ Քանի որ Հռո-
մին հպատակվող բոլոր թագավորներից Կոմմագենացին[88]
ամենից առավել բարեբախտության հասավ, նախքան անհա-
ջողություն ճաշակելը։ Ու սա ևս ծերության ժամանակ հայ-
տարարեց, թե ոչ ոքի մասին մահից առաջ չի կարելի ասել,
462 թե բախտավոր է[89]։ Այսուհանդերձ նա դեռևս բարգավաճում
էր, երբ որդին ժամանելով, զարմացած ասում էր, թե ինչու
հռոմայեցիները վարանում են գրոհել պարիսպները. իսկ ին-
քը լինելով բնականից անվեհեր ռազմիկ, միաժամանակ այն-
463 քան հաղթանդամ էր, որ նրա խիզախումը հազվադեպ էր
ձախողվում։ Երբ Տիտոսը[90] ժպտալով «Կռիվն ընդհանուր է»
ասաց, Անտիոքոսն առանց հապաղելու իր մակեդոնացինե-
464 րի հետ նետվեց դեպի պարիսպը։ Մինչդեռ ինքը իր ուժով և
հմտությամբ կարողանում էր պաշտպանվել հրեաների սլաք-
ներից, նետահարելով նրանց, իր պատանի (թիկնապահները),
բացի փոքր մի մասից, ջախջախվեցին, քանի որ տված խոս-

տումից ամաչելով, նրանք կռվում էին անվեհեր։ Եվ, ի վերջո,
465 մեծ մասամբ վիրավորվելով, նահանջեցին, մտածելով, որ
նույնիսկ իսկական մակեդոնացիները, եթե հաղթեին, Ալեք-
սանդրի բախտը կունենային։

## ԳԻՐՔ ՅՈԹԵՐՈՐԴ

17 Իսկ կայսրը պաշտոնատարների հետ երեք օր խրախ-
ճանք անելուց հետո, մնացած զորքերին արձակեց գնալու
որտեղ յուրաքանչյուրը ցանկանում էր, իսկ տասներորդ
գունդը թողեց որպես Երուսաղեմի կայազոր, այլևս այն չու-
ղարկելով Եփրատի (զորակայանը), որտեղ նախապես գտնր-
18 վում էր գունդը։ Հիշելով նաև տասներկուերորդ գնդի մասին,
որը Կեստիոսի հրամանատարության տակ հանձնվել էր հրեա-
ներին, այն ամբողջովին դուրս բերեց Սիրիայից, որովհետև
նրա զորակայանը նախապես Հռափանեա (վայրում) էր[91], և
ուղարկեց Մելիտենե կոչված (շրջանը)[92], Եփրատի մոտ, Հա-
յաստանի և Կապպադովկիայի սահմանի վրա։

* * *

41 Եվ պատահեց, որ այդ ժամանակները Անտիոքում[93]
մնացած հրեաները (մեղադրվեցին) չարագործության մեջ և
գտնվում էին բնաջնջման սպառնալիքի տակ, (որովհետև)
անտիոքացիների քաղաքային համայնքը խիստ վրդովված էր
նրանց դեմ և՛ ներկայիս նրանց վրա բարդված զրպարտու-
թյունների, և՛ ոչ հեռավոր անցյալում կատարված մի շարք
42 դեպքերի կապակցությամբ, որոնց մասին անհրաժեշտ է հա-
մառոտակի պատմել, որպեսզի հետագա դեպքերի շարադրան-
քը դառնա հեշտ հասկանալի։
43 Հրեական ցեղը շատ է ցրված օյկումենեով[94] մեկ տեղա-
կան բնակչության շրջանում, բոլորից առավել խառնված են
Սիրիայում, (երկու երկրների) հարևանության պատճառով,
բայց նրանք հատկապես (կենտրոնացել են) Անտիոքում՝ մա-
սամբ քաղաքի մեծության, բայց առավել ևս այն պատճա-
ռով, որ Անտիոքոսին[95] հաջորդած թագավորները նրանց շնոր-
44 հեցին այնտեղ ապահով ապրելու (իրավունքը)։ Որովհետև
դեռևս Եպիփանես կոչեցյալ Անտիոքոսը[96] Երուսաղեմը գրա-
վելով, տաճարը կողոպտեց, իսկ նրանից հետո թագավորու-
թյունը ստացողները Անտիոքի հրեաներին վերադարձրին տա-
ճարին արված պղնձե բոլոր ընծաները, որպեսզի դրանք, զե-

տեղեն իրենց ժողովարանում, և նրանց շնորհեցին քաղաքային
45 գործերին մասնակցելու հելլեններին հավասար իրավունք։
Քանի որ հետագայի թագավորները ևս նույն եղանակով շնոր-
հում էին (արտոնություններ)[97], հրեաների գաղութը քանա-
կով աճեց և սրբատեղին դարձավ շքեղ թե՛ կառուցումներով
և թե՛ նվիրատվություններով, մյուս կողմից՝ մեծ թվով հել-
լեններ հարում էին նրանց կրոնին և դրանով իսկ որոշ չափով
46 դառնում էին համայնակից։ Ճիշտ այն ժամանակ, երբ պա-
տերազմը[98] ծագեց և Վեսպասիանոսը դեռ նոր էր ժամանել
Սիրիա, և երբ բոլորի ատելությունը հրեաների նկատմամբ
47 ուժեղանում էր, նրանց միջից ոմն Անտիոքոս, որը շատ էր
հարգված իր հոր պատճառով—սա Անտիոքի հրեական հա-
մայնքի ավագն էր[99]—երբ անտիոքացիների դեմոսը ժողով
էր գումարում թատրոնում, ներս մտնելով մատնացույց է ա-
նում իր իսկ հորը և մյուս հրեաներին, ամբաստանելով վեր-
ջիններիս այն բանի մեջ, թե իբր նպատակ են դրել գիշեր ժա-
մանակ ամբողջ քաղաքը հրկիզել. միաժամանակ նա անտիո-
քացիներին է հանձնում մի քանի օտար հրեաների, որպես
48 դավադրության մասնակիցների։ Իսկ դեմոսն այս բոլորը
լսելուց հետո, չկարողանալով իր զայրույթը զսպել, պահան-
ջեց հանձնվածների համար իսկույն կրակ բերել և նույնհետայն
բոլորը կրակի մատնվեցին հենց թատրոնում։ Այնուհետև ամ-
49 բոխը հարձակվեց հրեաների վրա, կարծելով, թե նրանց ան-
միջապես պատժելով կփրկեն իրենց հայրենիքը։ Իսկ Անտիո-
50 քոսը ավելի էր բորբոքում նրանց զայրույթը, և մտածելով ա-
պացույց տալ իր հավատափոխության, ինչպես նաև այն
մասին, որ ինքը խորշում է հրեական բարքերից, տաճարում
հելլենների օրենքով զոհաբերություններ կատարեց։ Միաժա-
51 մանակ հորդորում էր, որպեսզի մնացած (հրեաներին) ևս
ստիպեն նույնն անելու, քանի որ դավադիրներն այդ բանն ա-
նել չցանկանալու դեպքում, իրենք իրենց կմերկացնեն։ Ու
երբ անտիոքացիները այդ փորձությանը ձեռնարկեցին, ապա
52 քչերը հնազանդվեցին, իսկ (հնազանդվել) չկամեցողները
ոչնչացվեցին։ Այնուհետև Անտիոքոսը հռոմայեցի կառավար-
չից (օգնական) զինվորներ ստանալով, դաժանորեն բռնացավ
իր համաքաղաքացիների վրա, արգելելով նրանց յոթերորդ
օրը հանգստանալ[100], և ստիպելով նրանց այդ օրն ամեն
53 գործ անել, ինչպես և մյուս օրերին։ Նա հարկադրանքն այն-

քան ուժեղացրեց, որ շաբաթվա հանգստյան օրը վերացավ
ոչ միայն Անտիոքում, այլև, այնտեղից սկսելով, կարճ ժա-
մանակի ընթացքում այդ երևույթը տարածվեց մյուս քաղաք-
ներում ևս։
54 Երբ այդպիսի դժբախտություններ էին պատահել Անտիո-
քում ապրող հրեաներին, նույն այդ ժամանակ նրանց վրա
ընկավ մի երկրորդ աղետ, որի մասին պատմելու համար
55 մենք արեցինք վերոբերյալ նկարագրությունը։ Քանզի պատա-
հաբար հրո ճարակ դարձան քառակուսի հրապարակը և մա-
տենատունը, և դիվանատունը, և ապարանքը[101], և երբ մեծ
դժվարությամբ հաջողվեց ամբողջ քաղաքով մեկ տարածվող
56 հրդեհը հանգցնել, Անտիոքոսը այդ արարքի համար մեղա-
դրում էր հրեաներին։ Իսկ անտիոքացիները, թեև նախկինում
նրանց նկատմամբ ատելություն չունեին, կատարված դեպ-
քի հետևանքով առաջացած խուճապին ենթարկվելով, նախ-
ընթաց եղելություններից հետո, արդեն հիմա առավել ևս
հակված էին հավատալու Անտիոքոսի պատմածներին և պատ-
կերելու, որ մենակ իրենք չեն եղել, որ իրենց իսկ աչքերով
տեսել են հրեաներին քաղաքը հրդեհելիս։ Ուստի և մոլեգնե-
լով կատաղությամբ, բոլորը հարձակվեցին մեղադրվողների
58 վրա, այնպես, որ իբրև դեսպան ուղարկված Գնայոս Կոլլե-
գասին հազիվ հաջողվեց նրանց թափը սանձահարել, թույլտը-
վություն պահանջելով դեպքերի մասին կայսեր հաղորդելու.
59 դա այն պատճառով, որ Վեսպասիանոսի կողմից արդեն որ-
պես կառավարիչ Սիրիա ուղարկված Կեսեննիոս Պետոսը[102]
60 դեռևս տեղ չէր ժամանել։ Այնուհետև ուշադիր հետաքննություն
կատարելով, Կոլլեգասը բացահայտեց ճշմարտությունը, և
(պարզվեց, որ) Անտիոքոսի կողմից մեղադրված հրեաներից
61 ոչ մեկը չէր մասնակցել արարքին, իսկ ամբողջ կատարվածը
մի քանի չարագործ մարդկանց գործն է եղել, որոնք ենթա-
դրում էին, որ եթե հրդեհեին հրապարակը և հանրային մատ-
յանները[103], ապա կազատվեին իրենց բոլոր պարտքերից։ Իսկ
62 հրեաները, որոնց գլխին կախված էին նման արհավիրքներ,
առավել ևս տագնապով ու սարսափով սպասում էին դեպքերի
հետագա ընթացքին։

* * *

100 Իսկ Անտիոքի ժողովուրդը[104] տեղեկանալով, որ Տիտոսը
մոտենում է, ուրախությունից չէր կարողանում մնալ պա-

101 րիսպներից ներս, այլ շտապում էր նրան դիմավորելու։ Իվ
նրանք ընդառաջ եկան ավելի քան երեսուն ասպարեզ[105], ոչ
միայն տղամարդիկ, այլև կանանց բազմությունը երեխաների
102 հետ, որոնք դուրս էին հորդում քաղաքից։ Ու երբ տեսան նրան
մոտենալիս, ճանապարհի երկու կողմը կանգնելով, իրենց աջ
(ձեռքը) պարզում էին նրա անունը կոչելով և (արտասանելով)
ամեն տեսակ փառաբանություններ, նրա հետ միասին վե-
103 րադարձան։ Բայց նրանց բոլոր բացականչություններին ու-
ղեկցում էր հրեաներին վտարելու խնդրանքը։ Իսկ Տիտոսը
104 ոչինչ չարտահայտելով, լուռ լսում էր բոլոր ասվածները։ Սա-
կայն հրեաների սարսափը մեծ էր, քանի որ հայտնի չէր, թե
105 նա ի՞նչ է մտածում և ի՞նչ է ձեռնարկելու։ Իսկ Տիտոսը Անտիո-
քում ևս չմնաց, այլ անմիջապես շարունակեց իր երթը դե-
պի Եփրատի վրա գտնվող Զևգման[106], որտեղ և պարթևների թա-
գավոր Վոլոգեսոսի[107] կողմից (դեսպանություն) էր ժամանել,
հրեաների դեմ նրա տարած հաղթանակի առթիվ ոսկե պսակ բե-
106 րելով։ Այն ընդունելուց և արքայական (դեսպանության պատ-
վին) կոչունք տալուց հետո, այնտեղից վերադառնում է Ան-
107 տիոք։ Անտիոքի (քաղաքային) խորհուրդը և համայնքը ջեր-
մագին խնդրած լինելով նրան այցելել իրենց թատրոնը, որտեղ
ամբողջ բազմությունը հավաքվել էր նրան դիմավորելու, նա
108 մարդասիրաբար ընդառաջեց (այդ խնդրանքին)։ Ու երբ
նրանք կրկին անգամ համառորեն պնդում էին և շարունակա-
բար խնդրում հրեաներին հեռացնել քաղաքից, նա խոհեմա-
109 բար պատասխան տվեց, ասելով. «Բայց հենց նրանց հայ-
րենիքը, որտեղ իբրև հրեաների նրանց պետք էր վտարել, ա-
վերված է, և ուրիշ ոչ մի երկիր չի ընդունի նրանց»։ Երբ
110 իրենց առաջին խնդրանքը մերժվեց, անտիոքացիները դի-
մեցին երկրորդին, խնդրելով, որպեսզի նա վերացնի պղնձե
տախտակները, որոնց վրա արձանագրված էին հրեաներին
111 (շնորհված) իրավունքները։ Այս հարցում ևս Տիտոսը նրանց
չպաշտպանեց, այլ Անտիոքի հրեաների իրավական վիճակը
երկրում թողնելով նույնը, ինչպես նախկինում էր, ինքը մեկ-
նեց Եգիպտոս։

* * *

219 Երբ արդեն Վեսպասիանոսի իշխանության գլուխ գտնվե-
լու չորրորդ տարին էր, պատահեց, որ Կոմմագենեի թագավոր

Անտիոքոսը իր ամբողջ ընտանիքով հանդերձ մեծ դժբախ-
տությունների մեջ ընկավ հետևյալ պայմաններում։ Կեսեննիոս
220 Պետոսը, որն այդ ժամանակ Սիրիայի կառավարիչն էր, ար-
դյոք ճշմարտությունն էր հաղորդում, թե՞ Անտիոքոսի նկատ-
մամբ թշնամանք ուներ—երբեք պարզորեն չի հաստատվել—
221 նամակներ է ուղարկում կայսրին՝ հայտնելով, որ Անտիոքո-
սը իր Եպիփանես որդու հետ որոշել են ապստամբել հռոմայե-
ցիների դեմ և պարթևների թագավորի հետ դաշինք հաստա-
222 տել։ Հետևաբար պետք է նրանց կանխել, որպեսզի չկարողա-
նան դժվարություններ հարուցել և հռոմեական ամբողջ տե-
223 րությունը պատերազմով խռովել։ Իսկ կայսրը, երբ տեղե-
կությունը հասավ իրեն, չէր կարող այն անտեսել, քանի որ
այս թագավորների փոխադարձ մերձեցումը բանը դարձնում
էր ավելի լուրջ ուշադրության արժանի։ Որովհետև Սամոսա-
224 տը, Կոմմագենեի խոշորագույն քաղաքը, գտնվում էր Եփրա-
տի վրա, այնպես որ պարթևների համար, եթե նրանք այդպի-
սի մտադրություն ունեին, կապահովեր հեշտ անցում և վստա-
225 հելի հանգրվան։ Այսպիսով, Պետոսը վստահված լինելով և
իշխանություն ստանալով գործել այնպես, ինչպես իրեն օգ-
226 տավետ էր թվում, չհապաղեց, այլ հանկարծակի, քանի դեռ
Անտիոքոսը և (նրա) մերձավորները ոչինչ չէին կասկածում,
ներխուժեց Կոմմագենե, առաջնորդելով վեցերորդ լեգեոնը,
ինչպես նաև մի քանի կոհորտա և հեծյալ գունդ։ Նրա հետ
դաշնակցել էին նաև Քաղկիդիկեի թագավոր Արիստոբուլո-
227 սը[108] և Եմեսայի թագավոր Սոեմոսը[109]. ուստի և նրանց ներ-
խուժումը կատարվեց առանց դիմադրության հանդիպելու,
քանի որ ոչ ոք այդ վայրերում ապրողներից չէր կամենում
228 նրանց դեմ զենք բարձրացնել։ Իսկ Անտիոքոսը, երբ անա-
կընկալ կերպով այդ լուրը հասավ իրեն, հռոմայեցիների դեմ
պատերազմելու ոչ մի խորհուրդ չունեցավ, այլ որոշեց ամ-
բողջ թագավորությունը, ինչպես որ կա, լքել և իր կնոջ ու որ-
դիների հետ կառքով հեռանալ, նպատակ ունենալով դրանով
իսկ իր վրա բարդված մեղադրանքից հռոմայեցիների առաջ
229 մաքուր երևալ։ Եվ քաղաքից հարյուր քսան ասպարեզ առաջ
ընթանալով դեպի դաշտը, այնտեղ էլ իջևանեց։

230 Եվ Պետոսը իր զորքերի մի մասն ուղարկում է Սամոսա-
տա և նրանց միջոցով նվաճում քաղաքը, մինչդեռ ինքը մյուս

231 մասով արշավում է Անտիոքոսին հետապնդելու համար։ Մինչ-
դեռ թագավորն այս պայմաններում ևս հռոմայեցիների դեմ
պատերազմական որևէ գործողության ձեռնամուխ չեղավ, այլ
իր բախտը ողբալով, համբերությամբ սպասում էր դեպքերի
232 (ընթացքին)։ Բայց նրա երիտասարդ և ռազմական արվեստին
գիտակ, արտակարգ մարմնական ուժի տեր որդիների համար
հեշտ չէր առանց մարտի ընդունել վերահաս աղետը. ուստի
և Եպիփանեսը և Կալլինիկոսը ուժի դիմեցին։ Տեղի ունեցած
233 բուռն ճակատամարտի ժամանակ, որը տևեց ամբողջ օրը,
նրանք աչքի ընկնող քաջություն ցուցաբերեցին, և նրանց զո-
րությունը բոլորովին չէր նվազել, երբ վրա հասած գիշերը
ցրեց նրանց։ Իսկ Անտիոքոսին, այդ ճակատամարտի այդ-
234 պիսի (հաջող) ելքից հետո ևս, թվում էր, թե չի կարելի մնալ,
ուստի և վերցնելով իր կնոջը և դուստրերին, նրանց հետ փա-
խավ Կիլիկիա և իր այդ արարքով իսկ իր զինվորների (մար-
235 տական) ոգին ջլատեց։ Եվ քանի որ նա (կայսրության) ձեռ-
քը մատնեց իր իսկ թագավորությունը, նրանք ապստամբե-
ցին և անցան հռոմայեցիների կողմը. նրանց մոտ ակնառու
236 էր հուսահատությունը։ Ուստի Եպիփանեսը և նրա զինակից-
ները նախքան դաշնակիցների կողմից վերջնականապես լքե-
վելը, անհրաժեշտ համարեցին փախուստի դիմելով իրենց
(անձը) փրկել թշնամուց, և տասը հեծյալ հավաքվելով երկու
237 եղբայրների հետ անցնում են Եփրատը, այնտեղից էլ նրանք
առանց արգելքի պարթևների թագավոր Վոլոգեսեսի մոտ
հասնելով, արհամարհանքի չհանդիպեցին իբրև փախստա-
կաններ, այլ, իրենց նախկին բարեկեցությունը պահելով
ամեն տեսակ պատվի արժանացան։
238 Իսկ Անտիոքոսին, երբ սա հասավ Կիլիկիայի Տարսոն
(քաղաքը), ցենտուրիոնը ձերբակալելով ուղարկեց Պետոսի
239 մոտ, որը նրան շղթայակապ ուղարկեց Հռոմ։ Վեսպասիանոսը
չսպասեց որ թագավորը բերվի իր առաջ, այլ նախամեծար
համարեց հին բարեկամությունը գնահատելով առավել մե-
ծարման արժանանալ, քան պատերազմի պատրվակով անխնա
240 զայրույթ պահել իր մեջ։ Ուստի և նա, երբ (թագավորը) դեռևս
ճանապարհին էր, կարգադրում է ազատել նրան կապանքնե-
րից և կանխում նրա ժամանումը Հռոմ, (թույլատրում) ժամա-
նակավորապես ապրել Լակեդեմոնիայում, միաժամանակ պար-

գևում նրան մեծաքանակ դրամական եկամուտ, որպեսզի նա
կարողանա ապրել ոչ միայն առատության մեջ, այլև արքայա-
241 վայել։ Եպիփանեսն ու յուրայինները, որոնք նախկինում սաս-
տիկ երկյուղել էին իրենց հոր համար, հոգեպես հանգստացան
մեծ և ծանր հոգսերից։ Միաժամանակ նրանք և հուսով էին, որ
կկարողանան կայսեր հետ հաշտվել նրա մոտ իրենց օգտին բա-
նակցություններ վարելու նպատակով Վոլոգեսեսի ուղարկած
դեսպանության միջոցով։ Որովհետև նրանք, նույնիսկ բարե-
բախտության մեջ գտնվելով, չէին ցանկանում ապրել հռոմեա-
կան կայսրության (սահմաններից) դուրս։ Իսկ երբ կայսրը
243 մեծահոգաբար նրանց թույլտվություն (շնորհեց), ժամանե-
ցին Հռոմ, և երբ իրենց հայրը ևս իսկույն եկավ Լակեդեմո-
նիայից, ամեն տեսակ հարգանքի արժանանալով, մնացին
այնտեղ։
244 Իսկ թե ալանաց ազգը, որը բնակեցրել է Տանայիս գետի[110]
և Մեոտիս լճի շրջակայքը, սկյութացիներ են, մենք հայտնել
245 ենք դեռ նախապես մեկ այլ տեղ[111]։ Ահա նրանք այդ ժամա-
նակները նպատակ ունենալով արշավել Մեդիա և նրանից ա-
վելի այն կողմ ընկած այլ վայրեր ավարառության համար,
համաձայնության են գալիս հյուրկանների թագավորի հետ,
որը տերն էր այն անցուղու, որ Ալեքսանդր (Մակեդոնացի)
246 թագավորը փակել էր երկաթյա ամուր դարպասներով[112]։ Ու
քանի որ այդ մուտքը նրանց տրամադրեց, ապա նրանք հոծ
բազմությամբ հարձակվեցին մեդացիների վրա, որոնք ոչինչ
չէին կասկածում, և ավարի մատնեցին բազմամարդ և ամեն
տեսակ անասուններով հարուստ՝ երկիրը, իսկ ոչ ոք չհամար-
247 ձակվեց նրանց դիմադրել։ Որովհետև այդ երկրում թագավո-
րող Պակորոսը[113] սարսափահար ապաստանել էր դժվարամա-
տույց վայրեր, մնացած ամեն ինչը նրանց զիջելով, նրանցից
կարողացավ հազիվ իր կնոջն ու հարճերին, որոնք գերի էին
248 ընկել, հարյուր տաղանդ (փրկագին) վճարելով ազատել։ Շատ
հեշտությամբ և առանց մարտի կողոպուտի ենթարկեցին եր-
կիրը մինչև Հայաստան ու վերադարձան ամեն ինչ թալանե-
249 լով։ Իսկ (Հայաստանում) թագավորում էր Տիրիդատեսը, որը
ռազմերթի ելնելով նրանց դեմ, ճակատամարտ տվեց, բայց
քիչ էր մնացել, որ կռվի ընթացքում նրանց ձեռքը գերի ընկ-
250 ներ կենդանի։ Որովհետև (ալաններից) մեկը հեռվից պարան

ձգեց նրա վրա և նրան արդեն կբռներ, եթե (Տիրիդատեսին)
չհաջողվեր իր սրով իսկույն կտրել պարանը և անհապաղ ճո-
251 ղոպրել։ Մինչդեռ ալանները այդ կռվի (ելքից) ավելի ևս գա-
զազած, երկիրը թալանեցին և երկու թագավորություններից
էլ մարդկանց մեծ բազմություն և ուրիշ շատ ավար տանելով,
նորից վերադարձան իրենց երկիրը[114]։

## ՀՐԵԱԿԱՆ ՀՆԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

89 Երբ աստված նշանը տվեց և անձրևն սկսվեց, ջուրը ամ-
բողջ քառասուն օր թափվում էր, այնքան, որ բարձրացավ երկ-
րի երեսին մինչև հիսուն կանգուն[115]։ Եվ այդ էր պատճառը, որ
(մարդկանց) մեծագույն մասը չկարողացավ փրկվել, փախուս-
տի ապավեն չունենալու պատճառով։ Երբ հորդ անձրևը դադա-
90 րեց, ջուրն արագորեն սկսեց իջնել հարյուր և հիսուն օրվա ըն-
թացքում, մինչև յոթերորդ ամսի սկիզբը, տասնօրյակի յոթե-
րորդ օրը, և այն քիչ առ քիչ սկսեց նահանջել, երբ ամիսը
վերջանալու մոտ էր։ Այնուհետև, երբ տապանը կանգ առավ
Հայաստանում գտնվող մի լեռան վրա, Նոքոսը այս տեսնե-
լով, բացեց (տապանը) և նրա շուրջը փոքր մի հողակտոր
նկատելով, հույսը վերածնվեց նրա մեջ, և նա մնաց այնտեղ։
91 Իսկ քիչ օրեր անց, երբ ջուրն աստիճանաբար նահանջում էր,
նա մի ագռավ արձակեց, իմանալու համար, թե արդյո՞ք երկ-
րի որևէ մի այլ մաս ևս դուրս է եկել ջրից, որից հետո (տա-
պանից) դուրս գալը անվտանգ կլիներ. բայց ամբողջ երկիրը
դեռևս լճացած տեսնելով, ագռավը վերադարձավ Նոքոսի
մոտ։ Իսկ յոթ օր հետո նա մի աղավնի արձակեց, իմանալու
համար երկրի դրությունը։ Այն վերադարձավ ցեխոտված և
92 միաժամանակ ձիթենու կանաչ ոստ բերելով, որից էլ Նոքոսն
իմացավ, որ երկիրը ազատվել է ջրհեղեղից. ևս յոթ օր սպա-
սելուց հետո նա բաց թողեց տապանի անասուններին, ինքն
էլ իր գերդաստանով դուրս գալով, աստծուն զոհեր մատուցեց
և խնջույք արեց ընտանիքի անդամների հետ։ Հայերը մինչև օրս
այդ վայրը կոչում են իջնելու տեղ[116], քանի որ այնտեղ է
(ջրհեղեղից) փրկվել տապանը, և մինչև օրս այդ վայրում
ցույց են տալիս դրա բեկորները։

93 Այս ջրհեղեղի և տապանի մասին հիշատակում են բո-
լոր նրանք, որոնք գրել են բարբարոսների պատմությունները.
նրանցից է Բերոսոս Քաղդեացին, որը պատմելով ջրհեղեղի
ժամանակ տեղի ունեցած դեպքերի մասին, այսպիսի բաներ
է դրում. «Ասվում է, թե մինչև հիմա էլ նավի մի մասը
գտնվում է Հայաստանում, Կորդվաց լեռների մոտ, և որ ո-
մանք (նրա վրայից) պոկելով կուպրի կտորներ են բերում. և
մարդիկ դրանք կրում են իրենց վրա իբրև հուռութք»։ Դրանց
94 մասին հիշատակում են նաև Հիերոնիմոս Եգիպտացին[117], որը
գրել է փյունիկյան հնախոսությունը, և Մնասեասը[118] և շատ
ուրիշներ, ինչպես նաև Նիկողայոս Դամասկոսցին[119] իր
իննսունվեցերորդ գրքում պատմելով այդ բոլորի մասին, այս-
95 պես է ասում. «Մինիաս (երկրից)[120] վերև Հայաստանում կա
մի խոշոր լեռ Բարիս անունով, որտեղ, պատմության համա-
ձայն, շատերը ապաստանելով փրկություն են գտել ջրհեղեղի
ժամանակ, իսկ մեկը տապանի վրա տարվելով, իջել է գագա-
թին և տախտակների մնացորդները երկար ժամանակ պահ-
պանվել են։ Սա հավանաբար այն մարդն է, որի մասին գրել
է Մովսեսը, հրեաների օրենսդիրը»։

* * *

122 Իսկ Նոքոսի որդիները զավակներ ունեցան, որոնց պատ-
վելու համար էլ որոշ երկրների առաջին բնակիչները ազգերին
կոչեցին նրանց անուններով։ Այսպես, Յափեթը[121], Նոքոսի որ-
դին, ունեցավ յոթ զավակ. նրանք բնակվում են սկսած Տավրոս
և Ամանոս լեռներից և առաջ են գնացել Ասիայում մինչև Տա-
նայիս գետը[122], իսկ Եվրոպայում մինչև Գադեյրա երկիրը,
նվաճելով այն, ու քանի որ նախապես այդ երկրները չէին
բնակեցվել, իրենց անունները թողեցին այնտեղի ազգերին։
123 Նրանք, որոնց հելլենները գալատներ են անվանում և կոչվում
են գոմարյաններ, Գոմարը[123] հաստատեց. Մագոգեսը հաս-
տատեց մագոդյան կոչվածներին, որոնց հելլենները սկյութա-
ցիներ են անվանում։ Յափեթի որդիներ Յավանոսից և Մա-
124 դեսից առաջացել են այս մեկից՝ մադերը, որոնք հելլենների
կողմից մեդես են կոչվում, իսկ Յավանոսից սերել են Յոնիան
և բոլոր հելլենները։ Մինչդեռ Թեոբելոսը հաստատում է
125 Թեոբելյաններին[124], որոնք այժմ կոչվում են իբերներ։ Եվ մես-
քենները[125], որոնք հաստատվել են Մեսքեսի կողմից և այժմ

կոչվում են կապպադովկիացիներ. սակայն նրանց հնագույն
անվանման ապացույցը բացահայտ է, որովհետև նրանց մոտ
կա մի քաղաք, որը մինչև հիմա էլ կոչվում է Մաղակա և հաս-
կացողներին թելադրում է ենթադրելու, որ այդպես է կոչվել
ամբողջ ազգը։ Թիրեսը իր անունը թողեց Թիրյաններին, ո-
րոնց վրա ինքը իշխել էր, իսկ հելլենները նրանց վերանվանե-
126 ցին Թրակիացիներ։ Ահա այսքան ազգեր են հաստատվել Յա-
փեթի որդիների կողմից։ Իսկ Գոմարը ունեցավ երեք զավակ,
որոնցից Ասքանաքսեսը[126] հաստատեց ասքանաքսյաններին,
որոնց հելլենները այժմ կոչում են հռեդյաններ, Հռիփաթեսը՝
հռիփաթյաններին, որոնք պափլագոններ են կոչվում,
Թյուգրամեսը[127] (հաստատեց) Թյուդրամյաններին, որոնց
127 հելլենները ճիշտ համարեցին փռյուգներ անվանել։ Իսկ Յա-
փեթի որդի Յավանոսը ևս երեք զավակ ունեցավ, որոնցից
Հալիսասը իր անունը տվեց հալիսեցիներին, որոնց վրա ինքն
իշխել էր, և որոնք այժմ էոլյաններն են. իսկ Թարսոսն (իր
անունը տվեց) Թարսյաններին, որովհետև այսպես էր նախ-
կինում կոչվել Կիլիկիան։ Ապացույց, որ նրանց քաղաքնե-
րից ամենանշանակալիցը, որը և քաղաքամայրն է, կոչվում է
Տարսոս, թետան (Θ) տաու (Τ) տառով փոխարինելու հե-
տևանքով։

* * *

143 Իսկ Նոքոսի երրորդ որդին՝ Սեմը, ունեցավ հինգ զավակ,
որոնք բնակեցրել են Ասիան, սկսելով Եփրատից մինչև Հընդ-
կաց օվկիանոսը։ Այսպես՝ Ելիմոսի հետնորդներն էին ելի-
մայեցիները[128], որոնք պարսիկների նախահայրերն են. Աս-
սուրասը հիմնադրում է Նինոսի քաղաքը և իր հպատակներին
անվանում ասսուրացիներ, որոնք մեծապես բարգավաճեցին։
144 Արփաքսադեսը իշխելով այժմյան քաղդեացիներին, նրանց
անվանեց արփաքսադյաններ, իսկ արամեացիներին տիրում
է Արամոսը, որոնց հելլենները սիրիացիներ կոչեցին։ Եվ
նրանց, ում հելլենները հիմա լյուդիացիներ են կոչում, այն
ժամանակ Լյուդասը հաստատեց։ Արամոսի զավակները չորսն
էին, որոնցից Ուսեսը հիմնում է Տրաքոնիտիսը և Դամաս-
կոսը, որը գտնվում է Պաղեստինի և Կելե-Սիրիայի միջև.
Հայաստանը (հաստատեց) Ուրոսը[129], իսկ Գեթերեսը բակ-
տրիացիներին ու Մեսասը՝ մեսանյաններին, այժմ Սպասինու
Քարակս կոչված շրջանում։

20 Իսկ Բերոսոսը, որը հեղինակել էր «Քաղդեականքը», հի-
շատակում է թագավոր Սենաքերիմի մասին և (պատմում),
թե ինչպես նա տիրեց ասսուրացիներին և ինչպես արշավեց
ամբողջ Ասիայի ու Եգիպտոսի վրա, գրելով հետևյալը...[130]
21 Սենաքերիմը Եգիպտոսի դեմ մղած պատերազմից Երու-
սաղեմ վերադառնալով հասավ այն ժամանակ, երբ զորավար
Հռափսակեսի (հրամանատարության) տակ եղող զորքը ժան-
տախտի արհավիրքի առաջ էր գտնվում։ Որովհետև աստված
կործանիչ հիվանդություն էր ուղարկել զորքերի վրա, և պա-
շարման առաջին իսկ գիշերը տասնութ բյուր և հինգ հազար
մարդ կործանվեց իրենց հրամանատարներով ու դասակա-
պետներով հանդերձ։ Այս աղետի պատճառով նա ընկավ մեծ
22 երկյուղի և տագնապի մեջ, ու վախենալով իր ամբողջ բանա-
կի համար, զորքի մնացած մասով հեռանում է իր թագավո-
23 րությունը, որը կոչվել է Նինոսի անունով։ Եվ այնտեղ կարճ
ժամանակ մնալուց հետո, դավադրաբար սպանվում է իր ա-
վագ որդիներ Անդրոմաքոսի և Սելևկարոսի[131] կողմից ու վախ-
ճանվում, և նրա (դիակը) դրվեց իր իսկ սեփական տաճա-
րում, որը կոչվում էր Արասկես։ Իսկ քաղաքացիների կող-
մից հայրասպանության համար երկրից վտարվածները հե-
ռանալով, հասան Հայաստան[132], մինչդեռ թագավորությու-
նը ժառանգեց Սենաքերիմի որդիների իրավունքները ոտնա-
հարած Ասարախոդասը։ Ահա այսպիսին էր Երուսաղեմի վրա
ասսուրական արշավանքի վախճանը։

* * *

74 Իսկ եգիպտացիների Նեքաո թագավորը[133] զորք հավաքե-
լով արշավեց դեպի՝ Եփրատ գետը, կռվելու համար մեդացի-
ների և բաբելոնացիների դեմ, որոնք կործանեցին ասորես-
տանյան պետությունը, քանի որ նա ցանկանում էր տիրել
Ասիային։

* * *

84 Երբ Հովակիմի[134] թագավորության չորրորդ տարին էր,
բաբելոնացիների մոտ իշխանությունը գրավում է Նաբու-
քոդոնոսոր անունով մեկը, որը նույն այդ ժամանակ մեծ պատ-

րաստություն (տեսնելով), քայլում է Կարքեմիսսա[135] քաղաքի վրա, որը գտնվում է Եփրատ գետի ափին, նպատակ ունենալով պատերազմել եգիպտական Նեքաո թագավորի դեմ,
85 որովհետև ամբողջ Սիրիան նրա իշխանության տակ էր։ Իմանալով բաբելոնացու մտադրությունը և իր դեմ նրա ձեռնարկած արշավանքը, Նեքաոն ինքը ևս չհապաղեց, այլ բազմաթիվ ձեռքերով արշավեց Եփրատի կողմը, դիմավորելու հա-
86 մար Նաբուքոդոնոսորին։ Տեղի ունեցած ճակատամարտում նա պարտվեց և ռազմադաշտում շատ բյուր (մարդկանց) թողեց։ Ու Եփրատ գետն անցնելով, բաբելոնացին նվաճում է
87 (ամբողջ) Սիրիան մինչև Պելուսիոն, բացի Հրեաստանից։ Արդեն Նաբուքոդոնոսորի թագավորության չորրորդ տարին էր և Հովակիմի հրեական գահի վրա գտնվելու ութերորդ տարին, երբ բաբելոնացին մեծ զորքով արշավում է հրեաների վրա և պատերազմ սկսելու սպառնալիքի տակ Հովակիմից հարկեր պահանջում։ Իսկ սա, սպառնալիքից ահաբեկված և փողով խաղաղություն գնելով, երեք տարի վճարեց նրա նշանակած հարկը։

## ԳԻՐՔ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

20 Որովհետև Կյուրոսը զբաղված լինելով այլ պատերազմներով, անտեղյակ էր կատարված դեպքերին և պատահեց այնպես, որ մասսագետների[136] դեմ արշավելուց անմիջապես հետո մահացավ[137]։

* * *

30 ... Իսկ Կամբյուսեսը վեց տարի թագավորելով, որի ընթացքում նվաճեց Եգիպտոսը, վերադարձավ այնտեղից և մա-
31 հացավ Դամասկոսում։ Մոգերի բնաջնջումից հետո, որոնք Կամբյուսեսի մահվանը հաջորդած տարին իշխանությունը վերցրել էին (իրենց ձեռքը), պարսիկների, այսպես կոչված, յոթ տները Հյուստասպեսի որդի Դարեհին թագավոր հռչակեցին։ Երբ նա դեռևս հասարակ մարդ էր, ուխտեց աստծուն, որ եթե թագավոր դառնա, ապա աստծու[138] բոլոր սպասները, ինչքան դեռևս մնում էին Բաբելոնում, ետ կուղարկի Երու-
32 սաղեմի տաճար։ Ու պատահեց որ այդ ժամանակ Երուսաղեմից Դարեհի մոտ ժամանեց Զորոբաբելը, որը նշանակված էր

հրեա գերիների առաջնորդ, որովհետև վաղեմի բարեկամու-
թյուն կար նրա և թագավորի միջև, որի համար էլ ուրիշ եր-
կու հոգու հետ արքայի թիկնապահների շարքում ընդունվելու
արժանի համարվեց. և նա իր իսկ ակնկալած պատվին արժա-
նացավ։
33 Իր թագավորության առաջին տարում Դարեհը շատ
մեծ պատրաստություններով շքեղ ընդունելություն կազմա-
կերպեց, հրավիրելով իր մերձավորներին և իր արքունի տա-
նը ծնվածներին, և Մեդիայի իշխաններին, և Պարսկաստա-
նի սատրապներին, և Հնդկաստանից մինչև Եթովպիա ընկած
երկրների տեղապահներին[139], և հարյուր քսանյոթ սատրա-
34 պությունների սատրապներին[140]։ Ու երբ, խնջույքում հագե-
նալու և լիանալու աստիճանին հասնելուց հետո, նրանք մեկ-
նեցին յուրաքանչյուրն իր տուն քնելու, Դարեհ արքան գալով
իր ննջարանը և գիշերվա կարճ մի մասում հանգստանալով,
զարթնում է և այլևս քնել չկարողանալով, երեք թիկնապահ-
35 ների հետ զրույցի է բռնվում։ Եվ նրան, ով իր հարցումին
կտար ճշմարտագույն և առավել խորիմաստ պատասխան,
նա խոստացավ որպես հաղթության պարգև շնորհել ծիրանի
զգեստ՝ հագնելու համար, և ոսկե ըմպանակներ՝ խմելու հա-
մար, և ոսկե մահիճ՝ քնելու համար, և ոսկեսանձ մարտա-
կառք, և բեհեզյա խույր[141], և ոսկե մանյակ, նաև իր իմաս-
տության համար իրենից հետո առաջին գահը նա պետք է ու-
36 նենա «և իմ ազգակիցը պետք է կոչվի», ասաց նա։ Այս ըն-
ծաները պարգևել խոստանալուց հետո հարցնում է առաջի-
նին՝ արդյո՞ք գինին է (աշխարհում) ամենահզորը, երկրոր-
դին՝ թագավորնե՞րն արդյոք, իսկ երրորդին՝ կանա՞յք ար-
դյոք, թե՞ ճշմարտությունն է այդ բոլորից հզոր։ Այս հար-
37 ցերը նրանց տալուց հետո նա հանգստացավ։ Իսկ վաղ ա-
ռավոտյան իր մոտ հրավիրելով մեծամեծներին և Պարսկաս-
տանի ու Մեդիայի սատրապներին ու տեղապահներին և ատ-
յանում իր սովորական տեղը բազմելով, հրամայեց թիկնա-
պահներից յուրաքանչյուրին իր կարծիքը հայտնել առա-
ջադրված հարցի մասին։

[Հետևում է ընդարձակ մի հատված (§§ 38—63), որ-
տեղ երեք թիկնապահներից առաջինը գովերգում է գինու
զորությունը, երկրորդը՝ արքաների, երրորդը՝ Զորոբաբելը՝
կնոջ զորությունը, ապա խոսում է ճշմարտության ամենազոր

լինելու մասին։ Դարեհը, հավանելով նրա պատասխանը, խոստացված պարգևները շնորհում է Զորոբաբելին և նրան կարգում հրեաների առաջնորդ]։

* * *

184 Քսերքսեսի մահից հետո թագավորությունն անցավ նրա
որդի Ասուերոսին, որին հույներն անվանում են Արտաքսերք-
սես։ Պարսկաստանում իշխանությունը նրա ձեռքին եղած
տարիներին ամբողջ հրեական ժողովուրդը, կանանց ու ե-
րեխաների հետ միասին, բնաջնջման վտանգի առաջ կանգ-
185 նեց։ Դրա պատճառը քիչ հետո կհայտնենք։ Որովհետև պատ-
շաճ է նախ այս թագավորի պատմությունն անել, թե նա
ինչպե՞ս ամուսնացավ թագավորական գերդաստանին պատ-
կանող հրեա կնոջ հետ, որի մասին պատմում են, թե փրկել
186 է մեր ազգը։ Այսպես, Արտաքսերքսեսը, ընդունելով թագա-
վորությունը և Հնդկաստանից մինչև Եթովպիա հարյուր
քսանյոթ սատրապությունների վրա իշխաններ նշանակելով,
իր գահակալության երրորդ տարում իր ընկերներին և պարս-
կական ցեղերին և նրանց առաջնորդներին հրավիրեց շքեղ
ընդունելության, ինչպիսին վայել էր իր հարստությունը ցու-
ցադրել ցանկացող թագավորին, հարյուր ութսուն օր շարու-
187 նակ։ Իսկ այնուհետև բոլոր ազգերին և նրանց դեսպաններին
Սուսայում[142] յոթ օր խնջույքի հրավիրեց։ Եվ խրախճանքը
հետևյալ կերպ էր կատարվում. ոսկե և արծաթե սյուներով
վրան խփեց և այն ծածկեց բեհեզյա և ծիրանի վարագույրնե-
րով. այնպես, որ բյուրավոր մարդիկ կարողանան սեղան նըս-
188 տել։ Եվ նրանց մատռվակում էին ոսկե և պատվական քարե-
րից պատրաստած ըմպանակներով, որոնք հաճելի էին և գե-
ղեցիկ։ Նաև հրամայեց սպասավորներին, որպեսզի սրանք
չպարտադրեն (մարդկանց) խմել՝ խմիչքը անընդհատ մա-
տռվակելով, ինչպես պարսկական սովորությունն է, այլ թույլ
տան նրանց, որպեսզի ամեն մարդ իր ցանկության համա-
ձայն բավարարի իր կարիքները։ Իսկ ամբողջ երկրով մեկ
բնակիչներին պատվիրեց, որ կարող են իրենց աշխատանքը
թողնել և իր թագավորության պատվին շատ օրեր տոնախըմ-
190 բություն անել։ Նույնպես և Աստե թագուհին կանանց ի մի
հավաքեց իր պալատում կոչունքի, իսկ թագավորը, ցանկա-
նալով նրան ցույց տալ բոլոր խրախճողներին, քանի որ նա

իր գեղեցկությամբ գերազանցում էր բոլոր կանանց, (մարգ)
ուղարկելով կարգադրեց (թագուհուն) ներկայանալ իր խըն-
191 ջույքին։ Իսկ նա, պահպանելու համար պարսից օրենքները,
որոնք արգելում էին կանանց օտարների առաջ երևալու,
չգնաց թագավորի մոտ, թեև արքան բազմիցս նրա մոտ ու-
ղարկել էր իր ներքինիներին, այսուհանդերձ նա համառեց և
հրաժարվեց թագավորի առաջ ներկայանալ, մինչև որ արքան,
192 զայրանալով, ցրեց խնջույքը, վեր կենալով իր մոտ հրավի-
րեց յոթ պարսիկներին, որոնք օրենքի մեկնիչներն են
(Պարսկաստանում), և նրանց առաջ մեղադրեց իր կնոջը,
ասելով, թե ինչպե՞ս էր ինքն անարգվել նրա կողմից, քանի
որ բազմիցս հրավեր ստանալով թագավորից ներկայանալ
խնջույքին, ոչ մի անգամ չհնազանդվեց։ Ու հրամայեց իրեն
հայտնել, թե ի՞նչ վճիռ են սահմանում նրա նկատմամբ։ Այն-
ժամ նրանցից մեկը՝ Մուքեոս անունով, ասաց, որ այդ ար-
համարհանքը ուղղված է եղել ոչ միայն արքայի դեմ, այլև
համայն պարսիկների, որոնց սպառնում է կանանց կողմից
194 արհամարհվածի ամոթալի վիճակում ապրելը։ «Որովհետև ոչ
մի (կին այսուհետև) իր ամուսնու նկատմամբ ոչ մի ակնա-
ծանք չի տածելու, քանի որ իբր օրինակ կվերցնի թագուհու
դոռոզությունը, քո՝ բոլորի վրա իշխանություն ունեցողի
նկատմամբ»։ Այս իսկ պատճառով հորդորում էր նրան այդ-
պես արհամարհողին պատժել ծանր պատիժով, և այդ կատա-
րելուց հետո հռչակել բոլոր ազգերին թագուհու նկատմամբ
կայացած վճիռը։ Այսպիսով, նա հարմար դատեց Աստեին
զրկել (տիկնությունից) և նրա պատիվը տալ մեկ ուրիշ կնոջ։
195 (Մինչդեռ արքան) նրա նկատմամբ սեր էր տածում և
չէր կարողանում ամուսնալուծության դիմանալ, բայց օրեն-
քի համաձայն անկարող էր հաշտվել նրա հետ, ուստի և թախ-
ծում էր, տեսնելով, որ ի վիճակի չէ իր փափագը կատարելու։
Իսկ իր մերձավորները, տեսնելով նրան այս տանջալից վի-
ճակում, խորհուրդ էին տալիս ջնջել հիշողությունը իր կնոջ
196 և նրա անօգուտ սիրո մասին, և (մարդկանց) ուղարկելով ամ-
բողջ երկրով մեկ, փնտրել գեղեցիկ կույսերի և նրանցից իր
հավանածին կնության վերցնել. որովհետև առաջինի նկատ-
մամբ տածած բուռն սերը կհանգեր այն մեկ ուրիշով փոխա-
րինելուց հետո։ Եվ բարեհաճությունը նրա հանդեպ աստի-
197 ճանաբար կնվաճի իր հետ ապրող կնոջը։ Անսալով այս խոր-

հըրդին, հրամայեց ոմանց հավաքել իր թագավորության այն
կույսերին, որոնք առավել հռչակված էին իրենց գեղեցկու-
թյամբ, և բերել իր մոտ։ Երբ մեծ թվով (կույսեր) հավաք-
198 վեցին, նրանց միջից գտնվեց Բաբելոնում բնակվող մի աղ-
ջիկ, որը ծնողներից որբ էր և ապրում էր իր հորեղբայր Մար-
գոքեոսի մոտ, իսկ սա Բենիամինի ցեղից էր[143] և առաջին-
ներից հրեաների մեջ։ Եվ պատահեց, որ Եսթերը —այս էր
կույսի անունը—իր գեղեցկությամբ ու արտաքին տեսքով
բոլոր իրեն տեսնողների ուշադրությունը ամենից ավելի գրա-
200 վեց։ Իսկույն նա հանձնարարվեց ներքինիներից մեկին և ա-
մեն տեսակ խնամքի արժանացավ և՛ անուշահոտությունների
առատությամբ, և՛ թանկարժեք օծանելիքներով, այն ամե-
նով, ինչ անհրաժեշտ է կանացի մարմնի համար։ Եվ այս բո-
լորը վայելում էին թվով չորս հարյուր աղջիկ վեց ամիս շա-
201 րունակ։ Իսկ երբ (ներքինին) մտածեց, որ վերոհիշյալ ժա-
մանակի ընթացքում կույսերն արդեն բավարար չափով խը-
նամք էին ստացել և արժանի էին թագավորի առագաստը
մտնելու, օրական նրանցից մեկին ուղարկում էր արքայի մոտ
քնելու. իսկ նա մերձենալուց հետո իսկույն ետ էր ուղարկում
202 (աղջկան) ներքինու մոտ։ Իսկ երբ Եսթերը եկավ նրա մոտ,
(արքան) հաճոյացավ նրանով և աղջկան սիրահարվելով,
նրան իր օրինական կինը դարձրեց և հարսանիք արեց իր
թագավորության յոթերորդ տարվա տասներկուերորդ ամսին,
որը կոչվում էր Ադար[144]։ Եվ նա անգարոս կոչված (արքունի)
սուրհանդակներին ուղարկեց բոլոր ազգերի մոտ, հրահան-
գելով նրանց հարսանիքը տոնել. իսկ ինքը պարսիկներին և
ազգերի ավագներին[145] ամբողջ մեկ ամիս կոչունքի հրավիրեց
իր ամուսնության առթիվ։ Ու երբ Եսթերը մտավ պալատ,
արքան խույրը[146] դրեց նրա գլխին և այսպիսով Եսթերը ապ-
րեց արքայի հետ, առանց հայտնելու նրան, թե ո՞ր ազգից է
204 ինքը սերում։ Նրա հորեղբայրը ևս Բաբելոնից Պարսկաստա-
նի Սուսա (քաղաքը) փոխադրվելով, այնտեղ էր բնակվում և
ամեն օր պալատ այցելելով, տեղեկանում էր աղջկա որպի-
սության մասին. որովհետև նա խնամում էր նրան իր հա-
րազատ դստեր նման։

205 Եվ թագավորը օրենք սահմանեց, որ այսուհետև յուրա-
յիններից ոչ ոք առանց հրավերի չմոտենա իրեն, քանի նա

դեռ գահին է նստած։ Ու նրա գահի շուրջը կանգնեցին սակ-
րերով զինված մարդիկ, որպեսզի պատժեն առանց հրավե-
206 րի գահին մոտեցողներին։ Մինչդեռ ինքը, արքան, նստում էր
(գահին), ոսկե գավազան բռնած, որը մեկնում էր առանց
հրավերի մոտեցողին, եթե ցանկանում էր նրան փրկել. իսկ
նա, ով դիպչում էր այդ գավազանին, վտանգից զերծ էր
մնում։

* * *

313 Եվ այդ ժամանակ Դարեհը[147] լսելով, որ Ալեքսանդրը Հել-
լեսպոնտոսն անցնելուց և իր սատրապներին Գրանիկոնի[148]
ճակատամարտում հաղթելուց հետո առաջ է շարժվում, հե-
ծելազոր և հետևակ զորք էր կենտրոնացնում, մտադիր լի-
նելով դիմագրավել մակեդոնացիներին, նախքան նրանք ներ-
314 խուժելով կնվաճեին ամբողջ Ասիան։ Ծեղքելով, ուրեմն, Եփ-
րատ գետը և անցնելով Կիլիկիայի Տավրոս լեռը, թշնամուն
սպասում էր Կիլիկիայում (գտնվող) Իսսոսում, այնտեղ ճա-
315 կատամարտ տալու նպատակով։ Իսկ Սանաբալլետեսը[149],
ուրախացած Դարեհի գալստյան վրա, անհապաղ ասաց Մա-
նասսեին[150], որ իր խոստումները կատարի, հենց որ Դարեհը
թշնամիներին հաղթելով վերադառնա. որովհետև ոչ միայն
նա, այլև բոլոր Ասիայում ապրողները համոզված էին, որ
մակեդոնացիները նույնիսկ չեն մոտենալու պարսիկներին,
նրանց մեծ թվի պատճառով[151]։
316 Բայց դեպքերը զարգացան ոչ ինչպես նրանք ակնկալում
էին, քանի որ արքան ճակատամարտելով մակեդոնացիների
դեմ, պարտվեց և կորցրեց իր բանակի մի խոշոր մասը։ Իր
մայրն ու կինը և զավակները գերի վերցվեցին, իսկ ինքը փա-
317 խավ Պարսկաստան[152]։ Իսկ Ալեքսանդրը, հասնելով Սիրիա,
գրավեց Դամասկոսը և դառնալով Սիդոնի տերը, պաշարեց
Տյուրոսը[153]։ (Այստեղից) թուղթ հղեց հրեաների քահանայա-
պետին, որպեսզի սա օգնական զորք ուղարկի իրեն և իր բա-
նակին պարեն տրամադրի, և (բնակիչներն) իրեն տան այն
բոլոր ընծաները, ինչ նախապես իբրև հարկ ուղարկում էին
Դարեհին, դրանով իսկ նախընտրեն մակեդոնացիների բարե-
կամությունը, քանզի չէին զղջալու այդպես վարվելով։ Բայց
318 քահանայապետը պատասխանեց սուրհանդակներին, թե երդ-
վել էր Դարեհին նրա դեմ զենք չբարձրացնել, և քանի դեռ

Դարեհը կենդանի է, ինքը չի կարող դրժել այդ երդումը։
319 Ալեքսանդրը այս լսելով զայրացավ և որոշեց չթողնել Տյու-
րոսը, որն արդեն գրավվելու մոտ էր, սպառնաց, որ այն նը-
վաճելուց անմիջապես հետո ինքը կարշավի հրեաների քա-
հանայապետի դեմ և նրա օրինակով բոլորին կսովորեցնի, թե
320 ում հանդեպ պարտավոր են իրենց երդումը պահել։ Դրանից
հետո նա առավել եռանդով շարունակեց պաշարումը և գրա-
վեց Տյուրոսը։

## ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

293 Լսելով այդ, թագավոր Անտիոքոսը[154] մեծապես զայրա-
ցավ կատարված դեպքերի համար և իր սեփական ամբողջ
զորքը հավաքելով և կղզիներից բազում վարձկաններ վերց-
նելով, պատրաստվում էր ամռան սկզբներին ներխուժել
294 Հրեաստան։ Բայց զորականների ռոճիկները վճարելուց հե-
տո, երբ տեսավ, թե իր գանձերը պակասում էին և դրամի
կարիք էր զգացվում—որովհետև բոլոր հարկերը չէ, որ
վճարվում էին (հպատակ) ազգերի ապստամբության պատ-
ճառով, իսկ ինքը, լինելով մեծահոգի և առատաձեռն ընծա-
ների հարցում, չէր կարողանում բավարարվել առկա միջոց-
ներով[155]— որոշեց առաջինը արշավել Պարսկաստան և հա-
վաքել այդ երկրի հարկերը։ Պետության գործերի տնօրինումը
295 հանձնելով իր կողմից հարգված ոմն Լյուսիասի, որը կառա-
վարում էր Եփրատ գետից մինչև Եգիպտոս ընկած երկրները
և ստորին Ասիան, նաև թողնելով՝նրա մոտ զորքի և փղերի
296 մի մասը, միաժամանակ հանձնարարեց նրան ամենայն հո-
գատարությամբ խնամել իր որդի Անտիոքոսին, մինչև ինքը
կվերադառնար, և Հրեաստանը ավերելուց ու նրա բնակիչ-
ներին գերեվարելուց ու Երուսաղեմը կործանելուց հետո,
297 ոչնչացնել հրեական ցեղը։ Այս հանձնարարությունները անե-
լով Լյուսիասին, Անտիոքոս թագավորն արշավեց Պարսկաս-
տան հարյուր քառասունյոթերորդ տարին[156] և Եփրատն անց-
նելով, բարձրացավ դեպի վերին սատրապությունները[157]։

* * *

354 Նույն այդ ժամանակ թագավոր Անտիոքոսը վերին սատ-
րապությունները շրջագայելու ընթացքում լսում է Պարսկաս-

տանում գտնվող մի արտակարգ հարուստ քաղաքի մասին,
Էլիմայիս[152] կոչվող, որտեղ կար Արտեմիսին (նվիրված)
շքեղ տաճար, և որը լեցուն էր ամեն տեսակ ընծաներով,
մինչև իսկ զենքերով ու զրահներով, որոնք, ինչպես իմացավ,
այնտեղ էր թողել Փիլիպպոսի որդի, մակեդոնացիների թա-
355 գավոր Ալեքսանդրը։ Այս բոլորից գայթակղվելով, նա ար-
շավեց Էլիմայիս և հարձակվելով, պաշարեց այն։ Եվ որով-
հետև քաղաքի բնակիչները չահաբեկվեցին նրա հարձակու-
մից, ոչ էլ պաշարումից, այլ քաջաբար դիմադրեցին, նրա
հույսերը ձախողվեցին. քանի որ նրան ետ մղեցին քաղա-
քից և, պարիսպներից դուրս գալով, հալածեցին այնպես, որ
Բաբելոն հասավ իբրև հալածական, կորցրած իր զորքի մե-
356 ծագույն մասը։ Եվ մինչդեռ նա տխրում էր այս ձախողման
պատճառով, գուժկանները նրան հաղորդում են նաև իր այն
զորավարների պարտությունը, որոնց թողել էր հրեաների դեմ
պատերազմ մղելու համար, ինչպես նաև պատմում են հրեա-
357 ների արդեն ձեռք բերած հզորության մասին։ Եվ այսպես,
իր նախկին տագնապին այս իրադարձությունների առթած
անհանգստությունը ևս ավելացավ, ու նա անհուսությամբ
ընկճվելով, հիվանդացավ. իսկ (հիվանդությունը) երկարելով
և ցավերը բարդացած լինելով, նա զգաց, որ պետք է մահա-
նա, կանչեց իր մոտ ընկերներին և հաղորդեց, որ իր հիվանդու-
թյունը ծանր է, և որ այդ բոլոր տառապանքների պատճառն
այն է, որ ինքը հալածել էր հրեական ազգը, կողոպտելով տա-
ճարը և աստծուն նախատելով. և այս ասելով նա շունչը փչեց։
358 Ուստի ես զարմանում եմ, որ Պոլիբիոս Մեգալոպոլիսեցին,
ազնիվ մարդ լինելով հանդերձ, ասում է, թե Անտիոքոսը մա-
հացավ, որովհետև ցանկացել էր կողոպտել Պարսկաստանում
գտնվող Արտեմիսի տաճարը, քանի որ մի բան ցանկանալը
359 սոսկ առանց այն ի կատար ածելու, դեռևս պատժի արժանի չէ։
Բայց եթե Պոլիբիոսը կարծում էր, թե Անտիոքոսն իր կյանքը
կորցրեց այդ եղանակով, ապա առավել հավանական է, որ թա-
գավորը մահացած լինի Երուսաղեմի տաճարը պղծությամբ
կողոպտած լինելու պատճառով։ Այս ասելով, սակայն, ես
չեմ ուզում վիճել նրանց հետ, որոնք Մեգալոպոլիսեցու տված
պատճառաբանությունը առավել ճիշտ են համարում, քան
մերը։

360 Բայց Անտիոքոսն իր մահից առաջ կանչելով իր ընկեր-
ներից Փիլիպպոսին, նրան նշանակում է թագավորության
խնամակալ, և թագն ու պատմուճանը և մատանին նրան
հանձնելով, պատվիրում է դրանք տանել և հանձնել իր որդի
Անտիոքոսին, միաժամանակ խնդրելով, հոգ տանել նրա դաս-
361 տիարակության և պահպանել գահը նրա համար։ Անտիո-
քոսը մահացավ հարյուր քառասունիններորդ տարում[159]։
Այնժամ Լյուսիասը նրա մահը ծանուցելով բազմությանը, թա-
գավոր է հռչակում նրա որդի Անտիոքոսին—քանի որ ինքն
էր նրա խնամակալը— և նրան անվանում Եվպատոր։

ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

184 Իսկ Դեմետրիոսը[160] գալիս հասնում է Միջագետք, կա-
մենալով նվաճել և՛ այդ երկիրը, և՛ Բաբելոնը, ու դառնալով
վերին սատրապությունների տիրակալը, այնտեղից վերահըս-
185 կել ամբողջ թագավորության գործերին։ Որովհետև այնտեղ
ապրող հույները և մակեդոնացիները մշտապես դեսպաններ
էին ուղարկում նրա մոտ, խոստանալով, որ եթե իրենց երկի-
րը ժամանի, ապա իրենք կհպատակվեն և, իր հետ դաշնակ-
ցած կպատերազմեն պարթևների թագավոր Արշակի դեմ[161]։
Այս հույսերով տարված, նա շտապեց նրանց մոտ, համոզ-
ված լինելով, որ եթե կործանի պարթևներին և ձեռք բերի սե-
փական զորք, ապա կպատերազմի Տրյուփոնի[162] դեմ և նրան
կվտարի Սիրիայից։ Ու քանի որ երկրի բնակիչները նրան սի-
րով ընդունեցին, նա զորք հավաքելով պատերազմեց Արշակի
դեմ, բայց իր ամբողջ զորքը կորցնելով, ինքը ևս գերի ըն-
կավ[163]...։

* * *

253 Սակայն Անտիոքոսը[164] պատերազմ սկսելով պարթև Ար-
շակի դեմ, կորցրեց իր զորքի մեծ մասը և ինքն էլ կործանվեց,
իսկ Սիրիայի գահը ժառանգեց նրա եղբայր Դեմետրիոսը այն
բանից հետո, երբ Արշակը նրան ազատեց գերությունից[165]
այն ժամանակ, երբ Անտիոքոսը արշավել էր պարթևների եր-
կիրը։

* * *

419 Այդ ժամանակ էլ լուր է հասնում, թե հայոց[166] թագավոր
Տիգրանը երեսուն բյուր զորքով[167] ներխուժել է Սիրիա և գա-
լիս է Հրեաստանի դեմ։ Այս, բնականաբար, ահաբեկեց թա-
գուհուն և ժողովրդին։ Ուստի նրանք բազում և արժանավայել
ընծաներ ուղարկեցին նրան և դեսպաններ, երբ նա դեռևս
420 պաշարում էր Պտղոմայիս (քաղաքը)։ Որովհետև Սելենե թա-
գուհին, որը կոչվում էր նաև Կլեոպատրա, այդ ժամանակ
տիրում էր Սիրիային և հորդորել էր բնակիչներին դռները
փակել Տիգրանի առաջ։ Ուստի դեսպանները հանդիպելով
նրան, խնդրում էին բարենպաստ պայմաններ շնորհել թա-
421 գուհուն և ժողովրդին։ Իսկ նա, գնահատելով այն, որ նրանք
ժամանել են այդքան հեռու տարածությունից, լավագույնս
հուսադրեց։ Բայց հազիվ էր Պտղոմայիսը գրավվել, երբ լուր
հասավ Տիգրանին, թե Լուկուլլոսը, հետապնդելով Միհրդա-
տին, չի կարողացել նրան բռնել, քանի որ (վերջինս) փախել
է իբերների երկիրը. և (Լուկուլլոսը), ասպատակելով Հայաս-
տանը, պաշարել է (մայրաքաղաքը)[168]։ Տիգրանն այս մա-
սին իմանալով, վերադարձավ իր սեփական երկիրը[169]։

### ԳԻՐՔ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

29 Այդ ընթացքում Պոմպեոսը Սկավրոսին ևս ուղարկում է
Սիրիա, քանզի ինքը Հայաստանում էր և դեռևս պատերազ-
մում էր Տիգրանի դեմ։

* * *

53 Եվ ոչ շատ ժամանակ հետո, մինչ Պոմպեոսը նրա դեմ
էր իր զորքերն առաջնորդում, ճանապարհին Պոնտոսից ժա-
մանած մարդիկ՝ հաղորդեցին նրան Միհրդատի մահը[170], որը
վրա էր հասել նրա որդի Փառնակեսի ձեռքով[171]։

* * *

110 Բայց ոչ ոք չպետք է զարմանա, որ մեր տաճարում այն-
քան շատ հարստություն կա, քանի որ ամբողջ աշխարհի
հրեաները և նրանք, որոնք աստվածապաշտ են, նույնիսկ

Ասիայում և Եվրոպայում բնակվողները, երկար ժամանակ
111 (տաճարին) տուրքեր են վճարել։ Վկայություններ չեն պա-
կասում հիշյալ գումարների խոշոր լինելու մասին, ոչ էլ
դրանք այդքան աճել են մեր սնապարծության և ավելորդա-
բանության շնորհիվ, այլ շատ ուրիշ հեղինակներ ևս վկա-
յում են այդ մասին, հատկապես կապպադովկիացի Ստրա-
112 բոնը[172], ասելով հետևյալը. «Միհրդատը (մարդ) ուղարկե-
լով Կոս[173], վերցրեց այն փողերը, որ թագուհի Կլեոպատ-
րան[174] էր այնտեղ պահ դրել, նաև հրեաների ութ հարյուր
113 տաղանդը»[175]։ Բայց մենք հանրային փողեր չունենք, բացի
աստծուն պատկանող փողերից. և հանրահայտ է, որ այդ
փողերը փոխադրել են Կոս Ասիայի հրեաները՝ Միհրդատից
սհաբեկված լինելու հետևանքով։ Որովհետև հավատալի չէ,
որ Հրեաստանում բնակվողները, ունենալով ամրացված քա-
ղաք և տաճար, փողերն ուղարկեին Կոս, ոչ էլ Ալեքսանդրիա-
յում ապրող հրեաներն այդպես կանեին, քանզի նրանք
Միհրդատից վախ չունեին։

* * *

119 Իսկ Կրասսոսը ամեն ինչ կարգավորելով այնպես, ինչ-
պես իրեն էր հաճելի, արշավեց դեպի Պարթիա. և ինքը իր ամ-
բողջ զորքի հետ միասին կործանվեց, ինչպես այլ տեղում
նկարագրված է[176], իսկ Կասսիոսը[177] փախչելով Սիրիա, այն
փորձեց վերցնել իր տիրապետության տակ, բայց խոչըն-
դոտվեց պարթևներից, ովոնք Կրասսոսի դեմ տարած հաղթա-
նակից հետո ասպատակում էին. այն։

* * *

330 Իսկ երկրորդ տարին Սիրիան նվաճել էին արքայորդի
Պակորոսը և Բարզափռանեսը, որը պարթևական սատրապ էր։
Նույն ժամանակ մահանում է Մեննայոսի որդի Պտղոմեոսը,
իսկ իշխանությունը վերցնելով նրա որդի Լյուսանիասը,
Արիստոբուլոսի որդի Անտիգոնոսի հետ բարեկամություն է
հաստատում, որի համար նա օգտագործում է սատրապին[178],
331 քանի որ սրա վրա մեծ ազդեցություն ուներ։ Անտիգոնոսը
խոստացավ պարթևներին տալ հազար տաղանդ և հինգ հար-
յուր կին, եթե նրանք իշխանությունը վերցնեն Հյուրկանոսից

և այն հանձնեն իրեն ու ոչնչացնեն Հերովդեսին և նրա մեր-
332 ձավորներին։ Նա, փաստորեն, նրանց չտվեց այս բոլորը,
այսուհանդերձ պարթևները, հանուն այդ ամենի, Անտիգոնո-
սին ետ բերելով իր երկիրը, արշավեցին Հրեաստան, Պակո-
րոսը ծովափով, իսկ սատրապ Բարզափռանեսը միջնաշ-
333 խարհով։ Սակայն Տյուրոսի բնակիչները փակեցին ճանա-
պարհը Պակորոսի առաջ, մինչդեռ Սիդոնի և Պտղոմայիսի
բնակիչները ընդունեցին նրան։ Ինչևիցե, երկիրը հետաղոտե-
լու և Անտիգոնոսին օգնելու նպատակով իր անվանակից՝ ար-
քունի տակառապետի հրամանատարությամբ Պակորոսը Հր-
334 րեաստան ուղարկեց հեծելազորի մի ջոկատ։ Եվ որովհետև
Կարմելոն կոչված լեռան մոտ ապրող հրեաներից ժամանեցին
Անտիգոնոսի մոտ և պատրաստ էին նրան օգնելու իր արշա-
վանքում, Անտիգոնոսը հույս ուներ երկրի մի մասն ստանալ.
իսկ այդ վայրը կոչվում էր Կաղնիներ։ Սակայն ոմանք նրանց
դիմադրելով, գալիս հասնում են Երուսաղեմ։ Եվ նրանց ուրիշ-
ներ ևս միանալով, մեծ մի խումբ կազմեցին և մոտենալով
335 պալատին, այն պաշարեցին։ Բայց Փասայելոսն ու Հերով-
դեսը իրենց մարդկանցով օգնության հասան պաշարվածնե-
րին, և ագորայում[179] տեղի ունեցած կռվում երիտասարդները
հաղթեցին թշնամուն. և նրանց մինչև տաճար հալածելուց
հետո մի խումբ հոպլիտներ ուղարկեցին մերձակա տները,
դրանք պահպանելու համար, բայց քանի որ հոպլիտները մե-
կուսացված էին, դեմոսը նրանց դեմ ոտքի ելնելով, տները
336 նրանց հետ միասին հրկիզեց։ Շատ չանցած, սակայն, այդ
անարգանքի համար Հերովդեսը վրեժ լուծեց ապստամբու-
թյան հակառակորդներից և նրանցից շատերին սպանեց
կռվում։

337 Մինչդեռ կատարվում էր ամենօրյա փոխնետաձգություն,
հակառակորդները սպասում էին քորայից ամբոխի ժամանե-
338 լուն պենտեկոստե կոչված տոնի օրը։ Ու երբ այդ օրը վրա հա-
սավ, տաճարի շուրջը խմբվեցին բյուրավոր մարդիկ, զինված
և անզեն։ Ժամանածները վերցրին տաճարը և քաղաքը, բա-
ցի պալատի շրջակայքից, որովհետև այդ վայրը պաշտպա-
339 նում էին Հերովդեսի մերձավորները սակավ զինվորների
հետ։ Եվ այսպես, մինչ Փասայելոսը պահպանում էր պարիս-
պը, Հերովդեսը մի ջոկատ վերցնելով, հարձակվեց թշնամու

վրա քաղաքի արվարձանում և բուռն կռվից հետո բաղում
բյուրավորների քշեց, որոնցից մի մասր փախավ քաղաք,
մյուս մասր ապաստան գտավ տաճարում, իսկ ուրիշներ ար-
տաքաղաքային խրամատներում, ինչպիսիք կային այնտեղ։
340 Հերովդեսին օգնում էր Փասայելոսը։ Իսկ Պակորոսը, պար-
թևների զորավարը, փոքրաթիվ հեծյալներով, Անտիգոնոսի
խնդրանքից հետո գալիս է քաղաք, իբրև թե խռովությունը
ճնշելու պատրվակով, բայց իրականում իշխանությունը դրա-
341 վելու գործում Անտիգոնոսին օգնելու համար։ Իսկ երբ Փա-
սայելոսը նրանց դիմավորեց և հյուրասիրաբար ընդունեց,
Պակորոսը հորդորեց նրան անձամբ դեսպանության գնալ
Բարզափռանեսի մոտ. սա նրա դեմ մտածված դավադրու-
թյուն էր։ Եվ Փասայելոսը ոչինչ չկասկածելով, համոզվում է,
թեև Հերովդեսը համաձայն չէր կատարվածին, այլ, ընդհա-
կառակը, խորհուրդ էր տալիս հարձակվել Պակորոսի և մյուս
ժամանածների վրա։
342 Եվ այսպես, Փասայելոսն ու Հյուրկանոսը գնացին դես-
պանության, իսկ Պակորոսը Հերովդեսի մոտ թողնելով երկու
հարյուր հեծյալ և տասը մարդ ազատ կոչվածներից[180], ու-
ղեկցեց նրանց։ Բայց երբ նրանք հասան Գալիլեա, այնտեղ
343 գտնվող թշնամիները նրանց դիմավորեցին զենքերով։ Եվ
Բարզափռանեսը սկզբում նրանց հոժարակամ ընդունեց և
ընծաներ պարգևեց, ապա սկսեց դավ նյութել նրանց դեմ։
Փասայելոսի հետ եղողները մեկնեցին Եկդիպոն, որը նայում
է դեպի ծովը. ճիշտ այստեղ էլ, երբ լսեցին, թե Անտիգոնոսը
խոստացել է իրենց հաշվին պարթևներին տալ հազար տա-
ղանդ և հինգ հարյուր կին, արդեն սկսեցին կասկած տածել
344 բարբարոսների նկատմամբ։ Այս բոլորից հետո ինչ-որ մեկը
հաղորդեց, որ նրանց դեմ դավադրություն է նյութված և այն
պետք է իրագործվի գիշերով, որ անտեսանելի մի պահակա-
խումբ է տեղավորված նրանց շուրջը, և որ նրանք վաղուց
կձերբակալվեին, եթե (դավադիրները) չսպասեին Հերովդեսի
ձերբակալմանը Երուսաղեմում գտնվող պարթևների կողմից,
որպեսզի չլինի թե սկզբում դեսպանության ձերբակալումը Հե-
րովդեսի (մտքում) կասկածներ հարուցի, և սա փախչի։ Եվ
այս բոլորը ճիշտ էր, քանի որ նրանց պահակախմբերն ար-
դեն երևում էին։ Ուստի ոմանք խորհուրդ էին տալիս Փասա-

345 յելոսին անմիջապես ձի հեծնել և այլևս չսպասել. առանձնա-
պես նրան այդ անել համոզում էր Օփելլիոսը, որն այդ ամենը
իմացել էր ժամանակի ամենահարուստ սիրիացի Սարա-
մալլայից, և խոստանում է փախուստի համար նրան նավ տր-
346 րամադրել, քանի որ ծովը մոտիկ էր։ Իսկ նա արդար չհա-
մարեց լքել Հյուրկանոսին և վտանգել իր եղբորը, այլ, ընդ-
հակառակը, գնալով Բարզափռանեսի մոտ, ասաց նրան, որ
արդար գործ չի անում իրենց նկատմամբ այդպիսի դավեր
նյութելով, քանզի եթե նա փողի կարիք էր զգում, կարող էր
ավելին ձեռք բերել իրենից, քան տվել էր Անտիգոնոսը, և,
բոլոր դեպքերում, դաժան է իր մոտ հավատարմորեն դեսպա-
նության ժամանած մարդկանց սպանելը, եթե սրանք ոչ մի
347 անարդարություն չեն գործել։ Իսկ բարբարոսը, երբ նա այս-
պես ասաց, երդվում էր, որ այդ ենթադրությունները իրական
չեն, այլ, ընդհակառակը, Փասայելոսին հուզող կասկածները
խաբուսիկ են. այնուհետև Բարզափռանեսը մեկնեց Պակորո-
սի մոտ[181]։
348 Երբ նա հեռացավ, պարթևներից ոմանք կալանավորե-
ցին Հյուրկանոսին և Փասայելոսին, որոնք խիստ հայհոյում
էին պարթևներին, նրանց երդմնազանցության համար։ Իսկ
Հերովդեսի մոտ ուղարկված տակառապետը[182] հրահանգ էր
ստացել նրան առաջնորդել պարսպից դուրս և ձերբակալել։
349 Բայց դիպվածի բերմամբ, Փասայելոսը սուրհանդակներ էր
ուղարկել պարթևների անհավատարմության մասին հայտնե-
լու, որոնց թշնամու կողմից ձերբակալումն իմանալով, Հե-
րովդեսը գնում է (գանգատվելու) Պակորոսի և պարթևների
հզորների մոտ, որպես մնացյալների վրա իշխանություն ու-
350 նեցողների։ Իսկ նրանք, ամեն ինչ իմանալով հանդերձ, նեն-
գորեն կեղծում էին և ասում նրան, որ իրենց հետ նա պետք
է դուրս գա պարսպի առաջ սուրհանդակներին դիմավորելու,
քանի որ նրանք չէին ձերբակալվել հակախռովարարների
կողմից, այլ եկել էին տեղեկանալու Փասայելոսի կատարած
351 սխրագործությունների մասին։ Հերովդեսը սրանց չհավա-
տաց, որովհետև ուրիշների միջոցով իմացել էր իր եղբոր
ձերբակալության մասին։ Եվ Հյուրկանոսի դստեր թելադրան-
քով, որի աղջկան ինքը նշանված էր, ավելի ևս սկսեց կաս-
կածել պարթևների վրա։ Մինչդեռ մյուսները սրան չէին հա-
վատում, ինքը անձամբ հավատում էր շատ խելամիտ կնոջը։

* * *

439 Իսկ Հերովդեսը իրեն օգնության հասած հեծյալների և
հետևակի հետ շտապեց Անտոնիոսի մոտ, որն այդ ժամա-
նակ պաշարում էր Սամոսատը՝ մի բնակավայր Եփրատին
440 մոտիկ[183]։ Հասնելով Անտիոք, նա այնտեղ պատահեց մեծ
թվով հավաքված մարդկանց, որոնք անհամբեր էին գնալու
դեպի Անտոնիոսը, բայց վախենալով բարբարոսներից, որոնք
ճանապարհին հարձակվում էին մարդկանց վրա և շատերին
սպանում, նրանք չէին համարձակվում մեկնել։ Նրանց քա-
ջալերելով ինքը դարձավ ճանապարհի առաջնորդը։ Իսկ
441 Սամոսատից երկու կայան հեռավորության վրա[184] բարբա-
րոսները դարանակալել էին, սպասելով Անտոնիոսի մոտ
գնացողներին։ Եվ որովհետև նրանք բռնել էին դեպի դաշ-
տավայրը տանող անտառների ելքը, որտեղ դարան էին
մտել ոչ փոքրաթիվ ձիավորներ, որոնք կարող էին հանգիստ
սպասել, մինչև անցորդները կհասնեին այնպիսի մի վայր,
442 որտեղ հնարավոր կլիներ ձիերն օգտագործել։ Երբ առաջին-
ներն անցան, իսկ Հերովդեսը վերջապահ գունդն էր տանում,
հանկարծակի հարձակվում են դարանակալները, որոնք մոտ
հինգ հարյուր էին, և առաջիններին հալածում։ Բայց թագա-
վորը վրա է հասնում և իր զինակիցների օգնությամբ անմի-
ջապես կասեցնում հակառակորդին, միաժամանակ բարձ-
րացնում է յուրայինների բարոյական կորովը, նրանց քա-
443 ջություն ոգեշնչելով։ Այսպիսով, սկզբում փախուստի մատ-
նըվածները ետ դառնալով կռվում էին, և բարբարոսները ամեն
կողմ սպանվում էին։ Իսկ թագավորը շտապում էր, ճանա-
պարհին կոտորելով նրանց, և ամբողջ (բարբարոսների կող-
մից) խլվածները—իսկ փոխադրակայիններն ու ստրուկները մեծա-
444 թիվ էին—վերստին փրկելով, շարժվեց առաջ։ Եվ դաշտա-
վայրի մուտքի մոտ անտառներում դարանակալած ավելի
մեծ թվով մարդկանց հարձակմանը ենթարկվելով, նրանց հետ
ևս մարտի է բռնվում մի խումբ հաղթանդամ յուրայիններով,
նրանցից շատերին սպանում է և դրանով իսկ իր ետևից
եկողների համար ճանապարհն անվտանգ դարձնում։ Ուստի և
նրանք իրեն փրկիչ և պահապան էին անվանում։

445 Իսկ երբ նա հասավ Սամոսատի մոտ, Անտոնիոսն իր
զորքը իր անձնական շքախմբով ուղարկեց նրան դիմավորե-
լու, դրանով իսկ պատիվ շնորհելով Հերովդեսին, միաժամա-

նակ օժանդակություն ցույց տալով, որովհետև լսել էր նրա
վրա բարբարոսների կատարած հարձակման մասին։ Իսկ
446 երբ Հերովդեսը ժամանեց, (Անտոնիոսը) ուրախացավ նրան
տեսնելով, և իմանալով ճանապարհին նրա կատարածների
մասին, բարձրացրեց աջը և իր հիացմունքն արտահայտեց
նրա առաքինության համար. հետո ինքն Անտոնիոսը գրկեց
նրան և հատուկ հարգանք ցույց տվեց ու նորից թագավոր
447 հռչակեց։ Բայց շատ չանցած Անտիոքոսը հանձնում է ամ-
րությունը, դրանով իսկ դադարեցնելով պատերազմը[85]։ Այ-
նուհետև Անտոնիոսը Սիրիան հանձնում է Սոսիոսին, միա-
ժամանակ հրահանգելով նրան օգնել Հերովդեսին, իսկ ինքը
մեկնում է Եգիպտոս։ Եվ Սոսիոսը առաջից երկու լեգեոն ու-
ղարկեց Հրեաստան, Հերովդեսին օգնելու, մինչդեռ ինքը իր
բանակի մեծագույն մասով ընդհուպ հետևում էր։

## ԳԻՐՔ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ

11 Լսելով, որ Հերովդեսը տիրացել է (հրեից) թագավորու-
թյանը, քահանայապետ Հյուրկանոսը, որը գերեվարվել էր
պարթևներից, գալիս է Հերովդեսի մոտ, գերությունից հետև-
12 յալ կերպ ազատվելով։ Պարթևների զորավարներ Բարզափռա-
նեսը և Պակորոսը գերի վերցնելով նախկինում քահանա-
յապետ, ապա՝ թագավոր դարձած Հյուրկանոսին և Հերով-
13 դեսի եղբայր Փասայելոսին, քշեցին Պարթիա։ Փասայելոսը,
սակայն, չկարողանալով տանել կապանքի նախատինքը, ա-
մեն գնով ապրելուց առավել գերադասելի համարեց փառքով
մեռնելը և ինքնասպանություն գործեց, ինչպես ասել եմ նա-
խապես։

14 Երբ Հյուրկանոսը տարվեց այնտեղ, պարթևների թագա-
վոր Փրաատեսը[186] նրա նկատմամբ շատ մեղմությամբ վերա-
բերվեց, լսած լինելով նրա ազնվական և նշանավոր ծագման
մասին։ Այդ իսկ պատճառով, նրան ազատ արձակեց կա-
պանքներից և արտոնեց հաստատվել Բաբելոնում, որտեղ
15 մեծ թվով հրեաներ էին բնակվում։ Սրանք Հյուրկանոսին մե-
ծարում էին որպես քահանայապետի և թագավորի. նույնը
նաև մինչև Եփրատ բնակվող ամբողջ հրեական ազգը։ Այս
բոլորը հաճելի էր նրան։ Բայց իմանալով, որ Հերովդեսը
16 վերցրել է թագավորական իշխանությունը, նորից հուսադըր-

վեց, քանի որ սկզբից ևեթ նրա նկատմամբ բարեհոգի վերա-
բերմունք ուներ և ակնկալում էր, որ (Հերովդեսը) կհիշի նր-
րան մատուցած իր ծառայությունները, երբ նա մեղադրվում
էր և արդեն պետք էր մահվան դատապարտվել, ինքը նրան
փրկեց այդ վտանգից և պատժից։ Հետևաբար, այդ մասին
տեղեկացնելով հրեաներին, շտապեց մեկնել նրա մոտ[187]։ Իսկ
17 նրանք հաստատապես պահանջում էին Հյուրկանոսից մնալ,
հիշեցնելով իրեն տրված պաշտոններն ու պատիվները, ասե-
լով, որ իրենց մոտ նա զուրկ չի մնա քահանայապետներին
կամ թագավորներին ցույց տրված պատիվներից և, որ ավելի
կարևոր էր, նա այնտեղ՝ Հրեաստանում, այդպիսի (պատիվ-
ների) չէր արժանանա իր մարմնական խեղվածության պատ-
ճառով, որին ենթարկվել էր Անտիգոնոսի կողմից. իսկ որ-
պես հասարակ մարդ ստացված շնորհները նույնությամբ չեն
վերադարձվում թագավոր դառնալուց հետո, քանի որ (հա-
ջող) բախտը այդպիսիներին փոխում է ոչ քիչ չափով։
18 Ի հեճուկս նրանց այդպիսի օգտավետ առաջարկներին,
Հյուրկանոսը բուռն ցանկություն ունեցավ մեկնելու. և Հե-
րովդեսը նրան գրեց՝ խնդրել Փրաատեսից և այնտեղի հրեա-
ներից չպախարակել իրեն այն բանի համար, որ ցանկանում
է թագավորական իշխանությունը կիսել (Հերովդեսի) հետ,
քանի որ սա ճիշտ այն պահն է, երբ Հերովդեսը կարող է վար-
ձահատույց լինել այն բանի համար, որ իր ձեռքով սնվել,
դաստիարակվել է ու փրկվել, իսկ ինքը կարող է իր բարե-
19 գործության համար վարձատրվել։ Այս ամենը Հյուրկանոսին
գրելուց հետո, Փրաատեսի մոտ ուղարկում է նաև Սարամալլա-
յին, որպես դեսպան, և բազում ընծաներ, (խնդրելով) չար-
գելել իրեն բարերարին նույն առաքինությամբ հատուցել, ինչ
20 ինքը տեսել էր նրանից։ Նրա (դրսևորած) եռանդի պատճառը,
սակայն, դա չէր, այլ այն փաստը, որ ինքը արժանի չէր իշ-
խելու և վախենում էր բարենպաստ փոփոխություններից. ուս-
տի և շտապում է Հյուրկանոսին ձեռքի տակ ունենալ կամ ամ-
բողջովին նրան տապալել։ Եվ այս իրագործեց հետագայում։

* * *

96 Կլեոպատրան այդ (պարգևներն) ստանալուց և Անտոնիո-
սին Հայաստանի դեմ ձեռնարկած արշավանքի ժամանակ

մինչև Եփրատ ուղեկցելուց հետո, վերադարձավ Հրեաստան,
որտեղ նրան դիմավորեց Հերովդեսը և վարձակալեց նրանից
Արաբիայի նրան շնորհված մասերը, ինչպես նաև Երիքովի
շրջանի եկամուտները։ Այս երկիրը արտադրում է բալասան,
որն այնտեղ ամենապատվական բանն է և միայն այդ երկրում
է աճում, նաև առատ ու լավ արմավ։

* * *

104 Եվ Անտոնիոսը, Հայաստանը նվաճելուց հետո, Տիգրանի
որդի Արտավազդին[188] նրա որդիների ու սատրապների հետ
միասին կալանավոր ուղարկում է Եգիպտոս և Կլեոպատրա-
յին է նվիրում նրանց, ինչպես նաև թագավորության ամբողջ
զարդերը, որ հափշտակել էր այնտեղից։ Իսկ Հայաստանի
թագավոր դարձավ (Արտավազդի) անդրանիկ որդին՝ Ար-
105 տաշեսը[189], որն այդ իրադարձությունների ժամանակ (կա-
րողացել էր) փախչել։ Սրան էլ Արքելաոսը[190] և Կեսար Նե-
րոնը[191] վտարեցին և գահի վրա հաստատեցին նրա կրտսեր
եղբայր Տիգրանին[192]։ Բայց այդ դեպքերը հետագային են
վերաբերում։

ԳԻՐՔ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

39 Այդ ժամանակամիջոցում մահանում է Փրաատեսը՝ պար-
թևների թագավորը, իր որդի Փրաատակեսի[193] կողմից իր դեմ
նյութված դավադրության հետևանքով, հետևյալ հանգամանք-
ների մեջ[194]։
40 Փրաատեսը, որն արդեն ուներ օրինական զավակներ,
սիրահարվում է մի իտալուհի երիտասարդ ստրկուհու, Թես-
մուսա[195] անունով։ Սա այլ ընծաների թվում իրեն ուղարկվել
էր Հուլիոս Կեսարի կողմից, և ինքը սկզբում նրան օգտագոր-
ծում էր որպես վարձակ, բայց այնքան հիացել էր նրա շռայլ
գեղեցկությամբ, որ ժամանակի ընթացքում, երբ արդեն նրա-
նից ունեցավ որդի՝ Փրաատակեսին, նա այդ ստրկուհուն իր
41 կինը հռչակեց և նրան (համապատասխան) պատվի արժա-
նացրեց։ Երբ նա արդեն դարձավ այնպիսին, որ նրա ամեն
ասածը թագավորի հավանությանն էր արժանանում, շտա-
պեց իր որդուն դարձնել պարթևների առաջնորդ. և իրեն
թվում էր, թե այդ նպատակը հնարավոր է իրականացնել

միայն (այն դեպքում), երբ դավադրաբար հեռացնի Փրաատե-
սի հարազատ որդիներին։ Ուստի համոզում է նրան իր հա-
42 րազատ որդիներին պատանդ ուղարկել Հռոմ[196]։ Այսպիսով
նրանք, քանի որ Փրաատեսի համար հեշտ չէր հակաճառել
Թեսմուսայի թելադրանքներին, ուղարկվեցին Հռոմ[197]։ Իսկ
Փրաատակեսը, որը մենակ էր դաստիարակվում իշխանության
(գլուխ անցնելու) համար, մտածում էր, որ վտանգավոր և
ձանձրալի երկար է սպասել, որպեսզի հոր հեռանալուց հետո
իշխանությունը ստանա. ուստի և դավադրություն է նյութում
իր հոր դեմ, մոր մասնակցությամբ, որի հետ, ըստ խոսակ-
43 ցությունների, ինքը կենակցում էր։ Եվ նա ատելի դարձավ
երկու տեսակետից. հայրասպանությունից ոչ պակաս իր մոր
նկատմամբ տածած սեռական սերը նողկանք առաջացրեց
հպատակների մեջ. այնպես որ նախքան նա կհզորանար,
ապստամբություն ծագեց նրա դեմ, և նա գահընկեց արվեց ու
44 այդպես մահացավ[198]։ Իսկ ազնվագույն ծագում ունեցող
պարթևները ժողով գումարելով, համաձայնվեցին, որ առանց
թագավորի հնարավոր չէ երկիրը կառավարել և սահմանե-
ցին, որ թագավորական գահը պետք է գրավի Արշակունի
տոհմից սերած անձնավորությունը, որովհետև օրինական չէ,
որ ուրիշները կառավարեն։ Իսկ բավականաչափ հաճախակի
մինչև հիմա էլ թագավորական իշխանությունը անարգվել է
և՛ իտալուհի հարճի ամուսնության, և՛ նրա ծնելու հետևան-
քով. և նրանք դեսպանություն ուղարկելով, հրավիրեցին
Օրոդեսին, որը թեկուզև սիրելի չէր բազմությանը ոչ միայն իր
չափազանց դաժանության, այլև ծայր աստիճան հիմար ու
զայրույթի պահին չարանենգ լինելու համար, սակայն այդ
45 տոհմի մի անդամն էր։ Այսուհանդերձ, միաբանելով, սրան
ևս սպանեցին[199], ինչպես ոմանք ասում են, սեղանին (նստած)
խնջույքի և ողջակեզ մատուցելու ժամանակ, քանի որ բո-
լորի համար սովորություն է ողջակեզ մատուցելու պահին դա-
շույն կրել։ Բայց, մեծամասնության ասելով, նրան սպանել
46 են որսորդության ժամանակ։ Ու երբ դեսպանություն ուղար-
կեցին Հռոմ և (իրենց համար) թագավոր խնդրեցին այնտեղ
գտնվող պատանդներից մեկին, ապա եղբայրների միջից
նախապատվությունը տրվեց Վոնոնեսին, որը և ուղարկվեց։
Որովհետև թվում էր, թե նա կարող է տանել այն բախտավո-
րությունը, որ նրան շնորհում էին երկու խոշորագույն տերու-

47 թյուններն արևի տակ, յուրայինը և օտարը։ Սակայն բար-
բարոսները ենթակա են (զգացմունքների) արագ փոփոխման.
քանի որ նրանք բնականից անկայուն են, առավել ևս երբ
ենթարկվում են անարգանքի, մանավանդ որ նրանք չէին
հանդուրժում հնազանդվել այն մարդուն, որն օտարին էր
դարձել ստրուկ—նրանք պատանդ լինելը ստրկություն էին
համարում—ոչ էլ կարող էին հանդուրժել այդ կոչման նվաս-
տացումը։ Քանի որ պատերազմական արդարությամբ չէ, որ
նա իբրև թագավոր տրվել էր պարթևներին, այլ, որ բոլորից
վատթարագույնն է, ոտնահարելով խաղաղությունը։ Ուստի և
նույնհետայն հրավիրում են թագավորելու Մեդիայի (թագա-
48 վոր) Արտաբանոսին[200] Արշակունի տոհմից։ Իսկ Արտաբա-
նոսը հավանություն է տալիս ու գալիս է իր զորքի հետ։ Վո-
նոնեսը դուրս է գալիս նրան դիմագրավելու։ Եվ սկզբում,
քանի դեռ պարթևների մեծամասնությունը իրեն համամիտ
էր, կռիվ մղելով, նա հաղթում է, իսկ Արտաբանոսը փախ-
49 չում է դեպի Մեդիայի սահմանները։ Բայց շատ չանցած,
(Արտաբանոսը), համախմբելով իր զորքերը, հարձակվում
է Վոնոնեսի վրա և հաղթում նրան, իսկ Վոնոնեսը հեծյալ
փախչում է իր փոքրաթիվ մերձավորների հետ Սելևկիա[201]։
Եվ Արտաբանոսը, որը բարբարոսներին ահաբեկելու նպա-
տակով ճանապարհին մեծ ջարդեր գործեց, իր բազմությամբ
50 մեկնում է Կտեսիփոն[202]։ Եվ Արտաբանոսը թագավորում է
պարթևների մոտ, մինչդեռ Վոնոնեսը ապաստան է գտնում
Հայաստանում[203]։ Սկզբում սա փորձեց տիրել երկրին և դես-
51 պանություն ուղարկեց հռոմայեցիների մոտ։ Սակայն Տի-
բերիոսը նրա խնդրանքը մերժեց, նրա փոքրոգության, ինչ-
պես նաև պարթևական (թագավորի) սպառնալիքների պատ-
ճառով, քանի որ (Արտաբանոսը) դեսպանություն ուղարկելով,
սպառնացել էր պատերազմ սկսել։ Մինչդեռ Վոնոնեսը թա-
գավոր դառնալու ոչ մի այլ հնարավորություն չուներ, քանի
որ Նպատի[204] շուրջ բնակվող հայ մեծամեծները հարել էին
Արտաբանոսին, որոնք և Վոնոնեսին հանձնեցին Սիրիայի
52 ստրատեգոս Սիլանոսին։ Եվ (Վոնոնեսը), հանուն Հռոմում
իր ստացած դաստիարակության, ապաստան գտավ Սիրիա-
յում. իսկ Հայաստանը Արտաբանոսը տվեց իր որդիներից
մեկին՝ Օրոդեսին[205]։
53 Մահացավ նաև Կոմմագենեի թագավոր Անտիոքոսը, ո-

րից հետո բազմությունը դեմ դուրս եկավ երևելիներին. ուս-
տի և երկու կողմերն էլ առանձին դեսպանություն են ուղար-
կում. մեծամեծները խնդրում էին երկրի պետական կարգը
փոխել և այն վերածել (հռոմեական) պրովինցիայի, իսկ
բազմությունը (ցանկանում էր) հայրենի սովորության հա-
54 մաձայն թագավոր ունենալ[206]։ (Հռոմի) սենատը որոշում է
Գերմանիկոսին ուղարկել Արևելքի դրությունը կարգավորելու
համար, այս հանգամանքը վերջինիս սպանության համար
հարմար առիթ դարձնելով. որովհետև, երբ սա ժամանեց
Արևելք և ամեն ինչ կարգավորեց, թունավորման միջոցով
վերացվեց Պիսոնի ձեռքով, ինչպես այդ մասին գրել են ու-
րիշները։

* * *

96 Այնժամ էլ Տիբերիոսը թուղթ է ուղարկում Վիտելլիո-
սին[207], հրահանգելով նրան բարեկամություն հաստատել
պարթևների թագավոր Արտաբանոսի հետ։ Որովհետև նրան
սարսափեցնում էր այն, որ չլինի թե (Արտաբանոսը), որը
թշնամի էր և հափշտակել էր Հայաստանը, ավելի մեծ չա-
րիքներ գործի[208]։ Եվ (հրահանգում է) հավատալ նրա բարե-
կամությանը միայն (այն դեպքում), երբ կտրվեն պատանդ-
97 ներ և, գլխավորապես, Արտաբանոսի որդին։ Տիբերիոսն այս
ամենը Վիտելլիոսին գրելուց հետո, մեծ գումարներ տալով,
համոզում է և՛ իբերների, և՛ աղվանների թագավորներին, ա-
ռանց վարանելու պատերազմի ելնել Արտաբանոսի դեմ։ Իսկ
նրանք, թեև դեմ կանգնեցին, սակայն Կասպյան դռները բաց
անելով ալանների առաջ, իրենց երկրի միջով ճանապարհ
98 տվեցին նրանց Արտաբանոսի դեմ։ Այսպիսով, Հայաստանը
ևս շուտով վերանվաճվեց, ու քանի որ պարթևների երկիրը
բռնկվել էր պատերազմով, այնտեղ ևս բնակվող մարդկան-
ցից լավագույնները սպանվեցին ու նրանց երկիրն ավերվեց,
և միաժամանակ թագավորի որդին այդ կռիվներում ընկավ
99 ու նրա հետ բազում բյուրավոր զորք[209]։ Եվ Վիտելլիոսը նրա
հոր՝ Արտաբանոսի ազգակիցներին ու բարեկամներին դրամ
ուղարկելով, մտածում էր այդ ընծաները ստացողների ձեռ-
քով սպանել նրան, և այդ դավադրությունը անխուսափելի
հաջողություն կունենար, քանի որ այն կազմակերպված էր
100 երևելի շատ մարդկանց կողմից, եթե Արտաբանոսը չկռա-

հեր այն և համոզված չլիներ, որ նույնիսկ նրանք էլ, որոնք անկեղծորեն իրեն էին պաշտպանել, հիմա կաշառված էին և նենգամտաբար հավատարմություն էին ձևացնում, կամ թե իր հանդեպ որևէ մահափորձ կատարվելու դեպքում, նրանք կանցնեին իր հակառակորդների կողմը. ուստի և նա իրեն փրկեց, փախչելով վերին սատրապությունների մեկը։ Հետագայում նա դայերից ու սակերից[210] (կազմված) խոշոր բանակ հավաքելով, պատերազմ մղեց իր հակառակորդների դեմ և գրավեց իշխանությունը։

101 Տիբերիոսը, լսելով այս բոլորի մասին, արդեն ձգտում
էր բարեկամություն հաստատել Արտաբանոսի հետ, և երբ
այդ մասին նրան հաղորդեցին, ինքը հաճույքով ընդունեց։
Ուստի Արտաբանոսը և Վիտելլիոսը գալիս (և հանդիպում) են
102. Եփրատի վրա։ Ու գետը կամրջելով, նրանք հանդիպեցին
կամրջի ուղիղ մեջտեղում, յուրաքանչյուրն իր հետ ունենալով իր թիկնապահներին։ Երբ համաձայնության պայմաններին հասան, չորրորդապետ[211] Հերովդեսը խնջույք տվեց նրանց, գետանցի մեջտեղում պատրաստած իր շքեղազույն
103 վրանի մեջ։ Եվ Արտաբանոսը որպես պատանդ Տիբերիոսին
է ուղարկում իր Դարեհ որդուն բազում ընծաներով, որոնց թվում նաև յոթ կանգուն հասակով, ցեղով հրեա, Եղիազար անունով մեկին։

* * *

139 Իսկ Ալեքսանդրը՝ Հերովդես թագավորի որդին, որն իր հոր ձեռքով սպանվել էր, ունեցել էր երկու որդի՝ Ալեքսանդրին և Տիգրանին՝ Կապպադովկիայի թագավոր Արքելաոսի դստրից։ Եվ Տիգրանը, որը թագավորում էր Հայաստանում, անզավակ մեռավ այն բանից հետո, երբ ամբաստանվելով տարվեց Հռոմ[212]։ Իսկ Ալեքսանդրը ունեցավ իր եղբոր անվանակից որդի՝ Տիգրանին, որը հետագայում Ներոնի կողմից ուղարկվեց որպես՝ Հայաստանի թագավոր[213]. այս Տիգրանն էլ ունեցավ Ալեքսանդր անունով որդի։ Սա ամուսնացավ Կոմմագենեի Անտիոքոս թագավորի դուստր Յոտապեի հետ, և Վեսպասիանոսը[214] նրան հաստատեց Կիլիկիայում գտնվող Կետիսի թագավոր։ Իսկ (Տիգրանի եղբայր) Ալեքսանդրի սերունդը ամբողջ տոհմով հրաժարվեց հրեական ավանդու-

թյունների պահպանումից և նրանք նվիրվեցին հելլենական
ավանդությունների պահպանմանը։

### ԳԻՐՔ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

276 Իսկ Անտիոքոսից[215] վերցնելով նրա ունեցած թագավո-
րությունը, (Կլավդիոսը)[216] նրան (փոխարենը) շնորհեց Կի-
լիկիայի մի մասը և Կոմմագենեն։ Այնուհետև, ազատ արձա-
կեց նաև ալաբարքեսի (պաշտոնը վարող)[217] Ալեքսանդրին՝
իր հին ընկերներից մեկին, որն իր մոր՝ Անտոնիայի խնամա-
կալն էր եղել և բանտարկվել էր Գայոսի կողմից նրա զայ-
րույթի հետևանքով։

* * *

338 Բերիտոսում կատարելով վերոհիշյալ ծիսակատարու-
թյունները, (Ագրիպպասը) եկավ Գալիլեայի Տիբերիաս քա-
ղաքը։ Նա արդեն ակնհայտորեն բոլոր մյուս թագավորներից
առավել աչքի ընկնողն էր։ Համենայն դեպս, նրա մոտ ժա-
մանեցին Կոմմագենեի ճագավոր Անտիոքոսը, Եմեսայի թա-
գավոր Սամպսիգերամոսը[218], Կոտիսը[219], որը թագավոր էր
Փոքր Հայքում և Պոլեմոնը[220], որը տիրացել էր Պոնտոսի իշ-
խանությանը, և Հերովդեսը, որը նրա եղբայրն էր և իշխում
էր Քաղկիսում։

### ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ

17 Իսկ այդ ժամանակ Ադիաբենեի[221] Հելենե թագուհին և
նրա որդի Իզատեսը դարձան հրեական բարքերի հետևորդներ
հետևյալ հանգամանքներում։ Ադիաբենեի թագավոր Մոնո-
բազոսը, որն ուներ նաև Բազեոս մականունը, սիրահար-
վելով իր քրոջը՝ Հելենեին, նրա հետ ամուսնական հարաբե-
18 րությունների մեջ մտավ ու նրան հղի թողեց։ Մի անգամ նրա
կողքին քնած ժամանակ, նա իր ձեռքը դրել էր կնոջ փորի
վրա։ Մինչ նա քնած էր, նրան թվաց, թե մի ձայն լսեց, որը
հրամայում էր իրեն ձեռքը վերցնել նրա փորի վրայից ու
չճզմել նրանում գտնվող երեխային, որը աստվածային կան-
խորոշմամբ, երջանիկ ծնունդ կունենա և բախտավոր վախ-
19 ճան։ Խռովվելով այդ ձայնից, իսկույն վեր կացավ և այս ա-
մենը պատմեց կնոջը. և (ծնված) որդուն անվանեց Իզա-

տես[222]։ Նա Հելենեից ուներ և մի ավագ որդի՝ Մոնոբազոս
20 անունով և ուրիշ որդիներ իր մյուս կանանցից։ Սակայն բա-
ցահայտ էր, որ ամբողջ հոգատարությունը նա կենտրոնաց-
րել էր Իզատեսի վրա, ասես սա իր միածին որդին լիներ։
21 Այդ իսկ պատճառով տղայի նկատմամբ նույն հորից ծնված
եղբայրների մոտ նախանձ առաջացավ, որը վերածվում էր
ատելության, որովհետև բոլորը վշտանում էին, որ իրենց
հայրը (բոլոր որդիների մեջ) նախապատվությունը տալիս է
22 Իզատեսին։ Այս ամենը հայրը թեկուզ և պարզորոշ հասկա-
նում էր, բայց ներողամիտ էր գտնվում, նրանց այդ զգացում-
ները վերագրելով ոչ թե չարամտության, այլ այն բանին, որ
նրանցից յուրաքանչյուրը ցանկանում էր արժանանալ հոր
բարեհաճությանը։ Ուստի պատանի (Իզատեսին), քանի որ
շատ էր անհանգստանում նրա մասին, որպեսզի չլինի թե
եղբայրների ատելության պատճառով որևէ վտանգի են-
թարկվի, առատ ընծաներով ուղարկում է Սպասինու Քարակ-
սի թագավոր Աբեններիգոսի[223] մոտ, վերջինիս հանձնարարե-
23 լով տղայի ապահովությունը։ Իսկ Աբեններիգոսը սիրահոժար
ընդունեց երիտասարդին և նրա հետ բարյացակամ վերաբեր-
վելով, նրան կին տվեց իր դստերը, որի անունը Սամաքո էր,
միաժամանակ նրան պարգևեց երկիր, որից նա կարող էր
խոշոր եկամուտներ ստանալ։
24 Իսկ Մոնոբազոսն արդեն ծերացած լինելով և տեսնելով,
որ ինքը երկար չի ապրելու, ցանկացավ վախճանվելուց ա-
ռաջ տեսակցել իր որդու հետ։ Ուստի և նրան իր մոտ կան-
չելով, ամենասիրալիր կերպով ողջագուրվում է և պարգևում
25 նրան Կարրոն[224] կոչված երկիրը։ Այդ երկիրը առատորեն
արտադրում է բարձրորակ համեմունք։ Այնտեղ են գտնվում
նաև այն տապանի բեկորները, որով, զրույցի համաձայն,
Նոքոսը փրկվել է ջրհեղեղից, և մինչև հիմա դրանք ցու-
ցադրվում են տեսնել ցանկացողներին։ Ուստի և Իզատեսն
26 ապրում էր այդ երկրում մինչև իր հոր վախճանվելը։ Մոնո-
բազոսի մահվան օրն իսկ Հելենե թագուհին իր մոտ է հրա-
վիրում բոլոր մեծամեծներին և թագավորության սատրապ-
ներին և նրանց, ում վստահված էր բանակը։ Երբ նրանք
27 ժամանեցին, ասաց նրանց. «Կարծում եմ, դուք անտեղյակ
չեք լինի այն բանին, որ իմ ամուսինը իր թագավորության
ժառանգորդ ցանկանում էր տեսնել Իզատեսին և նրան այդ

պատվին արժանի էր համարում, այսուհանդերձ, ես սպա-
սում եմ ձեր վճռին ևս։ Որովհետև, օրհնյալ է նա, ով ոչ թե
28 մեկի, այլ շատերի կամքով է իշխանություն ստանում»։ Նա
այս խոսքերը ասաց, փորձելու համար, թե ի՞նչ են մտածում
հրավիրվածները։ Իսկ նրանք, լսելուց հետո, նախ խոնարհ-
վեցին թագուհու առաջ, ինչպես սովորություն էր նրանց մոտ,
ապա ասացին, որ հաստատում են թագավորի կարծիքը և սի-
րով կհնազանդվեն Իզատեսին, որին արդարացի կերպով
հայրը գերադասել է մյուս եղբայրներից, և իրենց բոլորի
29 ցանկությունն իսկ այդ է։ Ասացին նաև, որ նախ իրենք
մտածել են սպանել նրա եղբայրներին և ազգակիցներին,
որպեսզի Իզատեսը կարողանա ապահով կերպով իր ձեռքում
պահել իշխանությունը, որովհետև եթե նրանք ոչնչացվեն,
ապա կվերանա նրանց ատելության և նախանձի պատճառով
30 առաջացած վտանգը։ Ի պատասխան այս խոսքերին, Հելենեն
իր և Իզատեսի կողմից շնորհակալություն հայտնեց իրենց
նկատմամբ նրանց ունեցած բարյացակամության համար.
սակայն նրանց խնդրեց եղբայրներին ոչնչացնելու մասին ի-
րենց մտադրությունը հետաձգել, մինչև Իզատեսը կգար ու
31 կտար իր համաձայնությունը։ Իսկ նրանք, քանի որ չկարողա-
ցան (թագուհուն) համոզել (եղբայրներին) ոչնչացնելու,
խորհուրդ տվեցին մինչև նրա ժամանումը, բանտարկել
նրանց, որպեսզի իրենք ապահով լինեն։ Նաև խորհուրդ տվե-
ցին. մինչ այդ՝ մեկին, ում (թագուհին) առավել էր վստա-
32 հում, նշանակել իշխանության խնամակալ[225]։ Հելենեն այդ
խոսքերին համոզվեց և ավագ որդուն՝ Մոնոբազոսին կար-
գեց թագավոր, խույրը դնելով նրա գլխին և տալով նրան հոր
կնիք-մատանին և նրանց մոտ սամպսերա[226] կոչվածը ու
համոզեց նրան թագավորությունը կառավարել մինչև եղբոր
33 ներկայանալը։ Իսկ վերջինս, լսելով իր հոր մահը, շտապ
ժամանեց և հաջորդեց իր եղբայր Մոնոբազոսին, որն իշխա-
նությունից հրաժարվեց իր օգտին։
34 Մինչդեռ Իզատեսը Սպասինու Քարակսում էր գտնվում,
Անանիա անունով ոմն հրեա վաճառական, մտնելով թագավո-
րի կանանց մոտ, նրանց քարոզում էր աստծուն պաշտել
հրեական բարքերի համաձայն ու նրանց միջոցով իսկ նա
հայտնի դարձավ Իզատեսին և նրան նույնպես կարողացավ
35 համոզել։ Ու երբ (Իզատեսը) Ադիաբենե կանչվեց իր հոր

կողմից, (Անանիան) ևս ողջեկցեց նրան, հնազանդվելով նրա
խիստ թախանձանքներին։ Ու պատահեց, որ մեկ այլ հրեա,
Հելենեին ևս քարոզելով, դավանափոխ արեց դեպի հրեական
36 սովորույթները։ Իսկ Իզատեսը, երբ վերցնելով իշխանու-
թյունը, եկավ Ադիաբենե ու տեսավ իր եղբայրներին ու ազ-
գակիցներին բանտարկված, սրտնեղեց կատարվածի համար։
37 Ու նրանց ոչնչացնելը կամ բանտարկված պահելը անարգա-
կան համարելով, միաժամանակ մտածելով, որ սխալ է նաև
նրանց առանց բանտարկելու իր մոտ պահելը, քանի որ
նրանք վրեժխնդիր կլինեին, նրանց մի մասին, որդիների հետ
միասին, ուղարկեց Հռոմ, որպես պատանդ, Կլավդիոս Կե-
սարի մոտ, մյուսներին ևս նույն պատրվակով ուղարկեց
պարթև Արտաբանեսի մոտ։

* * *

54 Պարթևների թագավոր Արտաբանեսը զգալով, որ սատ-
րապներն իր դեմ դավադրություն են նյութում, և տեսնելով,
որ նրանց հետ մնալն արդեն ապահով չէ, որոշեց հեռանալ
Իզատեսի մոտ, նպատակ ունենալով նրա մոտ փրկության
միջոց գտնել, և, եթե այդ հնարավոր լինի, կարողանա վե-
55 րադառնալ իր իշխանության գլուխ։ Այսպիսով, նա ժամա-
նում է իր ազգակիցներից ու ծառաներից շուրջ հազար հո-
գու ուղեկցությամբ ու ճանապարհին պատահում է Իզատե-
56 սին։ (Արտաբանեսը) լավ ճանաչեց նրան, բայց Իզատեսի
կողմից չճանաչվելով, կանգնեց նրա մոտ և, հայրենի սովո-
րության համաձայն, խոնարհվելուց հետո ասաց. «Ո՛վ ար-
քա, անտարբեր մի լինի իմ՝ քեզ ապավինողի նկատմամբ և մի
արհամարհիր իմ խնդրանքը. քանզի բախտի փոփոխման հե-
տևանքով ստորացել եմ ու թագավորից հասարակ մարդ դար-
57 ձած, քո օգնության կարիքն ունեմ։ Ուստի և տես բախտի ան-
կայունությունը և իմացիր, որ այդ նախախնամությունը ընդ-
հանուր է նաև քեզ համար։ Որովհետև, եթե ես մնամ անու-
շադրության մատնված և առանց վրեժխնդիր լինելու, ապա
շատերը ավելի հանդուգն կդառնան նաև այլ թագավորների
58 նկատմամբ»։ Այս բոլորը նա ասում էր արտասվելով ու գլը-
խահակ, իսկ Իզատեսը, երբ լսեց իր անունը և տեսավ իր ա-
ռաջ Արտաբանեսին կանգնած ապավեն խնդրելիս, իսկույն ցած
59 թռավ ձիուց և ասաց. «Քաջ եղիր, ո՛վ արքա, և մի շփոթվիր,

կարծելով, թե ներկան անուղղելի է. որովհետև շուտափույթ
է լինելու վշտի փոփոխությունը. ես կլինեմ քեզ բարեկամ և
դաշնակից առավել, քան ինքդ ակնկալում էիր։ Կամ քեզ
պարթևական գահին կվերահաստատեմ, կամ ես կհրաժար-
վեմ իմ գահից»։
60 Այս ասելով, նա Արտաբանեսին ձի նստեցրեց, իսկ ինքը
հետիոտն հետևում էր, այդ պատիվը մատուցելով նրան, քա-
նի որ նա ավելի մեծ թագավոր էր։ Բայց Արտաբանեսն այս
նկատելով, մեծապես զգացվեց ու երդվեց իրեն հասած ճա-
կատագրի և այժմ իրեն ցույց տրվող պատվի վրա, որ ինքը
ցած կիջնի (ձիուց), եթե (Իզատեսը) նորից չնստի իր ձին ու
61 չգնա առջևից։ Եվ Իզատեսր, համոզվելով, նստեց իր ձին և
(Արտաբանեսին) բերելով իր թագավորությունը, ամեն տեսակ
պատվի արժանացրեց նրան իր (թագավորական) խորհուրդ-
ներում և հատկացրեց առաջին բարձը խնջույքի սեղանների
շուրջ, որովհետև (Իզատեսը) նկատի ուներ ոչ թե նրա ներ-
կա բախտը, այլ նրա նախորդ դիրքը, և միաժամանակ մտա-
ծում էր, որ բոլոր մարդկանց համար կարող է բախտը փոփո-
62 խական լինել։ Նաև թուղթ է գրում պարթևներին, հորդորելով
նրանց ետ ընդունել Արտաբանեսին, իր աջը բարձրացնելով
երդվում է և հավաստիացնում նրանց, որ կատարվածի հա-
63 մար կստանան ներումն և իր միջնորդությունը։ Իսկ պարթևնե-
րը պատասխանեցին, թե չեն մերժի Արտաբանեսին ընդունել,
բայց և չեն կարող այդ անել, քանի որ իշխանությունն ար-
դեն հանձնել են մեկ ուրիշին, իսկ այդ ստանձնողի անունն էր
Կիննամոս, և վախենում են, որ այդպես վարվելով, իրենց
64 դեմ ապստամբություն հրահրեն։ Կիննամոսը, տեղեկանալով
նրանց այդ տրամադրությանը, ինքն իսկ գրում է Արտաբանե-
սին, քանի որ ինքը դաստիարակվել էր նրա կողմից և բնավո-
րությամբ բարի և ազնիվ էր, խնդրելով վստահել իրեն և, վե-
րադառնալով, ետ վերցնել իր իսկ իշխանությունը։ Եվ Արտա-
65 բանեսը, հավատալով նրան, ժամանեց։ Կիննամոսը դիմա-
վորեց նրան և երկրպագելուց ու նրան թագավոր կոչելուց հե-
տո, իր գլխից խույրը հանելով, դրեց նրա գլխին։
66 Այսպիսով, Արտաբանեսը, Իզատեսի օգնությամբ, նո-
րից հաստատվեց գահին, որից նախապես նա հեռացվել էր
մեծամեծների ձեռքով։ Նա երախտամոռ չգտնվեց իր հանդեպ
կատարված բարերարությունների համար, այլ փոխարենը

Իզատեսին հատուցեց իրենց մոտ ընդունված մեծագույն պա-
67 տիվներով։ Այսպես, նա արտոնեց Իզատեսին (թագավորա-
կան) տիարան գլխին ուղիղ դնել[227] և ոսկե առագաստում
քնել. արտոնություններ, որոնք միայն պարթև թագավորների
իշխանության խորհրդանիշներն էին։ Նաև պարգևեց նրան
ընդարձակ և բերրի մի երկիր, այն վերցնելով հայոց թագա-
վորից։ Այդ երկիրը կոչվում է Նիսիբիս և այնտեղ նախկինում
մակեդոնացիները կառուցել էին Անտիոք քաղաքը, որը կոչե-
ցին նաև Եպիմիդոնիա[228]։ Այսպիսի պատիվներով Իզատեսը
մեծարվեց պարթևների թագավորի կողմից։
69 Ոչ շատ ժամանակ անց, Արտաբանեսը վախճանվում է,
թողնելով թագավորությունը իր որդի Վարդանեսին[229]։ Սա ար-
դեն հռոմայեցիների դեմ պատերազմի պատրաստվելով, գա-
լիս է Իզատեսի մոտ և փորձում համոզել նրան օգնական ու-
ժեր պատրաստել և իր հետ միացած դուրս գալ արշավանքի։
70 Սակայն չկարողացավ համոզել, որովհետև Իզատեսը, ծանոթ
լինելով հռոմայեցիների հզորությանը և բախտավորությանը,
71 գտնում էր, որ նա անկարելին էր ձեռնարկում։ Դեռ ավելին.
նա առավել ևս դժկամություն էր դրսևորում, քանի որ երի-
տասարդ տարիք ունեցող իր հինգ որդիներին ուղարկել էր
մեր հայրենի բարքերն ու լեզուն լրիվ սովորելու, իսկ մորը,
ինչպես ասվել է, ուղարկել էր տաճարը երկրպագելու, ուստի
և ետ էր կանգնեցնում Վարդանեսին, անվերջ պատմելով նրան
հռոմայեցիների ուժի և արարքների մասին, ենթադրելով, որ
այդպիսով նրան կվախեցնի, և նա կդադարի նրանց դեմ ար-
72 շավանք ձեռնարկելուց։ Մինչդեռ պարթևը դրանից զայրանա-
լով, իսկույն պատերազմ հայտարարեց Իզատեսի դեմ։ Այ-
սուհանդերձ, նա ոչ մի օգուտ չքաղեց այս արշավանքից,
73 քանի որ աստված նրա բոլոր հույսերը ի դերև հանեց։ Որով-
հետև պարթևները, լսելով Վարդանեսի մտադրությունը, ինչ-
պես նաև հռոմայեցիների դեմ արշավելու նրա որոշումը,
սպանեցին նրան և իշխանությունը հանձնեցին նրա եղբայր
74 Գոտարզեսին[230]։ Ոչ շատ ժամանակ անց, սա նույնպես դա-
վադրության հետևանքով սպանվեց[231] ու նրան հաջորդեց նրա
եղբայր Վոլոգեսեսը[232], որն իր հայրակից երկու եղբայրներին
ևս թագավորություններ վստահեց. ավագին՝ Պակորոսին նա
տվեց Մեդիան[233], իսկ կրտսերին՝ Տրդատին՝ Հայաստանը։
75 Թագավոր (Իզատեսի) եղբայր Մոնոբազոսը և նրա ազ-

գակիցները նկատելով, որ Իզատեսը աստծու հանդեպ իր ու-
նեցած բարեպաշտությամբ նվաճել է բոլոր մարդկանց
հիացմունքը, իրենք ևս փափագեցին հրաժարվել իրենց հայ-
76 րենի սովորություններից և ընդունել հրեական բարքերը։
Նրանց այս արարքը հայտնի դարձավ հպատակներին, և այդ
բանից մեծամեծները վրդովվեցին, բայց իրենց զայրույթը
չէին արտահայտում, այլ իրենց հոգում թաքցնելով այն.
սպասում էին հարմար մի առիթի նրանց հետ դատաստան
77 տեսնելու համար։ Այդ մասին (թուղթ) են գրում արաբների
թագավոր Աբիասին, խոստանալով նրան մեծ գումար տալ,
եթե նա ցանկանար արշավել իրենց թագավորի դեմ, միա-
ժամանակ հայտնելով, որ առաջին իսկ ճակատամարտում
նրանք կլքեն (իրենց) թագավորին, որովհետև ցանկանում են
պատժել նրան իրենց բարքերը արհամարհած լինելու պատ-
ճառով։ Եվ իրար նկատմամբ հավատարմության երդում տա-
78 լուց հետո, խնդրում էին շտապեցնել (արշավանքը)։ Արաբ
(թագավորը) համոզվելով, մեծ զորք է հավաքում և արշա-
վում է Իզատեսի վրա։ Երբ պետք է տեղի ունենար առաջին
ճակատամարտը, և նախքան կսկսվեր կռիվը, (մեծամեծնե-
րը), ազդանշանի վրա, լքեցին Իզատեսին, ձևացնելով, որ
իբր խուճապի են մատնվել, և իրենց թիկունքը թշնամուն
79 դարձնելով, փախան։ Սակայն Իզատեսը չցնցվեց, այլ կռա-
հելով, որ մեծամեծների կողմից դավաճանություն է տեղի ու-
նեցել, ինքը ևս նահանջեց դեպի զորակայան, և հետաքրքրը-
վելուց հետո, երբ իմացավ նրանց փախչելու պատճառը, թե
դաշնակցել են արաբ (թագավորի) հետ, մեղավորներին սպա-
80 նեց. իսկ հաջորդ օրը, ճակատամարտ տալով, շատերին կո-
տորեց ու բոլորին փախուստի մատնելով և իրեն, թագավորին
իսկ, հալածելով, քշեց մինչև Արսամոն բերդը, և կատաղի
մարտից հետո այն գրավեց և այնտեղ գտնված ամբողջ ա-
վարը խլելով, իսկ այն շատ էր, վերադարձավ Ադիաբենե,
չկարողանալով Աբիասին կենդանի բռնել, որովհետև, սա
բոլոր կողմերից շրջապատված լինելով, ինքնասպան եղավ,
նախքան կընկներ Իզատեսի ձեռքը։
81 Ադիաբենեի մեծամեծները, երբ ձախողվեցին իրենց ա-
ռաջին փորձի մեջ, քանի որ աստված նրանց մատնեց (Իզա-
տես) թագավորի ձեռքը, դարձյալ չհանդարտվեցին, այլ նորից
թուղթ հղեցին Վոլոգեսեսին, որը պարթևների թագավորն էր,

նրան խնդրելով ոչնչացնել Իզատեսին և իրենց վրա նոր թիրա-
կալ կարգել պարթևական տոհմից. որովհետև, ինչպես ա-
սում էին նրանք, ատում էին իրենց թագավորին հայրենի
բարքերը վերացնելու և օտար սովորույթներին երկրպագու
82 դառնալու համար։ Այս մասին լսելով, պարթևը սկսեց ձգտել
պատերազմի, բայց արդարացի ոչ մի պատրվակ գտնել չկա-
րողանալով, (հրահանգ) ուղարկեց, ետ պահանջելով (Իզա-
տեսից) իր հոր կողմից նրան շնորհված պատիվները, և սպառ-
83 նաց, մերժելու դեպքում, պատերազմ սկսել։ Այս ամենը լսե-
լով, Իզատեսի հոգին քիչ չվրդովվեց, մտածելով, որ այդ
պատիվները ետ վերադարձնելը արհամարհանք կհարուցի իր
հանդեպ, որովհետև կթվար, թե նա այդպես է վարվում վա-
84 խից դրդված։ Սակայն, համոզված լինելով, որ պարթևը
պարգևները ետ ստանալուց հետո ևս չի հանգստանալու, հար-
մար դատեց վտանգի այս պահին իրեն հանձնել աստծու ո-
ղորմածությանը և հավատալով, որ (աստված) իր մեծագույն
դաշնակիցն է, իր որդիներին ու կանանց ամենաապահով
բերդերում թողեց, իսկ ամբողջ խոտն ու արոտները հրկիզեց։
85 Այսպիսի նախապատրաստությունից հետո, սպասում էր թըշ-
86 նամուն։ Երբ պարթևը ժամանեց հետևակ և հեծյալ մեծաթիվ
զորքով ավելի կարճ ժամանակում, քան ինքը սպասում էր,
որովհետև նա շատ արագ էր արշավել, Իզատեսը ևս, իր հետ
ունենալով վեց հազար հեծյալ, բանակեց նրանից ոչ հեռու։
87 (Այդ ժամանակ) պարթևի կողմից ուղարկված դեսպանը ժա-
մանեց Իզատեսի մոտ և հիշեցրեց նրան, թե ինչքան ընդար-
ձակ է պարթևների տերությունը, թե նրա սահմանները տա-
րածվում են Եփրատ գետից մինչև Բակտրիա, միաժամանակ
88 թվարկեց պարթևներին հպատակվող թագավորներին։ Այնու-
հետև սպառնաց, որ (Իզատեսը) կհատուցի իր տերերի հան-
դեպ ունեցած ապերախտության համար, և որ արքայի ձեռ-
քից նրան չի կարող փրկել մինչև իսկ նրա պաշտած աստ-
89 վածը։ Դեսպանի այս խոսքերից հետո Իզատեսն ասաց, որ
ինքը գիտե, թե պարթևների տերությունը շատ ավելի ընդար-
ձակ է, քան իրենը, գիտե նաև, ասաց նա, որ բոլոր մարդկան-
ցից առավել հզոր աստվածն ինքն է։ Այսպիսի պատասխան
տալուց հետո, նա իրեն հանձնեց աստծու ողորմածությանը
և իրեն գետին նետելով ու գլխին մոխիր ցանելով, կնոջ ու

որդիների հետ միասին ծոմ էր պահում և աստծուն աղաչում
90 այս խոսքերով. «Ո՜վ տեր թագավոր, եթե իզուր չէ, որ ես վա-
յելել եմ քո բարերարությունը և քեզ եմ ճանաչել որպես ա-
մենազոր և արդարագույն տերը բոլորի մեջ, հասիր ինձ օգ-
նության ոչ միայն իմ թշնամիներից ինձ պաշտպանելու հա-
մար, այլ և այն պատճառով, որ նրանք հանդգնեցին մարտա-
91 հրավեր կարդալ քո հզորության դեմ»: Նա այսպես աղաղա-
կում էր արցունք թափելով ու ողբալով. իսկ աստված լսեց
նրան և նույն գիշերն իսկ Վոլոգեսեսը նամակներ է ստանում,
որոնցում գրված էր, թե դայերի և սակերի խոշոր ուժեր, օգտ-
վելով իր բացակայությունից, ներխուժել են (թագավորու-
թյան սահմանները) և ասպատակում են պարթևական երկիրը:
Ուստի և նա դատարկաձեռն ետ վերադարձավ: Այսպիսով,
Իզատեսը աստվածային նախախնամությամբ խուսափեց
պարթևի սպառնալիքներից:
92 Ոչ շատ ժամանակ անց, իր ծննդյան հիսունհինգերորդ
տարին լրացնելուց և քսանչորս տարի թագավորելուց հետո,
(Իզատեսը) մահանում է, թողնելով քսանչորս տղա և քսան-
93 չորս դուստր: Եվ նա հրահանգեց, որ իշխանությունը ժառանգի
իր եղբայր Մոնոբազոսը, որպես վարձատրություն այն բանի,
որ իր հոր մահից հետո, երբ ինքը դեռևս երկրից բացակա-
յում էր, նա իր համար հավատարմորեն պահպանեց երկի-
94 րը: Իսկ նրա մայր Հելենեն, լսելով իր որդու մահը, ծանր ապ-
րումներ ունեցավ, ինչպես վայել էր այդքան բարեպաշտ որ-
դուց զրկվող մորը: Այսուհանդերձ, նա մխիթարվեց, լսելով,
որ իշխանությունը անցել է իր ավագ որդուն, ուստի և փու-
թաց գալ նրա մոտ: Նա ժամանեց Ադիաբենե, բայց իր որդի
Իզատեսի (մահից հետո) երկար չապրեց, այլ ճնշվելով ծե-
րության ու տխրության բեռան տակ, շուտով հոգին ավանդեց:
95 Իսկ Մոնոբազոսը և՛ նրա, և՛ իր եղբոր աճյունը Երուսաղեմ
ուղարկելով, պատվիրեց թաղել այն երեք բուրգերի մեջ, որ
իր մայրը կառուցել էր Երուսաղեմ քաղաքից երեք ասպարեզ
96 հեռավորության վրա: Ինչ վերաբերում է այն գործերին, որ
կատարեց թագավոր Մոնոբազոսը իր կյանքի ընթացքում,
մենք կպատմենք հետագայում[234]:

* * *

139 Եպիփանեսը՝ (Կոմմագենեի) Անտիոքոս թագավորի որ-
դին, չցանկանալով ընդունել հրեական բարքերը, հրաժարվեց

այդ ամուսնությունից, թեպետև նախապես այդ խոստացել էր նրա հորը[235]։

* * *

158 Ներոնի իշխանության առաջին տարին, երբ Եմեսայի դինաստ Ազիզոսը մահացավ, իշխանությունը ժառանգեց նրա եղբայր Սոեմոսը[236]։ Իսկ Փոքր Հայքի իշխանությունը Ներոնը հանձնեց Քաղկիսի Հերովդես թագավորի որդի Արիստոբուլոսին[237]։

* * *

245 Այդ ժամանակ պարթևական երկրի տիրակալներ Բար-
ղափռանեսը[238] և Պակորոսը, անցնելով Եփրատը և պատերազ-
մելով Հյուրկանոսի դեմ, նրան կենդանի գերեցին և Արիստո-
246 բուլոսի որդի Անտիգոնոսին թագավոր հայտարարեցին։ Սա
իշխեց երեք տարի և երեք ամիս, որից հետո, պաշարվելով
Սոսսիոսի և Հերովդեսի կողմից, գերի վերցվեց, իսկ Անտո-
նիոսը նրան Անտիոք տանելով, սպանեց։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 *Ապիոն Ալեքսանդրիացին ապրել է մ. թ. I դարում և ժամանակակիցն է Հովսեպոս Փլավիոսի։ Ծնվել է Ալեքսանդրիայում։ Եղել է հայտնի քերական։ Տիբերիոս կայսեր ժամանակ մեկնել է Հռոմ և դարձել ճարտասանության դասատու։ Կալիգուլայի ժամանակ գլխավորել է Ալեքսանդրիայից կայսեր մոտ ուղարկված հակահրեական պատվիրակությունը և հրեաներին մեղադրող հատուկ հուշագիր հանձնել Կալիգուլային։ Ապիոնը եղել է զարգացած հեղինակ։ Նա առավելապես հայտնի է եղել որպես Հոմերոսի մեկնիչ։ Գրել է նաև Եգիպտոսի պատմությունը, բաղկացած հինգ գրքից, բայց նրա գործերից մեզ չնչին մի մաս է հասել։ Նրա մասին մենք առավելապես տեղեկանում ենք Հովսեպոսի ներկա հակաճառությունից։ Պարզվում է, որ Ապիոնը իր աշխատություններում ամեն կերպ ձգտել է վարկաբեկել հրեաներին, որոնց պաշտպանությանն է նվիրված Հովսեպոսի «Ընդդեմ Ապիոնի» երկը։*

2 *Այստեղ Հովսեպոսը նկատի ունի Աստվածաշնչի հետևյալ գրքերը, որոնք բովանդակում են հրեաների ավանդական պատմությունը. Հնգամատյան (Ծննդոց, Ելից, Ղևտացվոց, Թվոց, Երկրորդ օրինաց գրքերը), Նավյան Հեսու, Դատավորաց, Թագավորաց Ա. Բ. Գ, Դ, Մնացորդաց Ա և Բ, Եզրասի, Նեեմիայի, Եսթերի, Մակաբայեցվոց Ա, Բ և Գ գրքերը և, հավանաբար, Սաղմոսներն ու Առակաց գիրքը։ Հրեաների ծագումնաբանության և դավանաբանության հիմքը կազմող Հնգամատյանի հեղինակությունը վերագրվում է հրեական լեգենդար մարգարե և օրենսդիր Մովսեսին, որը հրեաներին դուրս բերեց եգիպտական գերությունից, առաջնորդեց Սինայի անապատով մինչև ավետյաց երկիրը և, իբր, հաղորդակցելով Եհովայի՝ հրեաների աստծու հետ, իր ժողովրդին տվեց հիերոկրատիկ հասարակության ներքին հարաբերությունները կարգավորող օրենքները։*

3 *Աքեմենյան արքաներից Արտաքսերքսես Ա-ն 465 թ. պարսկական գահի վրա հաջորդեց Քսերքսեսին (486—465 թթ.) և թագավորեց 40 տարի։*

4 *Խոսքը 490 թ. Դարեհ Ա-ի և 480 թ. Քսերքսեսի Հունաստան կատարած արշավանքների մասին է, որոնք, ինչպես հայտնի է, վերջացան անհաջող։*

5 *Բերոսոսը (330—250 թթ. մ. թ. ա.) եղել է Բաբելոնում Բելի տաճարի քուրմը։ Սեպագիր աղբյուրների հիման վրա նա հունարեն գրել է Բաբելոնի պատմությունը* χαλδαϊκά *կամ* Βαβυλωνιακά *վերնագրով, որն իր ժամանակ հայտնի է եղել հելլենիստական աշխարհում* (*P. Schabel*, Berossus und die babylonisch-hellenistische Literatur, Leipzig—Berlin, 1923; *И. М. Дьяконов*, История Мидии, М.—Л., 1956, *էջ 35 և հաջ.*)։ *Բերոսոսի*

հեղինակությունը հայտնի է եղել Մովսես Խորենացուն. «Այլ և բաղում արք,— գրում է պատմահայրը,— անուանիք և իմաստութեան պարապեալք ի Յունաց աշխարհէն՝ հոգացան ոչ միայն զգիրս դիւանացն այլոց ազգաց թագաւորացն և զմեհենիցն յեզուլ ի յոյն բան,— որպէս գտանեմք զայն, որ և զԲերոսոսն յայս յորդորեաց զայր քաղդէացի և զվարժ ամենայն իմաստութեամբ,— այլ և զմեծամեծս և զզարմանալոյ արժանաւորս յարուեստից. և ուրեք գտեալ աշխատութեամբ, հաւաքեալ փոխեցին ի յոյն լեզու» (Մ. Խորենացի, Ա, բ)։ Բերոսոսից մեջ բերված ընդարձակ հատվածները առանձին արժեք են հաղորդում Հովսեպոսի այս երկին, քանի որ քաղդեացի պատմագրի երկը մեզ չի հասել։

6 Նոքոսը Աստվածաշնչի Նոյ նահապետն է։ Բերոսոսի մեզ չհասած բնագրում նրա անունը, ինչպես հաղորդում է բյուզանդական մատենագիր Սինկելոսը, եղել է Քսիսութրիս։ Խորենացին ևս Բերոսոսից քաղած իր վկայության մեջ Նոյի փոխարեն հիշատակում է Քսիսութրիս անունը։ (Մովսես Խորենացի, Ա, գ)։

7 Նաբուպալասարը թագավորել է Բաբելոնում մ. թ. ա. 625—604 թթ.։

8 Նաբուքոդոնոսորը թագավորել է մ. թ. ա. 604—561 թթ.։

9 Պարսից Կյուրոս արքան իշխել է մ. թ. ա. 559—529 թթ.։

10 Խոսքը Նաբուքոդոնոսորի մասին է։

11 Բաբելոնի «կախյալ պարտեզները» համարվել են հին աշխարհի յոթ հրաշալիքներից մեկը։ Դրանց առավել լրիվ նկարագրությունը տվել է հույն պատմիչ Կտեսիասը, որից և քաղել է Դիոդորոս Սիկիլիացին (Diodor., II, 7 և հաջ.)։

12 Այստեղ ամբողջ մի հատված (§§ 135—141) բառացի կրկնվում է Հովսեպոսի «Հրեական հնախոսություն» մատյանում (X, 219—226)։ Կրկնությունից խուսափելու համար մենք այն զանց ենք արել «Հնախոսության» համապատասխան մասերը թարգմանելիս։

13 Հովսեպոսն այստեղ նկատի ունի մ. թ. ա. IV դարի հույն հեղինակ Կտեսիասին, որը Ասորեստանի տերության առասպելական հիմնադիրներ Նինոսի և Շամիրամի (Սեմիրամիս) պատմության համար գլխավոր հեղինակությունն էր համարվում հին աշխարհում (հմմտ. Herodot., I, 84)։

14 Փիլոստրատոսը գրել է Հնդկաստանի և Փյունիկիայի պատմությունը, որի մասին մեզ հասած միակ վկայության համար մենք պարտական ենք դարձյալ Հովսեպոսին։

15 Մեգասթենեսն այն հեղինակն է, որին հետագայի հույն պատմիչները պարտական են Հնդկաստանի վերաբերյալ իրենց ունեցած դիտելիքների մեծ մասի համար։ Սելևկոս Ա Նիկատորի կողմից նա շուրջ 300 թ. դեսպանության կազմում ուղարկված է եղել հնդկական թագավոր Ջանդրագուպտայի մոտ։

16 Լիբիա ասելով հնում հասկացել են ընդհանրապես Աֆրիկան, իսկ որոշ դեպքերում՝ Աֆրիկայի հյուսիսային մասերը։ Իբերիան այս դեպքում Պիրենյան թերակղզին է։

17 Պերսիսը համապատասխանում է «Աշխարհացոյց»-ի Պարսք նահանգին (Ս. Տ. Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 114)։

18 Բորսիպա. այժմ Բիրս Նիմրուդ բնակավայրը Բաբելոնից հարավ։

19 Կարմանիա մարզը գտնվում է Պարսից ծոցի ափին։

20 Տե՛ս Herodot., II, 104, որտեղից գրեթե բառացի վերցրել է Հովսեպոսը։

21 Թերմոդոնտ (Թերմեհ-չայ) և Պարթենիոս գետերը գտնվում են Փոքր

Ասիայում, առաջինը՝ Թեմիսկիրայի մոտ, Պոնտոսում, երկրորդը՝ Պափլագոնիայում։

22 Մակրոնների ցեղն ապրում էր Պոնտոսում։ Նրանց մասին հիշատակում է դեռևս VI դարի վերջի V դարի սկզբի մատենագիր Հեկատեոս Միլետացին։ Մակրոններին և նրանց երկիրը առավել մանրամասն նկարագրել է ականատես Քսենոփոն Աթենացին իր «Անաբասիս» երկում (*Xenoph*., Anab.. IV. VIII, —118).

23 Հույն բանաստեղծ Խոյրիլոսը ծնվել է Սամոս կղզում և եղել է Հերոդոտոսի կրտսեր ժամանակակիցն ու մտերիմը։ Գրել է էպիկական պոեմ, նվիրված հույն-պարսկական պատերազմներին։ Այդ մասին հիշատակում է Ստրաբոնը (*Strabo*, VII, 9, c. 303).

24 Հեկատեոս Միլետացի։ Մ. թ. ա. VI դ. վերջի և V դ. սկզբի հույն մատենագիր. ապրել է հույն-պարսկական պատերազմների շրջանում, որի ժամանակ էլ ծավալել է քաղաքական լայն գործունեություն։ Շրջել է շատ երկրներ և գրել մի շարք երկեր. որոնցից միայն հատվածներ են մեզ հասել։ Ինչպես երևում է, նրա երկերը դեռևս պահպանվում էին Հովսեպոսի ժամանակ։

25 Ագաթարքիդես։ Մ. թ. ա. II դ. հույն հեղինակ, որը գրել է պատմական և աշխարհագրական մի շարք երկեր։

26 Ստրատոնիկեն դուստրն էր Սելևկյան թագավոր Անտիոքոս Ա Սոտերի և ամուսնացած էր Մակեդոնիայի Դեմետրիոս Բ թագավորի հետ (տե՛ս հաջորդ ծանոթ.)։ Երբ Դեմետրիոսը կնքեց իր երկրորդ ամուսնությունը, Ստրատոնիկեն օգնություն խնդրեց Սելևկոս Բ Կալլինիկոսից։

27 Դեմետրիոս Բ (մ. թ. ա. 239—229 թթ.), Մակեդոնիայի թագավոր, որդին Անտիգոնոս Գոնատասի։

28 Սիրիան հայկական մատենագրության նույն Ասորիքն է։

29 Սելևկոս Բ Կալլինիկոսը թագավորել է մ. թ. ա. 247—225 թթ.։

30 Անաքարսիս։ Անվանի սկյութացի, որը հույն օրենսդիր Սոլոնի ժամանակ (մ. թ. ա. VII դ. վերջ) այցելել է Աթենք։ Այդ մասին վկայում են նաև Հերոդոտոսը, Պլատոնը, Պլուտարքոսը և ուրիշներ։

31 Սկյութացիների մասին Հովսեպոսի այս վկայությունները քաղված լինելով Հերոդոտոսից (գուցե և Հեկատեոսից), բնականաբար արտացոլում են ոչ թե իր ժամանակի, այլ մ. թ. ա. VI դարից առաջ ընկած ժամանակաշրջանի սկյութական բարքերը։

32 Ապոլլոնիոս։ Մ. թ. ա. III դ. հույն հեղինակ, որի գրչին է պատկանում «Արգոնավտիկա» էպիկական պոեմը։

33 Ակնարկությունը մ. թ. ա. 490 և 480 թթ. պարսիկների Հունաստան կատարած արշավանքների մասին է, երբ հույները, շարժման մեջ գնելով իրենց ամբողջ ուժերը, մեծ կորուստների գնով, հազիվ կարողացան ետ շպրտել պարսիկներին և պահպանել իրենց երկիրը նվաճումից։

34 Պարսիկների այդպիսի բարքերի ու սովորությունների մասին վկայում է Հերոդոտոսը (IV, 32)։

35 Ակնարկությունը հռոմեական տիրապետության դեմ 66 թ. Պաղեստինում ծագած հրեական ապստամբության մասին է (տե՛ս առաջաբանը)։

36 Խոսքը վերաբերում է ոչ թե Փոքր Ասիայում հաստատված գալատներին, այլ Գալլիայում ապրող ցեղերին։

37 Այս Ալեքսանդրան Տիգրան Բ-ի ժամանակ Հրեաստանի թագուհին էր, որին Խորենացին անվանում է «դժխոյն Հրէից Աղեքսանդրիայ, որ և Մեսաղինայ, որ էր լեալ կին Աղեքսանդրի ... որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից» (Մ. Խորենացի, Բ, ժգ)։

38 Այս Պտղոմեոսը, Մեննայոսի որդին, ոչ մի առնչություն չունի Եգիպտոսի Պտղոմեոսների հետ։ Նա եղել է Կելե-Սիրիայի (Ներքին Ասորիք) ոչ մեծ թագավորության տիրակալը մ. թ. ա. 85—40 թթ.։ Նրա իշխանության կենտրոնը եղել է Քաղկիսը։ Շատ հավանական է, որ այս Պտղոմեոսը դաշնակից էր Տիգրան Բ-ին, քանի որ պատերազմում էր հայոց թագավորի թշնամի՝ Հրեաստանի դեմ։ Երբ 84—83 թթ. Տիգրանը նվաճեց Ասորիքը, Պտղոմեոսը, երևի, ընդունեց Տիգրանի գերիշխանությունը և մնաց Կելե-Սիրիայում նրան ենթակա կառավարիչ։

39 Այս Կլեոպատրան, որը կոչվում էր նաև Սելենե, Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս Փրսկոնի (146—117 թթ.) դուստրն էր և ամուսնացել էր Սելևկյան մի քանի թագավորների հետ։ Այս նույն դեպքերի մասին գրել են նաև Ստրաբոնն ու Մովսես Խորենացին, որոնց վկայությունները ավելորդ չեմ համարում մեջ բերել։ «Այստեղ է հիմա Եփրատի գետանցը. Նրա դիմաց հիմնվել է Միջագետքի Սելևկիա բերդը, որը Պոմպեոսը միացրեց Կոմմագեններին։ Այդ բերդում մի ժամանակ բանտարկելուց հետո Տիգրանը, երբ Սիրիայից դուրս քշվեց, սպանեց Սելենեին, որը վերակոչված էր Կլեոպատրա» (Strabo, XVI, 2, 3, C. 749)։ «Եւ նոյն հետայն դիմէ յաշխարհն, Պաղեստինացւոց՝ վրէժս պահանջել ի Պտղոմայիդ Կղէոպատրայ յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր իւր յանցանաց։ Առեալ գերի բազում և ի Հրէից՝ նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ։ Իսկ դշխոյն Հրէից Աղեքսանդրիայ, որ և Մեսաղինայ, որ էր լեալ կին Աղեքսանդրի, որդւոյ Յովհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչ բազումս տալով՝ դարձոյց զնա անտի։ Քանզի էր լուեալ և համբաւ, թէ Վայկուն ոմն անուն յեղուզակ խռովէր զերկիրն Հայոց...» (Մ. Խորենացի, Բ, ժդ)։

40 Հյուրկանոս Բ։ Թագավոր և քահանայապետ հրեից (79—40 թթ.), որը առաջին անգամ գահընկեց արվեց իր եղբոր՝ Արիստոբուլոսի կողմից, բայց վերականգնվեց հռոմայեցիների ձեռքով. երկրորդ անգամ նրան տապալեց Արիստոբուլոսի որդի Անտիգոնոսը և ի վերջո Հերովդեսը 39 թ. մահապատժի ենթարկեց 80-ամյա Հյուրկանոսին։

41 Արետաս։ Արաբական Նաբաթեա պետության թագավոր։

42 Հովսեպոսի հաղորդած այս տեղեկությունները գրեթե նույնությամբ կարդում ենք նաև Մովսես Խորենացու մատյանում (Բ, ժե)։

43 Երիքով։ Ոչ մեծ քաղաք Հրեաստանում։ Հովսեպոսի այս դրածը աղբյուր է ծառայել Խորենացուն, որը խոսելով Միհրդատի մահվան մասին, գրում է. «Եւ ի ձեռն հօրն Պիղատոսի Պոնտացւոյ զՄիհրդատ սպանանէ թունաւոր դեղովք։ Վկայէ այսմ բանիս և Յովսեպոս ի ճառին, որ վասն ապրսամին պատմէ, այսպէս ասելով. «Պոմպէի հուպ յԵրիքով հասանեն աւետիք մահուանն Միհրդատայ» (Մ. Խորենացի, Բ, ժե)։

44 Դաբինիոս։ Հռոմեական զորավար, որին Պոմպեոսը թողեց որպես իր փոխանորդը Արևելքում։

45 Հիշյալ Պտղոմեոսը, որը Եգիպտոսի այդանուն թագավորների շարքում XI էր և կրում էր Ավլետես (Սրնգահար) մականունը, գահ բարձրացավ մ. թ. ա.

80 թվին։ Սակայն Հռոմը նրան ճանաչեց միայն 59 թվականին, այն էլ Պտղոմեոսի կողմից կաշառված Պոմպեոսի միջնորդությամբ։ 58 թվականին մայրաքաղաք Ալեքսանդրիայի զայրացած ժողովուրդը նրան քշեց երկրից։ Երեք տարի վտարանդի մնալուց հետո, նորից ստացավ իր գահը Պոմպեոսի հանձնակատար Գաբինիոսի օգնությամբ։ Բոլորին ատելի դարձած այս միապետը մահացավ 52 թ., գահը թողնելով իր դստեր՝ հայտնի Կլեոպատրային։

46 Քաղաքական այս դեպքերի մասին հաղորդում է նաև Մովսես Խորենացին (Բ, ժդ)։

47 Ստեփանոս Լեհացու թարգմանության մեջ Օրսանես (Ὀρσάνης) անունը հայկականացվել ու դարձել է Արշամ (Գիրք Պատմութեանց Յովսեպոսի Եբրայեցւոյ..., էջ 38)։ Նման սխալների հաճախ կարելի է հանդիպել այդ թարգմանության մեջ. մենք, սակայն, անհրաժեշտ չենք համարում ամեն անգամ անդրադառնալ դրանց։

48 Հռոմում Կատիլինայի դավադրության ճնշումից հետո (մ. թ. ա. 60 թ.), իշխանության գլուխ անցան Պոմպեոսը, Հուլիոս Կեսարը և իր անհաշիվ հարստություններով հայտնի Կրասսոսը, կազմելով այսպես կոչված եռապետությունը (տրիումվիրատը)։ Սրանք հռոմեական տիրապետության տակ գտնվող երկրները բաժանեցին իրար միջև։ Կրասսոսին բաժին ընկավ Ասորիքը։ Ընչաքաղցությունից շլացած ու փառամոլ Կրասսոսը ցանկացավ իր կատարելիք նվաճումներով չափվել Ալեքսանդր Մակեդոնացու հետ և արշավեց պարթևների դեմ։ Սակայն իր ռազմական տաղանդով չփայլող այս եռապետը Կարրայի (Խառան) մոտ 53 թ. դաժանորեն ջախջախվեց պարթևների զորավար Սուրենի կողմից և հատուցեց իր կյանքով։ Կրասսոսի կենսագրությունը մանրամասն շարադրել է Պլուտարքոսը։

49 Այս նույն փաստը գրեթե նույնությամբ արձանագրված է նաև Խորենացու մատյանում (Բ, ժէ), այն տարբերությամբ, սակայն, որ Խորենացին պարթևների գործունեությունը վերագրել է Տիգրանին։ Պատմությունից հայտնի է, որ Կրասսոսի ջախջախումը Կարրայի մոտ տեղի էր ունեցել մ. թ. ա. 53 թ., իսկ Տիգրան Բ-ը գահակալել է մինչև 56 կամ 55 թ. և այդ ժամանակ հայոց թագավորն էր Տիգրանի որդի Արտավազդը։ Պատմահայրը իր շարադրանքի մեջ միշտ պարթևական զորքի արշավանքը վերագրում է հայոց զորքին (Բ, ժը)։

50 Գայոս Կասսիոս Լոնգինոսը Կրասսոսի բանակի քվեստորն էր։ Վերջինիս անփառունակ վախճանից հետո, հավաքելով հռոմեական ջախջախված լեգեոնների մնացորդները, նա կարողացավ իր ձեռքում պահել Ասորիքի որոշ մասը։ Կասսիոսը հետագայում Հուլիոս Կեսարի դեմ կազմակերպված դավադրության գլխավոր ոգեշնչողներից մեկը։

51 Հետագա շարադրանքի ընթացքում Հովսեպոսը, դժբախտաբար, իր այս խոստումը չի կատարում։

52 Տե՛ս ծանոթ. 38։

53 Հմմտ. Մ. Խորենացի, Բ, ժթ։

54 Պենտեկոստե (հուն. πεντηκοστή) բառացի նշանակում է հիսուներորդ օր։

55 Այս և հետագա պարագաներում «տաճար» ասելով Հովսեպոսը միշտ նկատի ունի Երուսաղեմում գտնվող Սողոմոնի հայտնի տաճարը։

56 Քորա (հուն. χώρα — երկիր) հելլենիստական աշխարհում կոչվում էր քաղաքից դուրս գտնվող և քաղաքին պատկանող գյուղական վայրը, որի բնակչությունը չէր մտնում քաղաքային համայնքի մեջ։

57 Այս Պակորոսը ոչ թե նախորդ հատվածներում հիշատակված արքայորդին է, այլ նրա անվանակից արքունի տակառապետը։

58 Բնագրում՝ τῶν καλουμένων ἐλευθέρων ἱππέων.

59 Գալիլեան ընկած էր Պաղեստինի հյուսիս-արևմտյան հատվածում, Ենիսարեթ լճի և Փյունիկեի միջև։ Հրեական ապստամբության ընթացքում Գալիլեան խաղաց առաջնակարգ դեր, հանդիսանալով ապստամբների կարևոր հենակետերից մեկը։

60 Հովսեպոսի «Հրեական հնախոսություն» գրքում (XIV, 348) այս նույն դեպքերին վերաբերող մասում տակառապետ (οἰνοχόος) բառի փոխարեն ընթերցվում է «ներքինի» (εὐνοῦχος):

61 Իդումեա երկրամասը գտնվում էր Մեռյալ ծովից հարավ և բնակեցված էր արաբական ծագում ունեցող իդումեացիներով։ Իդումեայից էին սերում Հրեաստանի գահին նստած Հերովդեսները։

62 Հովսեպոսից մեր թարգմանած այս վերջին հատվածների բովանդակությունը հիմնական աղբյուրն է Խորենացու պատմության երկրորդ գրքի XIX գլխի։ Հովսեպոսի և Խորենացու այս հատվածների համեմատության վերաբերյալ տե՛ս Г. Халатьянц, Армянские Аршакиды в „Истории Армении" Моисея Хоренского, т. I, М., 1903, էջ 56—68, Գ. Խ. Սարգսյան, Աղբյուրների օգտագործման եղանակը Մովսես Խորենացու մոտ, էջ 31—42։

63 Հմմտ. Մովսես Խորենացի, Բ, ի։

64 Սա Մարկոս Անտոնիոսն է, որը մ. թ. ա. 43 թ. Լեպիդոսի և Օկտավիանոսի հետ կազմեցին երկրորդ եռապետությունը Հռոմում։ Այս անգամ Հռոմի արևելյան տիրույթները անցան Անտոնիոսին։

65 Սամոսատ։ Կոմմագենեի թագավորության մայրաքաղաքը։

66 Հին հույները բարբարոս էին համարում ընդհանրապես բոլոր ոչ-հելլեններին։

67 Անտիոքոս։ Կոմմագենեի թագավոր (մ. թ. ա. 69—34 թթ.), որը թողել է Նեմրութ լեռան հոյակապ հուշարձանը։

68 Պլուտարքոսը (Anton., 34) այլ կերպ է պատմում Անտիոքոսի հանձնվելու մասին, գրելով, որ Անտոնիոսը խաղաղության դաշինք կնքեց Անտիոքոսի հետ այն բանից հետո, երբ վերջինս նրան վճարեց 300 տաղանդ, նախկինում Վենտիդիոսի պահանջած հազարի փոխարեն։

69 Հմմտ. Մովսես Խորենացի, Բ, իա։

70 Արտաբաղեսը (Արտավազդ) Հովսեպոսի այս հատվածում սխալմամբ անվանված է պարթև։ Սա հայոց թագավոր Արտավազդ Բ-ն է, Տիգրան Բ-ի որդին, որին Անտոնիոսը համարում էր պարթևական արշավանքի ժամանակ իր կրած պարտության գլխավոր պատճառը (Հմմտ. Plutarch., Anton., 50): «Հրեական հնախոսության» մեջ (XV, 104) Հովսեպոսը Արտաբաղեսին չի անվանում պարթև։ Հովսեպոսի այս վկայությունն է ընկած Խորենացու երկրորդ գրքի XXIII գլխի հիմքում։

71 Արքելաոսը Անտոնիոսի օգնությամբ ստացավ Կապպադովկիայի գահը և թագավորեց մ. թ. ա. 36—17 թթ.։ Նրա մահից հետո Կապպադովկիան վերածվեց

հռոմեական պրովինցիայի։ Գործակցելով Անտոնիոսի հետ, Արքելաոսը ստացավ նաև Փոքր Հայքի թագավորությունը և Կիլիկիայի մի մասը (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, Երևան, 1944, էջ 308)։

72 Այս Գլափյուրայի մայրը, հավանաբար, եղել է Արտաշեսյան տոհմի հայ թագավորի դուստր (Հ. Հ. Մանանդյան, նույն տեղում, էջ 300)։

73 Այս Տիգրանը, հավանաբար, Օգոստոսի կողմից 6 թ. Հայաստանի գահին բազմեցված Տիգրան Ե-ն է (Հ. Հ. Մանանդյան, նույն տեղում)։

74 Մասնավոր մարդ (ἰδιώτης) հունական աշխարհում կոչվում էր այն քաղաքացին. որը չէր վարում որևէ պետական պաշտոն։

75 Տե՛ս ծանոթ. 73։

76 Այս Ագրիպպասը Քաղկիսի ոչ մեծ թագավորության տիրակալն էր, որին Ներոն կայսրը, շնորհելով հիշյալ չորս քաղաքներն իրենց շրջակայքով, պարտավորեցնում է մասնակցել Հայաստանի և պարթևների դեմ հռոմայեցիների ձեռնարկած արշավանքին (Հ. Հ. Մանանդյան, նույն տեղում, էջ 327)։

77 Պերեա (հուն. (Περαία) կոչվում էր առհասարակ ջրից այն կողմ գտնվող երկիրը։ Հնում այդպես էր կոչվում հատկապես Հորդանան գետից այն կողմ գտնվող Պաղեստինի մասը, որը և նկատի է առնված Հովսեպոսի այս հատվածում։

78 Բնագրում՝ ἐπίτροπος.

79 Իստրոս հնում կոչվում էր Դանուբ գետը։

80 Գադեյրա (լատին. Gades)։ Առափնյա քաղաք Պիրենյան թերակղզում։

81 Հռոմեական պետության մեջ բարձրաստիճան պաշտոնյաների առաջից գնում էին հատուկ պաշտոնատար անձինք, որոնք, որպես իշխանության նշան, տանում էին ձողիկների մի կապոց, ծայրին կացին ամրացրած։ Հռոմայեցի հյուպատոսների իշխանության նշանն ուներ 12 ձողիկ, դիկտատորներինը՝ 24, քաղաքային պրետորներինը՝ 2, իսկ պրովինցիայի կառավարիչներինը՝ 6։ Այս հատվածում խոսքը վերաբերում է այն բանին, որ Հունաստանը ենթարկվում էր հռոմայեցի կառավարչին·

82 Մեյոտիս լիճ հնում կոչվում էր Ազովի ծովը։

83 Հովսեպոսը, հավանաբար, նկատի ունի պարթևների թագավոր Վաղարշի եղբայր Տրդատին, որը Հռոմում թագադրվեց որպես հայոց թագավոր, այնտեղ թողնելով իր դստերը որպես պատանդ (հմմտ. *Tacit*., Annal., XV, 29 և հետ.)։

84 Բնագրում՝ οἰκουμένη. Անտիկ հեղինակները այսպես են անվանում իրենց հայտնի աշխարհը։

85 Հայտնի է, որ հռոմեական կայսրության բոլոր ազատ բնակիչները Հռոմի քաղաքացու իրավունքներ ստացան միայն Անտոնինոս Կարակալլա կայսեր ժամանակ (211—217 թթ.)։ Մեր թարգմանած հատվածում «բնակեցված երկրի բոլոր մարդիկ հռոմեացիներ են» ասելով, Հովսեպոսը ուզում է շեշտել, թե այդ բոլոր երկրները հպատակեցված են Հռոմին։

86 Ադիաբենեում իշխող արքայատոհմը Կլավդիոսի կայսրության ժամանակ (41—54 թթ.) հարել էր հրեական կրոնին, որի համար էլ Հովսեպոսը Ադիաբենեի բնակիչներին ցեղակիցներ է անվանում (հմմտ. *Jos. Flav*., Jud. Ant., XX, 17 և հետ.)։

87 Չշփոթել Սելևկյան թագավոր Անտիոքոս Դ. Եպիփանեսի հետ։ Այստեղ խոսքը Կոմմագենեի թագավոր Անտիոքոս Ե-ի մասին է։

88 Ակնարկությունը նախորդ ծանոթագրության մեջ հիշատակված Անտիոքոս Դ-ի մասին է։

89 Ըստ Հերոդոտոսի, Աթենքի հայտնի օրենսդիր, հին աշխարհի ամենաիմաստուն մարդկանցից մեկը համարվող Սոլոնը ևս, Լյուդիայի արքա Կրեսոսի մոտ հյուրընկալվելիս, զրույցի ժամանակ նույնպիսի մի ասույթ է արտահայտել (*Herod.*, I, 32).

90 Տիտոս Փլավիոս Սաբինոս Վեսպասիանոս։ Վեսպասիանոս կայսեր որդին, որը իր հոր հետ մասնակցեց հրեական ապստամբության ճնշմանը և այն հասցրեց իր ավարտին։ Վերադառնալով Հռոմ, Տիտոսը նախ դարձավ իր հոր գահակիցը, իսկ նրա մահից հետո՝ կայսր (79—81 թթ.)։

91 Հռափանեան գտնվում էր հյուսիսային Սիրիայում, Եմեսայից (այժմ՝ Հոմս) արևմուտք։

92 Մելիտենե. այժմ՝ Մալաթիա։

93 Անտիոք անունով եղել են մոտ երկու տասնյակ քաղաքներ, հիմնադրված Սելևկյան առաջին թագավորների կողմից։ Այստեղ խոսքը վերաբերում է նախկինում Սելևկյանների պետության մայրաքաղաք, այդ ժամանակ հռոմեական պրովինցիա դարձած Սիրիայի կենտրոն Անտիոքին։ Սա իր ժամանակ երրորդ խոշոր քաղաքն էր հռոմեական կայսրության մեջ, Հռոմից և Ալեքսանդրիայից հետո, 500 հազարի հասնող բնակչությամբ, և եղել է հելլենիստական մշակույթի խոշորագույն օջախ, որտեղ կենտրոնացել էին մեծ թվով հրեաներ, կազմակերպելով առանձին համայնք։

94 Տե՛ս ծանոթ. 84։

95 Այստեղ Հովսեպոսը նկատի ունի Սելևկյան Անտիոքոս Ա Սոտեր թագավորին (280—261 թթ.)։

96 Սելևկյան Անտիոքոս Դ Եպիփանեսը թագավորել է 174—164 թթ.։

97 Հովսեպոսը մեկ այլ տեղ (Contra Apion., II, 39) վկայում է, որ Անտիոքի հրեաներին այդ իրավունքները շնորհել էր դեռևս Սելևկյան հարստության և Անտիոք քաղաքի հիմնադիր Սելևկոս Ա Նիկատորը (312—280 թթ.)։

98 Խոսքը Պաղեստինի հրեաների ապստամբության մասին է։

99 Բնագրում՝ ἄρχων τῶν ἐπ' Ἀντιοχείας ἰουδαίων.

100 Մովսիսական օրենքի համաձայն, շաբաթվա յոթերորդ օրը սուրբ էր հրեաների համար, և այդ օրն աշխատելը համարվում էր սրբապղծություն։

101 Հունարեն բնագրի ἡ ἀγορα, τα αρχεια, το γραμματοφυλακιον, αι αρχαὶ բառերը համապատասխանաբար թարգմանել ենք՝ «հրապարակ», «մատենադարան», «դիվանատուն», «ապարանք»։

102 Կեսեննիոս Պետոսը այն անձնավորությունն է, որը 62 թ. Հռանդեայի մոտ խայտառակ պարտություն կրեց Տրդատի գլխավորած հայ-պարթևական ուժերից։ Այդ պարտության անմիջական հետևանքն այն էր, որ Հռոմը ստիպված եղավ Տրդատին ճանաչել որպես Հայաստանի թագավոր։ Դրանով իսկ հաստատվում է հայ Արշակունիների հարստությունը։

103 Բնագրում՝ δημόσια γράμματα.

104 Բնագրում՝ δῆμος—դեմոս։

105 Ասպարեզ (στάδιον)—երկարության չափ անտիկ աշխարհում, որը հավասար էր մոտավորապես 185 մետրի։

106 Զեգմայի գետանցը գտնվում էր վերին Եփրատի աջ ափին, Սամոսատ

քաղաքի մոտ. իր անունը ստացել է այնտեղ գետի վրա կառուցված նավակների կամուրջից։

107 Վոլոգեսես-Վաղարշը (51—75 թթ.) պարթևական պետության ամենաընդունակ և ամենահզոր թագավորներից էր։ Մեծ է եղել նրա նպաստը Հայաստանում Արշակունյաց հարստության հաստատման գործում։

108 Նախորդ հատվածներից մեկում Հովսեպոսը այս Արիստոբուլոսին հիշատակում է իբրև Փոքր Հայքի թագավոր, իսկ Քաղկիսի (նույնը թե՝ Քաղկիդիկեի) թագավոր համարում է Ագրիպպասին (տե՛ս էջ 80)։ Այդպես էլ ընդունված է պատմագրության մեջ (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 327 և 340)։

109 Եմեսա (այժմ՝ Հոմս)։ Սիրիայում գտնվող համանուն փոքր թագավորության կենտրոն, Օրոնտես գետի վրա։ Այս թագավորությունը նախապես ենթակա էր Հռոմին, իսկ 72 թ. հետո հռոմայեցիները այն միացրին իրենց Սիրիա պրովինցիային։ Եմեսայի թագավոր Սոեմոսի սերնդից մի իշխան հետագայում դարձել է հայոց թագավոր (Հ. Հ. Մանանդյան, նույն տեղում, էջ 327, К. В. Тревер, Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953, էջ 225 և 235)։

110 Տանայիս անտիկ հեղինակները կոչում էին Դոն գետը։

111 Հովսեպոսի երկերն ընթերցելիս մենք չգտանք այն հատվածը, որի մասին այստեղ ակնարկում է մատենագիրը։

112 Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքներին նվիրված իր պատմության մեջ II դ. հեղինակ Արրիանոսը նկարագրում է, թե ինչպես Ալեքսանդրը, Դարեհ Կոդոմանոսին հետապնդելիս, չկարողացավ հասնել նրան, նախքան սա կհասներ այդ կետը, բայց Հովսեպոսի հիշատակած «երկաթե դարպասների» մասին ոչինչ չի ասվում (Arrian., Anab., III, 20)։

113 Այս հատվածում հիշատակված Պակորոսը (Բակուր) պարթևական Վաղարշ Ա թագավորի և հայոց Տրդատ Ա թագավորի եղբայրն էր, որին Վաղարշը հաստատել էր Մեդիա-Ատրպատականի գահի վրա։

114 Ա. Մ. Գարագաշյանը (Քննական պատմութիւն Հայոց, մասն Ա, Թիֆլիս, 1895, էջ 242—244) և Հ. Հ. Մանանդյանը (Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 11—14) հավանական են համարում, որ Խորենացուն հայտնի է եղել ալանների այս արշավանքը Հայաստանի վրա (հմմտ. Խորենացի, Բ, ձ)։

115 Մեզ համար պարզ չէ, թե կանգուն (πῆχυς) ասելով Հովսեպոսը չափի ի՞նչ միավոր է նկատի ունեցել, քանի որ 50 կանգուն բարձրանալով ջուրը ոչ մի դեպքում չէր կարող ծածկել լեռները։ Ջրհեղեղի մասին պատմող Աստվածաշնչի համապատասխան հատվածում ևս (Գիրք ծննդոց, է) հիշատակված չափը կանգունն է, բայց այս անգամ ոչ թե 50, այլ 15։ Եթե նկատի է առնված սովորական կանգունը, ապա կարելի է ենթադրել, որ երկու դեպքում ևս խոսքն այն մասին է, թե ջրերը ծածկելով ամբողջ երկիրը, նույնիսկ լեռներից վերև բարձրացան այդքան կանգուն։ Սակայն բնագրի բառացի թարգմանությունը չի տալիս այդ իմաստը։

116 Բնագրում՝ ἀποβατήριον:

117 Հիերոնիմոս Եգիպտացու մասին ուրիշ ոչ մի տեղեկություն մեզ չի հասել։

118 Մնասեաս՝ Լիկիայում (Փոքր Ասիա) ծնված մատենագիր, որն աշակերտել է Երատոսթենեսին. ստեղծագործել է մ. թ. ա. III դարի վերջերին։

119 Նիկողայոս Դամասկոսցին եղել է Հրեաստանի Հերովդես Մեծ թագավորի մտերիմն ու կենսագիրը, որը միաժամանակ գրել է ընդհանրական պատմություն։ Այս վերջինը Հովսեպոսի գլխավոր աղբյուրներից մեկն է եղել։

120 Մինիաս երկիրը Աստվածաշնչում «Միննի» ձևով (ասսուրական սեպագիր արձանագրություններում՝ «Մաննա») հիշատակվում է միշտ Արարատի հետ կապակցված։

121 Բնագրում՝ 'Ιαφθα — Յափթա։

122 Տանայիս-Դոն գետը հին աշխարհում համարվել է սահմանագիծ Ասիայի ու Եվրոպայի միջև։

123 Գոմարյանների նահապետ Գոմարը հիշատակված է նաև Աստվածաշնչում (Ծննդ. Ժ, 2—3 և Ա Մնաց., Ա, 5—6)։ Ուսումնասիրողները այս գոմարյաններին նույնացնում են կիմմերների հետ։ Վերջիններս ասսուրական սեպագրերում հայտնի են Գիմիրի անունով (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հ. Ա, էջ 10—11)։ Սակայն անբացատրելի է մնում այն, որ, Հովսեպոսի ասելով, գոմարյաններին հելլենները գալատներ են անվանում։ Հայտնի է, որ գալատները կելտական ցեղերի թվին են պատկանում և առնչություն չունեն կիմմերների հետ։

124 Թեոբելոս անվանաձևը կապվում է ասսուրական սեպագրերում հանդիպող Թաբալա անվան հետ, իսկ այդ երկրի բնակիչները՝ թեոբելյանները, հավանաբար Հերոդոտոսի մոտ (III, 94) հիշատակված տիբարեններն են (τιβαρηνοί)։

125 Մեսքենների անունը հանդիպում է ասսուրական սեպագիր արձանագրություններում muski ձևով։ Մեսքենների ցեղը Հերոդոտոսի մոտ (VII, 78) հիշատակված մոսքերն են (μόσχοι).

126 Հովսեպոսի հիշատակած Ասքանաքսեսը և ասքանաքսյանները համապատասխանում են Աստվածաշնչի Ասքանազին և Ասքանազյան գնդին։ Կորյուն վարդապետը հայերին համարում է «Ասքանազեան ազգն» («Պատմութիւն վարուց և մահուան Մեսրոպայ վարդապետի, Վենետիկ, 1894, էջ 7) Աստվածաշնչի հետևյալ հատվածի հիման վրա. «Առէք զնշան ի վերայ երկրիդ, փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէք ի վերայ դորա (Բաբելոնի) գունդս. սլատուէր տուք յինէն Արարատեան թագաւորութեանցն և Ասքանազեան գնդին. կանգնեցէք զնովաւ նետակալս. կոչեցէք ի վերայ նորա զթագաւորութիւնս Արարատայ, Միննեայ և Ասքենազայ» (Երեմիա, ԾԱ, 27)։ Անդրադառնալով այս վկայությանը, Հ. Մանանդյանը նշում է, թե «Ասքանազյան գունդը, ինչպես միանգամայն ճիշտ բացատրել է Ֆր. Դելիչը, նույնն է բևեռագիր արձանագրությունների «Աշգուզայ»-ի (Asgûza) հետ, որ պարզապես հյուսիսից արևելյան Անդրկովկաս արշավող սկյութացիների անունն է» (Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հ. Ա, էջ 11)։

127 Թյուգրամեսը նույնական է Աստվածաշնչի Թոգարմա (Թորգոմ) անվան հետ, իսկ Թոգարմա (սեպագր. Թիլ-Գարիմմու) երկիրը ավանդաբար նույնացվում է Հայաստանի հետ։

128 Ելիմայեցիներ անվան տակ, հավանաբար, պիտի հասկանալ էլամի բնակիչներին։

129 Մի ձեռագրում Ուրոսի (Οὖρος) փոխարեն կարդում ենք Օտրոս ("Οτρος). իսկ մեկ այլ ձեռագրում՝ Ուլոս (Οὖλος)։

130 Ուսումնասիրողները ենթադրում են, որ այստեղ Բերոսոսից մեջ բերված հատվածն ընկել է Հովսեպոսի բնագրից և չի հասել մեզ։

131 Այստեղ անունները բացահայտ կերպով հելլենականացված են։ Այլ ձեռագրերում, ըստ երևույթին Աստվածաշնչին հետևելով (Դ Թագ., ԺԹ, 37, Եսայի, ԼԷ, 38)՝ Ադրամելեքոս և Սարասարոս, որը ավելի մոտ է Խորենացու մոտ պահպանված ավանդության անուններին։

132 Համտ. Մ. Խորենացի, Ա, իգ։ Խորենացու «Պատմության» աշխարհաբար իր թարգմանության այս հատվածը ծանոթագրելիս, Ստ. Մալխասյանցը նկատում է, որ «... Սենեքերիմի սպանությունը որդիների ձեռքով տեղի է ունեցել 681 թ. Ն. Ք., և զարմանալի է, ինչպե՞ս ավելի քան 2500 տարի կենդանի է մնացել հայ ժողովրդի հիշողության մեջ, որովհետև Սասնա ծռեր:ի շատ վարիանտներում հիշվում են այս Սանասարն ու Ադրամելիքը, որոնցից սերվել են Սասնա ծռերը՝ Մհերը և Դավիթ Սասունցին» (Մ. Խորենացի, Հայոց պատմություն, թարգմ., Ներած. և ծանոթագր. Ստ. Մալխասյանի, Երևան, 1940, էջ 273)։

133 Խոսքը Եգիպտոսի փարավոն Նեքաո Բ-ի մասին է, որը թագավորել է մ. թ. ա. 650—594 թ.։

134 Այս Հովակիմը՝ Հովսիայի որդին, մ. թ. ա. 610 թ. Եգիպտոսի Նեքաո փարավոնի կողմից հաստատվեց Հրեաստանի փոխարքա, իսկ 601 թ. հարկատու դարձավ Բաբելոնի Նաբուքոդոնոսոր թագավորին, կառավարելով մինչև իր մահը 599 թ.։

135 Կարքեմիսսա (Կարքեմիշ)։ Առաջավոր Ասիայի հնագույն քաղաք, Եփրատ գետի վրա, խեթական թագավորության կենտրոններից։

136 Մասսագետները (հայկական աղբյուրներում մասքութք) հավանաբար սկյութական ցեղեր են եղել, որոնք քոչում էին Կասպից ծովի հյուսիս-արևելյան տափաստաններում։ Հերոդոտոսը պատմում է, որ նրանց մոտ կանայք ընդհանուր էին, որ նրանք ղոհաբերում և ուտում էին ծերունիներին, սնվում կաթով ու մսով ու կռվում էին և՛ հետիոտն, և՛ ձիավոր. Նրանց թագուհին այդ ժամանակ եղել էր Թոմիրիսը, որի դեմ Կյուրոսը մ. թ. ա. 530 թ. արշավելով, սպանվեց։

137 Կյուրոսի արշավանքը մասսագետների դեմ հայտնի է նաև Խորենացուն, որը նկարագրելով Արտաշես Տիեզերակալի աղետալի վախճանը, գրում է. «Յետ փոքու ժամանակի աղէտք անցին ղամենեքումբք. ոչ այնքան թշուառացաւ Կիւրոս ընդ Մասքութս պատերազմելով, ոչ այսպիսի կիրս կրեաց Դարեհ ի Սկիւթացւոցն փախուստն, և ոչ Կամբիւսէս յԵթովպացիս» (Մ. Խորենացի, Բ, ժգ)։

138 Այս դեպքում նկատի է առնված հրեաների Եհովա աստվածը։

139 Բնագրում՝ τοπαρχῶν —տոպարխների։

140 Հայտնի է, որ Դարեհ Ա-ի ժամանակ պարսկական տերության սատրապությունների թիվը երբեք 127 չի եղել։ Հետագայում, երբ Սելևկյանները ժառանգեցին Աքեմենյան տերության մեծագույն մասը, սատրապությունների տարածությունը սահմանափակելով, դրանց թիվը, ըստ Ապպիանոսի (App. Syr., 62) հասցրին 72-ի։ Տվյալ դեպքում իր արտահայտությունն է գտել այն, որ Փոքր Ասիայի նախկին հյուպարքիաները, Ասորիքի, Փյունիկեի և Պաղեստինի մերիս (μερίς —բաժին) կոչված ավելի մանր միավորները վերածվեցին սատրապությունների։ Ինչ վերաբերում է Փլավիոսի հիշատակած 127 թվին, ապա պետք է ենթադրել, որ այն վերցված է Աստվածաշնչից (Գիրք Եսթերայ, Ա, 1), որտեղ խոսվում է պարսկական տերության 127 գավառների մասին։

141 Բնագրում՝ κίδαρις—կիդարիս։

142 Սուսա (Շոշ)։ Աքեմենյան արքայից արքայի մայրաքաղաքը, որտեղ հետագայում Ալեքսանդր Մակեդոնացին իր հարսանիքը կատարեց։

143 Ըստ ավանդության, հրեական ցեղերը 12 էին, որոնցից յուրաքանչյուրը կրում էր հրեաների Հակոբ նահապետի 12 որդիներից մեկի անունը։ Այդ ցեղերից մեկն էլ կրում էր Հակոբի ամենակրտսեր որդու՝ Բենիամինի անունը։

144 Ադարը համապատասխանում է մարտ ամսին։

145 Բնագրում՝ τοὺς πρώτους τῶν ἐθνῶν—ազգերի առաջիններին։

146 Բնագրում՝ διάδημα—դիադեմա։

147 Սա Աքեմենյան վերջին թագավոր Դարեհ Գ Կոդոմանոսն է, որը նախկինում եղել էր Արմենիայի սատրապը։

148 Գրանիկոն գետը (այժմ՝ Կոջա-չայ) գտնվում է Փոքր Ասիայի հյուսիսարևմտյան մասում։ Այդ գետի ափին Ալեքսանդր Մակեդոնացին մ. թ. ա. 334 թ. մայիսին առաջին հաղթանակը տարավ պարսկական զորքերի դեմ, որոնց գլխավորում էին Հոնիայի, Լյուդիայի և Հելլեսպոնտոսյան Փռյուգիայի սատրապները։

149 Սանաբալլետեսը Դարեհ Կոդոմանոսի կողմից որպես սատրապ ուղարկված էր Պաղեստին։

150 Մանասսեն հրեական ցեղապետներից մեկն էր, որն ամուսնացել էր Սանաբալլետեսի աղջկա հետ։

151 Նույնպիսին է Դիոդորոսի շարադրանքը (*Diodor.*, XVII, 32, 4. Հմմտ. *Arrian.*, II, 6, 4)։ Դարեհի զորքերի թիվը Արրիանոսի մոտ (II, 8, 8) ցույց է տրված 600 հազար մարդ, Դիոդորոսի մոտ (XVII, 31, 2)՝ 500 հազար, իսկ Յուստինոսի (XI, 9) և Կուրտիոսի մոտ (XIII, 24)՝ 400 հազար։

152 Իսսոսի ճակատամարտը տեղի է ունեցել մ. թ. ա. 333 թ. հոկտեմբերին։

153 Տյուրոս քաղաքի պաշարումը տևեց մոտ 7 ամիս, 332 թ. հունվարից մինչև հուլիս ամիսը (*Diodor.*, XVII, 46, 5. *Curtius*, IV, 4, 19).

154 Խոսքը վերաբերում է Սելևկյան թագավոր Անտիոքոս Դ Եպիփանեսին (175—164 թթ.)։

155 Անտիոքոս Եպիփանեսի շռայլությունները վառ կերպով նկարագրել է Պոլիբիոսը (XXVI, 1)։

156 Սելևկյան տոմարի 147-րդ տարին համապատասխանում է մ. թ. ա. 166 հոկտ.—165 հոկտ. ժամանակահատվածին։ Ուստի մենք ենթադրում ենք, որ Հովսեպոսի մոտ հիշատակված այս արշավանքը Անտիոքոս Եպիփանեսը ձեռնարկել է ոչ թե Պարսկաստանի, այլ հայոց թագավոր Արտաշես Ա-ի դեմ, որն իրեն անկախ էր հայտարարել Սելևկյաններից և հրաժարվել էր հպատակության հարկ վճարելուց (հմմտ. *Diodor.*, XXXI, 17 և *Appian.*, Syr., 45)։ Անտիոքոսը դեպի Արևելք կատարեց ևս մի արշավանք 164—163 թթ. ընթացքում, այս անգամ Պարսկաստանում գտնվող Էլիմայիսի հարուստ տաճարը կողոպտելու նպատակով, որի համար էլ, վերջին հաշվով, հատուցեց իր կյանքով։

157 Վերին սատրապություններ կամ վերին երկրներ ասելով, անտիկ հեղինակները ենթադրել են Հայաստանը, Մեդիան, Պարսկաստանը և այլն։

158 Էլիմայիս անունն էր կրում նաև Սուսիանայի՝ Պարսկաստանին հարած շրջանը, Տիգրիսի ստորին հոսանքում, որտեղ բնակվում էին ռազմատենչ և ավազակաբարո ցեղեր, որոնք առանձնապես հայտնի էին որպես վարժ նետաձիգներ (*Strabo*, XVI c. 760: *Tit. Liv.*, XXXVII, 40).

159 Սելևկյան տոմարի 149-րդ տարին համապատասխանում է մ. թ. ա. 164 հոկտ.—163 հոկտ. ժամանակահատվածին։

160 Սելևկյան թագավոր Դեմետրիոս Նիկատորը գահակալել է Անտիոքում երկու անգամ՝ մ. թ. ա. 147—142 և 128—126 թթ.։

161 Սա Արշակ Զ Միհրդատ Ա-ն է, որը թագավորել է 171—138 թթ.։

162 Տրյուփոնը եղել է Սելևկյանների զորավար և ունեցել է շատ փոթորկալից կյանք։ Սպանելով Անտիոքոս Զ-ին, որին ինքն էր գահ բարձրացրել, 142 թ. ինքը հռչակվեց թագավոր և իշխեց 3 տարի։

163 Այս պատերազմը տեղի է ունեցել 138 թ., որի ժամանակ պարթևները գերի վերցնելով Դեմետրիոսին, նրան մեծ պատիվներ շնորհեցին և ամուսնացրին արքայադստեր հետ։

164 Սա Անտիոքոս VII Սիդետեսն է (139—130 թթ.), Դեմետրիոս Բ-ի եղբայրը, որը Տրյուփոնին վտարելով, գահ էր բարձրացել։

165 Տե՛ս ծանոթ. 163։

166 Որոշ ձեռագրերում բաց է թողնված «հայոց» բառը։ Դա, հավանաբար, այն պատճառով, որ Տիգրանն արդեն նվաճել էր Սելևկյան թագավորությունը և ժառանգել էր այդ գահը, իսկ անտիկ հեղինակները Սելևկյան թագավորներին պարզապես անվանում էին «թագավոր» (βασιλεύς)։

167 Որոշ ձեռագրերում՝ «50 բյուր զորքով»։

168 Հունարեն բնագրում բացակայում է «մայրաքաղաք» լրացումը. սակայն այստեղ «պաշարեց» (πολιορκεῖν) բառը անիմաստ է մնում առանց ուղիղ խնդրի, ինչպիսին տվյալ դեպքում կարող է լինել «մայրաքաղաքը» (գուցե և «Տիգրանակերտը») բառը։ Առաջարկված լրացումը մեզ հնարավորություն է տալիս նոր տեսանկյունից դիտելու Տիգրանակերտի ճակատամարտին անմիջականորեն նախորդած դեպքերի պատմությունը (այդ մասին տե՛ս մեր հոդվածը՝ Տիգրան Բ-ին վերաբերող մի կարևոր ուղղում, ՊԲՀ, 1967, № 4, էջ 275—278)։

169 Տե՛ս ծանոթ. 39։

170 Փլավիոսը իր «Հրեական պատերազմը» գրքում (I, 138) գրում է, որ Միհրդատի մահվան լուրը Պոմպեոսին հասավ, երբ սա բանակել էր Երիքովի մոտ՝ Հրեաստանում։

171 Միհրդատի մահը տեղի է ունեցել մ. թ. ա. 63 թ. գարնանը։ Միհրդատյան պատերազմների մանրամասն նկարագրությունը տվող Ապպիանոսի պատմելով, Միհրդատն իր որդու ապստամբությունից հետո, իր իսկ խնդրանքով, սպանվել էր իր թիկնապահներից մեկի ձեռքով։

172 Ստրաբոնը (64 մ. թ. ա.—20 մ. թ.) ծնվել է Պոնտական Կապպադովկիայի Ամասիա քաղաքում։

173 Կոս։ Կղզի էգեյան ծովում։

174 Սա հավանաբար Կլեոպատրա—Սելենե թագուհին է։

175 Ստրաբոնի այս վկայությունը վերցված է, հավանաբար, նրա մեզ չհասած «Պատմական հիշատակարաններ» (Ἱστορικὰ ὑπομνήματα) երկից (տե՛ս Ներածութ., էջ 20)։

176 Փլավիոսն այստեղ նկատի է ունեցել ուրիշ հեղինակների, քանի որ ինքն այս դեպքերին քիչ է անդրադարձել (հմմտ. Հրեակ. պատ., I, 179)։ Կրասոսը ջախջախվեց Կարրայի (այժմ՝ Խառան) մոտ, Միջագետքում, մ. թ. ա. 53 թ. գարնանը, և մահապատժի ենթարկվեց։

177 Կասսիոսը Սիրիայի կառավարիչ էր մ. թ. ա. 53—51 թթ.։

178 Սատրապ ասելով Հովսեպոսն այստեղ նկատի ունի Բարզափռանեսին։

179 Ագորա (ἀγορά) հույները անվանում էին քաղաքի բացօթյա այն վայրը՝ հրապարակը, որտեղ քաղաքային համայնքը գումարում էր իր ժողովները։ Ավելի հին ժամանակներում ագորա կոչվում էր ինքը՝ ժողովրդական ժողովը, իսկ հետագա դարերում նաև ապրանքների վաճառքի շուկան։

180 Հռոմայեցի մատենագիր Յուստինոսի վկայությամբ (Justini Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, XLI, 25), պարթևների զորքը հիմնականում բաղկացած էր ստրուկներից։ Ազատ կոչվածները պատկանում էին, հավանաբար, ավագանու թվին։

181 Սա արքայորդի Պակորոսն է, քանի որ տակառասյետ Պակորոսը զբաղված էր Հերովդեսին չեզոքացնելու գործով։

182 Տե՛ս ծանոթ. 60։

183 Անտոնիոսը եկել էր փոխարինելու հռոմայեցի զորավար Բենտիդիոսին, որը կռվում էր պարթևների դաշնակից Կոմմագենեի Անտիոքոս թագավորի դեմ (հմմտ. Cambridge Ancient history, vol. X,p. 53, note 3, *W. W. Tarn*-ի բաժինը և *N. C. Debevoise*, A political history of Parthia, Chicago, 1938, p. 120, note 103).

184 Պարսկական լայնատարած տերության մեջ արքունի ճանապարհի վրա կառուցված էին կայաններ կամ օթևաններ (σταθμός—ստաթմոս) իրարից 5—10 փարսախ հեռավորության վրա։ Այդ կայանների միջև ընկած էր մոտավորապես մեկ օրվա ճանապարհի տարածություն։

185 Տե՛ս ծանոթ. 67 և 68։

186 Սա պարթևների Հրահատ Դ թագավորն է, որը գահակալել է մ. թ. ա. 37—9 թթ.։

187 Այլ ձեռագրերում՝ «հետևաբար, այդ մասին հաղորդում է հրեաներին, որոնք շտապում էին մեկնել նրա մոտ»։

188 Բնագրում՝ Ἀρταβάζης—Արտաբազես։

189 Բնագրում՝ Ἀρτάξιας— Արտաքսիաս։

190 Արքելայոսը եղել է Կապպադովկիայի թագավոր, որը ստացել էր Փոքր Հայքը (հմմտ. *N. Debevoise*, A political history of Parthia, Chicago, 1938, էջ 141։ Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. Ա, էջ 290—291)։

191 Տիբերիոս Կլավդիոս Ներոնը (հետագայում, 14—37 թթ., Հռոմի կայսր), ուղարկված էր Օգոստոսի կողմից Հայաստանում «կարգ» հաստատելու համար այն բանից հետո, երբ Արտաշես Բ-ն դավադրաբար սպանվեց իր ազգակիցների կողմից (հմմտ. Հ. Հ. Մանանդյան, նույն տեղում)։ Հետևաբար, Հովսեպոսը սխալվում է գրելով, որ Տիբերիոսը և Արքելայոսը երկրից վտարեցին Արտաշեսին։

192 Սա Արտավազդի կրտսեր որդի Տիգրան Գ-ն է, որը թագավորեց Հայաստանում մ. թ. ա. 20—8 թթ.։

193 Փրատակեսը հայագիտության մեջ հայտնի պարթև թագավոր Հրահատակն է (մ. թ. ա. 2—մ. թ. 4 թթ.)։

194 Ն. Դիբվոյզը բարձր է գնահատում Փլավիոսի վկայությունները պարթևների պատմության վերաբերյալ և նշում, որ այդ տվյալները հաստատվում են գրավոր այլ աղբյուրներով և դրամագիտական նյութերով (*N. Debevoise*, նույն տեղում, էջ XXIX)։

195 Ինչպես պարզվում է դրամագիտական նյութերից (*P. Gardner*, Part-

hian coinage, *1887, էջ 46), թագուհի դառնալուց հետո Թեսմուսայի անունը դառնում է Թեա (աստվածուհի) Մուսա։*

196 *Դժվար չէ նկատել, որ Թեսմուսայի այս արարքը ոչ այնքան անձնական շահեր էր հետապնդում, ինչքան Հռոմի ընդհանուր քաղաքական շահերի տեսակետից հեռուն գնացող նպատակներ։*

197 *Այլ աղբյուրների համաձայն, տարբեր շարժառիթներ են Փրաատեսին մղել իր որդիներին Հռոմ պատանդ ուղարկելու համար։ Այսպես, Օգոստոս կայսեր հայտնի արձանագրություն-կտակը այդ ակտը վերագրում է Հռոմի բարեկամությունը ապահովելու Փրաատեսի ձգտմանը (տե՛ս* Res gestae divi Augusti (Monumenta Ancyranum), 32, ed. Th. Mommsen, Berlin, 1883)։ *Նույնպիսի շարժառիթի մասին են խոսում Սուետոնիոսը (Sueton.,* Aug., 21), *Տակիտոսը (Tac.,* Ann., II, 1) *և Ստրաբոնը (XVI, 1, 28)։ Վերջին երկու հեղինակները, սակայն, ավելացնում են, որ Փրաատեսը դրանով նպատակ ուներ կանխել իր դեմ հավանական որևէ ընդվզում, այն զրկելով Արշակունի տոհմից գլխավորող ունենալու հնարավորությունից։ Տակիտոսն, օրինակ, գրում է, որ Փրաատեսը Օգոստոսի նկատմամբ «իր բարեկամությունը ամրապնդելու նպատակով ուղարկել էր իր զավակների մի մասը Հռոմ, ոչ այնքան մեզանից վախենալու պատճառով, որքան համերկրացիների հավատարմությանը չվստահելու հետևանքով»։ Իսկ Ստրաբոնն ուղղակի նշում է, որ Փրաատեսն այդ քայլին դիմեց, որովհետև «... վախենում էր ընդվզումից և ապստամբությունից իր դեմ և գիտենալով, որ նրանք երբեք ուժեղ չէին լինի, եթե Արշակի տոհմից որևէ մեկին չդնեին նրա փոխարեն, քանի որ պարթևները չափազանց արշակասեր էին, ուստի հեռացրեց իր որդիներին, վերացնելու համար չարագործների այդ հույսը»։*

198 *Փրաատակեսը դավադրաբար սպանվեց 4 թ., մինչդեռ* Monumenta Ancyranum-*ում նշված է, որ Փրաատակեսը (արձանագրության մեջ՝ Փրաատես—* Φραάτης) *փախչելով, ապաստան գտավ Հռոմում։*

199 *Օրոդեսի սպանությունը տեղի է ունեցել 6 թ.։*

200 *Սա Ատրոպատենեի թագավոր Արտավան Գ-ն է, որին Փլավիոսը սխալմամբ համարում է Մեդիայի թագավոր։ Իսկ Հ. Մանանդյանը (Քննական տեսություն..., հ. Ա, էջ 305—306) սխալմամբ գրում է. «Հովսեպոս Փլավիոսի վկայությամբ, Արտավանը, պարթևական գահը գրավելուց առաջ, թագավոր էր եղել Ատրպատականի»։ Ինչպես տեսանք, Հովսեպոսը նրան համարում է Մեդիայի թագավոր։*

201 *Սելևկիա խոշորագույն հելլենիստական քաղաքը կառուցվել էր մ. թ. ա. IV դ. վերջին Սելևկոս Նիկատորի կողմից Տիգրիսի աջ ափին, այժմյան Բաղդադից փոքր-ինչ հարավ։*

202 *Կտեսիփոն էր կոչվում հայ պատմագրության մեջ հայտնի պարսկական Տիզբոն քաղաքը, որը գտնվում էր Տիգրիսի ափին, Սելևկիայի մոտ, այժմյան Բաղդադից 60 մղոն հարավ։*

203 *Վոնոնեսը ոչ երկար ժամանակով (11—16 թթ.) անտերնչության շրջանում դառնում է Հայաստանում թագավոր։*

204 *Բնագրում՝* Νιφάτης—*Նիփատես։ Լ. Հ. Ֆելդմանը Հովսեպոսի անգլերեն թարգմանությանը կցած իր մի ծանոթագրության մեջ հավանական է համարում, որ Նիփատես կոչվում էր այլ առիթով մեզ անհայտ հայ առաջնորդներից մեկը, և որ այդ հատվածը կարելի է թարգմանել նաև հետևյալ կերպ. «Նիփատեսը*

իրեն շրջապատող հայ մեծամեծներով» (տե՛ս *Josephus*, London, vol. IX, p. 40, note b)։

205 *Օրոդեսը Հայաստանում իշխեց 15—18 թթ., մինչև այն ժամանակ, երբ Գերմանիկոս կայսրը տեսնելով, որ հայերը պատրաստ են որպես թագավոր ընդունելու հայերի միջավայրում հասակ առած Զենոնին, որը Պոնտոսի Պոլեմոն թագավորի որդին էր, թագադրեց նրան, տալով Արտաշես անունը* (*Tacit*., Annal., II, 56; *Sueton*., Gaius, 1; *Strabo*, XII, *3, 29։ Տե՛ս նաև Հ. Հ. Մա*նանդյան. *Քննական տեսություն..., հ. Ա, էջ 308—309)։*

206 *Կոմմագենեում ստեղծված նույն դրության մասին վկայում է նաև Տակիտոսը* (Annal , II 42)։

207 *Վիտելիոսը Սիրիա պրովինցիայի կառավարիչն էր։*

208 *Տակիտոսն այս տրամադրությունները բացատրում է տարբեր շարժառիթներով։ Նրա վկայությամբ* (Annal., *VI*, 31—32), *Արտաբանոսի թշնամության գլխավոր պատճառը եղել էր Տիբերիոսի ձգտումը նրան գահից հեռացնելու և փոխարենը սկզբում Փրաատեսին, ապա Տրդատին թագավորեցնելու համար։ Մի այլ պատճառ էլ հայկական գահը խլելն էր Արտաբանոսի կողմից իր որդի Արշակի համար։*

209 *Հ. Մանանդյանն իրավացի կերպով այս հատվածի վերջին մասը համարում է անհավաստի։ Նա գրում է. «Հովսեպոս Փլավիոսի այս վկայության մեջ անհավաստի է, իհարկե, նրա հաղորդած վերջին տեղեկությունը, որ իբր թե իբերները, աղվանները և ալանները ավերել էին պարթևների երկիրը։ Իրապես, այդ պատերազմը տեղի էր ունեցել Հայաստանում և ավերվել ու կողոպտվել էր ոչ թե պարթևների, այլ հայերի երկիրը»* (Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հ. Ա, էջ 314)։*

210 *Դայերը Միջին Ասիայում բնակվող ցեղեր էին, որոնց մասին խոսում է Պլինիոսը* (Hist. Nat. VI, 19), *իսկ սակերը նրանց հարևաններն էին ու ցեղակիցները, որոնց մասին հիշատակում է դեռևս Հերոդոտոսը (VII, 9)։ Այս նույն դեպքերի մասին խոսելիս, Տակիտոսը*( Annal., VI, 44) *գրում է, որ Արտաբանոսը զորք հավաքեց սկյութական երկրում։*

211 *Բնագրում՝* τετράρχης։

212 *Սա Տիգրան Ե-ն է, որը Հայաստանում թագավորել է մ. թ. 6 թ.։ Այս նույն իրադարձությունների հանգամանալից նկարագրությունը տվել է Տակիտոսը* (Annal., VI, 30)։

213 *Խոսքը Տիգրան Զ-ի մասին է, որը Հայաստանում թագավորել է որպես Հռոմի դրածո 60—61 թթ.։ Տակիտոսը* (Annal., VI, 26) *նույնպես նշում է, որ Տիգրանը Ներոնի կողմից հաստատվել էր Հայաստանի գահին։ Նա ավելացնում է, որ Հռոմում Տիգրանի երկար ժամանակ որպես պատանդ մնալը նրան դարձրել էր ստրկահոգի և Հռոմի ձեռքին գործիք։ Նրան հայերը ընդունեցին միայն այն պատճառով, որ իրենք առավել վախենում էին պարթևներից։*

214 *Վեսպասիանոս՝ Հռոմի կայսր (69—79 թթ.), Փլավյանների կայսերական դինաստիայի հիմնադիրը։ Վեսպասիանոսը եղել է Հովսեպոսի բարերարը և հովանավորը, շնորհելով նրան նույնիսկ իր ազգանունը։*

215 *Կապպադովկիայի և Կոմմագենեի նախկին թագավորությունները Տիբերիոս կայսրը 17 թ. վերածել էր հռոմեական պրովինցիաների։ 37 թ. նոր կայսր Գայոս Գերմանիկոս Կալիգուլան (37—41 թթ.) Կոմմագենեի թագավորությունը վերականգնեց և այն հանձնեց նախկին թագավոր Անտիոքոս Գ-ի որդուն՝ Ան-*

տիոքոս Դ-ին, նրա թագավորությանը միացնելով նաև Հյուսիսային Սիրիան և Կիլիկիայի ծովափը (*Dio Cass.*, LIX, 8, 2)։ Նրա թագավորությունը կարճ ժամանակ հետո Կալիգուլայի կողմից վերացվեց, բայց այն վերականգնեց Կլավդիոս կայսրը 41 թ.։ Անտիոքոսը վերջնականապես զրկվեց իր թագավորությունից 72 թ.։

216 Կլավդիոսը եղել է Հռոմի կայսր 41—54 թթ.։

217 Ալաբարքեսը (ἀλαβάρχης) հրեաների մոտ ընդհանուր հարկահավաքի պաշտոն էր (հմմտ. *Josephus*, vol. IX, 1955, London, p. 103, note 7)։

218 Սամսլսիգերամոս անունը հայտնի է մեր պատմահորը Շամշագրամ ձևով։ Խորենացու պատմելով (Բ, լ), սա Աբգար թագավորի ժամանակ Ապահունյաց տոհմի նահապետն էր։

219 Կոտիսը Պոնտոսի թագավոր Պոլեմոն Ա-ի թոռն էր, Թրակիայի Կոտիս թագավորի որդին, որը 37 թ. Կալիգուլայի կողմից կարգվել էր Փոքր Հայքի թագավոր (հմմտ. *Dio Cass., LIX, 12, 2*)։ Տակիտոսը (Annal., XI, 9) հաղորդում է, որ 47 թ. Կլավդիոս կայսրն իր նամակով խանգարեց նրա արշավանքը Հայաստան, որի նպատակն էր արգելել Հռոմի հովանավորյալ Միհրդատ Իբերացու վերահաստատումը Հայաստանում։

220 Այս Պոլեմոնը Փոքր Հայքի թագավոր Կոտիսի (տե՛ս նախորդ ծանոթ.) եղբայրն էր և թագավորել էր Պոնտոսում 37—63 թթ.։

221 Ադիաբենեի թագավորությունը, Արբելա մայրաքաղաքով, գտնվում էր Հյուսիսային Միջագետքում։

222 Ֆ. Յուստին (*F. Justi*, Iranisches Namenbuch, 1895, s. v. „Yazata", SS 145—146) նշում է, որ Իզատես անունը պարսկերենում նշանակում է «հանճարեղ», «աստվածապաշտ» և օգտագործվել է հատկապես Միթրայի նկատմամբ, իսկ հետագայում հոգնակի ձևով նշանակել է «աստված»։

223 Քարակս-Սպասինու քաղաքը Եփրատի և Տիգրիսի գետաբերանների միջև ընկած փոքրիկ թագավորության կենտրոնն էր (հմմտ. *Dio Cass.*, LXVIII 28, 4 և *Ptolem.*, VI, 3, 2)։

224 Ո՞ր երկիրն է Կարրոն կոչվել, դեռևս հաստատ ասել դժվար է։ Դա, իհարկե, Հյուսիսային Միջագետքում գտնվող Կարրա (Խառան) վայրը չէ, քանի որ Փլավիոսը նշում էր, որ այս Կարրոն վայրում կարելի է տեսնել Նոյի տապանի մնացորդները։ Հետևաբար, այստեղ ընթերցվածը հնարավոր է ուղղել «Կորդուք», որտեղ Արարատ լեռան վրա կանգնել է բիբլիական տապանը (տե՛ս *J. Markwart*, Osteuropäische und ostasiatische Streifzüge, 1913, էջ 289, ծան. 4, որտեղ Մարկվարտը Καρρῶν-ի փոխարեն առաջարկում է կարդալ Καρδοῦ—Կորդուք)։ Այդ դեպքում, սակայն, կասկած է հարուցում այն հանգամանքը, որ Կարրոն երկրում աճում էր համեմունքը (ἄμωμον), ինչպիսին բույս չի հանդիպում Կորդվաց աշխարհում։

225 Բնագրում՝ ἐπίτροπος—էպիտրոպոս։

226 Լ. Հ. Ֆելդմանը Փլավիոսի անգլերեն թարգմանությանը կցած իր ծանոթագրության մեջ նշում է, որ Կլեմենտցը Փլավիոսի գերմաներեն թարգմանության համապատասխան ծանոթագրության մեջ բացատրում է, թե sampsa արաբների մոտ նշանակում է «արև» և որ sampsera-ն արևի ձև ունեցող ոսկե վահան էր, որը կրում էին որպես իշխանության նշան (*Josephus*, vol. IX, London, 1955, p. 406, note a)։

227 Տիարան պարսկական խույր էր, որը գլխին ուղիղ դնելու իրավունքը

միայն պարսից թագավորն ուներ։ Այդ մասին Քսենոփոնը սատրապ Տիսսափեռնեսի բերանով վկայում է. «Միայն արքան իրավունք ունի գլխին ուղիղ տիարա դնելու...» *Xenoph.*, Anab., II, 5, 23։ Հմմտ. նաև *Aristophan.* Ὄρνιθες, 487)։

228 Ստրաբոնն այս քաղաքը անվանում է Անտիոք Միգդոնիայում (Strabo, XVI, 1, 23, C. 747)։

229 Տակիտոսը (Annal., XI, 8) պատմում է, որ Արտաբանեսին հաջորդեց Գոտարզեսը, իսկ սրան՝ նրա վերադարձած եղբայրը՝ Վարդանեսը։ Հովսեփոսի մոտ Գոտարզեսը հաջորդում է Վարդանեսին։ J. G. C. Anderson-ը այս երկու վկայությունների մեջ հակասություն է տեսնում և Հովսեփոսի վկայությունը համարում ոչ ճիշտ (Cambr. Anc. history, v. X, 1934, էջ 754, ծան. 1)։ Սակայն իրականում այդ հաղորդումների միջև հակասություն չկա։ Ըստ Տակիտոսի, Արտաբանեսի մահից անմիջապես հետո, կարճ ժամանակով Գոտարզեսը վերցնում է իշխանությունը, սակայն Վարդանեսի ժամանելուց հետո Գոտարզեսը համաձայնության գալով նրա հետ, գահը հանձնում է նրան և միայն Վարդանեսի սպանությունից հետո Գոտարզեսը վերջնականապես հաստատվում է գահի վրա (*Tacit.*, Annal., XI, 9—10), մինչդեռ Հովսեփոսը իր շարադրանքի մեջ զանց է առել Գոտարզեսի առաջին կարճատև գահակալումը։

230 Բնագրում՝ Κοτάρζης (Կոտարզես)։ Տակիտոսը (Annal., XII, 10) Գոտարզեսին պատկերում է որպես դաժան տիրակալի աղնվականության և ժողովրդի հետ ունեցած իր հարաբերություններում։ Գոտարզեսի անթիվ ոճիրների զոհ գնացին նրա եղբայրները, մոտիկ և հեռավոր ազգակիցները, բազում պալատականներ, հղի կանայք։ Վարդանեսի սպանությունից հետո գահի շուրջ պայքար է ծավալվում Գոտարզեսի և Միհրդատի միջև։ Այս հակամարտության մասին Հովսեփոսը ոչինչ չի պատմում։ Ըստ Տակիտոսի (Annal., XII, 13), այս պայքարի ընթացքում Իզատեսը առերես դաշնակցում է Միհրդատի հետ, բայց գաղտնաբար համակրում էր Գոտարզեսին և պարսկական դահի այս երկու հավակնորդների միջև տեղի ունեցած վճռական ընդհարումից առաջ անցնում է Գոտարզեսի կողմը։

231 Տակիտոսի պատմելով (Annal., XII, 14), Գոտարզեսը ոչ թե զոհ է գնում դավադրության, այլ հիվանդանում է ու մահանում։

232 Սա հայ պատմագիտության մեջ հայտնի Վաղարշ Ա-ն է, Հայաստանի Արշակունյաց թագավորության հիմնադիր Տրդատ Ա-ի եղբայրը, որը պարթևական գահին նստեց 51—75 թթ., դառնալով պարթևական ամենաընդունակ և ամենաուժեղ թագավորներից մեկը։ Հովսեփոսի շարադրանքում զանց է առնված Վոնոնեսի թագավորությունը, որը, համաձայն Տակիտոսի (Annal., XII, 14), հաջորդել է Գոտարզեսին։ Բայց նույն ինքը Տակիտոսը նշում է նաև, որ Վոնոնեսի թագավորությունը կարճատև էր և անփառունակ։ Ուստի և հավանական է, որ Հովսեփոսը, որը տվել է պարթևների գահակալական կռիվների շատ ամփոփ շարադրանքը, հարկ չի համարել նշելու նրա թագավորությունը։

233 Տակիտոսը (Annal., XV, 2) նշում է, որ Պակորոսն արդեն իշխում էր Մեդիայում, երբ Վոլոգեսեսը դարձավ թագավոր։ Պակորոսն այնտեղ ապաստանել էր ալանների արշավանքից հետո։

234 Հովսեփոսը, ցավոք, իր խոստումը չի կատարում։ Այսուհանդերձ, Տակիտոսը որոշ տեղեկություններ հաղորդում է Մոնոբազոսի հետագա գործունեության

մասին։ Նա պատմում է, որ Մոնոբազոսը դիմում է պարթևների թագավոր Վաղարշ Ա-ին, որպեսզի սա իրեն օգնի հռոմայեցիների կողմից Հայաստանի թագավոր կարգված Տիգրանի դեմ, որը մ. թ. 62 թ. ասպատակում էր Ադիաբենեն (*Tacit*., Annal., XVI, 1 և XV, 14)։

235 Հովսեպոսը պատմում է, որ Հրեաստանի թագավոր Ագրիպպասը ունեցել էր մի տղա և երեք աղջիկ, որոնցից մեկը՝ Դրուսիլան, պետք է ամուսնանար Կոմմագենեի Անտիոքոս թագավորի որդի Եպիփանեսի հետ, բայց այդ ամուսնությունը տեղի չի ունենում (*Joseph*. Flav., Antiq., XIX, 355)։

236 Այս Սոեմոսը կապ ունի՞ արդյոք Ներոնից Ծոփքի հայկական թագավորության գահն ստացած Եմեսայի իշխանական տոհմից սերած Սոեմոսի հետ (համա. *Tacit*., Annal., XIII, 7)։ J. G. C. Anderson-ը այս հարցին բացասաբար է պատասխանում (Cambridge Ancient history, vol. X, 1934, էջ 758, ծան. 3), իսկ Հ. Մանանդյանը գրում է. «Փոքր Հայքի թագավորությունը, որ հիմնվեց Հայաստանի կողքին, տրվեց Արիստոբուլոսին, որը Հերովդեսի սերունդից էր, իսկ Ծոփքի թագավորությունը՝ Սոեմոսին, որն Եմեսայի իշխանների տոհմից էր» (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն..., հ. Ա, էջ 327)։

237 Նույն վկայությունը կա նաև Տակիտոսի մոտ (Annal., XIII, 7)։

238 Բնագրում՝ Βαρζαβάνης—Բարզաբանես։

# ԴԻՈՆ ԿԱՍՍԻՈՍ

## (Կյանքը և գործը)

Մ. թ. II դարի վերջին և III դարի սկզբին Հռոմեական կայսրության սահմաններն ընդարձակվել էին ինչքան երբեք։ Ստեղծվել էր հսկայածավալ և հզոր մի պետություն, որն իր նախընթացը չուներ պատմության մեջ։ Երբեմնի փոքրիկ Հռոմի քաղաքացիներն իրենց տիրապետությունը տարածել էին Բրիտանական կղզիներից մինչև Նեղոսի հովիտը և Ատլանտյան օվկիանոսից մինչև Եփրատ գետի ափերը, Միջերկրականը հայտարարելով իրենց սեփական ծովը՝ mare nostrum։ Կայսր Անտոնինոս Կարակալլայի գահակալության տարիներին (211—217 թթ.) արդեն կայսրության ամբողջ տարածքի վրա բնակվող բոլոր ազատ բնակիչները հայտարարվեցին հռոմեական քաղաքացիներ, որով և իրավական տեսակետից վերացավ տարբերությունը Հռոմի բուն քաղաքացու և պրովինցիաների բնակչության միջև, ասես դրանով իսկ իր ժամանակի համար ստեղծվեց ինչ-որ աշխարհաքաղաքացիություն։

Բնական է, որ նման պայմաններում արդեն չէր կարելի բավարարվել այս կամ այն առանձին երկրի կամ ժողովրդի պատմությունը շարադրելով, քանի որ հույն-հռոմայեցիներին հայտնի ամբողջ քաղաքակիրթ աշխարհը՝ օյկումենեն, ընդգրկված էր Հռոմեական կայսրության կազմում կամ էլ գտնվում էր նրա հետ անմիջական քաղաքական առնչությունների մեջ։ Եվ ահա հրապարակ են գալիս «Հռոմեական պատմություն» և կամ նման վերնագրով մեծածավալ աշխատություններ, որոնք իրենց ժամանակի համար կրում են «համաշխարհային» պատմության բնույթ։ Այդ գործերի հեղինակների համար արդեն բնավ էլ պարտադիր չէր Աթենքում կամ Հռոմում ծնված լինելը, քանի որ նախ հելլենիզմի, ապա Հռոմեական կայսրության համահարթիչ մամլակը ատրճա-

նաբար վերացրել էր կենտրոնի և ծայրամասերի միջև նախկինում գոյություն ունեցած տնտեսական և քաղաքական տարբերությունները։ Համահարթում տեղի էր ունենում նաև լեզվի ասպարեզում և արդեն պարտադիր էր դառնում հեղինակել կա՛մ լատիներեն (հատկապես կայսրության արևմտյան մասում), կա՛մ հունարեն։

Վերոհիշյալ երևույթները բնորոշ են նաև ուշ անտիկ շրջանի խոշորագույն պատմիչներից մեկին՝ Դիոն Կասսիոս Կոկկեյանոսին, որն իր երկը հեղինակել է հունարեն։

Դիոն Կասսիոսը (շուրջ 155—235 թթ.) ծնվել է Բյութանիայում, փոքրասիական Նիկիա քաղաքում։ Նա սերում էր արիստոկրատական հայտնի ընտանիքից և ստացել էր իր ժամանակի համար նախանձելիորեն անթերի կրթություն։ Դիոն Կասսիոսը թոռն է հայտնի հռետոր և մատենագիր Դիոն Ոսկեբերանի։ Նրա հայրը եղել է Հռոմի ծերակուտական և Մարկոս Ավրելիոսի կայսրության տարիներին (161—180 թթ.) վարել է Կիլիկիա պրովինցիայի, այնուհետև՝ Դալմատիայի հռոմեական կառավարչի պաշտոնը։

Դիոն Կասսիոսի կենսագրության միակ աղբյուրը նրա իսկ աշխատությունն է, որի մեջ, դժբախտաբար, հեղինակը կցկտուր տեղեկություններ է հաղորդում իր մասին։ Այդ տեղեկությունների համաձայն, պատանի Դիոնը ուղեկցել է իր հորը, երբ վերջինս Կիլիկիա պրովինցիայի կառավարիչն էր։ Հոր մահից հետո ապագա պատմիչը շուրջ 180 թ. Կոմմոդոս կայսեր ժամանակ (180—192 թթ.) գալիս է Հռոմ և այդ տարիներից հետո ընկած ժամանակահատվածի պատմությունն արդեն շարադրում է որպես դեպքերի ականատես, մինչդեռ դրան նախորդած պատմությունը շարադրելիս, հասկանալի է, օգտվել է հնագույն վավերագրերից կամ էլ նախորդ հեղինակների երկերից։

Կայսրության մայրաքաղաքում հաստատվելուց հետո, շուրջ 25 տարեկան հասակում, Դիոն Կասսիոսը դառնում է Հռոմի սենատի անդամ, որից հետո արդեն վարում է պետական տարբեր պաշտոններ Պերտինաքս (193 թ.), Դիդիոս Հուլիանոս (193 թ.), Սեպտիմիոս Սևերոս (194—211 թթ.), Անտոնինոս Կարակալլա (211—217 թթ.) և նրանց հաջորդ կայսրերի ժամանակ։

Ոգևորված Սեպտիմիոս Սևերոսի կառավարումից, երբ գահակալական բուռն կռիվներից հետո կայսերական իշխանությունը ժամանակավորապես կայունացել էր, Դիոն Կասսիոսն սկսում է իր գրական բեղուն գործունեությունը։ Սկզբում նա գրում է և հրա-

պարակում կայսր Սեպտիմիոսին գովաբանող ինչ-որ գործ, որի մեջ շարադրում է նրա կառավարման հետ կապված իր ակնկալությունները։ Այդ գրվածքի համար, որն, ի դեպ, մեզ չի հասել, Սեպտիմիոսը նրան պատշաճն է հատուցում և բարձր գնահատական տալիս գրվածքին։ Այդ ամենից առավել ևս քաջալերված, Դիոն Կասսիոսը միտք է հղանում արդեն գրելու հռոմեական պետության ամբողջ պատմությունը։

Դիոն Կասսիոսը մոտիկից շփվելով Հռոմի կառավարող շրջանների հետ, եռանդագին մուտք է գործում քաղաքական գործունեության ասպարեզ և արագորեն բարձրանում ծառայության աստիճաններով։ 194 թ. Սեպտիմիոս կայսրը նրան կարգում է զինվորական բարձր պաշտոնի։ 211 թ., Սեպտիմիոս Սևերոսի մահից անմիջապես առաջ, ընտրվում է Հռոմի կոնսուլ։ 216 թ. Դիոնը ուղեկցելով Անտոնինոս Կարակալլա կայսրին, մասնակցում է պարթևների դեմ վերջինիս ձեռնարկած ռազմական արշավանքին և գալիս է Արևելք, հավանաբար, հասնում մինչև Տիգրիս գետը։ Կարակալլայի այդ արշավանքը նպատակ ուներ Հռոմեական կայսրությանը միացնել Օսրոենե-Եդեսիան ու Հայաստանը և այս թագավորությունները դարձնել հռոմեական պրովինցիաներ։ Ինչպես հայտնի է իրադարձություններին մասնակից իր իսկ Դիոնի հաղորդումներից, հռոմայեցիներին թեև հաջողվեց նվաճել Օսրոենեն, բայց նրանց զորքերը առաջ շարժվելիս չարաչար պարտվեցին Հայաստանում։

218 թ., Մակրինոս կայսեր օրոք, Դիոնը նշանակվում է Պերգամոնի կառավարիչ. այդ կատարվեց հետևյալ պարագաներում։ Ինչպես նշեցինք, Անտոնինոս Կարակալլայի ժամանակ հռոմեական քաղաքացիության իրավունքը տարածվեց կայսրության սահմաններում բնակվող բոլոր ազատների վրա։ Բնական է, որ Կարակալլայի այս միջոցառումը պետք է հռոմեական վերնախավի դժգոհությունն առաջացներ, բայց և ապահովեր պրովինցիաների բնակչության համակրանքը։ Կայսրից դժգոհ տարրերն, ահա, Կարակալլայի պարթևական արշավանքի ժամանակ դավադրաբար սպանեցին նրան։ Այս ոճրապարտ քայլն էլ առաջացրեց Պերգամոնի բնակչության դժգոհությունը և առիթ դարձավ ապստամբության։ Կայսերական գահին հենց նոր բազմած Մակրինոսը Դիոնին ուղարկում է Պերգամոն, դրությունը խաղաղեցնելու համար։ Այստեղ էլ Դիոնը մնում է մինչև Ալեքսանդր Սևերոսի կայսր հռչակվելը։

Այնուհետև, Ալեքսանդր Սևերոս կայսեր ժամանակ (222—235 թթ.) հաջորդաբար նշանակվում է կայսերական զորքերի լեգատ Աֆրիկա, Դալմատիա, Վերին Պաննոնիա պրովինցիաներում, բայց պրետորյան գնդերը, դժգոհ նրա կիրառած խիստ կարգապահությունից, ապստամբում են Դիոնի դեմ, և միայն կայսեր բարձր հովանավորությունն է փրկում նրան, և պատմիչը, ապաստանելով Կամպանիայում, որոշ ժամանակ ապրում է այնտեղ։ 229 թ. արդեն քաղաքական գործունեության հարուստ փորձ ձեռք բերած Դիոն Կասսիոսը, կայսեր միջնորդությամբ, երկրորդ անգամ ընտրվում է մայրաքաղաքի կոնսուլ։ Սակայն կայսեր այս քայլը դարձյալ վրդովեցնում է պրետորյաններին, և Դիոնը քիչ անց ամբողջովին հրաժարվում է քաղաքական գործունեությունից, իր խոսքերով ասած՝ վատառողջ լինելու պատճառով, հեռանում է Իտալիայից և վերջնականապես հաստատվում իր հայրենի Նիկիա քաղաքում, որտեղ էլ մինչև իր կյանքի վերջը մնացած ամբողջ ժամանակը տրամադրում է իր մեծարժեք «Հռոմեական պատմության» (‘ ωμαϊκὴ ἱστορία կամ ‘Ρωμαϊκά) շարադրանքն ավարտելու գործին։

«Հռոմեական պատմությունը» շարադրելու վրա հեղինակն աշխատել է շուրջ երեք տասնամյակ, գուցե և ավելի։ Իր իսկ Դիոնի խոստովանությամբ, նա ամբողջ մեկ տասնամյակ (200—211 թթ.) հատկացրել է անհրաժեշտ նյութերը հավաքելու գործին և հաջորդ 12 տարիների ընթացքում շարադրել է իր պատմության այն մասը, որն ընդգրկում է հնագույն ժամանակներից մինչև Սեպտիմիոս Սևերոսի մահը (211 թ.)։ Հետագա տարիներին նա շարադրել է իր պատմության վերջին մասերը։ Դիոնին են վերագրվում նաև մի շարք երկրորդական այլ գործեր, որոնց վավերականությունը, սակայն, ավելի քան կասկածելի է։

Դիոն Կասսիոսի «Հռոմեական պատմությունը» բաղկացած է եղել 80 գրքից։ Այդ մեծածավալ երկի բովանդակությունը կազմել է հռոմեական տերության ամբողջ պատմությունը, հնագույն ժամանակներից ի վեր, սկսած հռոմայեցիների նախնի և նրանց պետության հիմնադիր Էնեասի մասին զրույցներից, երբ սա, փախչելով կրակի մատնված Տրոյայից, հաստատվում է Լատիումում, մինչև մ. թ. 229 թ., այսինքն, մինչև իր՝ հեղինակի երկրորդ կոնսուլության տարին։

80 գրքից ամբողջությամբ պահպանվել են միայն 24-ը (XXXVI—LX գրքերը), որոնց մեջ, մանրամասն շարադրված է

Հռոմի պատմությունը մ. թ. ա. 68—մ. թ. 47 թթ., այն է՝ Լուկուլլոսի Հայաստան կատարած արշավանքից՝ մինչև Կլավդիոս կայսեր իշխանության տարիները։ Սա մի ժամանակահատված էր, որի ընթացքում տեղի են ունեցել քաղաքական կարևորագույն իրադարձություններ Հռոմի ներսում, և որոնց մասին մեր միակ արժանահավատ աղբյուրը մնում է Դիոն Կասսիոսի պատմությունը։

Նախորդ և հաջորդ գրքերի բովանդակությունն ընդհանրապես մեզ հայտնի է իրենց ժամանակի համաշխարհային պատմությունը գրելու փորձեր արած բյուզանդական տարեգիրներ Քսիփիլինոսի (XI դ.), Զոնարասի (XII դ.), մասամբ նաև Ցեցեսի (XII դ.) և այլոց կատարած մերթ ընդարձակ, մերթ էլ շատ հակիրճ քաղվածքներից։

Հռոմի պատմության ավելի քան մեկ հազարամյակ ընդգրկող ժամանակաշրջանի պատմությունը Դիոն Կասսիոսը բաժանել է երեք հատվածի. 1) հանրապետության շրջան՝ Հռոմի հիմնադրումից մինչև կայսրության հաստատումը, 2) միապետության շրջան՝ Օգոստոս կայսրից մինչև 180 թ., այսինքն՝ մինչև Մարկոս Ավրելիոս կայսեր մահը և 3) հեղինակի ապրած շրջանը՝ 180—229 թթ.։ Առավել մանրամասն շարադրված են վերջին շրջանի դեպքերը, որոնց անմիջական մասնակիցն ու ականատեսը եղել է ինքը՝ հեղինակը. մինչդեռ ավելի վաղ շրջանի պատմությունը շարադրելիս նա ամբողջովին կախում է ունեցել իր օգտագործած աղբյուրներից։ Բոլոր դեպքերում, սակայն, իր պատմական բովանդակության տեսակետից Դիոն Կասսիոսի երկը մեծ արժեք է ներկայացնում, քանի որ հեղինակը, ինչպես տեսանք, իբրև զորահրամանատար և քաղաքական գործիչ տարիներ շարունակ բարձր պաշտոններ է վարել թե՛ բուն Հռոմում, թե՛ զանազան պրովինցիաներում և այդ իսկ պատճառով մոտիկ շփման մեջ եղել կայսերական միջավայրի հետ, լավատեղյակ իր ժամանակի իրադարձություններին և լայն հնարավորություններ է ունեցել օգտվելու պետական պաշտոնական վավերագրերից։

Մյուս կողմից, սակայն, չի կարելի աչքաթող անել այն կարևոր հանգամանքը, որ Դիոնի արիստոկրատական ծագումը և զբաղեցրած պետական բարձր պաշտոնները, անկասկած, պայմանավորել են նրա պատմության միտումնավորությունը հօգուտ հռոմայեցիների և ի վնաս հատկապես Արևելքի ժողովուրդների։

Դիոն Կասսիոսն իր «Պատմությունը» շարադրելիս ընտրել է աննալիստական մեթոդը, տարեգրությունների ձևը։ Այդ սկզբունքի հիման վրա էլ մեկ տարվա բոլոր իրադարձությունները, աշխարհի որ մասում էլ դրանք կատարված լինեն, նա պատմում է միասին, հաճախ ընդհատելով իր պատմությունը։ Այս մեթոդի հիմնական թերությունն այն է, որ մեկ տարվա ժամանակահատվածը շատ սահմանափակ միավոր է համաշխարհային դեպքերը և իրադարձությունները տեղագրելու համար։ Այդ իսկ պատճառով նման սկզբունք կիրառող հեղինակն ամեն անգամ հարկադրված է լինում ընթերցողին փոխադրելու Հռոմից Հունաստան, Հունաստանից՝ Սիկիլիա, այստեղից՝ Մակեդոնիա, այնուհետև՝ Աֆրիկա, Իսպանիա, Արևելք ու նորից Հռոմ։ Բնական է, որ այսպիսի արատավոր մեթոդով կատարված շարադրանքից մեծապես պետք է տուժեր աշխատության կառուցվածքը, ի հաշիվ անխուսափելի և անտեղի կրկնությունների։

Դիոն Կասսիոսի լեզուն գերազանց մշակված ատտիկյան հունարենն է, որը, սակայն, երբեմն ծանր է կարդացվում և զերծ չէ յատինաբան արտահայտություններից։ Իր շարադրանքի ընթացքում պատմիչը գլխավորապես ուշադրություն է դարձրել ռազմական դեպքերի, ինչպես նաև կառավարող շրջանակներին վերաբերող առանձին հաղորդումների վրա։ Նա, ընդհանրապես, քիչ է ուշադրություն դարձնում պետության և հասարակության ներքին զարգացման հետ կապված հարցերին։ Դիոնը, որպես պալատի դրանիկ, ատելություն է տածում իրենց ազատության համար կռվող ժողովուրդների նկատմամբ։ Նա իր աշխարհայացքով հեռու է ռեալիստ լինելուց և կրքոտ կերպով հավատում է ամեն տեսակ երազների, հրաշքների և նշանների։ Իր շարադրանքի ընթացքում Դիոնը փորձել է հետևել մեծ Պոլիբիոսին, բայց ոչ մի դեպքում չի կարողացել հավասարվել նրան. որոշ հատվածներում աշխատել է նմանվել աթենական խոշոր պատմիչ Թուկիդիդեսին, իսկ գործիչներին վերագրած իր ճառերում քաղաքական դատողություններ անելիս, նկատի է ունեցել դասական շրջանի հելլեն հռետորների ճառերը։

Այս նկատված թերություններով հանդերձ, Դիոն Կասսիոսի «Հռոմեական պատմությունը» անփոխարինելի սկզբնաղբյուր է ոչ միայն ընդհանրապես հին աշխարհի պատմությունն ուսումնասիրելու համար, այլև այն բովանդակում է կարևորագույն տվյալներ հատկապես մ. թ. ա. I—մ. թ. II դդ. Հայաստանի պատմության

վերաբերյալ։ Առանձին դեպքերում, ինչպես օրինակ Հայաստանն օկուպացրած հռոմեական կայազորների դեմ մայրաքաղաք Արտաշատի բնակչության 163 թ. ապստամբության մասին. Դիոնի երկը միակ աղբյուրն է։

Ներկա թարգմանությունը կատարել ենք „Cassii Dionis Cocceani Historiarum Romanorum quae supersunt". ed. Boissevain, Berolini, 1895 հրատարակությունից։ Միաժամանակ ձեռքի տակ ունեցել ենք „Loeb Classical Library" մատենաշարով հրատարակված Դիոն Կասսիոսի բնագիրը։

Թարգմանելու համար Դիոն Կասսիոսի «Պատմություն»-ից ընտրել ենք այն հատվածները միայն, որոնք վերաբերում են պատմական Հայաստանին և հարևան երկրներին, որոնց հետ հայերը հնագույն ժամանակներից ունեցել են քաղաքական, տնտեսական և մշակութային առնչություններ։ Դիոն Կասսիոսի երկի այդ հատվածները ամբողջությամբ առաջին անգամ են թարգմանաբար ներկայացվում հայագետների ուշադրությանը։

Սույն թարգմանության մեջ փակագծերում հանդիպող բառերը ընթերցվածը պարզ դարձնելու նպատակով մեր կատարած հավելումներն են։

## ՀՌՈՄԵԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

1 Ես կարդացել եմ նրանց մասին[1] որևէ մեկի կողմից
գրված գրեթե ամեն ինչ, բայց ընդգրկել եմ (իմ պատմու-
թյան մեջ) ոչ ամեն բան, այլ այն բոլորը, ինչ ես ընտրել եմ։
2 Եվ ոչ իսկ գեղապաճույճ խոսքեր եմ օգտագործել. միայն
այնքանով, որքանով այդ թույլ էր տալիս իրերի շարադրան-
քը, որպեսզի այդ խոսքերի ճշմարտության մեջ ոչ ոք չկաս-
կածի, ինչպես պատահում է այլոց երկերում։ Ուստի ես,
3 ինչքան հնարավոր էր, աշխատել եմ երկու դեպքում ևս հա-
վասարապես լինել ճշմարիտ։ Ես կսկսեմ այնտեղից, ուր մեր
բնակեցրած երկրի վրա կատարված դեպքերի մասին ամե-
նաստույգ տեղեկությունները ունենք։ Այն երկրի, որտեղ կա-
ռուցված է հռոմայեցիների քաղաքը։

### ԳԻՐՔ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

(Զոնարաս, 9, 18)

Փլամինիոսի[2] Հռոմ ժամանելուց հետո Նաբիսը[3] դարձյալ ապստամբեց։ Եվ դրանից ամբողջ հունական (երկիրը), այսպես ասած, փոթորկվեց, դրդվելով էտոլիացիների[4] կողմից։ Ուստի նրանք պատրաստվում էին պատերազմի և դեսպաններ ուղարկեցին Փիլիպպոսի[5] և Անտիոքոսի[6] մոտ։ Եվ համոզեցին սրան պատերազմել հռոմայեցիների դեմ, որով նա կարող էր թագավորել և՛ Հելլադայի, և՛ Իտալիայի վրա։ Իսկ հռոմայեցիները այս խառնակ իրավիճակի պայմաններում հույս չունեին հաղթելու Անտիոքոսին, այլ ցանկանում էին պահպանել այն, ինչ արդեն ձեռք էին բերել։ Քանզի Ան-

տիոքոսը մեծ էր համարվում թե՛ իր սեփական ուժի համար, որով ի թիվս այլոց նվաճել էր նաև Մեդիան, թե՛ առավել ևս հվորացել էր, Եգիպտոսի թագավոր Պտղոմեոսին[7] և Կապպադովկիայի (թագավոր) Արիարաթեսին[8] իրեն փեսա դարձնելով։

(Զոնարաս, 9, 20)

Այդ ժամանակ Մանլիոսը գրավեց Պիսիդիան և Լյուկաոնիան, և Պամփյուլիան, և Ասիական Գալատիայի մեծ մասը։ Քանզի այստեղ կա գալլերի մի ցեղ, որն անջատվել է եվրոպականից։ Իրենց թագավոր Բրեննոսի առաջնորդությամբ նրանք արշավեցին Հելլադայի և Թրակիայի վրայով և այնտեղից անցնելով Բյութանիայի միջով, նրանք անջատեցին Փոյուգիայի, Պափլագոնիայի, Օլյումպոսի սահմանակից Մյուսիայի և Կապպադովկիայի որոշ մասեր և այնտեղ բնակվեցին. ուստի այժմ առանձին մի ժողովուրդ կա այնտեղ, որը կրում է գալատներ անունը։ Սրանք, ահա, մեծ դժվարություններ հարուցեցին Մանլիոսին։ Բայց (Մանլիոսը) սրանց ևս հաղթեց, նրանց Անկյուրա քաղաքը պաշարմամբ վերցնելով, մինչդեռ մյուս քաղաքները հանձնվեցին։ Այս ամենը անելուց և Կապպադովկիայի Արիարաթես թագավորից որպես խաղաղության փրկագին խոշոր գումար ստանալուց հետո նա վերադարձավ տուն։

## ԳԻՐՔ ՔՍԱՆԵՐՈՐԴ

(Զոնարաս, 9, 24)

Այդ ժամանակ էլ Կապպադովկիայի հարցը կարգավորվեց այսպես։ Այս երկրի (թագավոր) Արիարաթեսը ունեցավ հարազատ որդի՝ Արիարաթեսին։ Բայց սրան ունենալուց առաջ նրա կինը, քանի որ երկար ժամանակ չէր հղիանում, տղա որդեգրեց, անվանելով նրան Օրոփեռնես։ Երբ հետագայում ծնվեց հարազատը, այն մեկը բացահայտվեց և հեռացվեց (երկրից)։ Արիարաթեսի մահից հետո սա էլ ապստամբեց եղբոր դեմ։ Եվ Արիարաթեսին դաշնակցեց Եվմենեսը[9], իսկ Օրոփեռնեսին՝ Դեմետրիոսը՝ Ասորիքի թագավորը[10]։ Արիարաթեսը թուլանալով ապաստանեց հռոմայեցիների մոտ և նրանց կողմից հաղորդակից հռչակվեց Օրոփեռնեսի թագավորական իշխանությանը։ Եվ քանի որ

Արիարաթեսը Հռոմայեցիների կողմից հռչակվեց (իրենց) բարեկամ և դաշնակից[11], այդ իսկ պատճառով նա կարողացավ յուրացնել ամբողջ իշխանությունը։ Եվ Ատտալոսը[12] հաջորդելով մահացած Եվմենեսին, թե՛ Օրոփեռնեսին, թե՛ Դեմետրիոսին ամբողջապես դուրս արեց Կապպադովկիայից։

## ՀԱՏՎԱԾՆԵՐ 30—35 ԴՐՔԵՐԻՑ

99, 1 Միհրդատը[13], երբ Հռոմայեցիների դեսպանները ժամանեցին, բոլորովին չվրդովվեց, այլ հակամեղադրանք հարուցելով և ցուցադրելով դեսպաններին այն միջոցները, որ նա վատնել էր և՛ պետական գործերի, և՛ մասնավոր անձանց վրա, մնաց հանգիստ։ Իսկ Նիկոմեդեսը[14], քաջալերվելով Հռոմայեցիների դաշնակցությունից և դրամի կարիք զգալով, ներխուժեց նրա երկիրը։

2 Միհրդատը դեսպաններ ուղարկեց Հռոմ, պահանջելով, որ եթե իրենք Նիկոմեդեսին բարեկամ են համարում, ապա թող համոզեն կամ նույնիսկ ստիպեն նրան արդարացի վերաբերվել իր հանդեպ. հակառակ դեպքում թույլ տան իրեն պաշտպանվելու թշնամու դեմ։ Մինչդեռ նրանք ոչ միայն չկատարեցին նրա խնդրանքներից որևէ մեկը, այլև սպառնացին (պատժել) նրան, եթե Կապպադովկիան չվերադարձնի Արիոբարզանեսին[15] և խաղաղություն չպահպանի Նիկոմեդեսի հետ։ Եվ նրա դեսպաններին նույն օրը ետ ուղարկեցին ու սաստեցին նրան այլևս ոչ ոքի չուղարկել, մինչև իրենց չհնազանդվի։

* * *

101, 1 Բոլոր ասիացիները, Միհրդատի կարգադրությամբ,
սպանեցին Հռոմայեցիներին։ Միայն Տրալլեսի[16] բնակիչնե-
րը անձամբ իրենք ոչ ոքի չսպանեցին, այլ (այդ գործի հա-
մար) վարձեցին ոմն պափլագոնացի Թեոփիլոսի, ասես թե
դրանով իրենք պակաս պետք է կորստի մատնվեին կամ թե
սպանվողների համար ասես որևէ կարևորություն ուներ, թե
2 ո՞ւմ ձեռքով են սպանվում։ Թրակիացիները Միհրդատի
դրդմամբ ասպատակեցին Եպիրոսը մինչև Դոդոնե[17] երկրի
մյուս մասերը, այնպես, որ Զևսի տաճարը ևս կողոպտեցին։

* * *

109, 6 Գերի վերցվածների սպանությունը այդ ժամանակ էլ
կատարվեց ոչ պակաս չափով, քան Սուլլայի օրոք. և քանի
որ նրանք սպանվում էին տաճարի մոտ, մեծ աղմուկն ու
ողբը, լացն ու կականը թափանցում էին մինչև սենատ,
7 այնպես, որ սենատորները կրկնակի տագնապեցին։ Քանզի
իրենք էլ արդեն հեռու չէին ինչ-որ վտանգավոր բանի սպա-
սելուց. այնքան պիղծ էին նրա խոսքերը և գործերը։ Ուստի
և շատերը, մեծապես տագնապելով այս կրկնակի վտանգի
պատճառով, ցանկանում էին գտնվել դրսում կործանվողնե-
րի թվում, որպեսզի դադարեին այսուհետև վախենալուց.
8 Բայց իրենք խուսափեցին, իսկ մյուսները ջարդվեցին ու գե-
տը նետվեցին. այնպես որ Միհրդատի դաժան համարված
կոտորածը, երբ նա մեկ օրում սպանել էր Ասիայում գտնվող
բոլոր հռոմայեցիներին, առավել փոքր թվաց այդ ժամանակ
սպանվածների բազմության համեմատությամբ։

## ԳԻՐՔ ԵՐԵՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ[18]

(Քսիփիլինոս, հրատ. Dindorf-ի, էջ 1—2)

1 Այդ ժամանակ (մ. թ. ա. 69-թրգմ.) Լուկիոս Լուկուլլո-
սը պատերազմում հաղթելով Ասիայի տիրակալներ Միհրը-
դատին և արմեն Տիգրանին, և ստիպելով նրանց խուսափել
ճակատամարտից, պաշարում էր Տիգրանակերտը։ Բայց
բարբարոսները[19] նետաձգությամբ և (պաշարողական) մեքե-
2 նաների վրա թափած նավթով[19ա] մեծապես վնասեցին նրան։
Այս դեղանյութը կուպրաշատ էր և բոցավառվող, այնպես
որ հրկիզում էր այն ամենը, ինչի կպչում էր, և ոչ մի հեղու-
կով հեշտ չէր այն հանգցնել։ Այս բանից Տիգրանը նորից սըր-
տապնդվելով այնքան մեծ զորքով առաջ եկավ, որ նույնիսկ
ծիծաղեց այնտեղ գտնվող հռոմայեցիների վրա. պատմում
են, ուրեմն, որ նա իբր ասել է՝ եթե եկել են պատերազմելու,
3 քիչ են, իսկ եթե եկել են դեսպանության՝ շատ են եկել[20].
Սակայն նրա հրճվանքը երկար չտևեց, այլ շուտով նրան
պարզ դարձավ, թե որքան քաջությունն ու արվեստը գե-
րազանցում են ամեն մի թվի։ Նրա փախուստից հետո զին-
վորները, գտնելով նրա խույրը և մոտիկ ընկած ապարոշը,
հանձնեցին Լուկուլլոսին. քանզի վախենալով նրանց կողմից

ճանաչվելով բռնվելուց, (արքան) պոկել էր դրանք ու դեն
շպրտել[21]։

* * *

1 ...Եվ քանի որ (Միհրդատը) ենթարկվել էր բախտի
երկու ծայրահեղություններին, (Տիգրանը) նրան հանձնեց
(զորքի հրամանատարությունը˚)[22]։ Քանզի շատ անգամներ
պարտվելով և հաղթելով, ենթադրվում էր, որ նա ոչ պակաս
հմուտ էր դարձել ռազմական արվեստին։ Ուստի և նրանք
ասես թե նոր էին պատրաստվում պատերազմ սկսելու, դես-
պաններ ուղարկեցին հարևաններին և, իմիջիայլոց, նաև
Արշակ Պարթևին[23], թեպետև սա Տիգրանի հանդեպ թշնա-
մություն ուներ վիճելի մի երկրամասի պատճառով[24], և
2 խոստացան այն զիջել նրան. միաժամանակ նրանք մե-
ղադրում էին հռոմայեցիներին, ասելով, որ եթե իրենք ա-
ռանձին մնան և հռոմայեցիները հաղթեն իրենց, ապա ան-
հապաղ կարշավեն նաև նրա դեմ։ Քանզի ամեն մի հաղթո-
ղի բնականից հատուկ է անհագությունը և նրա ընչաքաղ-
ցությունը ոչ մի սահման չի ունենում. այսպես և հռոմա-
յեցիները, որոնք ուժով տիրել են շատերին, չեն ցանկանա
զրկվել այդ ամենից։

2, 1 Մինչդեռ նրանք այսպես էին գործում, Լուկուլլոսը Տիգ-
րանին չհետապնդեց, այլ թույլ տվեց նրան շատ ազատո-
րեն փրկվել։ Այս պատճառով էլ Լուկուլլոսը քաղաքացիների
և մյուսների կողմից պաշտոնանկ հայտարարվեց այն մե
ղադրանքով, որ իբր չի ցանկանում վերջ տալ պատերազմին,
2 որպեսզի կարողանա իր իշխանությունը երկարաձգել։ Ուս-
տի և նրանք Ասիայում իշխանությունը վերադարձրին պրե-
տորներին, ու դրանից հետո, երբ պարզ դարձավ, որ նա շա-
րունակում էր նույն եղանակով գործել, նրանք ուղար-
կեցին այդ տարվա կոնսուլին՝ փոխարինելու Լուկուլլոսին
3 Մինչդեռ նա Տիգրանակերտը գրավեց այնտեղ բնակեցված
օտարների ապստամբության հետևանքով[25]։ Քանզի նրանց
մեծ մասը կիլիկեցիներ էին, որոնք մի ժամանակ տեղա-
հանվել էին իրենց երկրից, և այժմ գիշերով հռոմայեցիներին
4 ներս թողեցին։ Այնուհետև մնացած ամեն ինչը հափշտակ-
վեց, բացի կիլիկեցիների ունեցվածքից. իսկ հզորադույննե-
րի կանանցից շատերին, որոնք գերվել էին, Լուկուլլոսը պա-
հեց առանց ստորացնելու. այս վարմունքով նա իր կողմը

5 նվաճեց նաև նրանց ամուսիններին։ Իսկ Կոմմագենեի թա-
գավոր Անտիոքոսին—այս երկիրը Ասորիքի, Եփրատի և
Տավրոսի մոտ է գտնվում—արաբ իշխանավոր Ալքավդոնիո-
սին և ուրիշներին, որոնք դեսպաններ էին ուղարկել, ընդու-
նեց։
3, 1 Եվ նրանցից տեղեկանալով Տիգրանի և Միհրդատի
կողմից Արշակին ուղարկված դեսպանության մասին, ինքը
ևս դրան հակառակ, դաշնակիցներից ոմանց ուղարկեց նրա
մոտ, սպառնալիքներով՝ եթե օգնելու լինի նրանց, և խոս-
2 տումներով՝ եթե ընտրելու լինի իրեն։ Իսկ Արշակը այժմ,
քանի որ դեռևս զայրացած էր Տիգրանի դեմ և միաժամա-
նակ ոչ մի կասկած չուներ հռոմայեցիների հանդեպ, փոխա-
դարձ դեսպաններ ուղարկեց (Լուկուլլոսի մոտ) և բարեկա-
3 մություն ու դաշնակցություն հաստատեց։ Սակայն հետո նա
տեսնելով իր մոտ ժամանած Սեկիլիոսին, կասկածեց, որ
սա եկել էր իր երկիրը նաև ուժերը լրտեսելու համար—քանզի
այդ պատճառով, և ոչ թե տեղի ունեցած համաձայնության
հետևանքով, ուղարկվել էր ռազմական գործերում աչքի ըն-
կած մի մարդ—ուստի հետագայում ևս ոչ մի օգնություն
ցույց չտվեց նրան։ Բայց և միաժամանակ ոչնչով չհակա-
ռակվեց, այլ կանգնեց երկու կողմերի միջև, չցանկանալով,
ինչպես բնական էր, ուժեղացնել նրանցից որևէ մեկին. քան-
զի նա կարծում էր, որ կողմերի միջև հավասար կռիվը իր
համար մեծագույն ապահովություն կլիներ։
4, 1 Այդ տարին ահա Լուկուլլոսն այսպես գործեց և գրավեց
Հայաստանի շատ մասերը։ Եվ Քվինտոս Մարկիոսի կոնսու-
լության տարին—քանզի սա, թեպետև միայնակ չէր կարգվել
կոնսուլ, միակ կոնսուլություն արեց. որովհետև նրա հետ
կոնսուլ ընտրված Լուկիոս Մետելլոսը մահացավ տարե-
սկզբին, ու նրա փոխարեն պաշտոնում ընտրվածը նույնպես
մահացավ դեռևս իշխանության գլուխ անցնելուց առաջ,
որից հետո այլևս ոչ ոք չընտրվեց—նույն այդ տարին, ու-
2 րեմն, Լուկուլլոսը արդեն ամռան կեսին սկսեց արշավանքը,
քանզի ցրտերի պատճառով անկարելի էր գարնանը ներխու-
ժել թշնամու երկիրը, և ավերեց երկրի որոշ մասերը, որպես-
զի բարբարոսները պաշտպանելով այն, ներքաշվեն պա-
տերազմի մեջ. բայց քանի որ նրանք դարձյալ չշարժվեցին,
5, 1 ինքն արշավեց նրանց վրա։ Եվ այս ընդհարման ժամանակ

Հռոմայեցի հեծյալներին թշնամու հեծելազորը դժվար դրու-
թյան մատնեց, իսկ հետևակի հետ նրանցից ոչ մեկը ձեռնա-
մարտի դուրս չեկավ, այլ նրանք փախչում էին ամեն անգամ,
երբ Լուկուլլոսի վահանակիրները օգնության էին հասնում
հեծելազորին։ Այսուհանդերձ թշնամիները որևէ վնաս չկրե-
ցին. այլ նրանք ետ դառնալով և հետապնդողներին նետա-
հարելով, շատերին իսկույն սպանեցին, իսկ շատ շատերին
2 էլ վիրավորեցին։ Ու վերքերը ծանր էին և դժվար բուժելի.
քանզի նրանք գործածում էին երկծայր նետեր, և ծայրերը
այնպես էին իրար ագուցված, որ նետերը թե՛ մարմնի որևէ
մասում մնալու և թե՛ դուրս քաշվելու դեպքում, արագորեն
սպանում էին, որովհետև երկաթյա ծայրերից մեկը, որը
չէր ամրացված, մնում էր վերքի մեջ[26]։
6, 1 Այնժամ Լուկուլլոսը, քանի որ շատերը վիրավորվում
էին և մի մասն էլ մահանում էր, իսկ հաշմվածները հեծե-
ծում էին, և միաժամանակ պարենամթերքը պակասում էր,
2 նահանջեց այդտեղից և արշավեց Նիսիբիսի[27] վրա։ Այս
քաղաքը կառուցված է Միջագետք կոչված երկրում—քանզի
այսպես է կոչվում Տիգրիսի և Եփրատի միջև գտնվող ամ-
բողջ (երկիրը)—և այժմ այն պատկանում է մեզ և համար-
վում է մեր գաղութը։ Բայց այդ ժամանակ Տիգրանը պար-
թևներից վերցնելով այն, իր գանձերը և այլ հարստություն-
ների մեծ մասը այնտեղ էր կենտրոնացրել և իր եղբորը[28]
այնտեղ բերդապահ էր կարգել։ Լուկուլլոսը ամռանը հաս-
նելով այս քաղաքը, թեպետև հարձակվում էր ոչ իմիջիայլոց,
բայց ոչինչ չկարողացավ վճռել. քանզի (քաղաքի) պարիսպ-
ները և՛ կրկնակի, և՛ աղյուսաշեն լինելով, մեծ հաստու-
թյուն ունեին և բաժանված էին խորը խրամատով. այնպես
որ ոչ մի տեղում չկարողացավ (պարիսպը) ո՛չ քանդել, ո՛չ
իսկ խախտել. ուստի և Տիգրանը նույնիսկ օգնության չեկավ
7, 1 յուրայիններին։ Բայց երբ ձմեռը վրա հասավ, և բարբարոս-
ները դարձան առավել անզգույշ, քանի որ իրենք գերադան-
ցել էին հռոմայեցիներին և երբեք չէին սպասում, որ նրանք
2 իրենց տեղերից կշարժվեն, (Լուկուլլոսը) ընտրելով անլու-
սընկա մի գիշեր, երբ ուժեղ տեղատարափ էր և ամպրոպ,
ուստի և թշնամին չէր կարող նախապես ոչինչ տեսնել, ոչ
իսկ լսել, լքեց արտաքին շրջապարիսպը և միջակա խրամա-
տը թողնելով մի փոքր խումբ, և շատ տեղերում մոտեցավ

պարսպին. առանց դժվարության անցավ հողաթմբերը և
հեշտությամբ սպանեց այնտեղ թողնված ոչ մեծաթիվ պա-
3 հակներին։ Եվ այսպիսով, խրամատի մի մասը լցրեց—քան-
զի բարբարոսները քանդել էին կամուրջները—իսկ ուժեղ
տեղատարափի պատճառով ո՛չ նետաձգությունը, ո՛չ իսկ
կրակը չէին կարողանում նրան վնասել։ Ուստի անցնելով
այն, անմիջապես գրավեց ամեն ինչ, քանի որ ներքին շրջա-
պարիսպը այնքան ամուր չէր, որովհետև արտաքին պատի
ամրությունը վստահություն էր ներշնչում։ Իսկ միջնաբերդ
4 փախածներին, որոնց մեջ էր նաև Տիգրանի եղբայրը, հետա-
գայում ստիպեց հանձնվել։ Այսպիսով և՛ մեծաքանակ հա-
րստություն ձեռք բերեց, և՛ այնտեղ էլ ձմեռեց։
8, 1 Ուստի Նիսիբիսն այս կերպ նա գրավեց, բայց Հայաս-
տանի, ինչպես և Պոնտոսի շուրջը գտնվող մի շարք երկրա-
մասեր կորցրեց։ Քանզի Տիգրանը, կարծելով, որ Նիսիբիսը
անառիկ է, օգնություն չուղարկեց, այլ արշավեց դեպի վերո-
հիշյալ երկրամասերը, որպեսզի, քանի դեռևս Լուկուլլոսը
զբաղված էր Նիսիբիսի շուրջը, ինքը կարողանար ետ նվա-
2 ճել դրանք։ Այնժամ նա Միհրդատին ետ ուղարկեց իր եր-
կիրը, իսկ ինքը եկավ իր Հայաստանը և այստեղ իրեն դի-
մադրած Լուկիոս Ֆաննիոսին շրջապատեց ու պաշարեց,
մինչև որ Լուկուլլոսն այդ մասին իմանալով, օգնություն ու-
ղարկեց։
9, 1 Մինչ այս դեպքերը տեղի էին ունենում, Միհրդատը,
մտնելով մյուս Հայաստանը[29] և նրա մերձակա շրջանները,
հռոմայեցիներից շատերին, որոնք թափառում էին երկրով
մեկ, հանկարծակի հարձակվելով՝ ոչնչացրեց, իսկ մյուսնե-
րին պատերազմում ջարդեց. և դրանով իսկ երկրի մեծագույն
2 մասը արագորեն նվաճեց։ Քանզի մարդիկ նրան համակրում
էին և՛ համազգի լինելու, և՛ հայրենի թագավորական իշխա-
նություն ունենալու պատճառով. մինչդեռ հռոմայեցիներին
ատում էին և՛ այլազգի լինելու, և՛, որպես իշխողներ, ի-
րենց հալածած լինելու պատճառով. հետևաբար անցան նրա
կողմը և դրանից հետո հաղթեցին այնտեղի կառավարիչ
3 Մարկոս Փաբիոսին։ Քանզի թրակիացիները, որոնք նախա-
պես վարձկաններ էին Միհրդատի մոտ, իսկ այժմ Փաբիոսի
հետ էին, և հռոմեական բանակատեղում գտնվող ստրուկ-
4 ները նրանց մեծապես օգնեցին։ Որովհետև թրակիացիները

Փաբիոսի կողմից հետախուզության ուղարկվելով, ոչ մի որո-
շակի տեղեկություն չհաղորդեցին նրան, և դրանից հետո երբ
նա առաջվա նման անզգույշ էր առաջանում, և Միհրդատը
հանկարծակի հարձակվեց նրա վրա, նրանք էլ համատեղ
նետվեցին հռոմայեցիների վրա։ Միաժամանակ ստրուկնե-
րը էլ, որոնց համար բարբարոս (թագավորը)[30] ազատու-
5 թյուն էր հռչակել, մասնակցեցին գործին։ Եվ կոչնչացնեին
նրանց[31], եթե Միհրդատը, որն արդեն յոթանասուն տարե-
կանն անց լինելով դեռևս կռվում էր, քարով չվիրավորվեր։
Այս էլ երկյուղ ներշնչեց բարբարոսներին, թե նա կարող է
մեռնել։ Ուստի և այդ պատճառով նրանք դադարեցրին կը-
ռիվը, և Փաբիոսն ու մյուսները կարողացան ապահով տեղ
փախչել։
10, 1 Այս դեպքերից հետո (Փաբիոսը) փակվեց Կաբիրայում[32]
և պաշարվեց, բայց ազատվեց Տրիարիոսի կողմից[33]։ Քան-
զի սա Ասիայից Լուկուլլոսի մոտ գնալիս, գտնվում էր այդ
շրջանում, և տեղեկանալով կատարված դեպքերի մասին,
2 հավաքեց ներկա եղողներից հնարավորին չափ մեծ ուժ և
այնպես շփոթեցրեց Միհրդատին, որը կարծեց, թե պետք է
հանդիպի հռոմեական ամբողջ բանակին, որ ստիպեց նրան
հեռանալ, դեռևս բոլորովին ի տես չեկած։ Եվ այս բանից
հետո (Տրիարիոսը) սրտապնդվելով, փախչող (Միհրդատին)
3 մինչև Կոմանա[34] հալածեց և այնտեղ հաղթեց։ Քանի որ Մի-
հրդատը բանակել էր հանդիպակաց ափին այն գետի, որի
կողմից մոտենում էին հռոմայեցիները, սելա ցանկացավ
նրանց հետ կռվի բռնվել, քանի դեռ նրանք ճանապարհից
հոգնած էին. ուստի և ինքը եկավ ընդառաջ և միաժամանակ
ուրիշներին էլ կարգադրեց ճակատամարտի ընթացքում
մեկ այլ կամրջով անցնելով, հարձակվել։ Եվ ինքը, թեպետև
երկար ժամանակ հավասար կերպով կռվում էր, կամուրջը,
որի վրայով շատերը համատեղ բազմությամբ անցնում
էին[35]... զրկեց նրան օգնությունից և շփոթության մատնեց։
11, 1 Եվ սրանից հետո նրանք երկուսն էլ քաշվեցին իրենց
ամրությունները, քանզի արդեն ձմեռ էր, և հանգիստ արե-
ցին։ Իսկ Կոմանան պատկանում է այժմյան Կապպադով-
կիային և համարվում էր, որ դեռևս մինչև այդ ժամանակ
Արտեմիսի տավրիկյան փայտե կուռքը, ինչպես և Ագամեմ-
նոնի[36] սերունդը այստեղ են պահպանվել։ Թե ինչպե՞ս այս

բոլորը այստեղ ընկան, կամ թե ինչպե՞ս պահվեցին, ես չեմ
կարող հստակ որոշել, քանի որ այդ մասին շատ բաներ են
2 պատմվում։ Բայց ես կպատմեմ այն, ինչ պարզորեն հաս-
կացել եմ։ Այսպիսի նույնանուն երկու քաղաք կա Կապպա-
դովկիայում, որոնք իրարից այնքան էլ շատ հեռու չեն գտնը-
վում և միևնույն հավակնություններն ունեն. քանզի բոլոր
դեպքերում այստեղ պատմում են միևնույն (ավանդությու-
նը) և ցուցադրում միևնույն մասունքները. մինչև անգամ
Իփիգենիայինը համարվող թուրը[37] երկու քաղաքներում էլ
կա[38]։

12, 1 Այս ամենի մասին այսքան. իսկ հաջորդ տարին, Մա-
նիոս Ակիլիոսի և Գայոս Պիսոնի կոնսուլության ժամանակ,
Միհրդատը բանակեց Տրիարիոսի (զորաբանակի) դիմաց,
Գազիուրայի[39] մոտ, մարտահրավեր կարդալով նրան և գըր-
2 գըռելով։ Քանզի նա հռոմայեցիների աչքի առաջ ոչ միայն
ինքն էր մարզվում, այլ ամբողջ բանակը զորավարժու-
թյուններ էր կատարում։ Նա հուսով էր, որ Լուկուլլոսը Տրիա-
րիոսին օգնության չհասած, ինքը կռվի կբռնվի և կհաղթի
նրան ու դրանով իսկ ետ կնվաճի իր մնացած իշխանություն-
ը։ Բայց քանի որ այն մեկը չէր շարժվում, ուղարկեց ոմանց
Դադասա բերդը, որտեղ հռոմայեցիների գումակն էր տե-
ղավորված, որպեսզի նրանք, ստիպված լինելով այն պաշտ-
պանելու, դրանով իսկ ներքաշվեն ճակատամարտի մեջ։
3 Եվ այդպես էլ եղավ։ Քանզի Տրիարիոսը նախապես Մի-
հրրդատի բազմությունից վախենալով և սպասելով Լու-
կուլլոսին—քանզի սրան կանչել էր օգնության—հանգիստ էր
մնում, բայց երբ տեղեկացավ Դադասայի պաշարված լի-
նելու մասին, իսկ զինվորներն էլ վախենալով իրենց դիր-
քերից, անհանգստանում էին և սպառնում, որ եթե որևէ մե-
կը նրանց դուրս չառաջնորդի, ապա սեփական նախաձեռ-
նությամբ կօգնեն իրենք իրենց, այնժամ նա ակամայից
4 դուրս եկավ իր դիրքերից։ Եվ մինչդեռ նա առաջ էր ընթա-
նում, բարբարոսները հարձակվեցին և իրենց բազմությամբ
մի մասին շրջապատելով կոտորեցին, ապա շուրջանակի ար-
շավելով, սպանեցին դաշտ փախածներին, որոնք անտեղյակ
էին, թե գետը շրջված է դաշտի վրա։

13, 1 Եվ նրանց գլխովին կոչնչացնեին, բայց հռոմայեցի-
ներից ինչ-որ մեկը ձևացնելով, թե պատկանում է Միհրդա-

տի դաշնակից զորաբանակին—քանզի, ինչպես ասել եմ, իր
հետ արշավողներից շատերին նա զգեստավորել էր հռոմա-
յեցիների նման—մոտեցավ (արքային) և իբր ցանկանալով
նրան ինչ-որ բան ասել, վիրավորեց։ Եվ այսպիսով, այդ
մարդը բռնվեց ու սպանվեց, իսկ այս պատահարից բար-
բարոսները շփոթվեցին, որից և շատ հռոմայեցիներ փրկ-
2 վեցին։ Միհրդատն ահա. բուժում էր իր վերքը և կասկա-
ծելով, որ բանակի ճամբարում դեռ կան ուրիշ թշնամիներ
ևս, զինվորների ստուգատես կատարեց, իբր թե մեկ այլ
պատճառով, որից հետո կարգադրելով ամեն մեկին արագո-
րեն վերադառնալ իր վրանը, հայտնաբերեց բոլորին և մե-
կուսացած հռոմայեցիներին ոչնչացրեց։
14, 1 Այս իրադրության մեջ, երբ Լուկուլլոսը ժամանեց, ո-
մանք այնպիսի հույս ունեցան, որ նա հեշտությամբ կկարո-
ղանա հաղթել Միհրդատին և արագ կերպով վերանվաճել
այն ամենը, ինչ նախապես կորցրել էր. բայց ոչինչ չհա-
2 ջողվեց անել։ Քանզի Միհրդատը, ամրանալով Տալավրայի[40]
մոտ գտնվող բարձրություններում, դուրս չեկավ նրա դեմ,
իսկ Մեդիայից մյուս Միհրդատը[41], Տիգրանի փեսան, հան-
կարծակի հարձակվեց դեռևս ցրված հռոմայեցիների վրա և
շատերին սպանեց. միաժամանակ լուր հասավ, թե ինքը
Տիգրանը ևս մոտենում է, ուստի և զորքը ապստամբեց.
3 Քանզի վալերիականները[42] բանակից զորացրվելուց հետո
դարձյալ զորագրվել էին, անհանգստացան նույնիսկ Նիսի-
բիսում և՛ իրենց հաղթանակի, և՛ իրենց վայելած հանգստի
համար, որովհետև նրանք առատ սպառեն ունեին և մեծ մա-
սամբ ժամանակն անց էին կացնում առանց Լուկուլլոսի,
4 քանի որ սա բաղում տեղեր էր մեկնում. միաժամանակ նաև
ոմն Պուպլիոս Կլոդիոս, որին ոմանք Կլավդիոս կոչեցին,
բնածին խռովարարությունից մղված, դրդում էր նրանց
ապստամբելու, թեպետև նրա քույրը ամուսնացած էր Լու-
կուլլոսի հետ։ Այնժամ նրանք մեծապես վրդովվեցին նաև
տեղեկանալով, թե կոնսուլ Ակիլիոսը, որն ուղարկվել էր
փոխարինելու Լուկուլլոսին վերոհիշյալ դեպքերի պատճա-
ռով, արդեն մոտենում է. քանզի նրանք արդեն Լուկուլլոսին
արհամարհում էին, նրան դիտելով իբրև մասնավոր քաղա-
15, 1 քացի։ Այնժամ Լուկուլլոսը և՛ այս ամենի պատճառով, և՛
որովհետև Ակիլիոսին իբրև կոնսուլ նախորդած Մարկիոսը,

որը ժամանելու էր Կիլիկիա իբրև կառավարիչ, մերժել էր
2 իրեն օգնելու խնդրանքը, մեծ դժվարության մատնվեց. և
չուզենալով աննպատակ կերպով վերացնել ճամբարը, միա-
ժամանակ վախենալով մնալ այդ երկրում, արշավեց Տիգ-
րանի վրա (այն հույսով), որ գուցե կարողանար հանկար-
ծակի հարձակումով ետ մղել նրան, քանի դեռ նա ռազմեր-
թից հոգնած կլիներ, և դրանով իսկ ինքը կկարողանար մի
կերպ դադարեցնել խռովություն բարձրացրած զինվորների
3 հուզմունքը։ Բայց այս ամենից և ոչ մեկը չկատարվեց։ Քան-
զի բանակը նրան հետևեց մինչև ինչ-որ վայր, որտեղից
հնարավոր էր շրջվել դեպի Կապպադովկիա և այնտեղ բո-
լորը միահամուռ, առանց մի խոսքի, շրջվեցին (դեպի այս
երկիրը)։ Եվ հատկապես վալերիականները լսելով, թե իշ-
խանությունները նրանց զորացրել են, ամբողջովին մեկնե-
ցին։
16, 1 Եվ թող ոչ ոք չզարմանա, որ Լուկուլլոսը, մարդկանց
մեջ ռազմական արվեստին ամենահմուտը լինելով հանդերձ,
և առաջինը լինելով հռոմայեցիների մեջ, որը պատերազ-
մելու համար բանակով անցավ Տավրոսը և հաղթելով երկու
ոչ թույլ թագավորների[43], կարող էր նրանց իր ձեռքը գցել,
եթե ինքը որոշեր արագորեն վերջացնել պատերազմը, այժմ
չէր կարողանում իշխել իր զինվորներին, որոնք ամբողջ ժա-
2 մանակ ապստամբում էին և ի վերջո լքեցին նրան։ Քանզի
Լուկուլլոսը նրանց շատ բան էր հրամայում, ինքը դժվա-
րահաղորդ էր, գործի նկատմամբ խստապահանջ, և պատ-
ժելիս անխնա լինելով, չէր իմանում ինչպե՞ս մարդուն սի-
րաշահել համոզելով կա՛մ իրեն կապել մեղմությամբ, կա՛մ
էլ պատիվներ ու դրամ պարգևելով բարեկամներ շահել, որ-
պիսիք բոլոր դեպքերում շատ անհրաժեշտ են, իսկ առավել
3 ևս ռազմարշավի ելնողին։ Ուստի և զինվորները, քանի դեռ
բարօրության մեջ էին, և վտանգները փոխհատուցվում էին
ձեռք բերված ավարով, հնազանդվում էին նրան. բայց երբ
դժվարությունների հանդիպեցին, և նրանց հույսերը փոխա-
րինվեցին երկյուղով, արդեն նրան չէին գերադասում։ Դրա
ապացույցն այն է, որ Պոմպեոսը վերցնելով նույն այս
մարդկանց—քանզի նա վալերիականներին դարձյալ հավա-
քագրել էր—պահեց նրանց առանց որևէ մի խռովության։
Այնքան շատ է մարդը տարբերվում մարդուց։

17, 1 Զինվորների այս վարմունքից հետո Միհրդատր վե-
րագրավեց համարյա ամբողջ իր տերությունը և Կապպա-
դովկիան ուժեղ կերպով ավերեց. քանզի ո՛չ Լուկուլլոսը,
Ակիլիոսի մոտիկ լինելու պատճառով, պաշտպանեց այն,
ո՛չ էլ ինքը՝ Ակիլիոսը։ Որովհետև այս մեկը առաջին հերթին
ցանկանում էր խլել Լուկուլլոսից հաղթանակի փառքը, իսկ
այժմ, տեղեկանալով կատարված դեպքերի մասին, զորակա-
2 յան չեկավ, այլ մնաց Բյութանիայում։ Մարկիոսը ևս օգնու-
թյան չեկավ Լուկուլլոսին պատճառաբանելով, թե զինվոր-
ները չեն ցանկանում հետևել իրեն. սակայն Կիլիկիա ժամա-
նելով նա ընդունեց ոմն Մենեմաքոսի, որը դասալիք էր եղել
Տիգրանի մոտից, և Կլոդիոսին, որը Նիսիբիսում կատարված
դեպքերի կապակցությամբ վախենալով, լքել էր Լուկուլլո-
սին. սրան նավատորմի հրամանատար կարգեց, քանզի ին-
3 քը նույնպես նրա քույրերից մեկին իրեն կին էր վերցրել։ Նվ
այս մեկը ծովահենների կողմից գերի վերցվելուց և Պոմ-
պեոսի հանդեպ նրանց ունեցած վախի պատճառով ազատ
արձակվելուց հետո եկավ Սիրիայի Անտիոք քաղաքը, հայ-
տարարելով, թե ինքը նրանց դաշնակիցը կլինի արաբների
դեմ, որոնց հետ այդ ժամանակ վեճեր ունեին. այստեղ ևս
ոմանց խռովության գրգելով, քիչ անց կործանվեց։

* * *

37, 3 Նախապատրաստվելով ստեղծված իրադրության և իր
ունեցած մտադրության համապատասխան, Պոմպեոսը նա-
վարկեց ամբողջ ծովը, ուր ծովահեններն անհանգիստ էին,
և այն ենթարկելով հսկողության, մի մասն անձամբ ինքը,
մյուս մասն իր փոխհրամանատարների միջոցով, դրա մեծ
4 մասը սանձահարված պահեց ամբողջ տարին։ Որովհետև նա
ոչ միայն օգտագործում էր մեծաքանակ նավատորմ և հոպ-
լիտներ[44], այնպես որ թե՛ ծովում և թե՛ ցամաքում անհնա-
րին էր նրան դիմադրելը, այլև մարդասիրություն էր ցուցա-
բերում իրեն հարողների հանդեպ. այնպես որ այս եղա-
5 նակով ևս շատ շատերին գրավեց իր կողմը։ Քանզի այն
մարդիկ, որոնք պարտվել էին նրա ուժերից և ճաշակել նրա
բարությունը, հոժարագույնս անցնում էին նրա կողմը։ Նա
ամեն կերպ հոգ էր տանում նրանց մասին, որպեսզի երբեք

այսուհետև նրանցից ոչ մեկը չքավորությունից դրդված եր-
բեք նորից չարագործության չդիմի. ուստի և ինչքան անբնակ
վայրեր և բնակչության պակաս ունեցող քաղաքներ տեսավ,
6 տվեց նրանց։ Նրա կողմից բնակեցվեցին շատ քաղաքներ,
որոնց թվում նաև Պոմպեոպոլիս կոչվածը. սա գտնվում է
Կիլիկիայի ծովափին և ավերվել էր Տիգրանի կողմից. այն
նախապես կոչվում էր Սոլի[45]։

* * *

41, 1 Ռոսկիոսը ևս օրենք մտցրեց, օրենք մտցրեց նաև Գա-
յոս Մանիլիոսը[46], երբ տրիբուն էր։ Առաջինը, քանի որ հեծ-
յալների նստատեղիները թատրոններում ճշտորեն զատորո-
շեց մնացածներից, այդ պատճառով գովասանքի էր արժա-
2 նացել. մինչդեռ Մանիլիոսը քիչ էր մնացել դատի ենթարկ-
վեր, քանզի ազատ արձակվածների դասին նա իրավունք
տվեց, ամբոխից ոմանց կաշառելով, տարվա վերջին օրվա
երեկոյան քվեարկել իրենց ազատ արձակածների հետ միա-
3 սին։ Եվ երբ սենատն իսկույն այդ մասին իմանալով, հա-
ջորդ օրը, հենց ամսվա առաջին օրն իսկ, երբ Լուկիոս
Տուլլիոսը և Էմիլիոս Լեպիդոսը սկսեցին իրենց կոնսուլու-
թյունը, մերժեց նրա օրենքը, նա, վախենալով ամբոխի
խիստ զայրույթից, սկզբում այդ միտքը վերագրեց Կրասսո-
4 սին[47] և մի քանի այլ մարդկանց. բայց քանի որ ոչ ոք նրան
չհավատաց, նա սկսեց շողոքորթել Պոմպեոսին, թեպետև
սա բացակայում էր, մանավանդ, որ նա գիտեր, թե Գա-
բինիոսը մեծ ազդեցություն ուներ նրա վրա։ Ուստի և Պոմ-
պեոսին կարգեց Տիգրանի և Միհրդատի դեմ մղվող պատե-
րազմի հրամանատար, ինչպես և Բյութանիայի և Կիլիկիա-
յի վրա կառավարիչ։

* * *

45, 2 Այդ ժամանակ էլ (Պոմպեոսը) ցանկանալով փորձել
Միհրդատի մտայնությունը, ուղարկեց Մետրոփանեսին[48]
նրա մոտ բարեկամական առաջարկներով։ Իսկ Միհրդատն
3 այնժամ նրան արհամարհեց. քանի որ պարթևների թագա-
վոր Արշակը այդ ժամանակ մահացած լինելով, նա հույս
ուներ իր կողմը գրավել նրան հաջորդած Փրաատեսին[49]։ Սա-

կայն Պոմպեոսը կանխեց նրան, Փրաատեսի հետ շտապ կեր-
պով նույն պայմաններում բարեկամություն հաստատելով և
համոզելով նրան անհապաղ ներխուժել Տիգրանին (պատ-
կանող) Հայաստանի մասերը։ Այս բոլորն իմանալով, (Մի-
հրդատը) ահաբեկվեց և իսկույն դեսպաններ ուղարկելով,
4 փորձեց հաշտություն կնքել։ Բայց երբ Պոմպեոսը պահանջեց
նրանից զենքերը ցած դնել և փախստականներին հանձնել, նա
մտածելու ժամանակ չունեցավ. քանզի նրա զորաբանակում
գտնվող փախստականները—որոնք մեծաթիվ էին—լսելով այս
ամենը և վախենալով, որ իրենց կհանձնեն (հռոմայեցինե-
րին), մյուս կողմից բարբարոսները ևս (վախենալով), որ
ստիպված կլինեն կռվելու առանց նրանց (փախստական հռո-
5 մայեցիների—թրգմ.), աղմուկ բարձրացրին։ Եվ նրանք
Միհրդատին որևէ (չարիք) կհասցնեին, եթե նա չձևացներ,
որ իբր դեսպաններին ուղարկել է ոչ թե դաշինք կնքելու,
այլ հռոմայեցիների պատրաստությունները լրտեսելու հա-
մար. սրանով նա հազիվ կարողացավ զսպել նրանց։
46,1 Այսպիսով, Պոմպեոսը, հաստատապես իմանալով, որ
ինքը ստիպված է պատերազմելու, սկսեց ամեն կերպ նա-
խապատրաստվել. մինչև անգամ նորից հավաքագրեց վալե-
րիականներին։ Այժմ, երբ նա Գալատիայում էր, Լուկուլլո-
սը, հանդիպելով նրան, հայտարարեց, թե պատերազմն ա-
վարտված է և այսուհետև ոչ մի արշավանքի կարիք չկա, և
որ այդ իսկ պատճառով այդ երկրները կառավարելու հա-
մար սենատի կողմից ուղարկված մարդիկ արդեն ժամանել
2 են։ Բայց քանի որ Պոմպեոսը չհամոզվեց վերադառնալ, ա-
պա Լուկուլլոսը դիմեց մեղադրանքների, անվանելով նրան,
իմիջիայլոց, նաև ամեն ինչով զբաղվող, պատերազմասեր
և իշխանատենչ։ Իսկ Պոմպեոսը նրան քիչ ուշադրություն
դարձնելով, սաստեց, որ այսուհետև որևէ մեկը չենթարկվի
նրա հրամաններին, և ինքը արշավեց Միհրդատի դեմ, ձըգ-
տելով հնարավորին չափ շուտափույթ հանդիպել նրան։
47,1 Իսկ Միհրդատը առ ժամանակ խույս էր տալիս, քանզի
նրա զորքերը առավել թույլ էին, և (Պոմպեոսի) առաջ երկի-
րը շարունակ ավերում էր, ստիպում նրան երկար թափառել
և միաժամանակ պարենամթերքի պակաս զգալ. բայց երբ
Պոմպեոսը ներխուժեց Հայաստան[50] և՛ պարեն գտնելու նպա-
տակով, և՛ որպեսզի այն գրավի, թեպետև ամայացած, այն-

2 ժամ Միհրդատը, վախենալով, որ այն կարող է գրավվել
նախքան իր տեղ հասնելը, ինքը ներխուժեց այդ երկիրը և
(հռոմայեցիների) դիմաց գրավեց ամրացված մի բլուր և
այնտեղ հանգրվանեց ամբողջ զորքի հետ միասին, հույս ու-
նենալով հռոմայեցիներին ոչնչացնել պարենամթերքի ան-
բավարարության միջոցով, մինչդեռ ինքը գտնվելով իրեն
հպատակ երկրում, շատ վայրերից կարող էր իրեն ապահո-
վել առատ մթերքով. նա մշտապես հեծյալներից ոմանց ու-
ղարկում էր արդեն ամայացված դաշտը, հալածում այնտեղ
պատահողներին, և դրա հետևանքով մեծ թվով փախստակ-
3 ների ընդունեց իր մոտ։ Իսկ Պոմպեոսը չհամարձակվեց այդ
վայրերում հարձակվել նրանց վրա, այլ իր զորաբանակը
շարժեց մի այլ վայր, ուր տեղանքը անտառապատ լինելու
պատճառով հակառակորդների հեծյալները և նետաձիգները
պակաս վնաս կհասցնեին, ու դարանակալեց ուր որ հարմար
4 էր, որից հետո փոքրաթիվ զորքով բացահայտորեն մոտենա-
լով բարբարոսների զորաբանակին, շփոթություն մտցրեց
նրանց և հրապուրեց դեպի այն վայրը, ուր ինքը ցանկանում
էր, ու շատերին սպանեց։ Քաջալերված այս (հաջողությու-
նից), ինքը ևս պարենավորվելու համար տարբեր ուղղու-
թյուններով մարդիկ ուղարկեց երկրով մեկ։
48, 1 Երբ (Պոմպեոսը) արդեն այդ բոլորը հաստատապես
հայթայթում էր և ոմանց օգնությամբ տիրացավ Հայաստա-
նին պատկանող Անահտական երկրին[51], որը նվիրված էր
համանուն մի աստվածուհու, այդ բանից հետո շատերը ևս
հարեցին նրան և, դրանից բացի, Մարկիոսի[52] զինվորները
2 ևս միացան (Պոմպեոսի) զորքերին, Միհրդատը վախեցավ
և այլևս չմնաց այդ երկրում, այլ իսկույն գիշերով աննկա-
տելի հեռացավ և այնուհետև գիշերային երթերով առաջա-
3 ցավ դեպի Տիգրանի Հայաստանը[53]։ Իսկ Պոմպեոսը հե-
տապնդում էր նրան, ցանկանալով մարտի բռնվել. բայց
դեռ չէր համարձակվում այդ անել ոչ ցերեկը, քանի որ նը-
րանք իրենց բանակատեղից դուրս չէին գալու, ոչ իսկ գի-
շերը, քանզի վախենում էր անծանոթ տեղանքից, մինչև որ
արդեն հասան սահմանի մոտ։ Այնժամ արդեն, նկատելով,
որ նրանք կարող են խուսափել, ստիպված եղավ գիշերով
4 մարտի բռնվել։ Այսպիսի որոշումով նա աննկատորեն առաջ
անցավ բարբարոսներից, որոնք կեսօրվա հանգիստ էին առ-

նում, և ընթացավ այն ճանապարհով, որտեղով պետք է
նրանք անցնեին. և հասնելով ինչ-որ հողաբլուրների միջև
ընկած մի ձոր, այնտեղ էլ իր զորքը առաջնորդեց ամենա-
5 բարձր կետերը և սպասեց թշնամուն։ Ու երբ նրանք վստա-
հությամբ և առանց զգուշանալու մտան ձորը, քանի որ նա-
խապես ոչ մի վտանգի չէին ենթարկվել և այժմ էլ ամենայն
ապահովությամբ առաջ էին գնում այն համոզմամբ, թե
հռոմայեցիները արդեն իրենց չեն հետապնդում, (Պոմ-
պեոսը) խավարի մեջ հարձակվեց նրանց վրա. քանզի ոչ
նրանց հետ որևէ մի այլ լույս կար, ոչ իսկ երկնքից որևէ
բան լուսավորում էր։
49, 1 Ճակատամարտը տեղի ունեցավ հետևյալ կերպ։ Սկըզ-
բում շեփորահարները ազդանշանի վրա բոլորը միասին հար-
ձակում ազդարարեցին, որից հետո թե՛ զինվորները և թե՛
ամբողջ ամբոխը աղմուկ բարձրացրին՝ մի մասը նիզակնե-
րով վահաններին, մյուս մասն էլ քարերով պղնձե իրերին
2 հարվածելով։ Եվ այդ աղմուկը զարնվելով շրջապատող լեռ-
ներին, անդրադառնում էր առավել սարսափելի աստիճանի,
այնպես որ բարբարոսները հանկարծակի գիշեր ժամանակ և
ամայության մեջ լսելով այդ աղմուկը, մեծապես շփոթվե-
ցին, կարծես թե ինչ-որ գերբնական հարվածի էին ենթարկ-
3 վել։ Այս ընթացքում էլ հռոմայեցիները բարձունքներից քա-
րերով, նետերով և նիզակներով բոլոր կողմերից հարվածելով,
անվրեպ վիրավորեցին նրանցից ոմանց, քանի որ նրանք
բազմաթիվ էին, և հասցրին նրանց ամենավատ դրություն։
Քանզի (բարբարոսները) շարադասվել էին ոչ թե ճակա-
տամարտի, այլ չվերթի համար, և նույն վայրով առաջա-
նում էին ձիերի, ուղտերի և ամեն տեսակ ուղեբեռի հետ
4 միասին տղամարդիկ և կանայք. խառնիճաղանջ ընթանում
էին ոմանք նժույգներ հեծած, մյուսները ռազմակառքերի
կամ ծածկած սայլերի և սայլակառքերի վրա. և քանի որ
ոմանք արդեն վիրավորվել էին, իսկ մյուսներն էլ ենթակա
էին վիրավորվելու, խուճապի մատնվեցին, որի հետևանքով
էլ իրար վրա խռնվելով, հեշտությամբ կործանվում էին։
5 Այսպես տուժում էին, քանի դեռ նրանց հարվածում էին
հեռվից։ Իսկ երբ հռոմայեցիները, սպառելով իրենց հեռա-
հար ուժը, ցած իջան և հարձակվեցին նրանց վրա, եզրերում
եղողները սպանվում էին—և նրանց սպանության համար

բավական էր մեկ հարված, քանի որ մեծ մասը անզեն էր—
իսկ կենտրոնում ճնշում էին իրար, քանի որ բոլորը ամեն
կողմից վրա հասած վտանգի պատճառով դեպի այնտեղ էին
6 շարժվում։ Այսպիսով, նրանք կործանվում էին նաև իրարից
հրմշտվելով և կոխոտվելով, անկարող իրենք իրենց պաշտ-
պանելու կամ թշնամուն որևէ դիմադրություն ցույց տալու։
Քանզի նրանք մեծ մասամբ լինելով հեծյալներ ու աղեղնա-
վորներ, անկարող էին խավարի մեջ որևէ բան տեսնել և տեղի
նեղվածքի պատճառով որևէ բան ձեռնարկել։ Իսկ երբ լուսինը
ծագեց, նրանք ուրախացան, կարծելով, թե լույսի տակ իրենք
7 գոնե ոմանց կոչնչացնեն։ Եվ նրանք ինչ-որ հաջողություն կու-
նենային, եթե հռոմայեցիները, լուսինն իրենց ետև ունենալով,
մերթ այս կողմից, մերթ այն կողմից նրանց վրա չհարձակ-
վեին ու չխանգարեին թե՛ նրանց տեսողությանը և թե՛
նրանց գործողություններին։ Քանզի հարձակվողները մե-
ծաթիվ լինելով և բոլորը միասին թանձր ստվեր կազմելով,
խանգարում էին նրանց, նախքան վերջիններս կմոտենային
8 իրենց։ Որովհետև բարբարոսները կարծելով, թե արդեն մո-
տեցել են, իզուր հարվածում էին և ստվերի համատեղ մո-
տենալու ժամանակ անպաշտպանորեն վիրավորվում։ Եվ այս-
պիսով, նրանցից շատերը սպանվեցին և ոչ քչերն էլ գերի
ընկան. իսկ նշանակալից մասը կարողացավ փախչել, նրանց
թվում նաև Միհրդատը։

50, 1 Այնժամ Միհրդատը շտապեց դեպի Տիգրանը. բայց երբ
նրա մոտ նախ բանագնացներ ուղարկեց, ոչ մի սիրալիրու-
թյան չհանդիպեց, քանի որ (Տիգրանի) որդին՝ Տիգրանը,
ապստամբել էր (հոր) դեմ, իսկ սա կասկածում էր, որ Մի-
հրրդատը, լինելով նրա պապը, հրահրել էր այդ վեճը իր
դեմ։ Ուստի և Տիգրան (արքան) ոչ միայն չընդունեց նրան,
այլև նրա կողմից եկած բանագնացներին կալանավորեց ու
բանտարկեց։ (Այս այս բոլորից հետո) Միհրդատը հու-
սախափ լինելով, շուտ եկավ դեպի Կոլխիս և այնտեղից
հետիոտն հասավ Մայոտիս[54] և Բոսպորոս[55] ոմանց համո-
զելով, մյուսներին բռնանալով. նա ետ վերցրեց այդ երկի-
րը Մաքարեսից՝ իր որդուց, որն ընդունել էր հռոմայեցինե-
րի հովանավորությունը և իշխում էր այդ երկրի վրա, և
նրան այնպես ահաբեկեց, որ նա նույնիսկ չներկայացավ իր
առաջ։ Միհրդատը նրա մերձավորների միջոցով սպանեց

նրան, ներումն խոստանալով և հարստություն տալով նը-
3 րանց։ Բայց երբ նա փախչելով անցավ Փասիսը[56], Պոմպեո-
սը իր հաղթանակ տարած վայրում քաղաք հիմնեց, այն
տալով իր վիրավոր և տարեց զինվորներին. նրանց հետ
այստեղ բնակվեցին նաև շատ ցանկացողներ հարևան վայ-
րերից. նրանք գոյություն ունեն մինչև այժմ և կոչվում են
նիկոպոլսեցիներ[57] և հիմա ենթարկվում են Կապպադով-
կիայի նահանգին։
51, 1 Պոմպեոսը այսպես էր գործում. իսկ Տիգրանը՝ Տիգ-
րանի որդին, վերցնելով իր հետ հզորներից[58] ոմանց, ո-
րովհետև նրանց հաճելի չէր ծերունու իշխանությունը, փա-
խավ Փրաատեսի մոտ. և մինչդեռ սա Պոմպեոսի հետ կնքված
դաշինքի պատճառով մտածում էր իր անելիքի մասին, հա-
2 մոզեց նրան ներխուժել Հայաստան։ Եվ նրանք եկան մինչև
Արտաշատ[59], իրենց առաջ ընկած երկիրը հպատակեցնելով,
մինչև իսկ հարձակվեցին (Արտաշատի վրա). քանզի ծերու-
նի Տիգրանը վախենալով նրանցից, ապաստանել էր լեռնե-
րը. բայց երբ պարզվեց, որ (քաղաքի) պաշարման համար
ժամանակ էր պետք, Փրաատեսը զորքերի մի մասը թողնելով
(Տիգրանի) որդուն, վերադարձավ իր հայրենի երկիրը. այն-
ժամ էլ հայրը դուրս եկավ արդեն մենակ մնացած որդու
3 դեմ և հաղթեց. իսկ նա փախչելով, նախ ուղևորվեց դեպի
Միհրդատը՝ իր մեծ հայրը. բայց երբ իմացավ, թե նա
պարտվել է և ավելի շուտ ինքն է օգնության կարիք զգում,
քան թե ի վիճակի է ուրիշին օգնելու, գնաց հռոմայեցիների
մոտ. և Պոմպեոսը նրան օգտագործելով իբրև առաջնորդ,
արշավեց Հայաստան, նրա հոր դեմ։
52, 1 Եվ Տիգրանը իմանալով այս մասին և տագնապելով,
իսկույն նրա մոտ հաշտության բանագնացներ ուղարկեց և
նրան հանձնեց Միհրդատի դեսպաններին։ Եվ քանի որ իր
որդու հակառակվելու պատճառով չէր կարող մեղմ պայ-
մանների հասնել, և երբ արդեն Պոմպեոսն էլ Արաքսն անց-
նելով մոտեցել էր Արտաշատին, այնժամ Տիգրանը թե՛ քա-
ղաքը հանձնեց նրան և թե՛ ինքը հոժարակամ եկավ նրա զո-
2 րակայանը։ Նա զգեստավորվել էր այնպես, որ դրսևորվեր
և՛ իր նախկին շքեղությունը, և՛ այժմյան խոնարհ վիճակը,
որպեսզի նրան արժանի երևա թե հարգանքի և թե կարեկ-
3 ցանքի։ Քանզի նա իր վրայից հանել էր սպիտակաշերտ[60]

պատմուճանը[61] և համակ ծիրանի վերարկուն[62], բայց գլխին
կրում էր խույրը և ապարոշը[63]։ Արդ՝ Պոմպեոսը իր մակ-
նակիրներից[64] մեկին ուղարկելով նրան ընդառաջ, ձիուց
վար իջեցնել տվեց, որովհետև նա, իրենց սովորության հա-
մաձայն, հեծյալ վիճակում էր մտել ամրություն։ Բայց երբ
Պոմպեոսը տեսավ նրան, որ հետիոտն ներս մտավ և դեն
նետելով գլխի ապարոշը[65] գետին ընկավ և ուզում էր իրեն
4 երկրպագել, գթաց և տեղից վեր կենալով բարձրացրեց
նրան և ապարոշը կապելով նրա գլխին, նստեցրեց նրան իր
կողքի բազմոցին և մխիթարելով ասաց նաև, թե նա ոչ
միայն չի կորցրել հայոց թագավորությունը, այլև ձեռք է բե-
րել հռոմայեցիների բարեկամությունը։ Այս խոսքերով նա
53, 1 քաջալերեց նրան և ընթրիքի հրավիրեց։ Իսկ որդին, որը
նստած էր Պոմպեոսի մյուս կողքին, հորը տեսնելիս վեր
չկացավ և ոչ իսկ որևէ մի այլ ձևով նրան պատվեց. նույնիսկ
ճաշի հրավիրված լինելով հանդերձ, չգնաց։ Այս պատճառով
էլ նա մեծապես ատելի դարձավ Պոմպեոսին։
2 Այսպիսով, հաջորդ օրը (Պոմպեոսը) լսելով նրանց, ա-
վագին վերադարձրեց նրա ամբողջ հայրենի իշխանությունը.
բայց նրա կողմից նվաճված երկրները—որոնց մեջ նաև
Կապպադովկիայի և Ասորիքի[66] մասերը, ինչպես նաև Փյու-
նիկիան և ոչ փոքր երկիր Ծոփքը[67]—վերցրեց նրանից, ինչ-
պես նաև գանձեր պահանջեց նրանից. իսկ կրտսեր (Տիգ-
3 րանին) պարգևեց միայն Ծոփքը։ Եվ քանի որ պատահմամբ
Ծոփքում էին գտնվում գանձատները, ուստի և երիտասարդը
սրանց պատճառով վիճեց և հաջողություն չունենալով—քա-
նի որ Պոմպեոսը ոչ մի այլ տեղից չէր կարող ստանալ պայ-
մանավորված գումարը—դժգոհեց և մտադրվեց փախչել։
Սակայն Պոմպեոսը, տեղեկանալով այդ մասին, նրան հըս-
կողության տակ վերցրեց առանց կալանքի, և սուրհանդակ-
ներ ուղարկելով գանձերի պահապանների մոտ, հրամայեց
4 նրանց, որ այդ բոլորը հանձնեն նրա հորը։ Եվ որովհետև
նրանք չհնազանդվեցին, ասելով, թե երիտասարդ (Տիգրա-
նը), որին այժմ պատկանում է այդ երկիրը, պետք է այդ
բանը հրամայի իրենց, ապա (Պոմպեոսը) նրան ուղարկեց
դեպի բերդերը։ Եվ սա, բերդերը փակ գտնելով, մոտիկ գնաց
և դժկամությամբ հրամայեց բաց անել դրանք։ Եվ երբ
նրանք այլևս չէին հնազանդվում, առարկելով, որ նա այդ

հրամանը տվել է ոչ թե կամովին, այլ հարկադրված, Պոմ-
պեոսը զայրացավ և շղթայեց (երիտասարդ) Տիգրանին։
5 Եվ այսպիսով, ծերունի (արքան) ստացավ գանձարան-
ները. իսկ նա (Պոմպեոսը—թրգմ.) զորքը երեք մասի բաժա-
նելով, ձմեռեց Անահտական երկրում և Կյուռնոս[68] գետի
մոտ ու Տիգրանից էլ մեծ քանակությամբ այլ բաներ ևս ստա-
ցավ, ինչպես նաև պայմանավորվածից ավելի շատ գանձեր։
6 Եվ առավելապես այդ իսկ պատճառով քիչ ժամանակ անց
նա (Տիգրանին) գրանցեց (հռոմեական ժողովրդի) բարե-
կամների ու դաշնակիցների ցուցակի մեջ և նրա որդուն
հսկողության տակ բերեց Հռոմ։
54, 1 Այսուհանդերձ նա հանգստությամբ չձմեռեց։ Քանզի
Օրոյսեսը՝ Կյուռնոսից վերև բնակվող ալբանների[69] թագա-
վորը, ցանկանալով մի կողմից շնորհ անել Տիգրան կրտսե-
րին, որը իրեն բարեկամ էր, մյուս կողմից հատկապես վա-
խենալով, որ հռոմայեցիները կներխուժեն Ալբանիա[70], և
կարծելով, որ անկասկած հաջողության կհասնի, եթե ձմեռ
ժամանակ անսպասելի հարձակվի նրանց վրա, քանի դեռ
նրանք չեն կենտրոնացել մեկ միասնական զորակայանում,
2 արշավեց նրանց վրա Սատուռնալիա[71] տոնի ժամանակ։ Եվ
ինքը՝ Օրոյսեսը, քայլեց Մետելլոս Կելերի վրա, որի մոտ էր
Տիգրան (Կրտսերը), ուրիշներին ուղարկեց Պոմպեոսի դեմ
և մյուսներին էլ զորքի երրորդ մասի հրամանատար Լու-
կիոս Փլակկոսի դեմ այն հույսով, որ բոլորը միաժամանակ
3 շփոթության կմատնվեն և չեն կարողանա իրար օգնել։ Բայց,
այսուհանդերձ, նա ոչ մի տեղ ոչ մի հաջողություն չունեցավ։
Քանզի նրան Կելերը ուժգնորեն ետ մղեց. իսկ Փլակկոսը,
քանի որ խրամատի շրջագիծը մեծ լինելու պատճառով ան-
կարող էր այն սյաշտպանել (ամբողջությամբ), ներսում
4 մեկ այլ խրամատ պատրաստեց։ Թշնամին այս տեսնելով
ենթադրեց, որ նա վախեցել էր ու ետ նահանջել, որով և նա
թշնամուն արտաքին խրամատից այս կողմ ներքաշեց և
այստեղ նրանց վրա անակնկալ հարձակվելով, շատերին
ձեռնամարտում, շատերին էլ փախուստի մատնելով սպա-
նեց։ Այդ ժամանակ էլ Պոմպեոսը տեղեկանալով մյուսների
դեմ բարբարոսների ձեռնարկած փորձի մասին, անակնկալ
եկավ իր դեմ արշավողներին ընդառաջ և, հաղթելով նրանց,
իսկույն, ինչպես կար, շտապեց Օրոյսեսի դեմ։ Եվ նրան

*չհանդիպեց, քանի որ (սա) ետ մղվելով Կելերի կողմից, և
տեղեկանալով մյուսների ձախորդությունների մասին, փա-
5 խուստի էր դիմել. սակայն (Պոմպեոսը) ալբաններից շատե-
րին ձեռք գցելով Կյուռնոսի գետանցի մոտ, կործանեց։ Այ-
նուհետև նրանց խնդրանքով դաշինք կնքեց. քանի որ թե-
պետև նա բուռն կերպով ցանկանում էր ներխուժել նրանց
երկիրը՝ վրեժ լուծելու համար, բայց ձմեռվա պատճառով ու-
րախությամբ հետաձգեց պատերազմը։*

## ԳԻՐՔ ԵՐԵՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

1, 1 *Այդ ժամանակ նա այսպես գործեց. իսկ հաջորդ տա-
րին, երբ կոնսուլ էին Լուկիոս Կոտտասը և Լուկիոս Տորկուա-
տոսը, (Պոմպեոսը) կռիվ մղեց թե՛ ալբանների և թե՛ իբեր-
ների դեմ։ Հակառակ իր ենթադրության, սկզբից նախ նա
ստիպված եղավ վերջիններիս դեմ պատերազմել։ Նրանք
2 ապրում են Կյուռնոսի երկու ափին, մի կողմից ալբանների,
մյուս կողմից հայերի հարևանությամբ։ Նրանց թագավոր
Արտոկեսը վախենալով, որ Պոմպեոսը իր հարձակումը կուղ-
ղի նաև իր դեմ, նրա մոտ դեսպաններ ուղարկեց բարեկա-
մության դաշինք կնքելու, բայց և միաժամանակ պատրաստ-
վում էր հարձակվելու նրա վրա, երբ ինքը արդեն ապահով
3 կլիներ, իսկ նա (հարձակման) չէր սպասի։ Ուստի Պոմպեո-
սը տեղեկանալով այդ մասին ևս, ինքը ներխուժեց նրա եր-
կիրը, նախքան սա անհրաժեշտ պատրաստություն կտես-
ներ և կգրավեր առանց այն էլ դժվարամատույց մուտքը։ Եվ
առաջ գնալով հասավ մինչև Ակրոպոլիս կոչվող քաղաքը[72],
նախքան Արտոկեսը կտեղեկանար, թե ինքը արդեն այն-
4 տեղ է։ Այն գտնվում էր ամենանեղ հատվածում, որտեղ
[մի կողմից Կյուռնոսն դետն է հոսում, մյուս կողմից][73]
Կովկաս (լեռն) է ձգվում, և կառուցվել էր մուտքը պաշտ-
պանելու համար։ Այսպիսով Արտոկեսը խուճապահար ե-
ղավ ու ժամանակ չունեցավ իր զորքերը դասավորելու, այլ
գետը անցնելուց հետո կամուրջը այրեց. և պարիսպներից
ներս եղողները տեսնելով նրա փախուստը, ինչպես նաև
5 կռվում հաղթվելով, անձնատուր եղան։ Ուստի և Պոմպեոսը,
տիրելով կիրճին, այնտեղ պահակազորք թողեց և այնտեղից*

արշավելով, հնազանդեցրեց գետից այս կողմ գտնվող ամ-
բողջ երկիրը։

2, 1 Բայց երբ (Պոմպեոսը) ևս պետք է Կյուռնոսն անցներ, Արտոկեսը նրա մոտ (դեսպաններ) ուղարկեց հաշտություն խնդրելով, միաժամանակ խոստանալով կամուրջը հանձնել
2 նրան և հոժարակամ մթերք տրամադրել։ Այս երկու (խոստումներն) էլ նա կատարեց, ասես արդեն համաձայնություն էր կայացրել. բայց տեսնելով, որ Պոմպեոսը արդեն անցել է գետը, նա փախավ դեպի Պելորոս գետը[74], որը նույնպես հոսում էր իր երկրի միջով. այսպիսով, նա սկզբում հրապուրեց թշնամուն, ապա փախավ, մինչդեռ կարող էր խոչըն-
3 դոտել նրա անցումը։ Պոմպեոսը զգալով այս, հետապնդեց նրան և ետևից հասնելով, հաղթեց. քանզի արագ երթով և նախքան թշնամու աղեղնավորները կկարողանային օգտվել իրենց հմտությունից, նա ձեռնամարտի բռնվեց և արագ
4 վերպով ջախջախեց նրանց։ Այս դեպքից հետո Արտոկեսը անցավ Պելորոս (գետը) և այդ գետի վրայի կամուրջը ևս այրելուց հետո փախավ. մնացածներից ոմանք կռվելիս,
5 ուրիշներ հետիոտն գետն անցնելիս սպանվեցին։ Շատերն էլ ցրվեցին անտառներում և մի քանի օր կենդանի մնացին, քանի դեռ նրանք նետեր էին արձակում ծառերի վրայից, որոնք շատ բարձր էին. բայց երբ ծառերը կտրատվեցին, սրանք ևս կործանվեցին։ Այսպիսով, Արտոկեսը դարձյալ դեսպաններ ճամբեց Պոմպեոսի մոտ և նվերներ ուղար-
6 կեց։ Պոմպեոսը այդ բոլորը ընդունեց այն համոզմամբ, որ Արտոկեսը դաշինք կնքելու հույս ունենալով, այլևս առաջ չի գնա. բայց նա չէր համաձայնվում խաղաղություն շնորհել, եթե (Արտոկեսը) իր որդիներին նախապես իբրև պատանդ չուղարկի իր մոտ։ Սա որոշ ժամանակ դանդաղեց, մինչև որ ամռվա ընթացքում Պելորոս (գետը) տեղ-տեղ դյուրանցանելի դարձավ, և ոչ ոք այլևս իրենց չէր խանգարում, հռոմայեցիները անցան այն։ Այսպիսով, արդեն նա իր որդիներին ուղարկեց Պոմպեոսի մոտ և դրանից հետո դաշինք կնքեց։

3, 1 Այնժամ Պոմպեոսը տեղեկանալով, որ Փասիսը հեռու չէ, և որոշելով նրա ափն ի վար իջնել Կոլխիս և այնտեղից արշավել Բոսպորոս՝ Միհրդատի դեմ, առաջ շարժվեց,
2 ինչպես նպատակադրվել էր. և անցավ կոլխերի և նրանց

հարևանների երկրով՝ մի մասին համոզելով, մյուս մասին
վախեցնելով։ Բայց այստեղ էլ զգալով, որ ցամաքային
ճանապարհը անցնում է բազմաթիվ անծանոթ և թշնամա-
կան ցեղերի[75] երկրի միջով, և որ ծովով ճանապարհվելը ա-
ռավել դժվար էր երկրում նավահանգիստներ չլինելու, ինչ-
3 պես նաև տեղի բնակիչների պատճառով, ուստի հրամայեց,
որ նավատորմը պաշարման մեջ պահի Միհրդատին, որպես-
զի նա չկարողանա նավել դեպի որևէ մի կողմ, և միաժամա-
նակ խանգարվի նրա պարենավորման գործը. իսկ ինքը շուռ
եկավ դեպի ալբանների (երկիրը) ոչ թե ամենակարճ ճա-
նապարհով, այլ Հայաստան վերադառնալուց հետո, որպես-
զի այս միջոցով, ինչպես նաև կնքված հաշտության պատ-
4 ճառով, նրանց անակնկալի բերի։ Եվ հետիոտն անցավ
Կյուռնոսը այն կետում, որտեղ ամռանը (գետը) դարձել էր
դյուրանցանելի. նա հրամայեց հեծելազորին՝ կտրել-անցնել
հոսանքը. երկրորդը կանցներ գումակը և կհետևեր հետևա-
կը. այսպիսով, ձիերը իրենց մարմիններով կզսպեին հո-
սանքի ուժգնությունը, իսկ բեռնատարներից որևէ մեկը եթե
շրջվեր նույնիսկ, ապա դեմ կառներ առավել ցածով անցնող
5 հետևակներին և էլ չէր քշվի հոսանքն ի վար։ Այստեղից ըն-
թացավ դեպի Կամբյուսես[76] գետը, առանց հանդիպելու թըշ-
նամու կողմից որևէ դիմադրության. բայց տապի և դրանից
առաջացած ծարավի պատճառով նա, ամբողջ զորքի հետ
միասին, մեծապես տառապեց, թեպետև ճանապարհի մեծ
մասը գիշերով էր ընթանում։ Քանզի նրանց առաջնորդնե-
րը, լինելով գերեվարվածների թվից, նրանց տանում էին ոչ
6 հարմարագույն ճանապարհով։ Նույնիսկ գետը նրանց ոչըն-
չով չօգնեց, որովհետև ջուրը, որից շատ էին խմել, սառնա-
գույն լինելու պատճառով, շատերին վնասեց։ Ու քանի որ
նույնիսկ այստեղ ոչ մի թշնամի չերևաց, ուստի և շարժվե-
ցին դեպի Աբաս[77], իրենց հետ տանելով միայն (խմելու)
ջուր. քանզի մնացած ամեն ինչ նրանք ստանում էին տեղա-
բնիկներից, կամավոր կերպով. այդ իսկ պատճառով նրանց
ոչ մի չարիք չէին հասցնում։

4, 1 Եվ երբ արդեն նրանք անցել էին գետը, լուր հասավ,
թե Օրոյսեսը մոտենում է։ Այնժամ Պոմպեոսը ցանկացավ
նրան կռվի մեջ քաշել, նախքան սա կիմանար հռոմայեցի-
ների քանակի մասին, որպեսզի չլինի թե (վախենալով)

2 ետ նահանջի։ Նա իր հեծելազորը դասավորեց առաջամա-
սում, նախապես հանձնարարելով նրանց անելիքը. իսկ
մնացյալին նա ամբողջովին անշարժ, վահաններով իրար
ծածկած, դասավորեց (հեծյալների) ետև, այնպես որ Օրոյ-
սեսը չկարողանար կռահել նրանց ներկայությունը, նախքան
3 մարտի բռնվելը։ Այսպիսով, (Օրոյսեսը) արհամարհելով
հեծյալներին, կարծելով թե նրանք մենակ են, կռվի բռնվեց
նրանց հետ. և երբ քիչ անց նրանք դիտավորյալ կերպով
փախուստի դիմեցին, նա ամբողջ թափով հալածեց նրանց։
Այնժամ հետևակայինները իսկույն վեր կացան և երկու մա-
սի բաժանվելով, իրենց շարքերի միջով յուրայիններին ա-
պահով նահանջ շնորհեցին, միաժամանակ անզգույշ կեր-
պով հետապնդմամբ հրապուրված թշնամիներին իրենց
4 շարքերի մեջ ընդունելով, շատերին շրջապատեցին։ Այս-
պիսով, նրանք շրջապատվածներին կոտորեցին, իսկ հեծ-
յալները՝ մի մասը աջ, մյուս մասը հակառակ կողմից շըր-
ջանցելով, թիկունքից հարձակվեցին շրջապատվածների
վրա։ Եվ այստեղ էլ այս զորամասերը շատերին սպանեցին.
իսկ մյուսներին, որոնք փախել էին անտառները, կրակի
մատնեցին, աղաղակելով՝ «Ո՜վ Սատուռնալիա»[78], դրանով
իսկ ակնարկելով այդ առթիվ իրենց վրա կատարված հար-
ձակումը (ալբանների կողմից)։

5, 1 Պոմպեոսը այս գործերը կատարելուց և ամբողջ եր-
կիրը ասպատակելուց հետո, ալբաններին խաղաղություն
պարգևեց, ինչպես նաև մի շարք այլ ցեղերի հետ, որոնք
բնակվում են այն տարածքի վրա, որն ընկած է Կովկասից
մինչև Կասպից ծով, որտեղ և վերջանում է Պոնտոսում
սկիզբ առնող լեռը, դաշինք կնքեց, երբ սրանք իր մոտ այդ
նպատակով դեսպաններ ուղարկեցին։ Փրաատեսը ևս (դես-
պաններ) ուղարկեց նրա մոտ դաշինքը վերանորոգելու ցան-
2 կությամբ։ Քանզի սա, տեսնելով Պոմպեոսի այս հաջողու-
թյունները, և այն, որ նրա տեղակալները[79] ևս շարունա-
կում էին հնազանդեցնել Հայաստանի և Պոնտոսի մնացած
մասերը, և որ Գաբինիոսը[80] նույնպես անցնելով Եփրատը,
առաջացել է մինչև Տիգրիս, վախ զգաց նրանց հանդեպ և
ցանկացավ հաշտության պայմանները հաստատել. այսու-
3 հանդերձ, նա ոչինչ չկարողացավ իրագործել։ Քանզի Պոմ-
պեոսը, ելնելով առկա իրավիճակից, ինչպես նաև հու-

սաղրված այդ բոլորից, արհամարհեց նրան և գոռոզությամբ
պատասխանեց դեսպաններին, իմիջիայլոց, պահանջելով
նաև Կորդուենե երկիրը, հանուն որի Փրաատեսը վեճ ուներ
4 Տիգրանի հետ։ Եվ քանի որ նրանք ոչինչ չպատասխանեցին,
քանզի այդ մասին նրանք ոչ մի հանձնարարություն չունեին,
(Պոմպեոսը) մի գիր գրեց Փրաատեսին, բայց առանց որևէ
պատասխանի սպասելու, իսկույն Աֆրանիոսին ուղարկեց
(Կորդուենե) երկիրը, և այն առանց մարտի գրավելուց հե-
5 տո, հանձնեց Տիգրանին։ Եվ Աֆրանիոսը, հակառակ Պար-
թևի[81] հետ կայացված համաձայնության, Միջագետքի վրա-
յով Ասորիք վերադառնալիս, մոլորվեց (ճանապարհին) ու
մեծ դժվարություններ կրեց թե՛ ձմեռվա և թե՛ պարենի
պակասության պատճառով. ու նրա (զորքերը) կկորչեին,
եթե չլինեին կարրայները, որոնք մակեդոնական գաղութա-
բնակներ էին[82] և ապրում էին այստեղ. սրանք ընդունեցին
նրան և ետ ճանապարհեցին։

6, 1 Այսպիսի վերաբերմունք ունեցավ Պոմպեոսը Փրաատե-
սի նկատմամբ իր հզորության ժամանակ, դրանով իսկ
պարզորեն ցույց տալով իրենց ընչաքաղցությունը բավա-
րարել ցանկացողներին, թե ամեն ինչ կախված է զենքի
ուժից և դրա օգնությամբ հաղթողը նվաճում է անհրաժեշտ
իրավունք իր ցանկացած օրենքը սահմանելու. և դրա հետ
մեկտեղ արհամարհեց նրա տիտղոսը, որով նա փառաբան-
վում էր մնացած բոլորի, ինչպես նաև իրենց՝ հռոմայեցի-
ների առաջ, որը և սրանք օգտագործում էին ամեն անգամ
2 նրան դիմելիս։ Քանզի, մինչդեռ նա կոչվում էր «արքա-
յից արքա», (Պոմպեոսը) հատեց «արքայից» կոչումը և
նրան հղած իր նամակում դիմեց նրան միայն «արքա» ան-
վանելով։ Դեռ ավելին. այդ տիտղոսը, հակառակ ընդուն-
ված կարգի, նա շնորհեց գերեվարված[83] Տիգրանին[84], երբ
3 ինքը Հռոմում իր հաղթահանդեսը տոնեց։ Այդ իսկ պատ-
ճառով Փրաատեսը, թեպետև վախենում էր նրանից և ձըգ-
տում էր սիրաշահել նրան, վշտացավ այդ դեպքից, ասես
իր իսկ թագավորությունից զրկված լիներ, և դեսպաններ
ուղարկելով, մեղադրում էր նրան իր կրած բոլոր անարդա-
րությունների համար և համոզում նրան Եփրատը չանցնել։
4 Եվ քանի որ ոչ մի հաշտարար պատասխան չստաց-
վեց, (Փրաատեսն) իսկույն արշավեց Տիգրանի վրա, սրա

որդու ուղեկցությամբ, որին իր աղջկան էր (կնության)
տվել[85]. դա այն ամռանն էր, երբ կոնսուլ էին Լուկիոս Կե-
սարը և Գայոս Փիգուլոսը. նախ կռվում պարտվեց, բայց
5 հետո նա գերազանցություն ձեռք բերեց։ Եվ երբ Տիգրանը
դիմեց Ասորիքում գտնվող Պոմպեոսի օգնությանը, նա
դարձյալ նրա մոտ դեսպաններ ուղարկեց և Տիգրանին շատ
բաներում մեղադրեց, միաժամանակ նաև շատ ակնարկու-
թյուններ արեց հռոմայեցիների դեմ. այնպես որ Պոմպեոսը
7, 1 և՛ ամաչեց, և՛ զարմացավ։ Ուստի և ո՛չ Տիգրանին օգնու-
թյուն ուղարկեց, ո՛չ էլ Փրաատեսի դեմ թշնամական որևէ
բան ձեռնարկեց, պատճառաբանելով, թե իրեն չի կարգա-
դրված այդպիսի մի արշավանք կատարել, և որ Միհրդատը
դեռևս գտնվում է զինված վիճակում։ Նա հայտարարեց, թե
բավարարվում է իր ձեռքբերածով և չի ցանկանում (այսուհե-
տև որևէ վտանգավոր բան ձեռնարկել)[86], որպեսզի չլինի թե
շատ բաների ձգտելով, արդեն ձեռքբերածները ևս վտանգի,
2 ինչպես Լուկուլլոսն էր արել։ Քանզի նա այսպես էր փիլի-
սոփայում. պնդում էր, թե ագահությունը վատ բան է, իսկ
ուրիշների ունեցվածքին ձգտելը՝ անարդարություն, մանա-
վանդ, որ այժմ ինքն արդեն վախենալով և անհաբեկված
դեպքերի անկայունությունից, չձեռնարկեց պատերազմի,
թեպետև շատերը նրան դրդում էին (այդ անել). միաժամա-
նակ և բարբարոսի[87] գանգատներին ուշադրություն չդարձ-
րեց, անպատասխան թողնելով. իսկ ինչ-որ սահմանների
վերաբերյալ Տիգրանի հետ ունեցած նրա վեճի մասին ա-
սաց, որ այդ հարցը կկարգավորեն երեք մարդ, որոնց և նա
3 ուղարկեց։ Սրանց էլ (թագավորները) ընդունելով իբրև
ճշմարիտ դատավորների, պարզեցին իրար նկատմամբ ու-
նեցած բոլոր գանգատները։ Տիգրանը զայրացել էր, որ ին-
4 քը օժանդակություն չէր գտել, իսկ Փրաատեսը ցանկանում
էր գերազանցել հայոց (թագավորին), այնպես որ անհրա-
ժեշտ դեպքում նրան օգտագործի իբրև դաշնակցի հռոմայե-
ցիների դեմ։ Քանզի նրանք երկուսն էլ լավ գիտեին, թե ի-
րենցից ով որ մյուսին գերիշխի, դրանով նպաստած կլի-
նի հռոմայեցիների գործին և ինքն էլ նրանց կողմից առավել
հեշտ կհպատակեցվի։

5 Այս նկատառումներով էլ նրանք իրար հետ հաշտվե-
ցին. իսկ Պոմպեոսը այդ ժամանակ դարձյալ ձմեռեց Աս-

պիսում[88], նվաճելով դեռևս դիմադրող մյուս վայրերը ևս, ինչպես նաև գրավեց Սիմփորիոնը[89], որն իրեն հանձնեց Ստրատոնիկեն։ Սա Միհրդատի կինն էր, որը զայրացած լինելով (ամուսնու) դեմ, նրա կողմից լքված լինելու պատճառով, բերդապահներին ամրությունից դուրս ուղարկեց, իբր թե պարեն մթերելու համար, և ներս ընդունեց հռոմայեցիներին թեպետև նրա որդին իր հետ[90]...

* * *

(Քսիփիլինոս, հրատ. Dindorf-ի, էջ 6—7)

7ա Վերադառնալով Հայաստանից, Պոմպեոսը իր մոտ ժամանած արքաների և տիրակալների վեճերը քննարկելով հաշտեցրեց։ Ոմանց թագավորությունը հաստատեց, մյուսների տիրույթները ավելացրեց, ուրիշների առավել հզորությունը կրճատեց ու ստորացրեց. Կելե-Սիրիան և Փյունիկիան, որոնք վերջերս էին ազատվել (իրենց) թագավորներից և արաբների ու Տիգրանի կողմից ավերածության ենթարկվել, միացրեց իրար։ Քանզի Անտիոքոսը[91] համարձակվեց դրանք ետ պահանջել, բայց չստացավ. ընդհակառակը, դրանք դասվեցին մեկ իշխանության տակ և ստացան այնպիսի օրենքներ, որոնցով կառավարվում էին հռոմեական եղանակով։

* * *

10, 1 Իսկ հաջորդ տարին (64 մ. թ. ա.—թրգմ.), երբ կառավարիչներ էին Փիգուլոսը և Լուկիոս Կեսարը, դեպքերը սակավ էին, բայց մարդկային գործերի տեսակետից անմիտ
2 լինելու պատճառով, արժանի հիշատակման։ Քանզի այն մարդը, ով Սուլլայի հրամանով սպանել էր Լուկրետիոսին և մեկ ուրիշը, որը նրա կողմից պրոսկրիպցիայի[92] ենթարկվածներից շատերին սպանել էր, մեղադրվեցին այդ ոճիրների համար և պատժվեցին. այդ գործն առանձնապես նա-
3 խապատրաստեց Հուլիոս Կեսարը[93]։ Այսպիսով, իրադրության փոփոխությունները հաճախ ամենաուժեղներին ևս դարձնում են ամենաթույլ։ Եվ այս գործն էլ շատերի սպասածից հակառակ վախճան ունեցավ. քանզի և Կատիլի-

նան[94], որը մեղադրվում էր նրանց հետ նույն հանցանք-
ների մեջ—քանի որ սա ևս նրանց նման շատերին, (որոնք
պրոսկրիպցիայի էին ենթարկվել), սպանել էր—արդարաց-
վեց։ Եվ այս պատճառով էլ նա առավել ևս վատթար դար-
4 ձավ, որի հետևանքով էլ կործանվեց։ Քանզի երբ Մարկոս
Կիկերոնը[95] և Գայոս Անտոնիոսը[96] կոնսուլ ընտրվեցին, և
Միհրդատն էլ այլևս ոչ մի չարիք չէր պատճառում հռոմա-
յեցիներին, այլ ինքն իրեն կործանեց, Կատիլինան ձեռ-
նամուխ եղավ նոր կառավարություն ստեղծելու և դաշնա-
կիցներին պետության դեմ միավորելով, ժողովրդին պատ-
ճառեց պատերազմի ոչ փոքր երկյուղ։ Այդ գործերից յու-
րաքանչյուրը այսպես կատարվեց։
11, 1 Ինքը, Միհրդատը, չէր ընկճվում անհաջողություննե-
րից, այլ վստահելով առավելապես իր կամքին, քան թե
ուժին, նաև այն պատճառով, որ Պոմպեոսը այժմ զբաղված
էր Ասորիքում, ծրագրեց հասնել Իստրոս (գետը)[97] սկյութ-
2 ների (երկրի) միջով և այստեղից ներխուժել Իտալիա։ Եվ
քանի որ նա բնականից մեծագործության հակում ուներ և
բազում ձախորդությունների հետ միասին ճաշակել էր նաև
բազում հաջողություններ, ապա կարծում էր, որ իր համար
սարսափելի կամ անհուսալի ոչինչ չկար։ Եվ եթե նա ձա-
խողվելու լիներ, ապա ցանկանում էր կործանվել իր թագա-
վորության հետ միասին կատարյալ հպարտությամբ, քան
թե դրանից զրկվելով ապրել նվաստացած և անփառունակ։
3 Այս միտքը նրան ուժ էր ներշնչում. քանզի ինչքան որ նա
մարմնի թուլության հետևանքով թառամում էր, այնքան
հաստատապես ուժեղանում էր մտքի հզորությամբ. այնպես
որ առաջինի թուլությունը ծածկվում էր երկրորդի մտադրու-
4 թյուններով։ Մինչդեռ իր հետևորդները դավաճանե-
ցին, քանի որ հռոմայեցիների (դրությունը) հետզհետե ու-
ժեղանում էր, իսկ Միհրդատինը՝ թուլանում. քանզի մնա-
ցած ամեն ինչի հետ երբևիցե պատահած երկրաշարժերից
ամենաուժեղը կործանեց նրանց քաղաքներից շատերը.
զինվորականները ևս խռովություն բարձրացրին և Միհր-
դատի որդիներից ոմանց առևանգելով, բերեցին Պոմպեոսի
մոտ։
12, 1 Այս բոլորից հետո (Միհրդատը) ոմանց բացահայտեց և
պատժեց, ուրիշներին էլ, սոսկ կասկածից զայրանալով,

(պատժեց) ու կանխեց. և արդեն ոչ ոքի չէր վստահում, այլ
կասկածելով, իր մնացած որդիներից ոմանց ևս սպանեց,
Ուստի նրա որդիներից մեկը, Փառնակեսը, տեսնելով այս
ամենը, վախեցավ նրանից և միաժամանակ հույս ունե-
նալով, որ հռոմայեցիների կողմից թագավորությունը կըս-
տանա—քանզի արդեն առնականացած էր—դավադրու-
2 թյուն նյութեց նրա դեմ։ Բայց այն բացահայտվեց—քանզի
շատերը թե՛ բացահայտորեն և թե՛ գաղտնաբար նրա կող-
մից բոլոր կատարվածներին մասնակցում էին—և եթե ծե-
րունու[98] հանդեպ թիկնապահները ամենափոքր բարեհա-
ճությունն ունենային, նա իսկույն կպատժվեր. մինչդեռ այ-
ժըմ Միհրդատը, թեպետև թագավորական իշխանության վե-
րաբերող գործերում իմաստնադույն էր դարձել, չիմացավ,
թե ո՛չ զենքը, ո՛չ իսկ հպատակների բազմությունները որևէ
ուժ չեն ներկայացնում առանց նրանց բարեկամության. այլ
ընդհակառակը, (իշխանավորը) ինչքան շատ հպատակներ
ունենա, այնքան առավել դժվար կլինի նրա համար, եթե
3 նրանք հավատարիմ չեն։ Համենայն դեպս, Փառնակեսը
արդեն նախապատրաստված մարդկանց հետ, ինչպես նաև
իրեն ձերբակալելու համար հոր կողմից ուղարկվածների
հետ—քանզի սրանց հեշտությամբ նա սիրաշահեց—ինքը
գնաց հոր դեմ։ Ծերուկը, որը գտնվում էր Պանտիկապեյո-
նում[99], իմանալով այդ մասին, որդու դեմ մի քանի զինվոր
ուղարկեց, հայտնելով, թե ինքը ևս շուտով կհետևի նրանց.
4 Սրանց ևս (Փառնակեսը) հեշտությամբ վերափոխեց, քանի
որ սրանք նույնպես չէին սիրում Միհրդատին, և քաղաքը
կամավոր կերպով վերցրեց, իսկ պալատում ապաստանած
հորը սպանեց[100]։
13, 1 Մինչդեռ (Միհրդատը) փորձեց ինքնասպանություն
գործել և իր կանանց ու մնացած երեխաներին նախապես
թունավորելով վերացնելուց հետո, մնացած (թույնը) ինքը
խմեց. բայց ոչ այդ միջոցով, ոչ իսկ թրով չկարողացավ իր
2 կյանքին վերջ տալ։ Քանզի թույնը, թեպետև մահացու էր,
չհաղթեց նրան, քանի որ նա ամեն օր նախազգուշական նպա-
տակով առավել մեծ քանակությամբ հակաթույն էր ընդու-
նում. իսկ սրի հարվածը բթացել էր, քանզի թե՛ առաջա-
ցած տարիքի ու առկա տարաբախտությունների և թե՛, հա-
վանաբար, թույնի օգտագործման հետևանքով ձեռքը թու-

3 լացել էր։ Ու քանի որ նա չկարողացավ ինքն իրեն ոչնչաց-
նել և թվում էր, թե այդ կարող է պետք եղածից երկար տևել,
իր վրա նետվեցին նրանք, ում ինքն ուղարկել էր որդու դեմ,
և սրերով ու դաշույններով արագացրին նրա կործանումը։
4 Այսպիսով, Միհրդատը, որը բազմապիսի և առավել ակնա-
ռու բախտի էր արժանացել, մինչև իսկ կյանքի սովորական
վախճան չունեցավ։ Քանզի չկամենալով հանդերձ, ցանկա-
ցավ մեռնել և ինքն իրեն սպանել փորձելով հանդերձ, չկա-
րողացավ. այլ մասամբ թույնով, մասամբ թրով ինքնաս-
պանություն էր գործում, բայց թշնամիների կողմից սպան-
14, 1 վեց։ Փառնակեսը նրա դիակը զմռսելով ուղարկեց Պոմ-
պեոսին, որպես ապացույց կատարվածի, և նրան հանձնեց
իր անձը և իր իշխանությունը։ Եվ (Պոմպեոսը) չանարգեց
(դիակը), այլ ընդհակառակը, հրամայեց այն թաղել հայ-
րենի դամբարանում. քանզի ենթադրելով, որ նրա թշնա-
մությունը հանգել է նրա հոգու հետ, այլևս անտեղի չզայ-
2 րացավ դիակի վրա։ Այսուհանդերձ Բոսպորի թագավորու-
թյունը նա պարգևեց Փառնակեսին իբրև վարձ նրա ոճրա-
գործության և նրան գրանցեց իր բարեկամների և դաշնա-
կիցների ցուցակում։
3 Այսպիսով, երբ արդեն (Միհրդատը) կործանվել էր,
նրա տերության բոլոր մասերը, բացի մի քանիսից, նվաճվե-
ցին. քանզի Բոսպորից դուրս գտնվող մի քանի ամրություն-
ների կայազորները, որոնք այդ ժամանակ դեռևս մնում
էին, անմիջապես չհամաձայնվեցին ո՛չ այն պատճառով, որ
մտածում էին դիմադրել (Պոմպեոսին), այլ որովհետև վա-
խենում էին, թե իրենց պահպանած գանձերը ուրիշները
կհափշտակեն ու մեղքը կբարդեն իրենց վրա. ուստի և նրանք
սպասում էին, ցանկանալով ամեն ինչ ցույց տալ իրեն՝
Պոմպեոսին։
15, 1 Այսպիսով, երբ այս վայրերը նույնպես ենթարկվեցին,
և Փրաատեսը մնում էր հանգիստ, իսկ Սիրիան և Փյունի-
կիան խաղաղվել էին, (Պոմպեոսը) շրջվեց Արետասի դեմ։
Սա թագավորում էր արաբների վրա, որոնք այժմ հպատակ-
վում են հռոմայեցիներին, մինչև Կարմիր ծով, և նախկի-
նում մեծապես վնասել էր Սիրիային, որի համար էլ այդ
(երկիրը) պաշտպանող հռոմայեցիների դեմ մղած կռվում

պարտվեց, բայց այդ ժամանակ դեռևս շարունակում էր պա-
2 տերազմը։ Ուստի և Պոմպեոսը, արշավելով նրա և նրա մեր-
ձակա երկրների դեմ, առանց դժվարության հաղթեց նրանց
և հանձնեց կայազորի (հսկողությանը)։

## ԳԻՐՔ ԵՐԵՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

30, 1 Եվ Կիկերոնը[101], լսելով այս խոսքերը[102], ինչ-որ չափով
թեթևացավ. միաժամանակ նաև երկար չմնաց արտաքսված,
այլ ետ վերադարձվեց իր իսկ Պոմպեոսի կողմից, որը բո-
լորից առավել (պատասխանատու էր) նրա արտաքսման
համար։ Պատճառն այն էր, որ Կլոդիոսը[103] փողի միջոցով
համոզվեց և կրտսեր Տիգրանին, որն այդ ժամանակ դեռևս
Լուկիոս Փլավիոսի մոտ կապանքների մեջ էր, փախցնելով
2 ազատ արձակեց. միաժամանակ նաև Պոմպեոսին և Գաբի-
նիոսին, որոնք զայրացել էին այդ առթիվ, անպատվեց,
նրանց հետևորդներին վերքեր ու (մարմնական) վնաս-
վածքներ պատճառեց, միաժամանակ նաև փշրեց կոնսուլի
ձողիկները[104] և իր ունեցվածքը նվիրաբերեց աստվածներին։
37, 5 «Այսպիսով[105], նմանօրինակ կարգերի հետևանքով,
այս մարդիկ[106], որոնք սկզբնապես սակավաթիվ էին և բը-
նակվում էին նախ մի քաղաքում, որից փոքրը չի կարող
լինել, իշխեցին լատիններին, հաղթեցին սաբիններին, տի-
րեցին էտրուսկներին[107], վոլսկերին, օսկերին[108], լուկան-
ներին և սամնիտներին. մի խոսքով, հպատակեցրին
Ալպյան (լեռներից) այս կողմ գտնվող ամբողջ երկիրը, ի-
38, 1 րենց դեմ արշաված բոլոր այլացեղերին ետ մղեցին[109]։ Հե-
տագայում հռոմայեցիները, ինչպես նաև մեր իսկ հայրերը
նմանվելով նրանց, չբավարարվեցին առկա եղածներով, ոչ
իսկ գոհացան իրենց ժառանգածով, այլ ծուլությունը իրոք
համարելով իրենց համար կորուստ, իսկ չարչարվելը՝ ճըշ-
մարիտ փրկություն, և վախենալով, որ իրենց ունեցածը
եթե մնա ինքն ինքնին, ապա կարող է սպառվել և (ժամա-
նակի ընթացքում) մաշվել, և ամաչելով, որ այսքան շատ
բան ստացած լինելով ոչինչ ավելացրած չեն լինի, նրանք
2 ավելի շատ և ավելի խոշոր նվաճումներ կատարեցին։ Բայց
ինչո՞ւ մեկ առ մեկ հիշատակենք Սարդինիան, Սիկիլիան,
մակեդոնացիներին, իլլիրիացիներին, Հելլադան, Հոնիա-

կան Ասիան[110], բյուզանդացիներին, իբերներին, աֆրիկա-
ցիներին։ Թեպետև կարթագենացիները առատ դրամ տվե-
ցին նրանց, որպեսզի դեպի այնտեղ չնավեն, շատ տվեցին
նաև Փիլիպպոսը[111] և Պերսևսը[112], որպեսզի իրենց վրա չար-
շավեն. Անտիոքոսը[113] ևս շատ է տվել, շատ են տվել նաև
նրա որդիները և թոռները, որպեսզի (հռոմայեցիները) մնա-
3 յին Եվրոպայում։ Բայց ո՛չ այդ մարդիկ փառքի և իշխանու-
թյան մեծությանն ի տես գերադասեցին անփառունակ ան-
գործությունը և ապահով հարստացումը, ո՛չ իսկ մեզանից
ավագները, որոնք դեռևս այժմ էլ կան. բայց լավ իմանա-
լով, որ բարիքը ձեռք է բերվում և պահպանվում նույն մի-
ջոցով, նրանք ապահովեցին նախկինում եղածները, միա-
4 ժամանակ և բազում նորերը նվաճեցին։ Բայց ինչո՞ւ մեկ առ
մեկ այստեղ ևս թվարկել Կրետեն, Պոնտոսը, Կիպրոսը,
Ասիական Իբերիան[114], այնտեղի Ալբանիան[115], զույգ Սի-
րիաները, երկու Արմենիաները[116], Արաբիան և Պաղեստինը.
(երկրներ), որոնց անուններն անգամ մենք նախկինում ճիշտ
չգիտեինք, իսկ այժմ նրանց մի մասին ինքներս ենք տի-
րում, մյուս մասը շնորհել ենք ուրիշներին. այնպես որ
նրանցից ստացել ենք և՛ եկամուտներ, և՛ զորքեր, և՛ պա-
տիվներ և թե՛ դաշնակցություններ»։

## ԳԻՐՔ ԵՐԵՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

56,1 Այդ կատարվեց այսպես. Գաբինիոսը[117] շատ վնասներ
հասցրեց Սիրիային, նույնիսկ առավել քան երկիրը ավարի
տվող ծովահենները, որոնք այդ ժամանակ նույնպես ա-
ճում էին։ Այսուհանդերձ, այստեղից ստացվածները նվա-
զագույն համարելով, սկզբում նա մտածեց և նախապատ-
րաստվեց արշավելու պարթևների և նրանց հարստության
2 վրա։ Քանզի Փրաատեսը սպանված լինելով իր որդիների
կողմից, Օրոդեսը[118] ժառանգեց նրա թագավորությունը և
Միհրդատին՝ իր եղբորը, դուրս քշեց Մեդիայից, որտեղ նա
իշխում էր։ Եվ սա, ապաստանելով Գաբինիոսի մոտ, համո-
3 զեց նրան աջակցելու իր վերադարձին։ Բայց և այնպես, երբ
Պտղոմեոսը[119] ժամանեց Պոմպեոսի նամակով ու խոստա-
ցավ թե՛ իրեն և թե՛ զորքերին շատ դրամ վճարել, մի մասը
անմիջապես, մյուս մասը՝ երբ նորից գահ բարձրանա, (Գա-

բինիոսը) հրաժարվեց պարթևների դեմ արշավանքից և շարժ-
վեց Եգիպտոսի վրա, թեպետև (հռոմեական) օրենքը արգելում
4 էր կառավարիչներին արշավել իրենց սահմաններից դուրս
կամ պատերազմ նախաձեռնել իրենց իսկ հայեցողությամբ։

## ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆԵՐՈՐԴ

12, 1 Իսկ Կրասսոսը[120] ինքը նույնպես ցանկանալով կատա-
րել փառալից և իր համար շահավետ ինչ-որ բան, ու նկա-
տելով, որ Սիրիայում հնարավոր չէր այդպիսի մի բան ա-
նել, քանզի սիրիացիները խաղաղվել էին, իսկ նախկինում
իրենց՝ հռոմայեցիների դեմ .պատերազմ մղածները թուլա-
ցած լինելու պատճառով չէին խլրտում, արշավեց պարթևնե-
րի վրա, թեպետև նրանց դեմ ոչ մի մեղադրանք չէր կարող
հարուցել, ոչ էլ պատերազմ էր հայտարարել, բայց որով-
հետև լսել էր, թե նրանք շատ հարուստ են, և ենթադրում
էր, թե Օրոդեսին[121], որը դեռ գահին նոր հաստատված էր,
2 կարելի է հեշտությամբ գերեվարել։ Ուստի և անցավ Եփրատ
գետը և առաջացավ Միջագետքի շատ խորքերը, ասպատակե-
լով և ամայացնելով այդ (երկիրը)։ Քանի որ նրա գետն
անցնելը անսպասելի էր բարբարոսների համար, ոչ մի իս-
կական պահակազորք չկար այնտեղ, ապա Սիլակեսը, որն
այդ ժամանակ այդ երկրի սատրապն էր, պարտվեց Իքնիա
կոչված մի ամրության մոտ, կռվելով փոքրաթիվ հեծյալ-
ներով, վիրավորվեց ու փախավ, անձամբ հաղորդելու ար-
13, 1 քային նրա կատարած արշավանքի լուրը։ Իսկ Կրասսոսը
արագորեն իր կողմը գրավեց բերդերը և հատկապես հելլե-
նական քաղաքները, որոնց թվում նաև Նիկեփորիոն[122] կոչ-
վածը. քանզի մակեդոնացիներից և նրանց հետ միասին ար-
շաված հելլեններից մեծ թվով վերաբնակներ, բռնի քշված
լինելով (բարբարոսների կողմից)[123], հռոմայեցիներին հա-
2 մարում էին հունասերներ և կամովին չէին դիմադրում. բա-
ցի Զենոդոտիոնի[124] բնակիչներից, որոնք (հռոմայեցիներից)
ոմանց հրավիրեցին, հայտնելով, որ իբր ապստամբում են.
բայց երբ հռոմայեցիները մտան քաղաք, ձերբակալեցին
նրանց ու ոչնչացրին. այդ իսկ պատճառով նրանք (բռնի)
տեղահանվեցին. այդ ժամանակ Կրասսոսը ուրիշ ոչ մի վնաս
3 ոչ կրեց, ոչ էլ պատճառեց։ Այնուամենայնիվ նա կհպա-
տակեցներ նաև Տիգրիսից այս կողմ գտնվող մյուս երկըր-

ները ևս, եթե նա օգտված լիներ իր արշավանքի թափից և
այդ ամենի պատճառով բարբարոսներին (համակած) խու-
ճապից, ինչպես և եթե ձմեռեր այդ նույն երկրում և աչա-
4 լուրջ հետևեր իրադարձություններին։ Մինչդեռ այժմ նա
գրավեց (այն վայրերը), ինչ կարողացավ (հանկարծակի)
արշավանքի միջոցով, և հոգ չտարավ ոչ մնացածը (նվա-
ճելու), և ոչ իսկ (արդեն նվաճվածի) մասին, այլ գերադա-
սեց Միջագետքում դանդաղել և փափագեց Սիրիայում ծու-
լանալ, դրանով իսկ պարթևներին ժամանակ ընձեռեց պատ-
րաստվելու և երկրում թողնված զինվորներին վնաս հասց-
նելու։
14, 1 Այսպիսին էր հռոմայեցիների պատերազմի սկիզբը
պարթևների դեմ։ Սրանք բնակվում են Տիգրիսից այն կողմ,
մեծ մասամբ պարսպապատ (ամրոցներում) և բերդերում,
մասամբ նաև քաղաքներում, որոնց թվում է նաև Կտեսի-
փոնը[125], որտեղ նրանք ունեն նաև արքայանիստ պալատ։
Նրանց ցեղը գոյություն ուներ դեռևս հին բարբարոսների
ժամանակ և կրում էր նույն անունը նաև պարսից թագավո-
2 րության[126] ընթացքում. բայց այդ ժամանակ նրանք բնակ-
վում էին (այդ) երկրի մի փոքր մասի վրա և իրենց սահ-
մաններից դուրս ոչ մեկ տիրույթ ձեռք չէին բերել. իսկ երբ
պարսիկների իշխանությունը տապալվեց ու բարձրացավ
մակեդոնացիների տերությունը, և երբ Ալեքսանդրի դիա-
դոքները վիճեցին միմյանց հետ, ու նրանցից յուրաքանչյու-
րըն իր համար առանձին երկիր անջատեց և իր միապետու-
3 թյունը հաստատեց, այնժամ էլ առաջին անգամ ոմն Ար-
շակի[127] ղեկավարությամբ (պարթևները) հանդես եկան, ո-
րից էլ հետագայում նրանց արքաները կոչվեցին Արշակու-
նիներ[128] ու, բարդավաճելով, նվաճեցին հարևան բոլոր եր-
կրները, տիրացան նաև Միջագետքին՝ որպես սատրապու-
թյունների, ու վերջում ձեռք բերեցին այնքան փառք և հը-
զորություն, որ այդ ժամանակ նույնիսկ հռոմայեցիների
դեմ կռվեցին ու դրանից հետո մինչև հիմա ևս մշտապես
4 (հռոմայեցիներին) հակառակորդ են համարվում։ Նրանք
թեպետև նույնպես հզոր են ռազմական գործերում, սակայն
առավել շատ են հռչակված (քան արժանի են), ու թեպետև
հռոմայեցիներից ոչինչ չեն կարողացել վերցնել, այլ նույ-
նիսկ իրենց ունեցածից (կորցրել են), երբևիցե չեն հպա-

տակվել, այլ այժմ ևս ամեն անգամ նրանք մեր դեմ մղած
15, 1 պատերազմներում աչքի են ընկնում։ Այսպիսով, նրանց ցե-
ղի և նրանց յուրահատուկ բարքերի մասին շատերի կողմից
ասվել է, և ես մտադիր չեմ (դրանք) նկարագրել։ Բայց
նրանց զինվածության և ռազմավարության մասին ես
կպատմեմ, քանի որ դրանց ուսումնասիրությունը առանձ-
նապես վերաբերում է այստեղ պատմվելիք դեպքերին, ուս-
2 տի այժմ անհրաժեշտ է իմանալ դրանց մասին։ Վահաններ
նրանք բոլորովին չեն օգտագործում. նրանց բանակը կազմ-
ված է հեծյալ աղեղնավորներից և (հեծյալ) նիզակակիր-
ներից, որոնք մեծ մասամբ զրահապատված են։ Նրանց հե-
տևակը փոքրաթիվ է, բաղկացած ամենաչքավորներից.
բայց սրանք ևս նետաձիգներ են. և նրանք մանկությունից
մարզվում են և երկինքն ու երկիրը նպաստում են այս բո-
3 լորին։ Քանզի երկիրը, մեծ մասամբ հարթավայրային լի-
նելով, լավագույնս սնում է ձիերին և շատ հարմար է ձիա-
վարության համար։ Ուստի և նրանք նույնիսկ պատերազմ-
ներին ամբողջ երամակներ են քշում, այնպես, որ նրանք
կարող են տարբեր ժամանակ օգտվել տարբեր ձիերից ու
անսպասելի հեռվից արշավել և հանկարծակի նահանջել մի
4 հեռավոր տեղ։ Ու երկինքը նրանց վերևում չորագույն լինելով և
չնչին խոնավություն իսկ չունենալով, նրանց աղեղները ա-
ռավել ձգած են մնում, բացի խորը ձմռանից։ Այդ իսկ պատ-
ճառով նրանք տարվա այդ եղանակին երբեք չեն արշա-
վում։ Իսկ տարվա մյուս մասում էլ նրանք առավել անհաղ-
թահարելի են թե՛ իրենց երկրում և թե՛ դրան նմանվող այլ
5 երկրներում։ Քանզի նրանք արդեն սովորած լինելով, կարո-
ղանում են տանել արևը, որը առավել կիզիչ է, և հակամի-
ջոցներ են հայտնագործել ջրի սակավության և դրա հայ-
թայթման հետ կապված դժվարությունների դեմ. ուստի և
այս պատճառով էլ իրենց երկիրը ներխուժողի դեմ նրանք
հեշտությամբ կարողանում են կռվել։ Իսկ այդ երկրից
դուրս, Եփրատից այս կողմ, նրանք մի քանի ճակատամար-
6 տեր շահել են հանկարծակի արշավանքներով. բայց նրանք
անդադար ու տևական պատերազմներ չեն կարող մղել (այ-
լոց դեմ), քանզի նրանք (մի կողմից) չեն կարողանում տա-
նել իրենց երկրից և օդից տարբեր պայմաններ, (մյուս
կողմից) ոչ պարենամթերք են հայթայթում, ոչ էլ ռոճիկ են
վճարում։

16, 1 Այսպիսին է կարգը պարթևների մոտ։ Իսկ Կրասսոսը
երբ ներխուժեց Միջագետք, ինչպես ասվել է, Օրոդեսը նրա
մոտ, Սիրիա, դեսպաններ ուղարկեց, մեղադրելով նրան
ներխուժման համար և պահանջեց հայտնել պատերազմի
պատճառները. միաժամանակ նաև Սուրենին զորքով ու-
2 ղարկեց նվաճված և ապստամբած շրջանները. քանզի ինքը
մտադիր էր արշավել Հայաստան, որը մի ժամանակ Տիգ-
րանի[129] երկիրն էր, որպեսզի Արտավազդը[130], Տիգրանի որ-
դին, որն այդ ժամանակ թագավորում էր (այնտեղ), իր
սեփական երկրի վիճակով մտահոգված, որևէ օգնություն
3 չուղարկի հռոմայեցիներին։ Բայց Կրասսոսը պատասխանեց
նրան, թե պատերազմի պատճառը կհայտնի Սելևկիայում[131]
—սա քաղաք է Միջագետքում, որի բնակչության մեծագույն
մասը այժմ ևս հելլենական է։ Եվ պարթևներից մեկը իր
ձախ ափին մյուս ձեռքի մատներով խփեց ու նրան պա-
տասխանեց, թե՝ «Ավելի հեշտ այստեղ մազեր կբուսնեն,
քան դու կլինես Սելևկիայում»։

17, 1 Ու երբ վրա հասավ ձմեռը, և Գնայոս Կալվինոսը և
Վալերիոս Մեսսալասը դարձան կոնսուլներ[132], նույնիսկ իր՝
Հռոմի վրա բազմաթիվ վատ նախանշաններ հայտնվեցին.
քանզի բվեճներ երևացին և գայլեր, իսկ շներր թափառում
էին ու ոռնում, և արձանների մի մասը քրտնել էր, մյուս
2 մասը շանթահարվել. մինչդեռ իշխանությունները, մասամբ
գժտության, բայց առավել ևս հավքերի[133] և երկնային նշան-
ների պատճառով հազիվ յոթերորդ օրը այդ մասին հայտ-
նեցին։ Բայց այդ նշանները ոչ մի պարզ բան չէին ցույց
տալիս, թե ի՞նչ պետք է կատարվի. քանզի քաղաքում իրա-
վիճակը խառն էր, իսկ գալլերը նորից խռովություն էին
բարձրացրել. ու թեպետև (հռոմայեցիները) դեռևս չգիտեին
ինչ անեին, արդեն պատերազմի բռնվեցին պարթևների հետ։
3 Իսկ Կրասսոսին, երբ սա անցնում էր Զևգման[134]—այդ վայ-
րըն այսպես կոչվեց Ալեքսանդր Մակեդոնացու արշավան-
քից հետո, քանզի նա (գետն) այստեղով անցավ—այդ նշան-
18, 1 ներր ակնհայտ և հեշտ բացատրելի թվացին։ Քանզի այս-
պես կոչված արծիվը—կա մի տաճար, որի մեջ դրված է
ոսկե արծիվ. այդպիսին հաստատված է զորակոչված բո-
լոր լեգեոններում, և երբեք դուրս չի բերվում (լեգեոնի)
ձմեռային կայանից, այլ միայն այն ժամանակ, երբ ամ-

2 բողջ զորքը դուրս է գալիս։ Այս դեպքում մի այր տանում է
այն, անցկացրած երկար նիզակին, որը վերջանում է սուր
ծայրով, այնպես, որ խրվելիս ամրանում է հողին—ահա
այդ արծիվներից մեկը այդ ժամանակ չկամեցավ Կրասսոսի
հետ միասին անցնել Եփրատը, այլ խրված մնաց գետնին,
ասես բուսած լիներ այնտեղ, մինչև որ շատերը դրա
3 շուրջը կանգնելով, ուժով դուրս չքաշեցին հողից։ Ու սա
ևս, թեպետ ակամա, հետևեց նրանց, իսկ մեծ դրոշներից
մեկը, որը նման էր առագաստի, և որի վրա փյունիկյան
գրեր կային, ազդարարելու համար թե՛ զորքը և թե՛ նրա
հրամանատարին[135], շուռ եկավ ու կամուրջից ընկավ գետը.
4 և սա պատահեց ուժեղ քամու ժամանակ։ Այնժամ Կրասսոսը
մնացյալները ևս հավասար չափով կտրեց, որպեսզի դրանք
ավելի կարճանային ու դրանով իսկ հնարավոր լիներ ավելի
հեշտ տանել. բայց այդպիսով միայն ավելացրեց հրաշքը՝
Քանզի ուղիղ գետանցի ժամանակ այնքան (թանձր) մշուշ
իջավ զինվորների վրա, որ նրանք սկսեցին իրար հետ ընդհարվել
և թշնամու երկրից ոչինչ չէին նկատում, մինչև
5 ոտք չէին դնում այնտեղ. և գետանցի ու ափհանման համար
մատուցված զոհաբերությունները առավել անբարենպաստ
եղան։ Այդ ժամանակ էլ ուժեղ քամի բարձրացավ ու կայծակներ
ճայթեցին, և կամուրջը, նախքան բոլորը կանցնեին,
քանդվեց։ Եվ այս կատարվածները այնպես (ակնհայտ)
էին, որ ամենաանգետներին և ամենաանուսներին
անգամ ցույց էին տալիս, թե վախճանը վատ պետք է լինի
և իրենք չեն կարողանալու ետ վերադառնալ, (ուստի) և
19, 1 զորքին խիստ սարսափ և հուսալքում համակեց։ Այնժամ
Կրասսոսը, փորձելով քաջալերել նրանց, ասաց, թե «Մի՛
խռովեք, զինվորներ, եթե կամուրջը քանդվել է, և մի՛ կարծեք,
թե դրա մեջ որևէ վատ կանխանշան կա. քանզի ես ինքըս
երդվելով ձեզ ասում եմ, որ իմ վերադարձը պետք է կա-
2 տարեմ Հայաստանի վրայով»։ Այս խոսքերով նա գուցե
քաջալերեր նրանց, եթե նույն պահին պատասխանելով ինչ-
որ մեկին, բարձրաձայն չավելացներ. «Քաջ եղեք, քանզի
3 մեզանից ոչ ոք այնտեղից չի վերադառնալու»։ Լսելով այս
խոսքերը, զինվորներին թվաց, թե այս մեկը ևս ոչ պակաս
խոշոր կանխանշան էր, որի պատճառով էլ առավել հուսալքման
մեջ ընկան. ուստի և նրանք այսուհետև ուշադրու-

թյուն չէին դարձնում նրա խրատական խորհուրդներին, ո-
րոնցով (մի կողմից) վատաբանում էր բարբարոսին[136],
(մյուս կողմից) փառաբանում հռոմեական պետությունը.
տալիս էր նրանց դրամ և խոստանում հաղթության պար-
4 գևներ։ Բայց այս դեպքում ևս (զինվորները) հետևեցին
(նրան), և ոչ մեկը չհակաճառեց նրան, ոչ էլ որևէ հակա-
ռակ գործ կատարեց, մասամբ, գուցե, հավատարիմ
օրենքին, բայց միաժամանակ նաև այն պատճառով, որ
նրանք շփոթված էին և չէին կարող փրկարար որևէ մի բան
մտածել, ոչ էլ ձեռնարկել։ Որովհետև, ինչպես ամեն ին-
չում, նրանք թե՛ մտքով և թե՛ մարմնով կորած էին, ասես
անհայտ մի աստվածություն նրանց կործանում էր։
20, 1 Սակայն նրանց ամենամեծ վնասը պատճառեց Աբգար
Օսրոենացին[137]. քանզի նա Պոմպեոսի ժամանակ դաշնակից
էր եղել հռոմայեցիներին, իսկ այժմ գերադասել էր բարբա-
րոսին։ Նույն բանն արեց նաև Ալքավդոնիոս Արաբը, որը
2 միշտ անցնում էր ուժեղի կողմը։ Այս մեկը, սակայն, բա-
ցահայտ կերպով ապստամբեց, ուստի և դժվար չէր նրա-
նից պաշտպանվել։ Մինչդեռ Աբգարը, մտածելով հօգուտ
պարթևի, ձևացնում էր, թե իբր բարյացակամ է Կրասոսի
հանդեպ և նրա օգտին անխնա դրամ էր ծախսում և իմա-
նալով նրա բոլոր ծրագրերը, դրանք հաղորդում էր (թշնա-
մուն), և նույնիսկ եթե դրանցից որևէ մեկը օգտավետ էր
(հռոմայեցիներին, խորհուրդ էր տալիս) հրաժարվել դրա-
նից, իսկ եթե վնասաբեր էր, շտապեցնում այն։ Վերջապես
3 նա այսպիսի մի բան արեց։ Երբ Կրասոսը մտածում էր
արշավել դեպի Սելևկիա, կարծելով, որ այնտեղ կարող է
ապահով հասնել, եթե իր զորքն ու պարենամթերքը տանե-
լու լինի Եփրատի վրայով ու նրա երկարությամբ, և նրանց[138]
հետ միասին—քանի որ նա ենթադրում էր, թե նրանց հեշ-
տությամբ կգրավի իր կողմը, քանզի նրանք հելլեններ
էին—առանց դժվարության (գետի վրայով) կհասնի Կտե-
4 սիփոն, այնժամ (Աբգարը) խորհուրդ տվեց նրան հրաժար-
վել այդ բանից, քանի որ, իբր դա երկար ժամանակ կխլեր,
և համոզեց նրան հարձակվել Սուրենի վրա, քանի որ սա
21, 1 գտնվում էր մոտակայքում և քիչ զորք ուներ։ Այսպիսով,
երբ նա արդեն պայմաններ էր ստեղծել մեկի կործանման
և մյուսի հաղթանակի համար—քանզի նա լրտեսելու պա-

տրրվակով մշտապես հանդիպում էր Սուրենին—հռոմայե-
ցիներին դուրս բերեց (ճակատամարտի) անհոգ վիճակում,
իբր հաղթանակը պատրաստ էր, և գործողության ընթացքում
միանալով (բարբարոսներին) հարձակվեց (հռոմայեցիների)
վրա։

2 Այդ կատարվեց այսպես։ Պարթևներն իրենց զորքի մեծ
մասը թաքցնելով—քանզի այնտեղ վայրը անհարթ էր և ծա-
ռեր կային—դեմ դուրս ելան հռոմայեցիներին։ Նրանց նկա-
տելով Կրասսոսը՝ ոչ թե հրամանատարը, այլ կրտսերը, որը
Գալլիայից ժամանել էր իր հոր մոտ, արհամարհեց նրանց,
ենթադրելով, թե մենակ են, իր հեծյալ զորքը հանեց նրանց
դեմ. և երբ նրանք դիտավորյալ փախուստի դիմեցին, հա-
լածեց նրանց և կարծելով, թե հաղթել է, շատ հեռացավ
ֆալանգից[139] և այնտեղ իսկ շրջապատվելով՝ կոտորատվեց։
22, 1 Այս բանը կատարվելուց հետո, հռոմայեցիների հետևակը
փախուստի չդիմեց, այլ եռանդագին մարտի բռնվեց պար-
թևների հետ, նրա մահը հատուցելու համար։ Սակայն
նրանք իրենց վայել ոչինչ չկարողացան անել թե՛ թշնամու
բազմության և թե՛ նրա ռազմական տակտիկայի, ինչպես
2 նաև Աբգարի դավադրության պատճառով։ Քանզի երբ նը-
րանք փորձում էին համատեղ շրջափակվել վահաններով,
պաշտպանվելու համար թշնամու նետահարումներից, ապա
իրենց վրա թափով նետվում էին թշնամու նիզակավորները
և մի մասին ցած էին գլորում, մյուսներին ցրիվ տալիս։ Իսկ
երբ նրանք այդ բանից խուսափելու համար ձգում-երկա-
3 րացնում էին իրենց շարքերը, նետահարվում էին։ Այս վի-
ճակում շատերն սպանվում էին վրա հասնող նիզակավոր-
ների հարվածներից, իսկ շատերն էլ կործանվում էին, շըր-
ջապատվելով հեծյալներից. ուրիշներն էլ տապալվում էին
նիզակների (հարվածներից) և կամ քշվում էին վիրավոր-
4 ված։ Եվ նետասլաքներն էլ ամեն կողմից խտությամբ
միանգամից խոցում էին նրանց, շատերին մահացու վերք
հասցնելով, շատերին էլ դարձնելով կռվելու անընդունակ,
որով և բոլորն անպետքանում էին։ Սլաքները թռչում էին
նրանց աչքերին, թափանցելով նրանց (պաշտպանական)
զենքերը, վիրավորում էին նրանց ձեռքերն ու մարմնի մյուս
բոլոր մասերը, պաշտպանվելու հնարավորությունից զըր-
կելով նրանց, ստիպում ամբողջապես բացվել ու ենթարկ-

5 վել մշտական նետահարման. այնպես որ մինչ որևէ մեկը
փորձում էր պաշտպանվել նետերից և կամ աշխատում էր
արդեն (մարմնին) մխրճված սլաքը դուրս քաշել, իսկույն ի-
րար ետևից բազում վերքեր էր ստանում։ Ուստի և անիմաստ
էր նրանց համար շարժվելը, բայց անիմաստ էր նաև անշարժ
մնալը։ Քանզի ոչ շարժվելը, ոչ էլ հանգիստ մնալը, ոչ-մի ա-
պահովություն չէր խոստանում, այլ երկու դեպքում էլ նրանք
կործանվում էին. որովհետև շարժվել չէին կարողանում, բայց
հեշտությամբ նետահարվում էին։
23, 1 Այս բոլորը դեռ այն է, ինչին ենթարկվեցին միայն
բացահայտ թշնամիների դեմ կռվելիս. քանզի Աբգարը ան-
միջապես չէ, որ նրանց դեմ գործողություն ձեռնարկեց. բայց
երբ սա ևս հարձակվեց, այնժամ օսրոենցիներն իրենք ևս
հարվածեցին (հռոմայեցիների) անպաշտպան թիկունքին,
երբ սրանք ետ էին շրջվել, և դրանով իսկ օգնում էին
մյուսներին, սրանց ավելի հեշտ ոչնչացնելու համար։ Քան-
զի (հռոմայեցիների) շարքերը փորձելով սրանց դեմ հանդի-
ման դասավորվել, իրենց թիկունքը պարթևներին էին դարձ-
2 նում։ Հետո շուռ էին գալիս դեպի պարթևները, այնուհետև
դարձյալ դեպի օսրոենցիները, հետո նորից դեպի պարթև-
ները։ Այս ամենից հետո առավել շփոթմունքի ենթարկվելով,
քանի որ նրանց հարվածող հակառակորդին դիմագրավելու
համար ստիպված անընդհատ այս ու այն կողմ էին շրջվում,
ապա ընկնում էին յուրայինների դաշույնների վրա և շատերն
3 սպանվեցին իրար ձեռքով։ Ու վերջապես, քանի որ թըշ-
նամին ամեն կողմից միաժամանակ հարձակվում էր իրենց
վրա, և իրենք ստիպված էին պաշտպանելու իրենց մերկա-
ցած զորամասերը վերջիններիս մոտիկ կանգնածների վա-
հաններով, դրանով իսկ նրանք փակվեցին մի նեղ տեղան-
քում, այնպես որ այլևս շարժվել չէին կարողանում։ Եվ իս-
կապես, մահացածների բազմության պատճառով նրանք
հաստատ կանգնելու տեղ անգամ չունեին, այլ սայթաքելով
4 ընկնում էին (դիակների) վրա։ Իսկ տապն ու ծարավը—
քանզի ամառվա կեսն էր, և այս ամենը կատարվում էր կե-
սօրին—և փոշին, որը բարբարոսները հնարավորին չափ
բարձրացնում էին, ձիավարելով նրանց շուրջ բոլորը, (կեն-
դանի) մնացածներին խիստ սարսափով համակեց և շատե-
րը այս ամենից ընկնում էին ցած, թեպետև չվիրավորված։

24, 1 Եվ նրանք մինչև վերջինը կկորչեին, եթե բարբարոսների նի-
ղակները մասամբ չճկվեին, մասամբ էլ չջարդվեին, իսկ
անդադար նետահարումից աղեղների ջղերը չպոկվեին և
նետերն էլ չսպառվեին և բոլոր թրերը չբթանային և, որ ամե-
2 նակարևորն է, իրենք՝ այրերը չհոգնեին սպանելուց։ Ահա
այսպես (հարձակվողները) ետ քաշվեցին, քանզի գիշերը
իջնում էր, և նրանք պետք է հեռու ձիավարեին։ Որովհետև
նրանք երբեք չէին բանակում նույնիսկ ամենաթույլերին
մոտիկ, քանի որ ոչ մի խրամատ չէին օգտագործում, ուստի
և եթե որևէ մեկը մթության մեջ հարձակվի նրանց վրա,
նրանք անկարող են լինում օգտագործել իրենց ձիերն ու ա-
3 ղեղները։ Այսուհանդերձ նրանք՝ այս ժամանակ հռոմայեցի-
ներից ոչ մեկին կենդանի չվերցրին. քանզի տեսնելով նրանց
իրենց զենքերով կանգնած ու նկատելով, որ նրանցից և ոչ
մեկը զենքը դեն չի նետում և չի փախչում, պարթևները են-
թադրեցին, որ սրանք դեռևս ուժեղ են, ուստի և վախեցան
նրանց հետ կռվի բռնվելու։

25, 1 Այսպիսով Կրասսոսը և բոլոր մյուսները, ովքեր կա-
րողացան, արշավեցին դեպի Կարրա[140], որը իրենց հանդեպ
հնազանդ էր պահվել այստեղ մնացած հռոմայեցիների շնոր-
հիվ։ Մինչդեռ վիրավորներից շատերը, քանի որ անկարող
էին քայլել և զրկված էին տանող սայլերից և նույնիսկ
օգնող-տանողներ չունեին, քանի որ մյուսները հազիվ
կարողացել էին իրենք իրենց քարշ տալ, մնացին դաշտում։
2 Եվ սրանցից ոմանք մահացան վերքերից և կամ ինքնաս-
պանության դիմեցին, մյուսներն էլ հաջորդ օրը գերի վերց-
վեցին։ Իսկ խուսափածներից շատերը կործանվեցին,
ճանապարհին հոգնելով. շատերն էլ ոչնչացան ավելի
ուշ, քանի որ ժամանակին անհրաժեշտ խնամք չստացան։
3 Քանզի Կրասսոսը հուսահատված լինելով, ենթադրեց, որ
նույնիսկ քաղաքում այսուհետև հնարավոր չէ դիմանալ, և
մտածեց անմիջապես փախչել։ Ու քանի որ նրա համար
հնարավոր չէր ցերեկ ժամանակ դուրս գալու դեպքում
աննկատ մնալ, փորձեց գիշերով փախչել, բայց մատնվե-
լով լուսնից, քանզի լիալուսին էր, չկարողացավ խուսա-
4 փել։ Ուստի և (հռոմայեցիները) սպասեցին մինչև վրա
կհասնեին անլուսին գիշերները, և այդ ժամանակ էլ խավա-
րի մեջ դուրս եկան օտար ու թշնամական երկրում և ահ ու

*սարսափով համակված ցրիվ եկան. և սրանցից ոմանք, երբ արդեն օրը բացվեց, բռնվեցին ու կործանվեցին, իսկ մյուսները քվեստոր[141] Կասսիոս Լոնգինոսի հետ ապահով հասան*
5 *Սիրիա. ուրիշներ էլ իրեն՝ Կրասսոսի հետ միասին ապաստանեցին լեռները, որպեսզի դրանց վրայով փախչեն Հայաստան։*

26, 1 *Իսկ Սուրենն իմանալով այս, վախեցավ, որ չլինի թե ինչ-որ մի տեղ սրանք հավաքվելով դարձյալ իր դեմ պատերազմ սկսեն. բայց և չուզեց նրանց վրա հարձակվել բարձրադիր վայրերում, որոնք անմատչելի էին հեծելազորի համար. քանի որ հռոմայեցիները ծանրազեն էին[142] և առավել բարձրից էին կռվում և միաժամանակ հուսահատությունից կատաղությամբ էին լցված, ուստի և հեշտ չէր նրանց հետ կռվի բռնվելը։ Այս պատճառով նա (բանագնաց) ուղարկեց նրանց մոտ, իբր հաշտություն կնքելու, պայմանով, որ նրանք լքեն Եփրատից արևելք գտնվող ամբողջ երկիրը։*
2 *Եվ Կրասսոսը նրան հավատաց առանց վարանելու. քանզի նրա վախը հետզհետե աճում էր, և նա խիստ հուսահատված էր անձամբ իր և պետության վրա ընկած աղետի հարվածներից, միաժամանակ տեսնելով նաև, որ զինվորները ծուլանում են ճանապարհին, այն համարելով երկար և դժվարին, և որ նրանք վախենում են Օրոդեսից, անկարող եղավ*
3 *իրեն անհրաժեշտ եղող որևէ բան նախատեսել։ Երբ նա արդեն պատրաստ էր հաշտության, Սուրենը չուզեց այլոց միջոցով հաշտություն կնքել, այլ որպեսզի նրան փոքրաթիվ ուղեկիցների հետ հանդիպելով ձերբակալի, ասաց, որ ինքը*
4 *ցանկանում է բանակցել անձամբ նրա հետ։ Ուստի և նրանք որոշեցին իրար հանդիպել երկու բանակները բաժանող տարածության մեջտեղում, յուրաքանչյուր կողմից հավասար թվով զինվորներով։ Ուստի և Կրասսոսը իջավ հարթավայր, իսկ Սուրենը նրան ձի ուղարկեց նվեր, որպեսզի նա ավելի*
27, 1 *շուտ հասնի իր մոտ։ Ու քանի դեռ Կրասսոսը դանդաղում էր և մտածում անելիքի մասին, բարբարոսները նրան խլելով բռնի նստեցրին ձիու վրա։ Այդ միջոցին հռոմայեցիները նույնպես ետ խլեցին նրան և ձեռնամարտի բռնվեցին նրանց հետ և որոշ ժամանակ հավասարապես դիմադրեցին, իսկ հետո, երբ ուրիշներ օգնության հասան (բարբարոսներին),*
2 *սրանք գերազանցեցին։ Քանզի բարբարոսները, որոնք դաշ-*

տում էին և նախապատրաստված սպասում էին, ավելի շուտ
հասան յուրայիններին օգնության, քան բարձրում գտնվող
հռոմայեցիները։ Եվ ընկան ուրիշները, (ընկավ) նաև
Կրասսոսը, սպանված կա՛մ իր իսկ յուրայիններից մեկի ձեռ-
քով, որպեսզի կենդանի չգերվի, կամ էլ թշնամու ձեռքով,
3 որովհետև ծանր վիրավորված էր։ Այսպիսին եղավ նրա
վախճանը։ Եվ պարթևները, ինչպես ոմանք ասում են[143],
նրա բերանը հալած ոսկի լցրին իբրև ծանակ։ Քանզի լինե-
լով մեծահարուստ, այնքան շատ փող էր կուտակել, որ կա-
րեկցում էր այն մարդկանց, որոնք իրենց միջոցներով չէին
կարողանում հավաքագրված լեգեոն պահել, նրանց հա-
4 մարելով աղքատներ։ Նրա զինվորների մեծ մասը կարո-
ղացավ լեռների վրայով բարեկամական (երկիր) ապաստա-
նել, բայց մի մասն էլ ընկավ թշնամու ձեռքը։
28, 1 Այդ ժամանակ պարթևները Եփրատից այս կողմ չա-
ռաջացան, բայց դրանից այն կողմ ընկած ամբողջ երկիրը
վերանվաճեցին։ Այնուհետև, թեկուզև ոչ մեծ բազմությամբ,
նրանք ներխուժեցին նաև Սիրիա, որը ո՛չ զորավար ուներ,
ո՛չ իսկ զորք։ Այդ պատճառով էլ Կասսիոսը նրանց հեշ-
տությամբ դուրս քշեց, քանի որ։ նրանք մեծաթիվ չէին։
2 Քանզի երբ Կարրայում զինվորները, Կրասսոսի հանդեպ
ատելությամբ (լցված), նրան էին հանձնում գերագույն հրա-
մանատարությունը իրենց վրա, իսկ Կրասսոսը ինքը ևս,
աղետի ահագնության պատճառով, կամովին թույլատրեց
այդ, Կասսիոսը չընդունեց (հրամանատարությունը). այժմ,
սակայն, նա ստիպված ստանձնեց Սիրիայի կառավարումը
3 ներկայի և ապագայի համար։ Քանզի բարբարոսները չէին
հրաժարվում Սիրիայից, այլ ավելի բազմաթիվ ձեռքերով
նորից արշավեցին Օրոդեսի Պակորոս[144] անունով որդու, բայց
իրականում, քանի որ սա դեռ տղա էր, Օսակեսի[145] գլխա-
վորությամբ. և նրանք հասան մինչև Անտիոք[146], իրենց ոտ-
4 քերի տակ ավերելով ամբողջ երկիրը։ Նրանք հույս ունեին
իրենց ենթարկել նաև մնացած երկիրը, քանի որ այնտեղ ի-
րենց դեմ կռվելու համար հռոմեական բավականաչափ ու-
ժեր չկային, և երկիրն էլ դժգոհ էր հռոմայեցիների գերիշ-
խանությունից և պատրաստ էր հարելու (պարթևներին), ո-
րոնք թե՛ հարևաններ էին և թե՛ սովորույթներով մոտիկ։
29, 1 Բայց երբ նրանց չհաջողվեց (վերցնել) Անտիոքը, քանզի

Կասսիոսը նրանց ուժգին դիմադրեց, և նրանք անզոր լին
քաղաքը պաշարել, այնժամ շուռ եկան դեպի Անտիգոնիա։
2 Ու քանի որ այս քաղաքի մերձակայքը անտառախիտ էր, և
նրանք չհամարձակվեցին և չկարողացան հեծելազորով ներ-
խուժել քաղաք, ապա մտածեցին կտրատել ծառերը և ամ-
բողջ վայրը մերկացնել, որպեսզի վստահորեն և ապահո-
վությամբ մոտենան քաղաքին։ Բայց այդ անել չկարողա-
ցան—քանի որ դժվարությունը մեծ էր և ժամանակն իզուր
էր անցնում, իսկ Կասսիոսն էլ վնասում էր նրանց, ովքեր
ցրվել էին երկրում—նրանք ետ քաշվեցին մի ուրիշ վայր
3 արշավելու մտադրությամբ։ Սակայն մինչ այդ Կասսիոսը
դարանակալեց այն ճանապարհին, որով նրանք պետք է հե-
ռանային և այնտեղ փոքրաթիվ մարդկանցով նրանց վրա
հարձակվելով, ստիպեց փախուստի դիմել և շրջապատելով
նրանց, սպանեց ոմանց, որոնց թվում նաև Օսակեսին։ Սրա
մահանալուց հետո Պակորոսը լքեց ամբողջ Սիրիան և այ-
նուհետև երբեք չներխուժեց այնտեղ։
30, 1 Սա հազիվ էր մեկնել, երբ Բիբուլոսը ժամանեց իբրև
Սիրիայի կառավարիչ, թեպետև որոշված էր, որ ոչ պրե-
տորը, ոչ էլ կոնսուլը ոչ անմիջապես, ոչ էլ մինչև հինգ տա-
րի չպետք է մեկնի արտաքին տիրույթների կառավարման
համար, որպեսզի այդ պատճառով իրար հետ չթշնամանան
2 ու չկռվեն։ Եվ նա խաղաղությամբ կառավարեց իրեն ենթա-
կա երկիրը, իսկ պարթևներին հանեց իրար դեմ։ Այսպես,
Օրնոդապատեսին, ոմն սատրապի, որը թշնամություն ու-
ներ Օրոդեսի դեմ, սիրաշահեց և բանագնացների միջոցով
համոզեց թագավոր հռչակել Պակորոսին և սրա հետ միասին
արշավել մյուսի դեմ։
3 Այսպիսով, այս պատերազմը հռոմայեցիների ու պար-
թևների միջև վերջացավ իր սկսելուց հետո չորրորդ տարում,
երբ հյուպատոս էին Մարկոս Մարկելլոսը և Սուլպիկիոս
Հռուփոսը։

ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

55,3 Այսպիսով բացի Փառնակեսից և Օրոդեսից—քանզի
սրան նույնպես փորձեց իր կողմը գրավել, թեպետև Կրաս-
սոսներին սպանելուց հետո սա թշնամի էր դարձել—բոլոր
մնացածները, որոնք երբևիցե մտերմացել էին նրա հետ[147],

թե՛ դրամ տվեցին և թե՛ օգնություն ոմանք ուղարկեցին,
ոմանք էլ անձամբ բերեցին։ Իրականում պարթևը[148] նրան
խոստացել էր, որ եթե ստանա Սիրիան, ապա կդաշնակցի
4 նրա հետ. բայց քանի որ չստացավ այն, ուստի և մերժեց
նրան օգնել։ Այսպիսով, եթե Պոմպեոսը գերազանցում էր
զորքերի բազմությամբ, ապա Կեսարի կողմնակիցները
նրանց հավասարվում էին իրենց ուժով...
56, 1 Ահա այս պայմաններում... ամենանշանակալից պայ-
քարը տեղի ունեցավ։ Քանզի Հռոմ քաղաքը և նրա ամբողջ
տերությունը, որն արդեն հզոր էր ու մեծ, ընկած էր նրանց
առաջ իբրև մրցանակ. որովհետև բոլորի համար պարզ էր,
որ այն[149] պետք է ծառայի այդ կռվում հաղթողին։ Ուստի
նրանք մտածելով այս մասին և վերհիշելով նախկինում ի-
րենց կատարածները—Պոմպեոսը՝ Աֆրիկայի և Սերտորիո-
սի և Միհրդատի և Տիգրանի (հպատակեցումը) և ծովային[150]
2 (գործողությունները), իսկ Կեսարը՝ Գալլիայի և Իբերիայի[151]
3 և Հռենոսի և Բրիտանիայի—և ենթադրելով, որ այդ ամենը
կարող են վտանգել ու նախանձախնդիր լինելով միմյանց
փառքը խլելու, գործի անցան։

* * *

63, 3 Քանզի Հայաստանի մի մասը[152], որը պատկանել էր
Դեյոտարոսին[153], (Կեսարը) տվեց Արիոբարզանեսին՝ Կապ-
պադովկիայի թագավորին, բայց այս դեպքում էլ Դեյոտա-
րոսին բոլորովին չվնասեց, այլ նույնիսկ առավել բարեգոր-
ծություն կատարեց. քանզի նա նրա երկիրը չէ, որ մասնա-
տեց, այլ երբ նվաճել էր Փառնակեսի կողմից նվաճված
ամբողջ Հայաստանը, դրա մի մասը պարգևել էր Արիոբար-
զանեսին, իսկ մյուս մասը՝ Դեյոտարոսին։ Սրանց նա օգտա-
4 գործեց այս կերպ. իսկ Փառնակեսին, որը փորձում էր ար-
դարանալ, թե չի օժանդակել Պոմպեոսին, ուստի և իր այդ
վերաբերմունքի համար ներողամտություն էր հայցում, (Կե-
սարը) նրա հանդեպ ոչ մի բարյացակամություն չցուցաբե-
րեց, այլ մինչև իսկ հանդիմանեց նրան, իրեն բարեգործու-
թյուն անողի հանդեպ վատ և անարգ գտնվելու համար։

## ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

9, 2 ...Եգիպտոսը ապստամբեց, իսկ Փառնակեսը, երբ
լսեց, որ Պոմպեոսը և Կեսարը թշնամացել են իրար, խ-

կույն ձգտեց վերստին ձեռք բերել իր հայրենի տիրույթները.
քանզի նա հույս ուներ, որ նրանք որոշ ժամանակ կզբաղ-
վեն իրենց թշնամանքով և հռոմեական ուժերը կօգտագոր-
3 ծեն իրար դեմ։ Ուստի նա առաջ շարժվեց իր ծրագրերը ի-
րականացնելու համար, մասամբ այն պատճառով, որ նա
արդեն մեկ անգամ սկսել էր, մասամբ էլ այն պատճառով,
որ իմացել էր, թե Կեսարը հեռու է գտնվում. այսպիսով նա
շատ վայրեր արդեն գրավեց։

* * *

45, 1 Եվ Կլեոպատրան Կեսարին դեռ շատ կպահեր Եգիպտո-
սում և կամ ինքը իսկույն նրա հետ կմեկներ Հռոմ, եթե
Փառնակեսը Կեսարին, սրա կամքին հույժ հակառակ, դուրս
չբերեր (Եգիպտոսից) և չխանգարեր նրան Իտալիա շտապե-
2 լուց։ Սա Միհրդատի որդին էր և տիրում էր, ինչպես ասվել
է, Կիմմերյան Բոսպորին. նա ցանկանալով վերանվաճել
իր հայրենի թագավորությունը, ապստամբեց ճիշտ Կեսարի
և Պոմպեոսի հակամարտության ժամանակ. և քանի որ
հռոմայեցիները այնժամ խանգարում էին մեկը մյուսին, և
այնուհետև զբաղված էին Եգիպտոսում, ապա նա առանց
դժվարության տիրացավ Կոլխիսին և Դեյոտարոսի բա-
ցակայության պայմաններում իրեն ենթարկեց ամբողջ Հա-
յաստանը[154], Կապպադովկիայի (մի մասը) և Պոնտոսի մի
քանի քաղաքներ, որոնք հատկացվել էին Բյութանիայի նա-
46, 1 հանգին։ Մինչ նա այս գործերն էր կատարում, ինքը Կե-
սարը չշարժվեց, քանի որ Եգիպտոսը դեռևս չէր խաղաղվել,
և ինքը ինչ-որ հույս ուներ ուրիշների միջոցով հաղթահարել
նրան. բայց նա ուղարկեց Գնայոս Դոմիտիոս Կալվինոսին,
2 նրան հատկացնելով Ասիա և...[155] լեգեոնները։ Եվ նա իր
հետ վերցնելով Դեյոտարոսին և Արիոբարզանեսին, իս-
կույն արշավեց Փառնակեսի դեմ. սա Նիկոպոլիսում էր,
որն արդեն մինչ այդ գրավել էր. և արհամարհելով Փառնակե-
սին, քանի որ վերջինս վախենալով իր ժամանումից, պատ-
րաստ էր դեսպանության միջոցով զինադադար կնքելու,
3 հաշտություն չկնքեց և կռվի բռնվելով, պարտվեց։ Դրա
հետևանքով վերադարձավ Ասիա[156], քանի որ նա չէր կա-
րող կռվել իր հակառակորդի հետ, ու ձմեռն էլ վրա էր հաս-
նում։ Փառնակեսը մեծապես գոռոզացավ և Պոնտոսի մնա-

ցած մասերը ևս նվաճելուց հետո, գրավեց նաև Ամիսոսը[157],
թեպետև (այս քաղաքը) երկար ժամանակ դիմադրեց իրեն,
և կողոպուտի ենթարկելով այն, սպանեց բոլոր երիտասարդ-
ներին. այնուհետև շտապեց Բյութանիա և Ասիա, փայփա-
4 յելով նույն հույսերը, ինչ իր հայրը[158]։ Այդ ժամանակ նա
տեղեկանալով, որ Ասանդրոսը, որին կարգել էր Բոսպորի[159]
կառավարիչ, դավաճանել է, այլևս առաջ չգնաց։ Քանզի
Ասանդրոսը, երբ նրան հաղորդեցին, թե Փառնակեսը արա-
գորեն շարժվում է իրենից հեռու, և նրան թվում էր, որ թե-
պետև Փառնակեսը ներկայումս առավելագույն բարօրու-
թյան մեջ է, այդուհանդերձ նա հետագայում հաջողության
մեջ չի մնալու, նրա դեմ ապստամբեց, որպեսզի հռոմայե-
ցիներին սիրաշահելով, նրանց միջոցով ստանա Բոսպորոսի
թագավորությունը։
47, 1 Այս ամենը լսելով է, որ Փառնակեսը արշավեց նրա
դեմ, բայց իզուր. քանզի տեղեկանալով, որ Կեսարը ճանա-
պարհին է և շտապում է Հայաստան, ետ դարձավ ու հանդի-
պեց նրան այնտեղ, Զելայի մոտակայքում[160]։ Որովհետև,
քանի որ Պտղոմեոսը[161] մահացել էր և Դոմիտիոսը պարտ-
վել, Կեսարը մտածեց, որ Եգիպտոսում իր մնալը ո՛չ ար-
ժանավայել է, ո՛չ իսկ ձեռնտու, ուստի մեկնեց այնտեղից
2 և արագ ընթացքով հասավ Հայաստան։ Եվ այսպես, բար-
բարոսը[162] ահաբեկվելով և ավելի վախենալով Կեսարի ա-
րագ թափից, քան թե նրա զորքերից, բանագնացներ ու-
ղարկեց նրա մոտ նախքան նա կմոտենար, բազում առա-
ջարկներ անելով, որպեսզի հաշտության այս կամ այն պայ-
3 մանով կարողանար ներկա վտանգից խուսափել։ Իմիջիայ-
լոց, նա առավելապես փորձում էր արդարանալ նրանով,
որ չի աջակցել Պոմպեոսին, և հույս ուներ, որ կհամոզի
Կեսարին իր հետ հաշտություն կնքելու, քանի որ վերջինս
անհամբեր շտապում էր Իտալիա և Աֆրիկա, իսկ նրա հեռա-
նալուց հետո կկարողանա նորից հեշտությամբ պատերազմել։
4 Կեսարը կասկածելով այդ, առաջին և երկրորդ դեսպանու-
թյուններին սիրալիր ընդունեց, որպեսզի նրան խաղաղու-
թյան հույս (ներշնչի) և դրանով իսկ առավել անսպասելի
հարձակվի նրա վրա։ Իսկ երբ երրորդ դեսպանությունը ժա-
մանեց, նա այլ մեղադրանքների հետ միասին նրան հան-
դիմանեց նաև այն բանում, որ լքել է Պոմպեոսին՝ իր բարե-

5 կամին։ Եվ Կեսարը չհապաղեց, այլ նույն օրն իսկ անմի-
ջապես երբ դեռ նոր էր ճանապարհից եկել, ճակատամարտ
տվեց. և որոշ ժամանակ (թշնամու) հեծելազորից ու ման-
գաղակիր (ռազմակառքերից) երերաց, բայց հետո իր հոպ-
լիտներով հաղթանակ տարավ։ Փառնակեսին, որը փախավ
դեպի ծով և հետո փորձեց հասնել Բոսպորոս, Ասանդրոսը
48, 1 ձերբակալեց և սպանեց։ Կեսարը այդ հաղթանակի վրա,
թեպետև այդ այնքան էլ շատ փայլուն չէր, մեծապես պար-
ծեցավ, ինչքան ոչ մեկ այլ դեպքում, քանի որ նույն օրն ու
նույն ժամին եկավ թշնամու վրա և՛ տեսավ նրան, և՛ հաղ-
2 թեց[163]։ Ամբողջ ռազմաավարը, թեպետև մեծաքանակ էր,
պարգևեց զինվորներին և հաղթանակի հակակշիռ կոթող
կանգնեցրեց այն տեղին մոտիկ. ուր Միհրդատը կանգնեցրել
էր Տրիարիոսին (հաղթելու) առթիվ[164]. քանզի նա չհամար-
ձակվեց կործանել բարբարոսի (կանգնեցրած կոթողը), դ-
րովհետև այն ձոնված էր ռազմի աստվածներին, բայց ա-
ռավելապես այն պատճառով, որ նրա մոտ իր բարձրաց-
րած (կոթողով) ստվերեց նախկինը և մի տեսակ կործանեց
3 այն։ Այս բանից հետո նա գրավեց այն ամբողջ երկիրը, որ
հռոմայեցիներից և նրանց դաշնակիցներից վերցրել էր
Փառնակեսը և տվեց նրանց, ովքեր կորցրել էին այն,
բացի Հայաստանի մի մասից, որը պարգևեց Արիոբարզա-
4 նեսին։ Ամիսոսցիներին ազատություն շնորհեց և Միհրդատ
Պերգամացուն[165] չորրորդապետություն[166] տվեց, և թագա-
վորի տիտղոս շնորհեց, և թույլ տվեց նրան պատերազմել
Ասանդրոսի դեմ, որպեսզի նրան հաղթելով, ստանա Բոս-
պորոսը ևս, քանի որ (Ասանդրոսը) դավաճանել էր իր բա-
րեկամին։

ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆԶՈՐՍԵՐՈՐԴ

45, 3 Եվ Կեսարը այնքան մեծ մարդասիրություն դրսևորեց,
որ գովաբանեց Պոմպեոսին հարած մարդկանց ու թույ-
լատրեց նրանց պահել այն ամենը, ինչ (Պոմպեոսը) պար-
գևել էր իրենց, իսկ Փառնակեսին և Օրոդեսին ատեց, քան-
զի չօգնեցին (Պոմպեոսին), նրա բարեկամը լինելով հան-
դերձ....

* * *

46, 1 Թ՛ե ինչպե՞ս այս բոլորից հետո հպատակեցրեց Եգիպ-
տոսը և այնտեղից ինչքա՞ն հարստություն բերեց ձեզ, ավե-

լորդ կլինի ասել։ Եվ երբ արշավեց Փառնակեսի դեմ, որն արդեն Պոնտոսի և Հայաստանի ոչ քիչ մասերին էր տիրում, և նույն օրն իսկ, երբ (Փառնակեսին) հաղորդեցին, թե նա մոտենում էր, (Կեսարը իրոք) հայտնվեց նրա առաջ և մարտի բռնվեց ու հաղթեց[167]։

## ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

24, 1 Նույն այս տարիներին, Փիլիպպեում տեղի ունեցած
ճակատամարտից հետո, Մարկոս Անտոնիոսը[168] եկավ Ա-
սիայի մայր ցամաքը և երկրներից մի մասը ինքը շրջագա-
յելով, մյուսները (իր մարդկանց) ուղարկելով, քաղաքնե-
րի վրա հարկ էր դնում և վաճառում էր իշխանությունները։
2 Այդ ժամանակ էլ Կիլիկիայում տեսնելով Կլեոպատրային[169],
սիրահարվեց նրան և այնուհետև երբեք չհոգաց իր արժա-
նապատվության մասին, այլ ստրկացավ եգիպտուհուն և իր
ժամանակը նվիրում էր նրա կրքին։ Այս պատճառով շատ ու-
րիշ անտեղի բաներ ևս կատարեց և նրա եղբայրներին Եփե-
սոսի Արտեմիսյան տաճարից[170] պոկել-բերելով սպանեց։
3 Եվ վերջապես Պլանկոսին Ասիա պրովինցիայում, իսկ Սաք-
սային Սիրիայում թողնելով, մեկնեց Եգիպտոս։ Եվ դրանից
էլ իսկապես ծագեցին բազում խռովահույզ դեպքեր. այս-
պես, կղզիաբնակ արադոսցիները ոչ մի ուշադրություն
չդարձրին նրա կողմից իրենց մոտ դրամի համար ուղարկ-
ված (պաշտոնյաներին), և նույնիսկ սպանեցին նրանցից
ոմանց, իսկ պարթևները, որոնք նախկինում էլ հանգիստ
չէին, այժմ առավել ևս սկսեցին հարձակվել հռոմայեցիների
4 վրա։ Պարթևներին առաջնորդում էին Լաբիենոսը և Պակո-
րոսը. վերջինս Օրոդես թագավորի, իսկ առաջինը՝ Տիտոս
Լաբիենոսի որդին էր։ Սա պարթևների մոտ եկավ հետևյալ
5 կերպ և Պակորոսի հետ այսպիսի գործեր կատարեց։ Նա
Կասսիոսի և Բրուտոսի[171] զինակիցն էր և ճակատամար-
տից[172] առաջ ուղարկվելով Օրոդեսի մոտ որևէ օգնություն
ստանալու, սրա կողմից երկար ժամանակ զբաղեցվեց, և
քանի որ (Օրոդեսը) սպասողական դիրք էր բռնում և դան-
դաղում էր նրանց հետ զինակցել, սա վախեցավ մերժվե-
6 լուց։ Եվ այնուհետև, երբ պարտության[173] լուրը հասավ ու
թվում էր, թե հաղթողները չեն խնայելու իրենց դեմ կռվի
ելածներից որևէ մեկին, նա մնաց բարբարոսների մոտ,

գերադասելով ապրել նրանց հետ, քան թե իր տանը կոր-
ծանվել։ Ուրեմն այս Լաբիենոսը լսելով Անտոնիոսի բարո-
յալքումը, նրա կիրքը և նրա մեկնումը Եգիպտոս, համո-
զեց պարթևին հարձակվել հռոմայեցիների վրա։ Քանզի նա
7 հայտնեց, որ նրանց զորքերը մասամբ քայքայվել են, մա-
սամբ վատացել, իսկ մնացածներն էլ խռովության ՝մեջ են
և դեմ են նորից պատերազմելու։ Ուստի և խորհուրդ տվեց
նրան թե՛ Սիրիան և թե՛ նրան սահմանակից երկրները հպա-
տակեցնել, քանի դեռ Կեսարը[174] Իտալիայում զբաղված էր
Սեքստոսի հետ, իսկ Անտոնիոսը սիրահարված էր Եգիպ-
8 տոսում։ Եվ նա խոստանում էր պատերազմում հրամանա-
տար դառնալ և հավաստիացնում (Օրոդեսին), որ այդպի-
սով ինքը ապստամբության կմղի ժողովուրդներին[175], քանի
որ սրանք թշնամացած էին հռոմայեցիներին, վերջիններիս
կողմից մշտապես վատ վերաբերմունքի հանդիպելու պատ-
ճառով։
25, 1 Այսպիսի բաներ ասելով, Լաբիենոսը համոզեց Օրոդե-
սին պատերազմելու. ուստի և նրան մեծ ուժեր տրամադրը-
վեցին, թագավորի որդու՝ Պակորոսի հետ։ Սրանց հետ նա
ներխուժեց Փյունիկիա և շարժվելով դեպի Ապամեա[176] (քա-
ղաքը), նա ետ մղվեց (քաղաքի) պարիսպներից, բայց երկ-
րում գտնվող կայազորայինները կամավոր կերպով միացան
2 իրեն։ Քանզի սրանք Կասսիոսի և Բրուտոսի հետ արշաված
զինվորներից էին և Անտոնիոսը նրանց միացրել էր իր զոր-
քերին և այդ ժամանակ նրանց հանձնարարել էր Սիրիայի
պահպանումը, քանի որ նրանք գիտեին երկիրը։ Ուստի
սրանց նույնպես, իբրև լավ ծանոթների, Լաբիենոսը հեշ-
տությամբ միացրեց իրեն, բացի Սաքսայից, որն այդ ժա-
մանակ նրանց առաջնորդն էր—քանզի միայն սա, լինելով
զորապետի եղբայրը, միաժամանակ նաև քվեստոր, չանցավ
3 նրա կողմը—. արքոնտ[177] Սաքսային նա ճակատամարտում
հաղթեց իր հեծյալների դերազանց թվի և քաջության պատ-
ճառով. և երբ (Սաքսան) գիշեր ժամանակ խրամատից դուրս
փախավ, ինքը հալածեց նրան. քանզի Սաքսան վախենալով,
որ իր հետ եղողները նույնպես կհետևեն Լաբիենոսին, որը
փորձում էր նրանց գրավել իր կողմը ինչ-որ թերթիկնե-
րով[178], որ նա (աղեղներով) նետում էր ռազմական ճամ-
4 բարից ներս, փախավ։ Ուստի և Լաբիենոսը վրա հասնելով,

նրանցից շատերին կործանեց, և երբ Սաքսան փախավ Ան-
տիոք, նա գրավեց Ապամեան, որը այլևս չդիմադրեց, քա-
նի որ (բնակիչները) կարծում էին, թե (Սաքսան) մեռել էր.
այնուհետև գրավեց նաև Անտիոքը, որը լքվել էր Սաքսայի
կողմից և, ի վերջո, սրան ևս, որը փախել էր Կիլիկիա, հա-
26, 1 լածեց ու բռնելով սպանեց։ Սաքսայի մեռնելուց հետո Պա-
կորոսը տիրացավ Սիրիային և ամբողջ երկիրը ավերեց, բա-
ցի Տյուրոսից։ Քանզի թե՛ փրկված հռոմայեցիները և թե՛
սրանց համակրող տեղաբնակները արդեն գրավել էին այդ
(քաղաքը) և հնարավոր չեղավ ոչ համոզել նրանց, ոչ իսկ
բռնանալ նրանց վրա, որովհետև (Պակորոսը) նավատորմ
2 չուներ։ Այսպիսով, նրանք աննվաճ մնացին. իսկ Պակորո-
սը մնացած երկիրը գրավելով, ներխուժեց Պաղեստին և
Հյուրկանոսին, որն այդ ժամանակ հռոմայեցիների կար-
գադրությամբ կառավարում էր այդ երկիրը, հեռացրեց և
նրա փոխարեն արքոնտ կարգեց նրա եղբորը՝ Արիստոբու-
լոսին, նրանց միջև եղած թշնամության պատճառով[179]։
41, 1 Այնուհետև Վենտիդիոսը վերստացավ Կիլիկիան և ին-
քը հաստատվեց իբրև այդ երկրի կառավարիչ, իսկ Պոպե-
2 դիոս Սիլոնին հեծյալներով ուղարկեց դեպի Ամանոս։ Այս
լեռը գտնվում է Կիլիկիայի և Սիրիայի սահմանում և այն-
քան նեղ մի անցում ունի, որ մի ժամանակ դարպասներով
պարիսպներ են կառուցել այնտեղ և վայրը դրանից ստա-
3 ցել է իր անունը[180]։ Սակայն Սիլոնը ոչ միայն չկարողացավ
գրավել այն, այլև կործանվելու վտանգին ենթարկվեց Պա-
կորոսի տեղակալ Փրանապատեսի կողմից, որը պահպա-
նում էր անցումը։ Նվ այդպես էլ կկատարվեր, եթե Վենտի-
դիոսը բախտի բերմամբ նրա կռվելու ժամանակ վրա չհաս-
4 ներ ու չօժանդակեր նրան։ Քանզի (Վենտիդիոսը) բարբա-
րոսների վրա նետվեց, երբ նրանք այդ չէին սպասում և ա-
ռանց այդ էլ փոքրաթիվ էին, և սպանեց Փրանապատեսին
ու շատ ուրիշների. և դրանով իսկ Սիրիան, որը լքել էին
պարթևները, վերագրավեց առանց մարտի, բացի Արադոս
(քաղաքից), և դրանից հետո առանց դժվարության գրավեց
Պաղեստինը, ահաբեկելով այնտեղ թագավորող Անտիգո-
5 նոսին[181]։ Այս ամենը կատարելուց հետո, նա մյուս բոլոր
մնացածներից յուրաքանչյուրից շատ դրամ գանձեց. շատ
դրամ գանձեց նաև Անտիգոնոսից, Անտիոքոսից[182] և Մալքոս

Նաբատեացուց այն պատճառով, որ նրանք օգնել էին Պա-
կորոսին։

## ԳԻՐՔ ՔԱՌԱՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

19, 1 Պուպլիոս Վենտիդիոսը երբ տեղեկացավ, թե Պակորոսը
զորք է հավաքում և պատրաստվում է արշավել Սիրիա, ա-
հաբեկվեց. և քանի որ քաղաքները դեռևս չէին հպատակվել,
և լեգեոնները դեռևս ցրված էին իրենց ձմեռային կայան-
ներում, այսպիսի մի հնար մտածեց թշնամուն զբաղեցնելու
2 և իր զորքերի ուշացումը կանխելու համար։ Իմանալով հան-
դերձ, որ ոմն իշխանավոր[183] Քաննայոս, որին ինքը ևս ծա-
նոթ էր, առավել հակված էր պարթևների կողմը, նա ամեն
տեսակ պատիվ մատուցեց նրան, ասես թե հավատարմա-
գույն անձ էր իր համար, և նրան խորհրդատու դարձրեց իր
այն գործերին, որոնցից ինքը ոչ մեկ վնաս չէր կրելու, իսկ
Քաննայոսին պետք է հավատ ներշնչեր, թե իբր նրան հա-
3 ղորդակից է դարձնելու իր ամենագաղտնի գործերին։ Երբ
նա արդեն այդտեղ հասավ, ձևացրեց, թե իբր վախենում է,
որ բարբարոսները թողնելով Եփրատի սովորական ըետանցը,
որի մոտ Զևգմա քաղաքն է գտնվում, կօգտագործեն մեկ այլ
ճանապարհ գետի ստորին մասում. որովհետև, նրա ասելով,
այս վայրը դաշտային էր և թշնամիներին հարմար, իսկ ա-
ռաջինը բլրաշատ էր և առավել պիտանի իր զորքերի հա-
4 մար։ Այս բանում նա կարողացավ համոզել Քաննայոսին և
նրա միջոցով մոլորեցրեց Պակորոսին. քանզի (վերջինս) ըն-
թացավ դաշտավայրով, որի մասին Վենտիդիոսը ձևացնում
էր, թե իբր թշնամին չի նախընտրելու, այն առավել երկար
լինելու պատճառով. դրանով իսկ Պակորոսը ժամանակ տր-
վեց (Վենտիդիոսի) զորքերին հավաքվելու։
20, 1 Եվ այս կերպ նա, հանդիպելով Պակորոսին Սիրիայի
Կյուրեստիկայում, հաղթեց։ Քանզի նա ոչ խանգարեց նրանց
գետն անցնելիս, ոչ իսկ գետն անցնելուց հետո իսկույն հար-
ձակվեց նրանց վրա, որով և անհոգություն ու թուլություն
պատճառեցին հռոմայեցիներին, ու դրանից հետո (պարթև-
ներն) ընթացան դեպի (հռոմայեցիների) ռազմական ճամ-
բարը, որը թեպետև բարձրադիր էր, այն առաջին իսկ հարձա-
2 կումով գրավելու հույսով։ Բայց երբ արտելք կատարվեց,
(հարձակվողները), որոնք հեծյալ էին, առանց դժվարության
ետ մղվեցին դեպի ստորոտ և այնտեղ, թեև արիաբար պաշտ-

պանվեցին—քանի որ նրանց մեծ մասը զրահապատ էր—
բայց շփոթվելով անակնկալ (հարձակումից) և իրարանցու-
մից, հաղթվեցին հոպլիտներից և, հատկապես, պարսատի-
կավորներից. քանզի սրանք հեռվից կատարած իրենց նե-
3 տումներով մեծապես վնասեցին նրանց։ Եվ այս կռվում է,
Պակորոսը երբ ընկավ, նրանց աղետն առավել մեծ եղավ.
Քանզի երբ նրանք քիչ անց իմացան իրենց արքոնտի
կործանումը, ոմանք ոգևորությամբ սկսեցին կռվել նրա
մարմնի շուրջը. բայց երբ սրանք կոտորվեցին, մնացած բո-
լորը նահանջեցին, և նրանց մի մասը ցանկացավ կամուր-
ջի վրայով փախչել դեպի տուն, բայց չկարողացավ. այլ
նրանք սպանվեցին նախքան (կամուրջին) կհասնեին. իսկ
մյուսները ապաստանեցին Կոմմագենե, Անտիոքոսի մոտ։
4 Վենտիդիոսը Սիրիայի մնացած մասերը ևս, որոնք տա-
տանվում էին, (սպասելով) պատերազմի վախճանին, հեշ-
տությամբ հպատակեցրեց, ուղարկելով Պակորոսի գլուխը
քաղաքներում ցուցադրելու համար. քանզի Պակորոսի հան-
դեպ արտակարգ սեր էին տածում, ինչպես մի ժամանակ ի-
րենց վրա իշխած լավագույն թագավորների հանդեպ, նրա
5 արդարամտության և համեստության համար։ Իսկ Վենտի-
դիոսը արշավեց Անտիոքոսի վրա, պատճառ բռնելով այն,
որ վերջինս իրեն չէր հանձնել փախստականներին, բայց իրա-
կանում՝ նրա ունեցած մեծ հարստության համար։

21, 1 Երբ նա արդեն այստեղ էր հասել, Անտոնիոսը հան-
կարծակի քայլեց նրա վրա, ոչ միայն այն պատճառով, որ
(այդ ամենը) իրեն հաճելի չէր, այլև (այն պատճառով), որ
նախանձեց նրան, քանզի նա ինքնուրույնաբար քաջագոր-
ծություն կատարած մարդու համբավ ձեռք բերեց. ուստի և
ղրկեց նրան իշխանությունից ու այլևս ոչ այդ ժամանակ, ոչ
իսկ հետագայում երբեք չօգտվեց նրա ծառայություններից,
թեպետև այս երկու գործերի համար[184] էլ նա իր համար ստա-
2 ցավ զոհաբերությունների և հաղթահանդեսի իրավունք։ Եվ
իսկապես, հռոմայեցիները (մայրաքաղաքում) մի կողմից
այդ պատիվները Անտոնիոսին շնորհելու օգտին ձայն տվե-
ցին նրա երևելիության պատճառով և ըստ օրինի, քան-
զի նրան էր պատկանում զորավարությունը, մյուս կողմից
էլ ձայն տվեցին նաև Վենտիդիոսի օգտին, քանի որ նրանք
կարծում էին, թե Կրասսոսի ժամանակ հռոմայեցիների կրած

աղետը Պակորոսի սպանությամբ լրիվ կերպով փոխհատուցված էր պարթևներին, հատկապես այն նկատառումով, որ այդ երկու իրադարձություններն էլ կատարվել էին յու-
3 րաքանչյուր տարվա միևնույն օրը։ Իրականում այնպես պատահեց, որ Վենտիդիոսն ինքը միայն հաղթահանդես տոնեց, ինչպես որ հաղթանակը միայն ինքն էր նվաճել— քանզի Անտոնիոսը մինչ այդ կորել էր—և դրանով իսկ, ինչպես նաև բախտի քմահաճույքով, նա առավել մեծ փառքի արժանացավ. չէ՞ որ մի ժամանակ Պոմպեոս Ստրաբոնի[185] հաղթահանդեսին նա քայլել է մյուս գերվածների շարքերում, մինչդեռ այժմ հռոմայեցիներից առաջինը ինքն էր պարթևների դեմ հաղթահանդես տոնում։

22, 1 Այս բոլորը, սակայն, տեղի ունեցան որոշ ժամանակ հետո, իսկ այնժամ Անտոնիոսը հարձակվեց Անտիոքոսի վրա և փակելով նրան Սամոսատում[186], պաշարեց։ Եվ քանի որ ոչ մի հաջողություն չունեցավ ու ժամանակն էլ իզուր կորչում էր, իսկ ինքն էլ կասկածեց, որ զինվորներն իրենից օտարանում են Վենտիդիոսին պատվազրկած լինելու պատճառով, գաղտնի բանակցություններ սկսեց Անտիոքոսի հետ և շինծու հաշտություն հաստատեց, որպեսզի արժանավայել ձևով հեռանա։ Եվ, իհարկե, նա ոչ պատանդներ վերցրեց, բացի երկու հոգուց, այն էլ ոչ երևելիներից, ոչ իսկ իր պահանջած փողերն ստացավ. իսկ Անտիոքոսին նա շնորհեց ոմն Ալեքսանդրի մահը, որը նախապես նրա մո-
3 տից փախել էր հռոմայեցիների մոտ։ Այս բաներն անելուց հետո (Անտոնիոսը) մեկնեց Իտալիա, իսկ Գայոս Սոսսիոսը նրա ձեռքից ստացավ Սիրիայի և Կիլիկիայի իշխանությունը և Արադոս (քաղաքը), որը մինչ այդ պաշարվել էր և սովից ու համաճարակից մեծապես տուժել, հպատակեցրեց և Անտիգոնոսին[187], որն իր երկրում եղած հռոմեական կայազորներին ոչնչացրել էր, պատերազմում հաղթեց, և երբ սա
4 փախավ Երուսաղեմ, շրջապատեց նրան ու կործանեց։ Հիրավի հրեաները մեծ վնաս էին պատճառել հռոմայեցիներին— քանզի նրանց ցեղը զայրանալիս շատ էր դաժան—բայց իրենք շատ ավելի տառապեցին։ Որովհետև սկզբում գերի վերցվեցին նրանք, ովքեր կռվում էին, պաշտպանելով աստծու տաճարը, հետո նաև մյուսները գերվեցին, այսպես կոչված, Սատուռնի օրը[188]։ Եվ այնքան մեծ է նրանց նվիրվա-

5 ծությունը կրոնին, որ այն առաջինները, որոնք գերվել էին
տաճարի հետ միասին, կենդանի թողնվեցին Սոսսիոսի կող-
մից, քանի որ երբ Սատուռնի օրը վրա հասավ, նրանք մըտ-
նելով տաճար, այնտեղ էլ մնացյալների հետ կատարեցին
6 ընդունված բոլոր ծեսերը։ Ուստի և սրանց Անտոնիոսը
հանձնեց ոմն Հերովդեսի կառավարմանը, իսկ Անտիգոնո-
սին, խաչին կապելով, մտրակահարեց—(պատիժ), որին ոչ
մի այլ թագավոր չէր ենթարկվել հռոմայեցիների կողմից—և
դրանից հետո սպանեց նրան։
23, 1 Այս դեպքերը տեղի ունեցան Կլավդիոսի և Նորբանո-
սի կոնսուլության ժամանակ. իսկ հաջորդ տարին հռոմայե-
ցիները Սիրիայում հիշատակության արժանի ոչինչ չկա-
տարեցին։ Քանզի Անտոնիոսը ամբողջ տարին վատնեց
2 Իտալիա գալով և նորից (պրովինցիա) վերադառնալով. իսկ
Սոսսիոսը (ենթադրելով), որ իր արածը ավելի շուտ կլինի
Անտոնիոսի օգտին, քան թե իր, և դրանով իսկ վախենալով
նրա նախանձից ու զայրույթից, իր ժամանակն անցկացնում
էր միջոցներ մտածելով ոչ թե ինչ-որ հաջողություններ ու-
նենալ և դրանով իսկ թշնամացնել նրան, այլ հանգիստ մը-
նալով հաճոյանալ նրան։ Պարթևների տերությունը, հիրա-
վի, ուժեղ ներքին ցնցումներ ապրեց այսպիսի մի պատճա-
3 ռով։ Քանի որ նրանց թագավոր Օրոդեսը ծերության և Պակո-
րոսի սգի պատճառով հոգնել էր, դեռևս իր կենդանության օրոք
իշխանությունը հանձնեց իր մնացած որդիներից ավագագույ-
նին՝ Փրաատեսին[189], որը և իշխանությունը վերցնելուց հե-
4 տո դարձավ մարդկանցից ամենաանաստվածը. քանզի նա
նենգաբար սպանեց Անտիոքոսի[190] դստրից ծնված իր եղ-
բայրներին, որովհետև իրենց արիությամբ և մայրական գը-
ծով իրենց ծագումով գերազանցում էին իրեն. ու երբ սա[191]
դժգոհեց այդ ամենից, սրան նույնպես սպանեց և այնուհետև
ոչնչացրեց նաև (երկրի) ազնվագույն մարդկանց և այլ դա-
5 ժան գործեր կատարեց. այնպես, որ առաջնագույն մարդ-
կանցից շատերը լքելով նրան, հեռացան տարբեր վայրեր,
ոմանք էլ, որոնց թվում նաև Մոնեսեսը, գնացին Անտոնիո-
սի մոտ։
24, 1 Այս դեպքը կատարվեց Ագրիպպասի և Գալլոսի կոն-
սուլության ժամանակ։ Եվ ահա ձմեռվան մնացած կեսին,
Գելլիոսի և Ներվայի իշխանության ժամանակ, Պուպլիոս

Կանիդիոս Կրասսոսը[192], արշավելով իբերների դեմ, այդ
կռվում հաղթեց նրանց թագավոր Փառնաբազոսին, ստիպեց
նրան դաշնակից դառնալ[193] և նրա հետ միասին ներխու-
ժելով հարևան Ալբանիա[194] և հաղթելով սրանց ևս ու սրանց
թագավոր Զոբերոսին, սրանց նույնպես իր կողմը գրավեց։
2 Անտոնիոսն այս ամենից մեծամտացել էր և, բացի այդ,
Մոնեսեսի հետ մեծ հույսեր էր կապում—քանզի սա իրեն
խոստացել էր առաջնորդել իր զորքերը և Պարթիայի մեծ
մասն առանց դժվարության հանձնել իր ձեռքը—ուստի և
պատերազմ ձեռնարկեց սրանց դեմ և Մոնեսեսին, այլ
պարգևների հետ, հռոմեական երեք քաղաք հանձնեց իշ-
խելու համար, մինչև վերջացներ պատերազմը (պարթևների
դեմ) և խոստացավ նույնիսկ պարթևների թագավորությու-
3 նը։ Մինչ նրանք այսպես էին գործում և պարթևներն էլ Մո-
նեսեսի փախուստը հիվանդագին ընդունեցին, Փրաատեսը
տագնապահար եղավ և բանակցություններ սկսեց նրա հետ,
հնարավոր ամեն ինչ խոստանալով, և համոզեց նրան վե-
4 րադառնալ։ Այս մասին իմանալով Անտոնիոսը, բնական է,
զայրացավ, բայց և այնպես չսպանեց Մոնեսեսին, թեպետև
սա դեռ իր իշխանության տակ էր. քանզի այդպիսի բան ա-
նելուց հետո նա չէր կարող հույս ունենալ, թե այսուհետև
որևէ մեկ ուրիշ բարբարոսի կգրավի իր կողմը, և ինչ-որ
5 խաբեություն պատրաստեց նրանց դեմ։ Նա ազատ արձա-
կեց Մոնեսեսին, ասես պետք է իր կողմը գրավեր պար-
թևներին և նույնիսկ նրա հետ միասին դեսպաններ ուղար-
կեց Փրաատեսի մոտ։ Եվ նա խոսքով խաղաղություն էր ա-
ռաջարկում, Կրասսոսի աղետի ընթացքում գերված դրոշ-
ներն ու գերիներին ետ վերցնելու պայմանով, որպեսզի թա-
գավորին անպատրաստ թողնի, համաձայնության հույս
ներշնչելով նրան, մինչդեռ գործնականում նա ամեն կերպ
պատրաստվում էր պատերազմի։
25, 1 Եվ նա առաջացավ մինչև Եփրատ, կարծելով, թե այն
զուրկ էր պահակազորներից։ Իսկ երբ նա համոզվեց, թե գե-
տի ամբողջ շրջանը խստորեն պահպանվում է, ետ դարձավ.
բայց նա որոշեց արշավանք ձեռնարկել մեդացիների թագա-
վոր Արտավազդի դեմ, որը թշնամի էր Մեծ Հայքի[195] իրեն
անվանակից թագավորին. ուստի և այդ վիճակում նա իս-
կույն շարժվեց դեպի Հայաստան և այնտեղ իմանալով, որ

2 Մեղացին շատ էր հեռացել իր հայրենի երկրից, դաշնակից
պարթև (թագավորին) օժանդակելու համար, իր գումակը և
զորքի մի մասը թողեց Օպպիոս Ստատիանոսի հետ, պատ-
վիրելով նրանց հետևել իրեն, մինչդեռ ինքը, վերցնելով
հեծելազորը և հետևակի հզորագույն մասը, շտապեց առաջ,
համոզված, որ առանց դիմադրության կգրավի թշնամու
3 (ամրությունները). և նա նետվելով նրանց արքայանիստ
Փրաասպա[196] (քաղաքի) վրա, սկսեց հողաթմբեր պատրաս-
տել և հարձակումներ գործել։ Այդ բոլորի մասին տեղեկա-
նալով, Պարթևն ու Մեղացին թույլ տվեցին, որ նա իզուր
չարչարվի—քանզի պարիսպները հզոր էին և նրանց կողմից
4 լավ էին պաշտպանվում—բայց և այնպես անսպասելի հար-
ձակվեցին Ստատիանոսի վրա, երբ սա ճանապարհին էր ու
հոգնած, և բոլորին սպանեցին, բացի Պոնտոսի թագավոր
Պոլեմոնից, որն այդ ժամանակ միացել էր (Ստատիանոսի)
արշավանքին. միայն սրան կենդանի գերեցին և փրկագին
5 ստանալով ազատ արձակեցին։ Նրանք կարողացան այս ա-
նել, քանի որ Արմենը[197] ներկա չեղավ կռվին, բայց և, ինչ-
պես ասում են ոմանք[198], նա կարող էր օգնել հռոմայեցի-
ներին, սակայն ոչ այդ արեց, ոչ էլ եկավ Անտոնիոսի մոտ,
26, 1 այլ մեկնեց տուն. իսկ Անտոնիոսը, թեպետև Ստատիանոսի
մոտից ուղարկված առաջին իսկ հաղորդումից հետո իս-
կույն շտապեց նրան օգնելու, բայց ուշացավ. քանզի սպան-
վածներից բացի ոչինչ չգտավ։ Սկզբում նա այս բանից
վախեցավ, բայց քանի որ բարբարոսներից ոչ մեկին չպա-
տահեց, ինքը ենթադրեց, որ նրանք մի բանից ահաբեկ-
ված հեռացել են ինչ-որ տեղ. դրանով իսկ նա վերագտավ իր
2 կորովը։ Ուստի և երբ ոչ շատ ժամանակ անց նրանց հան-
դիպեց, նա փախուստի մատնեց նրանց. քանզի նրա պար-
սատիկավորները թե՛ շատ էին և թե՛ կարողանում էին աղեղ-
նավորներից ավելի հեռու նետել. նրանք բոլորին, նույնիսկ
զրահավորվածներին, մեծ վնաս պատճառեցին. այսուհան-
դերձ նա չկարողացավ նշանակալից թվով (թշնամիներ)
սպանել. քանզի բարբարոսները արագ ձիավարում էին։
3 Այսպիսով, նա նորից մոտեցավ Փրաասպային և պա-
շարեց այն. այսուհանդերձ մեծ վնաս չպատճառեց թըշ-
նամիներին—քանզի (պարսպից) ներս եղողները ուժգնորեն
նրան ետ էին մղում, իսկ դրսում գտնվողները հեշտությամբ

կռվի չէին բռնվում—մինչդեռ յուրայիններից շատերին նա
կորցրեց պարեն ճարելու և այն փոխադրելու գործի վրա,
4 շատերին էլ իր իսկ (սահմանած) պատիժներով։ Որովհետև
սկզբում, քանի դեռ այնտեղ մոտակայքից նրանք ճարում
էին իրենց պարենը, ապա կարողանում էին թե՛ պաշարումը
5 շարունակել և թե՛ ապահովել իրենց պարենավորումը։ Բայց
երբ արդեն մոտակայքում ամեն ինչ սպառվել էր, և զինվոր-
ները ստիպված էին լինում հեռու գնալ, այնպես էր ստաց-
վում, որ եթե փոքր թվով ուղարկվեին, ոչ միայն ոչինչ չէին
կարողանալու բերել, այլև կոչնչանային. իսկ եթե մեծ թվով,
ապա կմնային առանց պաշարողների և, դրանով իսկ, բար-
բարոսների արտելքի դեպքում կկորցնեին շատ մարդկանց
27,1 և (պաշարողական) մեքենաներ։ Այս ամենի պատճառով էլ
Անտոնիոսը նրանց բոլորին գարի բաժանեց ցորենի փո-
խարեն և տասից մեկին պատժեց[199], այսպիսով, թեպետ
ինքը կարծում էր, թե պաշարողն է, իրականում սակայն
2 պաշարվողի զրկանքները ինքն էր կրում։ Որովհետև պա-
րիսպներից ներս գտնվողները ճշտորեն օգտվում էին ար-
տելք կատարելու ամեն մի առիթից, մինչդեռ դրսում եղող-
ները խստորեն նեղում էին պաշարողներին, երբ սրանք
երկու մասի էին բաժանվում, հանկարծակի հարձակվելով և
քիչ անց ետ քաշվելով. իսկ պարենամթերք հայթայթելու
համար գյուղերը գնացողներին չէին անհանգստացնում,
բայց վերադարձի ճանապարհին անսպասելի հարձակվում
3 էին նրանց վրա։ Երբ այս պայմաններում իսկ (Անտոնիոսը)
շարունակում էր քաղաքի պաշարումը, Փրաատեսը, վախե-
նալով, որ ժամանակի ընթացքում (թշնամին) կարող էր
(քաղաքին) ինչ-որ վնաս հասցնել՝ կամ հենց ինքը որևէ
ձևով, կամ էլ ինչ-որ դաշնակից գտնելով, ուստի Անտոնիոսի
մոտ թաքուն կերպով բանագնացներ ուղարկեց և համոզեց
նրան բանակցություններ սկսել, խոստանալով հեշտու-
4 թյամբ հաշտության հասնել։ Եվ այս առթիվ Անտոնիոսի կող-
մից իր մոտ ուղարկվածներին նա ընդունեց ոսկե գահավո-
րակին նստած, կսմթելով աղեղի լարը, նախապես շատ հար-
ձակվեց նրանց վրա, բայց վերջում խոստացավ խաղաղու-
թյուն շնորհել, եթե անհապաղ տեղափոխեն իրենց ճամբա-
5 րը։ Այս բանը լսելով Անտոնիոսը վախեցավ նրա գոռոզու-
թյունից և միաժամանակ կարծեց, որ եթե մեկ ուրիշ վայր

տեղափոխվի, ապա կարող է փրկվել. ուստի և հեռացավ, ա-
ռանց քանդելու պաշարման կառույցները, ասես բարեկամ
երկրում էր գտնվում։
28, 1 Մինչ նա այսպես էր գործում, սպասելով հաշտության,
մեդացիները թե՛ (պաշարողական) մեքենաները այրեցին և
թե՛ հողաթմբերը քանդեցին, իսկ պարթևներն էլ նրան ոչ
մեկ առաջարկ չարեցին խաղաղության մասին, այլ հար-
2 ձակվելով շատ և ծանր վնասներ հասցրին։ Եվ ահա իմա-
նալով, թե խաբված է, այլևս չհամարձակվեց որևէ դեսպա-
նություն ուղարկել, քանի որ արդեն հույս չուներ, թե նրանք
ինչ-որ չափավոր պայմաններով հաշտություն կկնքեն, ա-
ռավել ևս նա չցանկացավ վհատություն ներշնչել զինվոր-
ներին հաշտության ձախողման պատճառով. և քանի որ մի-
անգամ տեղից շարժվել էր, որոշեց շտապել դեպի Հայաս-
3 տան։ Եվ նրանք վերադարձան մեկ այլ ուղիով[200]—քանզի
ենթադրում էին, թե իրենց եկած ճանապարհը ամբողջովին
փակված է իրենց առաջ[201]— և կրեցին բազում և անսովոր
դժվարություններ։ Նրանք անծանոթ վայրեր ընկնելով,
կորցնում էին իրենց ճանապարհը, և դրա հետ մեկտեղ
բարբարոսները նախապես գրավելով իրենց անցավայրերը,
դրանք խրամատապատում կամ պատնեշապատում էին և ա-
մենուրեք դժվարացնում ջրի մատակարարումը և ոչնչաց-
4 նում արոտավայրերը։ Եվ եթե նրանք նույնիսկ ինչ-որ տեղ
բախտի բերմամբ պետք է ընթանային առավել նպաստա-
վոր վայրերով, թշնամին նրանց ետ էր դարձնում, այդ վայ-
րերն արդեն գրավված լինելու մասին կեղծ հաղորդումներով
և ստիպում նրանց ընթանալ ուրիշ ճանապարհներով, որտեղ
նախապես դարանակալել էին. ուստի և շատերն այս եղա-
29, 1 նակով էին ոչնչանում, շատերն էլ սովահարությունից։ Դրա
հետևանքով էլ ինչ-որ չափով դասալքություն նկատվեց։ Եվ
բոլորը կփախչեին, եթե բարբարոսները այդպիսի բան ա-
նել համարձակվողներին մյուսների աչքի առաջ նետահարե-
2 լով չսպանեին։ Այս եղանակով (բնաջնջվելուց) ազատված-
ները բախտի բերմամբ այսպիսի մի հնար գտան։ Մի անգամ,
երբ նրանք դարանն էին ընկել և նետերի խիտ հարվածներ
էին ընդունում, անմիջապես իրենց վահանները իրար միաց-
նելով կրիա կազմեցին[202] և իրենց ձախ ծնկները հենեցին
3 գետնին։ Բարբարոսներն ահա—քանի որ նման բան երբևիցե

չէին տեսել—կարծելով, որ սրանք ընկել են ստացած վեր-
քերից և հարկավոր է մի վերջնական հարված, դեն շպրտե-
ցին իրենց աղեղները և ցած նետվեցին ձիերից ու մեր-
կացնելով ակինակները[203], ընդհուպ մոտեցան նրանց (վերջ-
4 նականապես) սպանելու համար։ Այդ պահին էլ հռոմայեցի-
ները ոտքի կանգնեցին և, տրված հրահանգի համաձայն,
ձգեցին իրենց փաղանգի շարքերը և, դեմ առ դեմ կանգնե-
լով մոտեցած թշնամուն, նետվեցին յուրաքանչյուրը մեկի
վրա և շատ շատերին կոտորեցին, քանի որ անզենների[204]
դեմ իրենք սպառազինված էին, անպատրաստների դեմ՝
պատրաստ կանգնած, աղեղնավորների դեմ՝ հոպլիտներ,
բարբարոսների դեմ՝ հռոմայեցիներ. այնպես որ բոլոր
(կենդանի) մնացածները անմիջապես հեռացան և այլևս ոչ
ոք նրանց չհետապնդեց։
30,1 Իսկ այդ կրիան ահա թե ինչ է և ինչպես է կազմվում։
Բեռնատարները և թեթևազենները և հեծելազորը դասավոր-
ված են լինում զորաբանակի կենտրոնում. հոպլիտներից
նրանք, ովքեր զինված են երկարավուն, սնամեջ և գլանաձև
վահաններով, դասավորվում են արտաքին եզրերին, քա-
ռանկյունու ձևով ու երեսները դեպի դուրս և զենքերը պար-
2 զած, շրջափակում են մնացածներին. իսկ (հոպլիտներից)
մյուսները, որոնք տափակ վահաններ ունեն, համախմբ-
վում են կենտրոնում ու վահանները բարձրացնում թե՛ ի-
րենց և թե՛ մնացած բոլորի գլուխների վրա, այնպես որ վա-
հաններից բացի ուրիշ ոչինչ չի երևում հավասարապես
փաղանգի բոլոր մասերում, և նրանք բոլորը, դասավորու-
թյան խտության հետևանքով, գտնվում են նետերից պաշտ-
3 պանող ծածկի տակ։ Այս ձևով, ահա, դա այնքան ուժեղ է
լինում, որ մարդիկ կարող են քայլել դրա վրա և ամեն ան-
գամ որևէ խոր ու նեղ տեղանք հասնելիս նույնիսկ ձիերին
ու կառքերը կարող են քշել դրա վրայով։ Այսպիսին է, ահա,
դասավորության այն եղանակը, որի պատճառով էլ ստացել
է կրիա անվանումը թե՛ իր հզորության և թե՛ իր ամուր
4 ծածկույթի համար։ Այն օգտագործում են երկակի. կամ
հարձակում գործելու համար որևէ բերդի մոտենալիս, երբ
հաճախ նույնիսկ ոմանց բարձրացնում են պարսպի վրա,
կամ էլ երբևիցե աղեղնավորների կողմից պաշարված լինե-
լու դեպքում. բոլորը կռանում են միասին—քանի որ ձիերը

նս վարժեցվում են ծունկ չոքելու և պառկելու—այնպես որ
թշնամին կարծում է, թե ուժասպառ են եղել. և երբ թըշ-
նամին մոտենում է ընդհուպ, ապա միանգամից ոտքի են
կանգնում և թշնամուն անակնկալի բերում։
31, 1 Կրիան, ահա, այսպիսի կազմություն ունի։ Մինչ Ան-
տոնիոսը, ճիշտ է, այսուհետև թշնամուց ոչ մի վնաս չկրեց,
բայց, իրականում, սառնամանիքը նրան մեծ դժվարություն
պատճառեց. քանզի արդեն ձմեռ էր և Հայաստանի լեռնա-
յին մասերը, որոնց միջով էլ նա հոժարաբար ընթացավ,
միշտ սառցապատ են։ Եվ (զինվորների) վերքերը, որոնք
շատ էին, այստեղ, բնական է, ավելի տառապանք էին պատ-
2 ճառում։ Ու քանի որ դրանից էլ շատերը կործանվում էին,
շատերն էլ դառնում անմարտունակ, նա չէր հանդուրժում
նրանցից յուրաքանչյուրի անձնական դիմումը և արգելեց
որևէ մեկին իրեն այդպիսի լուրեր հաղորդելը։ Ինչ վերաբե-
րում է Արմենին[205], թեպետև (Անտոնիոսը) նրա վրա զայ-
րացած էր, որովհետև նա իրենց լքել էր, ու թեև ցանկանում
էր պատժել նրան, այնուամենայնիվ սիրաշահեց նրան և
հարգանք մատուցեց, որպեսզի նրանից կենսամթերք և դրամ
3 ստանա և, վերջապես, քանի որ զինվորները չէին կարող դի-
մանալ ավելի երկար ճանապարհի և այն էլ ձմռանը, մյուս
կողմից էլ պետք է իզուր տանջվեին—քանզի նա մտադիր էր
կարճ ժամանակ անց վերադառնալ Հայաստան—նրան մե-
ծապես շողոքորթեց, միաժամանակ բազում խոստումներ
տվեց, որպեսզի (թագավորը) թույլ տա իրենց ձմեռել (իր)
երկրում, ասելով, որ գարնանը նա նորից պետք է արշավի
4 պարթևների դեմ։ Ու նրան դրամ բերվեց նաև Կլեոպատրա-
յից, այնպես որ հոպլիտներին հարյուրական դրաքմա[206],
իսկ մյուսներին ևս համանելիքը տրվեր։ Եվ քանի որ ու-
ղարկված (դրամը) նրանց համար չբավականացրեց, ապա
մնացածներին վճարեց իր իսկ միջոցներից, ծախսը վերց-
նելով իր վրա, իսկ շնորհապարտության պատիվը թողնելով
Կլեոպատրային. քանզի ինքը բարեկամներից մեծ գումար-
ներ էր վերցրել, իսկ դաշնակիցներից մեծաքանակ արծաթ
էր գանձել։
32, 1 Եվ նա այս բոլորը անելուց հետո մեկնեց Եգիպտոս.
մինչդեռ տանը հռոմայեցիներին ոչ մի իրադարձություն ան-
հայտ չմնաց ոչ թե այն պատճառով, որ նա ճշմարտությունը

հաղորդել էր նրանց—քանզի իրականում նա (իր) անհա-
ջողությունները թաքցնում էր և դրանց մասին հայտնում ու-
ղիղ հակառակը, պատկերելով այնպես, թե իբր հաջողու-
2 թյուն է ունեցել—այլ որովհետև համբավը հաղորդեց ճըշ-
մարտությունը, և Կեսարն ու մյուսները, որոնք նրա հետ էին
եղել, մանրամասն հետամտում էին այդ ամենը և տարա-
ծում։ Ճիշտ է, նրանք դեռևս այդ չէին քննարկում հասարա-
կության առաջ, բայց և այնպես զոհաբերություններ էին կա-
տարում և տոնախմբություններ անում։ Եվ քանի որ Կեսարը
3 դեռ այդ ժամանակ էլ պարտություն էր կրել Սեքստոսից,
ապա այդ ամենի բացահայտումը ոչ հարմար կլիներ, ոչ էլ
օգտավետ։ Անտոնիոսը, ուրեմն, այս ամենը այսպես կատա-
րեց. նա իշխանություններ պարգևեց՝ Ամյունտասին, որը թե-
պետև եղել էր Դեյոտարոսի գրագիրը, տվեց Գալատիան[207],
դրան կցելով Լյուկաոնիան և Պամփյուլիայի[208] որոշ մա-
սեր, Արքելաոսին տվեց Կապպադովկիայի իշխանությունը,
հեռացնելով Արիարաթեսին։ Իսկ այս Արքելաոսը հոր կող-
մից այն Արքելաոսների սերնդից էր, որոնք կռվել էին հռո-
4 մայեցիների դեմ, իսկ մոր կողմից հետերա Գլափյուրայի
որդին էր։ Այսուհանդերձ Անտոնիոսը այս արարքի համար—
չէ՞ որ նա մեծահոգություն էր ցուցաբերում այլոց ինչքի
նկատմամբ—պակաս կշտամբանքի խոսքեր էր լսում քաղա-
քացիներից[209]. մինչդեռ Կլեոպատրայի հարցում նա խըս-
տորեն մեղադրվեց այն պատճառով, որ նրա զավակներից որ-
դեգրել էր ավագներին՝ Ալեքսանդրին և Կլեոպատրային—
5 սրանք երկվորյակ էին ծնվել—և կրտսերին՝ Պտղոմեոսին,
որը և կոչվեց Փիլադելփոս. նաև այն պատճառով, որ նրանց
պարգևել էր Մալքոսի և Իտուրյանների Արաբիայից ըն-
դարձակ երկրներ —քանզի Լյուսանիասին, որին ինքն իսկ
նրանց վրա թագավոր էր կարգել, սպանեց՝ Պակորոսին օ-
ժանդակած լինելու մեղադրանքով— ինչպես նաև ընդարձակ
մասեր Փյունիկիայից և Պաղեստինից, մասեր Կրետեից,
նաև Կյուրենեն[210] և Կիպրոսը։
33, 1 Այդ ժամանակ նա այսպես վարվեց. իսկ հաջորդ տա-
րին, երբ կոնսուլներ էին Պոմպեոսը և Կոռնուփիկիոսը,
(Անտոնիոսը) արշավանք ձեռնարկեց (Արտավազդ) Արմենի
դեմ, մեծապես հույս դնելով Մեդացու[211] վրա, որը զայրա-
ցած էր Փրաատեսի դեմ, որովհետև սա ավարից իրեն շատ

բաժին չէր տվել և ոչ իսկ որևէ այլ ձևով պատվել, և միաժա-
մանակ նա կամենում էր (Արտավազդ) Արմենին պատժել
հռոմայեցիներին (իր երկրի դեմ) բերած լինելու համար.
ուստի և նա Պոլեմոնին ուղարկեց Անտոնիոսի մոտ, բարե-
2 կամություն և զինակցություն հայցելու։ (Անտոնիոսը), ի-
հարկե, այնպես ուրախացավ այս առիթից, որ ոչ միայն
նրա հետ դաշինք կնքեց, այլև փոքր-ինչ ուշ Պոլեմոնին,
որպես վարձատրություն նրա միջնորդության, տվեց Փոքր
Հայքը[212]։ Արդ՝ (Արտավազդ) Արմենին նա նախ հրավիրեց
Եգիպտոս իբրև բարեկամի, որպեսզի նրան առանց դժվարու-
թյան ձեռք գցելով, այնտեղ ոչնչացնի. բայց քանի որ սա
կռահելով այդ ամենը, հրավերին չպատասխանեց, նա մտա-
3 ծեց մի այլ ձևով խաբել նրան։ Ուստի և (Անտոնիոսն) իր
զայրույթը նրա հանդեպ բացահայտ ցույց չէր տալիս, որ-
պեսզի չթշնամանա իր հետ. բայց նրան անպատրաստ գըտ-
նելու նպատակով նա շարժվեց Եգիպտոսից, իբրև թե արշա-
վում էր պարթևների դեմ։ Ճանապարհին, սակայն, տեղե-
կանալով, որ Օկտավիան[213] Հռոմից ժամանում է, այլևս ա-
ռաջ չշարժվեց, այլ ետ վերադարձավ։

* * *

39, Մինչ այդ Անտոնիոսը նույն օրն իսկ հրաժարվեց իշխա-
նությունից, իր փոխարեն կարգելով Լուկիոս Սեմպրոնիոս
Ատրատինոսին. այստեղից էլ, ահա, ոմանք կոնսուլներին
թվարկելիս ոչ թե Անտոնիոսի, այլ Սեմպրոնիոսի անունն են
2 տալիս։ Որպեսզի կարողանա (Արտավազդ) Արմենից ա-
ռանց դժվարության վրեժ լուծել, (Անտոնիոսը) նրա մոտ
ուղարկեց ոմն Կվինտոս Դելլիոսին, որը մի ժամանակ իր
սիրելին էր եղել, խնդրելով նրա աղջկան[214] կնության տալ իր
Ալեքսանդր որդուն և խոստանում է նրան շատ պարգևներ
3 շնորհել։ Եվ, ի վերջո, գարնանամուտին նա հանկարծ եկավ
Նիկոպոլիս, որը հիմնել էր Պոմպեոսը, և նրան հրավիրեց
այնտեղ, իբրև թե նրա հետ խորհրդակցելու և պարթևների
դեմ համագործակցելու նպատակով։ Ու քանի որ (Արտա-
վազդը), կասկածելով դավադրության մասին, նրա մոտ չժա-
մանեց, ապա նա նորից Դելլիոսին ուղարկեց բանակցու-
թյուններ վարելու համար և ինքն էլ ոչ պակաս շտապողա-
4 կանությամբ առաջացավ դեպի Արտաշատ։ Այս կերպ,

վերջապես, երկար ժամանակ հետո, թե՛ բարեկամների մի-
ջոցով նրան համոզելով, թե՛ իր զորքերով երկյուղ պատ-
ճառելով և թե՛, ընդհանրապես, իբրև բարեկամի նամակ
գրելով և ամեն միջոց գործադրելով, նրան հարկադրեց գալ
5 իր ռազմական ճամբարը։ Եվ այստեղ ձերբակալելով նրան,
սկզբում պահում էր առանց կապանքների և շրջագայում նրա
հետ այն ամրոցները, որտեղ գտնվում էին գանձերը, որպես-
զի կարողանա դրանք ստանալ առանց պատերազմի, արդա-
րանալով, որ իբր նրան ձերբակալել է միայն այն պատճա-
ռով, որպեսզի հայերին հարկագրի տուրք վճարել նրա անձի
6 և նրա թագավորության փրկության համար։ Իսկ երբ գան-
ձերի պահապանները[215] ուշադրություն չդարձրին նրան և
զենք կրողներն էլ (Արտավազդի) փոխարեն թագավոր ընտ-
րեցին նրա որդիներից ավագագույնին՝ Արտաշեսին[216],
(Անտոնիոսը) Արտավազդին կապեց արծաթե շղթաներով.
քանզի թվում էր, թե ամոթալի կլիներ նրան, որը թագավոր
էր եղել, կապել երկաթե շղթաներով։ Եվ այնուհետև (Ան-
40, 1 տոնիոսը) տիրացավ ամբողջ Հայաստանին, ոմանց հոժա-
րակամ, ուրիշներին բռնությամբ նվաճելով. իսկ Արտաշե-
սը, քանի որ պատերազմի բռնվեց, բայց պարտվեց, փախավ
Պարթևի մոտ։ Այս բոլորն անելուց հետո (Անտոնիոսը) իր
2 որդուն նշանեց Մեդացու աղջկա հետ, որպեսզի նրա հետ ա-
ռավել սերտ բարեկամություն հաստատի. և ապա իր լեգեոն-
ները թողեց Հայաստանում ու վերադարձավ Եգիպտոս, իր
հետ տանելով թե՛ այլ առատ ավար և թե՛ Արմենին իր կնոջ
3 ու որդիների հետ։ Եվ մյուս գերիների հետ սրանց ևս իր
առջևից Ալեքսանդրիա ուղարկելով իբր հաղթահանդեսի
շքերթի համար, ինքը քաղաք մտավ մարտակառքի վրա. և
բացի այլ ամենից, որ շնորհեց Կլեոպատրային, նրան բերեց
ընտանյոք հանդերձ նաև Արմենին, որը ոսկե կապանքների
մեջ էր։ Իսկ (Կլեոպատրան) նստած էր բազմության մեջ-
տեղ, արծաթապատ բեմում, ոսկեզօծ գահավորակի վրա։
Սակայն բարբարոսները[217] ոչ աղերսեցին նրան, ոչ իսկ
երկրպագեցին, թեպետև նրանց շատ էին ստիպում և շատ
էին հուսադրում ազատություն խոստանալով. ու որովհետև
նրան պարզապես իր անունով կոչեցին, նրանք վեհամիտ
մարդկանց համբավ շահեցին, բայց և նույն այդ պատճա-
ռով ենթարկվեցին խիստ չարչարանքների։

41, 1 Այս բանից հետո Անտոնիոսը խնջույքով պատվեց
ալեքսանդրիացիներին և հավաքույթի ժամանակ իր կողքին
բազմեցրեց Կլեոպատրային ու նրա որդիներին և դիմելով
ժողովրդին, կարգադրեց, որպեսզի նրան կոչեն արքայից
թագուհի, իսկ Պտղոմեոսին, որին Կեսարիոն անունն էին
2 տվել, կոչեն արքայից արքա։ Այնժամ (պրովինցիաների) մի
նոր բաժանում կատարելով, նրանց պարգևեց Եգիպտոսը,
ինչպես նաև Կիպրոսը. քանզի նա հայտարարեց, թե հիրավի
Կլեոպատրան նախորդ Կեսարի[218] կինն է եղել, իսկ Կեսա-
րիոնը՝ նրա իսկ որդին, և խոստանում էր, որ այս ամենը
ինքը կատարում է նրա սիրուն, որպեսզի դրանով մեղադրի
Կեսար Օկտավիանոսին իբրև նրա որդեգիրը, այլ ոչ թե իբրև
3 հարազատ որդու։ Նրանց, ուրեմն, այս երկրները տվեց, իսկ
Կլեոպատրայից ծնված իր որդիներին խոստացավ տալ (հե-
տևյալ երկրները). Պտղոմեոսին՝ Սիրիան ու Եփրատից այս
կողմ գտնվող բոլոր երկրները՝ մինչև Հելլեսպոնտոս, Կլեո-
պատրային՝[219] Կյուրենե երկիրը Լիբիայում, իսկ նրանց եղ-
բայր Ալեքսանդրին՝ Հայաստանը ու Եփրատից այն կողմ ըն-
կած բոլոր երկրները՝ մինչև Հնդկաստան. և այս ամենը նա
4 պարգևում էր, կարծես արդեն նվաճած լիներ։ Այս ամենը նա
ոչ միայն հայտարարեց Ալեքսանդրիայում, այլև հաղորդում
ուղարկեց Հռոմ, որպեսզի նրանց համաձայնությունը ևս
ստանա. բայց նրա կարգադրություններից և ոչ մեկը չըն-
թերցվեց հրապարակավ. քանի որ Դոմիտիոսը և Սոսսիոսը,
որոնք արդեն այդ ժամանակ կոնսուլներ էին և առավելա-
գույնս նվիրված էին նրան, չուզեցին այդ ամենը բոլորին
հրապարակել, թեպետև (Օկտավիանոս) Կեսարը ստիպում
5 էր նրանց։ Թեև այս հարցում նրանք հաղթեցին, այտուհան-
դերձ (Օկտավիանոս) Կեսարին հաջողվեց այն, որ հայոց
թագավորին վերաբերող գրվածքներից ոչինչ չհրապարակ-
վի. քանզի սրան կարեկցում էր, քանի որ գաղտնաբար կա-
պեր էր հաստատել նրա հետ Անտոնիոսի դեմ և միաժամա-
նակ նախանձում էր Անտոնիոսին նրա հաղթահանդեսի հա-
մար։

* * *

44, 1 Անտոնիոսն այդ ժամանակ առաջ ընթացավ մինչև
Արաքս գետը, իբր թե պարթևների վրա արշավելու համար,
բայց բավարարվեց միայն Մեդացու հետ կնքած համաձայ-

նությամբ։ Պայմանավորվեցին իրար օգնել, մեկը՝ պարթևների
2 դեմ, իսկ մյուսը՝ (Օկտավիանոս) Կեսարի դեմ, և այդ առնչու-
թյամբ էլ իրար փոխադարձաբար որոշ թվով զինվորներ
տվեցին. և (Մեդացին) ստացավ նորանվաճ Հայաստանից
որոշ մասեր[220]. իսկ (Անտոնիոսը) տարավ նրա Յոտապե
աղջկան (իր որդի) Ալեքսանդրի հետ ամուսնացնելու հա-
մար, ինչպես նաև զինվորական դրոշները, որոնք գրավված
3 էին Ստատիանոսի դեմ մղված ճակատամարտում։ Այնու-
հանդերձ Անտոնիոսը, ինչպես ասել եմ[221], Պոլեմոնին պար-
գևեց Փոքր Հայքը, միաժամանակ Լուկիոս Փլավիոսին[222],
որն իր հետ էր, կոնսուլ նշանակելով և այնտեղ թողնելով,
ինքը շտապեց գնալ Հոնիա և Հունաստան պատերազմելու
4 (Օկտավիանոս) Կեսարի դեմ։ Եվ Մեդացին սկզբում, օգտվե-
լով դաշնակից հռոմայեցիներից, իր վրա հարձակում գոր-
ծած պարթևներին և Արտաշեսին հաղթեց. բայց երբ Ան-
տոնիոսը ետ կանչեց իր զորքերը և միաժամանակ իր մոտ
պահեց նրա զորքերը, նա պարտվեց և գերի ընկավ. այսպի-
սով Հայաստանը Մեդիայի հետ միասին կորսվեց։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆԵՐՈՐԴ

1, 4 (Օկտավիանոս) Կեսարը մեղադրում էր (Անտոնիոսին) այն բանի համար, որ վերջինս ստացել էր Եգիպտոսը և այլ երկրներ, առանց վիճակի, սպանել էր Սեքստոսին..... և Արմեն (Արտավազդին) խաբելով, ձերբակալելով ու շղթայելով, մեծապես վարկաբեկել էր հռոմեական ժողովրդի հեղինակությունը։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

2,1 ...(Օկտավիանոս Կեսարը) բոլոր տիրակալներին և թա-
գավորներին, բացի Ամյունտասից և Արքելաոսից[223], զրկեց
այն բոլոր տիրույթներից, որ ստացել էին Անտոնիոսից,
2 իսկ Փիլոպատորին՝ Տարկոնդիմոտոսի[224] որդուն, և Լյուկոմե-
դեսին, որը թագավորում էր Կապպադովկյան Պոնտոսի մի
մասի վրա, և Ալեքսանդրին՝ Յամբլիքոսի[225] եղբորը, զրկեց
իրենց թագավորություններից։ Քանի որ վերջինս իր թագա-
վորությունն ստացել էր իբրև վարձատրություն Կեսարին
մեղադրելու համար, ուստի և նրան քարշ տվեց իր հաղթա-
հանդեսում և հետագայում սպանեց։

5, 3 Այսպիսով, երբ (Անտոնիոսը և Կլեոպատրան) խույս
տվեցին նավամարտից[226], մինչև Պելոպոննես միասին նա-
վեցին. իսկ այստեղից, իրենց հետ եղողներից ոմանց, ում
կասկածում էին, արձակելուց հետո —մինչդեռ շատերն ար-
դեն, հակառակ իրենց ցանկության, հեռացել էին— Կլեո-
պատրան շտապեց Եգիպտոս, չլինի թե իրենց պարտության
մասին այնտեղ իրենց ժամանելուց առաջ լսելով ապստամ-
4 բեն. և որպեսզի իր ժամանումը ևս դարձնի ապահով, նավերի
քթերը պսակազարդեց, ասես իրոք հաղթանակ էր տարել, և
սրնգահարների նվագակցությամբ հաղթերգեր էր երգում.
բայց երբ արդեն ինքն ապահով տեղ հասավ, առաջիննե-
րից[227] շատերին, որոնք միշտ էլ դժգոհ էին եղել իրենից և
այժմ էլ իրեն պատահած աղետի պատճառով հոխորտում
5 էին, սպանեց. և նրանց պատկանող, ինչպես նաև այլ աշ-
խարհիկ և հոգևոր տիրույթներից սկսեց մեծ հարստություն
կուտակել, չխնայելով նույնիսկ ամենասրբազան տաճար-
ները և միաժամանակ զինում էր իր բանակը և փնտրում
դաշնակիցներ. և նա, սպանելով հայոց թագավորին, նրա
գլուխն ուղարկեց Մեդացուն, իբրև թե այդ եղանակով նրա-
նից օգնություն ստանալու հույսով։

* * *

16, 1 Ինչ վերաբերում է մինչ այդ Անտոնիոսի հետ գործակ-
ցած մյուս մարդկանց, (Օկտավիանոս Կեսարը) ոմանց
պատժեց, մյուսներին՝ ներեց, կամ անձնական նկատառում-
ներից ելնելով, կամ ընկերներին սիրաշահելու համար։ Եվ
քանի որ նրա մոտ գտնվում էին տիրակալների և թագավոր-
ների շատ որդիներ, որոնցից ոմանք պահվում էին իբրև
պատանդ, իսկ ուրիշները՝ մեծամտության պատճառով,
դրանց մի մասին ետ ուղարկեց իրենց երկրները, մյուսներին
էլ ամուսնացրեց իրար հետ, ոմանց էլ պահեց իր մոտ։
2 Մնացած բոլորին ես զանց կառնեմ, բայց հանվանե կհի-
շատակեմ միայն երկուսին։ Նա Յոտապեին[228] վերադարձ-
րեց Մեդացուն, որը պարտվելուց հետո ապաստան էր փրնտ-
րել իր մոտ. իսկ Արտաշեսին[229], որը խնդրել էր իր (պա-
տանդ) եղբայրներին վերադարձնել, մերժեց ընդառաջել
այն պատճառով, որ սա սպանել էր Հայաստանում թողնված
հռոմայեցիներին։

* * *

18,1 ...Այնուհետև (Կեսարը Եգիպտոսից) Սիրիայի վրայով
եկավ պրովինցիա Ասիա և այստեղ էլ անցկացրեց ձմե-
ռը, կարգավորելով իրեն հպատակ առանձին երկրներին,
ինչպես նաև պարթևներին վերաբերող գործերը։ Քանզի
այդ ժամանակ խռովություն էր նրանց մոտ և ոմն Տիրիգա-
2 տես[230] ապստամբել էր Փրաատեսի դեմ. իսկ (Կեսարը) թե՛
նախկինում, երբ շարունակվում էր Անտոնիոսի պայքարը և
թե՛ նավամարտից[231] հետո ոչ միայն կողմերից որևէ մեկին
չօգնեց, թեպետև նրանք իր զինակցությունն էին խնդրում,
այլև չէր սլատասխանում նրանց ոչինչ, բացի այն, որ իբր թե
կմտածի այդ մասին. նա (իր վերաբերմունքը) պատճառա-
բանում էր նրանով, որ իբր զբաղված է Եգիպտոսով, մինչ-
դեռ իրականում նա ցանկանում էր, որ նրանք իրար միջև
3 կռվելով ուժասպառ լինեն։ Իսկ այժմ, երբ արդեն Անտոնիո-
սը մահացել էր, և նրանցից էլ Տիրիդատեսը պարտվելով ա-
պաստանել էր Սիրիայում, իսկ Փրաատեսն էլ հաղթանակած
լինելով դեսպաններ էր ուղարկել, (Կեսարը) նրանց բարեկա-
մաբար ընդունեց և, առանց օժանդակություն խոստանալու
Տիրիդատեսին, թույլատրեց նրան ապրել Սիրիայում. իսկ
Փրաատեսից ստանալով նրա որդիներց մեկին, նրան հովա-
նավորելու նպատակով, իր հետ տարավ Հռոմ, որտեղ և նրան
պահեց իբրև պատանդ։

ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

43,1 Եվ (Կեսարը) պահանջեց Անտիոքոս Կոմմագենացուց[232]
գալ իր մոտ, որովհետև սա դավադրաբար սպանել էր այն
դեսպանին, որին Հռոմ էր ուղարկել նրա եղբայրը, որի հետ
թշնամություն ուներ, (Կեսարը) նրան կանգնեցրեց սենատի
առաջ և, քանի որ (սենատը) նրան դատապարտեց, մահ-
վան ենթարկեց։

ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

25,1 Եվ այդ նույն տարին Պոլեմոնը, որը թագավորում էր
Պոնտոսում[233], մտցվեց (հռոմեական) ժողովրդի բարեկամ-
ների և դաշնակիցների ցուցակի մեջ[234], և միաժամանակ սե-
նատորներին իրավունք շնորհվեց նրա թագավորության մեջ
եղած բոլոր թատրոններում նստել առաջին շարքում[235]։

* * *

33, 1 Այսպիսով, քանի որ Տիրիդատեսը անձամբ և Փրաատե-
սի կողմից ուղարկված դեսպանները ժամանել էին փոխա-
դարձաբար իրար դեմ մեղադրանքները շարադրելու համար,
նրանց առաջնորդեց սենատի առաջ, որից հետո, երբ սե-
2 նատը թույլ տվեց իրեն որոշել հարցը, նա Տիրիդատեսին
չհանձնեց Փրաատեսի ձեռքը, բայց սրա որդուն, որին նա-
խապես վերցրել էր նրանից ու պահում էր իր մոտ[236], ետ
ուղարկեց նրան պայմանով, որ այն ռազմիկները և զինվո-
րական այն դրոշները, որ գերվել էին Կրասսոսի և Անտոնիո-
սի կրած աղետների ընթացքում, ետ վերադարձվեն։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ

8, 1 Եվ մինչ այդ Փրաատեսը վախենալով, որ (Օգոստոս Կեսարը) արշավանքի կելնի իր դեմ, քանի որ համաձայնության պայմաններից և ոչ մեկը չէր կատարել, ետ ուղարկեց նրան թե՛ դրոշները և թե՛ գերված մարդկանց, բացի այն քչերից, որոնք ամոթից իրենք իրենց ոչնչացրել էին, կամ էլ փախչելով, կարողացել էին թաքնվել երկրում։ Եվ սրանց (Օգոստոսն) ստացավ, ասես պատերազմում Պարթևին հաղթած լիներ։

* * *

9, 1 (Հռոմ) քաղաքում այսպիսի գործեր էին կատարվում.
և Օգոստոսը հպատակ երկրները կառավարում էր հռոմեա-
կան սովորույթի համաձայն, մինչդեռ դաշնակից (երկր-
ներին) թույլ էր տալիս կառավարվել իրենց հայրենի ավան-
դությունների համաձայն։ Եվ նա նպատակահարմար չէր
գտնում ոչ այս մեկին որևէ բան ավելացնել, ոչ իսկ թույլ տալ
որևէ նոր բանի տիրանալու, այլ ճշտորեն բավարարվել եղա-
2 ծով. իր այս կարծիքն էլ նա հաղորդեց սենատին։ Այսպի-
սով, նա այդ ժամանակ ոչ մի պատերազմ չձեռնարկեց,
բայց իրականում նա Յամբլիքոսի որդի Յամբլիքոսին տվեց
նրա հայրենական իշխանությունը արաբների վրա և Տար-
կոնդիմոտոսի որդի Տարկոնդիմոտոսին հանձնեց Կիլիկիայի
թագավորությունը, որը պատկանել էր նրա հորը, բացի ծո-
վափնյա որոշ մասերից։ Քանզի սրանք նա, Փոքր Հայքի

հետ միասին, պարգևել էր Արքելաոսին, քանի որ Մեդացին,
3 որը նախապես տիրում էր այնտեղ, մահացել էր։ Իսկ Հե-
րովդեսին նա հանձնեց ոմն Զենոդորոսի չորրորդապետու-
թյունը և ոմն Միհրդատի, որը թեպետև դեռևս փոքր
տղա էր, Կոմմագենեն, որովհետև այդ երկրի թագավորը
4 սպանել էր նրա հորը։ Իսկ քանի որ մյուս հայերը մե-
ղադրում էին Արտաշեսին[237] և (դեսպանություն ուղարկելով)
խնդրում էին Հռոմում գտնվող նրա Տիգրան եղբորը[238], ապա
(Օգոստոսն) ուղարկեց Տիբերիոսին[239], որպեսզի (Արտաշե-
սին) հեռացնի թագավորությունից և (Տիգրանին) հաստատի
5 գահի վրա։ Սակայն (Տիբերիոսն) այս պատրաստություննե-
րին համապատասխան ոչինչ չկատարեց, քանզի հայերն ի-
րենք արդեն սպանել էին Արտաշեսին[240]։ Իսկ Տիբերիոսը
խիստ մեծարվեց, մանավանդ, որ այս բոլորի առթիվ որոշ-
վեց զոհաբերություններ կատարել, կարծես թե քաջարիու-
թյուն էր ցուցաբերել։

* * *

24, 4 Եվ Կիմմերյան Բոսպորում ծագած ապստամբությունը
ճնշվեց։ Քանզի ոմն Սկրիբոնիոս, որը հայտարարում էր,
թե ինքը Միհրդատի[241] թոռն է և թագավորությունն ըս-
տացել է Օգոստոսի ձեռքից, քանի որ Ասանդրոսը մահա-
ցել էր, ամուսնացավ վերջինիս Դյունամիս անունով կնոջ
հետ, որին ամուսինը հանձնել էր թագավորությունը։ Սա,
հիրավի, Փառնակեսի դուստրն էր և Միհրդատի թոռը,
5 ուստի և Բոսպորը պահում էր իր ձեռքում։ Այս մասին իմա-
նալով Ագրիպպասը[242] նրա դեմ ուղարկեց Պոլեմոնին, որը
թագավորում էր Կապպադովկիային հարող Պոնտոսում։
Բայց սա չհասցրեց Սկրիբոնիոսին կենդանի բռնել, քանի
որ Բոսպորի բնակիչներն իմանալով նրա դիտավորության
մասին, արդեն սպանել էին նրան. իսկ երբ սրանք դիմա-
դրեցին (Պոլեմոնին), վախենալով, որ իրենց վրա թագա-
վորելու իրավունքը նրան կտրվի, (Պոլեմոնը) պատերազմ
6 սկսեց նրանց դեմ։ Ու թեև հաղթեց, բայց չկարողացավ
նրանց հպատակեցնել, մինչև որ Ագրիպպասը չժամանեց
Սինոպե նրանց դեմ արշավանք ձեռնարկելու համար։ Այն-
ժամ նրանք զենքերը ցած դրեցին և հանձնվեցին Պոլեմոնին,
իսկ այդ կինը՝ Դյունամիսը, ամուսնացավ նրա հետ, իհար-
կե, Օգոստոսի համաձայնությամբ։

9, 4 Եվ (Օգոստոս Կեսարը) ցանկանալով որևէ կերպ
նրանց[243] առավել ողջամիտ դարձնել, Տիբերիոսին տվեց
հինգ տարվա տրիբունական պաշտոն և հանձնարարեց նրան
Հայաստանի իշխանությունը, որը օտարացել էր Տիգրանի[244]
մահից հետո։

* * *

10, 18 Երբ հայերն ապստամբեցին և պարթևներն էլ գործակ-
ցում էին նրանց, Օգոստոսը այս ամենից խիստ նեղացավ և
չէր իմանում ինչպե՞ս վարվել։ Քանզի ինքը ծերության
պատճառով արդեն չէր վստահում անձամբ արշավելու և
Տիբերիոսն էլ, ինչպես ասվեց, արդեն հրաժարվել էր, իսկ
հզորներից որևէ մեկին ուղարկել նա չէր համարձակվում,
մինչդեռ Գայոսն ու Լուկիոսը[245] դեռևս երիտասարդ էին և
անփորձ պետական գործերի մեջ։ Այսուհանդերձ, հանգա-
մանքների ստիպման տակ նա ընտրեց Գայոսին և նրան
փոխկոնսուլի պաշտոն և կին տվեց, որպեսզի այդ պատճա-
ռով ևս բարձր պատվի արժանանա և միաժամանակ նրան
19 խորհրդատուներ նշանակեց։ Ուստի (Գայոսը) ճանապարհ
ընկավ և բոլորի կողմից բարձր ընդունելություն էր գտնում,
իբրև իմպերատորի թոռ և նրան դիտում էին իբրև նրա
որդին. նույնիսկ Տիբերիոսը եկավ Քիոս[246] և սպասարկեց
նրան, որպեսզի այդպիսով փարատի իր վրա եղած կասկած-
ները. նա ինքն իրեն ստորացնում էր և ծնկի գալիս ոչ միայն
հանուն Գայոսի, այլև բոլոր նրա մերձավորների։ Եվ (Գա-
յոսը) Սիրիա գնալուց հետո որևէ մեծ հաջողություն չունե-
ցավ ու վիրավորվեց։
20 Երբ բարբարոսներն իմացան Գայոսի արշավանքի մա-
սին, Փրատակեսը[247] բանագնաց ուղարկեց Օգոստոսի մոտ.
բացատրություն տալով տեղի ունեցած դեպքերի մասին,
միաժամանակ պահանջելով (վերադարձնել) իր եղբայր-
ներին, (փոխարենը) խաղաղություն խոստանալով։ Եվ նրան
Օգոստոսը պատասխան ուղարկեց առանց նրան «ար-
քա» կոչելու, այլ պարզապես «Փրատակես» անվանելով ու
կարգադրելով նրան հրաժարվել թագավորական կոչումից

և հեռանալ Հայաստանից։ Ահա գրանից հետո Պարթևը ոչ
միայն չվախեցավ, այլև պատասխան դրեց նրան մեծամիտ
շեշտով և ինքն իրեն «արքայից արքա», իսկ նրան միայն
«կեսար» անվանելով։ Իսկ Տիգրանը[248] անմիջապես չէ, որ
դեսպաններ ուղարկեց, այլ երբ հետագայում Արտավազդը[249]
հիվանդացավ ու մահացավ, նվերներ ուղարկեց Օգոստո-
սին այն կապակցությամբ, որ իր հակառակորդը վերացել է
ասպարեզից, նամակում առանց իրեն թագավոր անվանելու,
21 իբրև թե թագավորությունը նրա ձեռքից խնդրելով։ Աղդված
այս ամենից և միաժամանակ վախենալով պարթևների հետ
պատերազմ սկսվելուց, նա նվերներն ընդունեց և բարի հույ-
սեր ներշնչելով, պատվիրեց նրան գնալ Սիրիա, Գայոսի
մոտ։

* * *

10a,4 Այսուհանդերձ պարթևների դեմ ևս պատերազմ չսկըս-
վեց։ Քանզի Փրատակեսը լսելով, որ Գայոսը Սիրիայում է
գտնվում իբրև կոնսուլ, միաժամանակ կասկածելով, որ իր
երկրում ևս իրավիճակը առաջվա պես դարձյալ անբարե-
նպաստ է, շտապեց համաձայնության գալ (հռոմայեցիների
հետ) այն պայմանով, որ ինքը կհեռանա Հայաստանից, և
5 իր եղբայրները կմնան ծովից այն կողմ[250]։ Սակայն հայե-
րը, քանի որ Տիգրանը բարբարոսների դեմ մղած ինչ-որ
պատերազմի ժամանակ սպանվել էր, իսկ Էրատոն էլ հրա-
ժարվել էր իշխանությունից, պատերազմի ելան հռոմայեցի-
ների դեմ, որովհետև նրանց (վրա իշխանությունը) հանձնել
էին ոմն մեդացի Արիոբարզանեսի, որը մի ժամանակ Տի-
րիդատեսի[251] հետ եկել էր հռոմայեցիների մոտ. այս դեպքերը
կատարվեցին հաջորդ տարին, երբ կոնսուլներ էին Պուբլիոս
6 Վինիկիոսը և Պուբլիոս Վարոսը։ Ու թեպետ հայերը նշանա-
կալից որևէ գործ չկատարեցին, բայց ոմն Ադդոն, որը տի-
րում էր Արտագերսին[252], համոզեց Գայոսին ընդհուպ մո-
տենալ պարիսպներին և խոցեց նրան. այս պատճառով էլ
7 (Արտագերսը) պաշարման ենթարկվեց ու երկար դիմադրեց։
Բայց երբ վերջապես այն վերցվեց, ոչ միայն Օգոստոսը,
այլև Գայոսը նույնպես ստացել էր իմպերատորի տիտղոս
և Հայաստանն այնժամ Օգոստոսի և սենատի կողմից ստա-
ցավ Արիոբարզանեսը և ոչ շատ ժամանակ անց նրա մահից
հետո՝ նրա որդի Արտավազդը[253]։ Այսպես, Գայոսը վերքի

պատճառով թուլացավ և քանի որ ոչ մի կերպ չէր առողջանում, սկսեց բանականությունը կորցնել և առավել ևս բթամրտացավ։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆՅՈԹԵՐՈՐԴ

17,3 Ինչևէ, նա[254] խիստ զայրացել էր Կապպադովկիայի
թագավոր Արքելաոսի վրա, որովհետև սա նախկինում ծնկի
գալով աղերսել էր իր բարեխոս պաշտպանությունը, երբ
Օգոստոսի ժամանակ մեղադրվել էր իր հայրենակիցների
4 կողմից, իսկ երբ հետագայում ինքը մեկնել էր Հռոդոս[255],
սա արհամարհեց իրեն և արդեն իր ծառայությունը մատուցեց
Ասիա ժամանած Գայոսին։ Ուստի (Տիբերիոսը) պահանջեց
նրանից գալ իր մոտ, մեղադրելով ապստամբություն
նյութելու մեջ և նրա բախտը թողեց սենատի վճռին, թեպետև
մարդը ոչ միայն խորը ծերության հասակում էր, այլև
խիստ տառապում էր հոդատապից ու միաժամանակ թվում
5 էր, թե խելագարվել է։ Եվ իրոք նա մի անգամ այնպես էր
հիվանդացել, որ Օգոստոսը նրա երկրում ինչ-որ խնամակալ[256]
կարգեց։ Այսուհանդերձ, նա այս անգամ արդեն նույնպես
չուներ, բայց ձևացնում էր (հիվանդ), այդ եղանակով
փրկվելու հույսով։ Եվ նա մահվան կենթարկվեր, եթե այնտեղ
վկաներից մեկը չհայտներ, թե լսել է նրան ասելիս
այսպես. «Եթե տուն վերադառնամ, ապա ցույց կտամ նրան,
թե ի՞նչ ջղեր ունեմ»։ Այս խոսքերի վրա այնքան բարձր ծիծաղ
պայթեց, քանզի այս մարդը ոչ միայն կանգնել, այլև
անգամ նստել չէր կարողանում. ուստի և Տիբերիոսը հրաժարվեց
6 ժարվեց նրան սպանելուց։ Մինչդեռ Արքելաոսի վիճակը
այնքան վատ էր, որ նրան ծածկված մահճի վրա բերեցին
սենատ—քանզի ընդունված սովորություն էր նույնիսկ տղամարդուն,
եթե նա հիվանդ էր, սյառկած բերել (սենատ). մի
անգամ Տիբերիոսը ևս այդպես էր վարվել— և նա մի քանի
խոսք ասաց մահճից թեքվելով առաջ։ Ահա այդ ժամանակ
7 Արքելաոսը այս ձևով փրկվեց, բայց ոչ շատ ժամանակ անց
նա մահացավ, որից հետո Կապպադովկիան ևս դարձավ
հռոմեական (տիրույթ) և հանձնվեց հեծյալի[257] կառավարմանը։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

26, 1 Այդ տարիներին էր, որ պարթև Արտաբանոսը[258], քա-
նի որ Արտաշեսը[259] մահացել էր, Հայաստանը տվեց իր
որդի Արսակեսին[260] և քանի որ այդ առնչությամբ Տի-
բերիոսի կողմից որևէ վրեժխնդրություն չեղավ, մի փորձ
էլ Կապպադովկիայի վրա կատարեց ու մինչև իսկ սկսեց
2 պարթևներին գոռոզաբար վերաբերվել։ Ուստի և ոմանք
ապստամբելով Արտաբանոսի դեմ, դեսպանություն ուղար-
կեցին Տիբերիոսին, իրենց համար թագավոր խնդ-
րելով պատանդության մեջ գտնվողներից որևէ մե-
կին։ Եվ (Տիբերիոսը) այնժամ նրանց ուղարկեց Փրա-
ատեսի որդի Փրաատեսին, բայց քանի որ սա ճա-
նապարհին մահացավ, (ուղարկեց) Տիրիդատեսին, որը
նույնպես սերում էր թագավորական ընտանիքից։
3 Եվ որպեսզի առավել հեշտությամբ ստանար թագավորու-
թյունը, նամակ գրեց Միհրդատ Իբերացուն, պատվիրե-
լով ներխուժել Հայաստան, որպեսզի Արտաբանոսը էր որ-
դուն օգնելու նպատակով հեռանա իր երկրից։ Եվ այդպես
էլ կատարվեց. այսուհանդերձ, Տիրիդատեսը երկար չթա-
գավորեց, քանզի Արտաբանոսը սկյութներին օգնության
4 կանչելով, նրան առանց դժվարության դուրս քշեց։ Պար-
թևական դեպքերն ահա այսպիսի ընթացք ստացան. իսկ
Հայաստանն անցավ Միհրդատին[261], որն, ինչպես հայտնի
է, Միհրդատ Իբերացու որդին էր և Փարասմանի եղբայրը,
որը (Միհրդատ Իբարեցուց) հետո դարձավ իբերների թա-
գավոր։

## ԳԻՐՔ ՀԻՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

8, 2 Եվ նա[262] Անտիոքոսի որդի Անտիոքոսին տվեց Կոմ-
մագենեն, որը պատկանում էր նրա հորը և դրան գումարած
նաև Կիլիկիայի առափնյա մասերը, միաժամանակ և Ագրիպ-
պասին՝ Հերովդեսի[263] թոռանը, որը գերվել էր Տիբերիոսի
կողմից, ազատ արձակեց և նրան հանձնեց պապի տիրու-
թյունը և նրա եղբորը, կամ, ավելի ճիշտ, որդուն[264] ոչ միայն
զրկեց հայրենի ժառանգությունից, այլև մահվան ենթար-
կեց. և այդ մասին ոչինչ չհաղորդեց սենատին։

* * *

12, 2 Այդ ժամանակ էլ նա [265] Սոեմոսին[266] Իտուրիական ա-
րաբների երկիրը[267], Կոտյուսին՝[268] Փոքր Հայքը, իսկ ավելի
ուշ՝ Արաբիայի որոշ մասերը, Ռյումետալկեսին՝[269] Կոտյու-
սի տիրույթները, և Պոլեմոնին՝ Պոլեմոնի որդուն՝ հայրենի
իշխանությունը պարգևեց, և այս բոլորը, հիրավի, սենատի
վճռի համաձայն, իսկ ինքը նստած է եղել ֆորումում բեմի
վրա դրված գահավորակին, կոնսուլների միջև, ինչպես
ոմանք ասում են, մետաքսե վարագույրներով քողարկված։

* * *

17, 5 Եվ նրա ետևից տարվում էր բազում շատ բան, որը
ավար էր համարվում, ինչպես նաև Դարեհը, Արշակունինե-
րից մի այր, որն այդ ժամանակ Հռոմում իբրև պատանդ
գտնվող պարթևներից մեկն էր։

* * *

27, 2 Եվ ահա Լուկիոս Վիտելլիոսը, որը ոչ ստոր ծագում ու-
ներ, ոչ էլ անմիտ էր, այլ, ընդհակառակը, որպես Սիրիայի
կառավարիչ, անվանի էր դարձել—քանզի այդ ժամանակ ա-
մեն ինչ լավ վարելուց բացի, նաև Արտաբանոսին, որը
3 մտադիր էր արշավել Սիրիա, քանի որ Հայաստան կատա-
րած իր արշավանքի համար նա անպատիժ էր մնացել. ա-
հաբեկեց, հանկարծակի դեմ դուրս գալով նրան, երբ սա
արդեն հասել էր Եփրատին, և բանակցություններ սկսելով
նրա հետ, ստիպեց նրան զոհ մատուցել Օգոստոսի և Գայո-
սի պատկերներին և իր հետ կնքել հաշտություն, որը շա-
հավետ էր հռոմայեցիներին, ու դրա հետ միասին նրա որ-
դիներին ևս պատանդ վերցրեց—ահա այս Վիտելլիոսին Գա-
4 յոսն իր մոտ կանչեց նրան ոչնչացնելու մտադրությամբ։
Նրա դեմ նույն դժգոհությունն էր, ինչ պարթևներինը
իրենց թագավորի դեմ, երբ նրան վտարեցին երկրից[270].
(Կալիգուլայի) նախանձը ծնեց ատելություն, իսկ վախը՝
դավադրություն։

ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆԵՐՈՐԴ

8, 1 Եվ այնուհետև նա[271] Կոմմագենեն վերադարձրեց Ան-
տիոքոսին—քանզի Գայոսը, թեպետև ինքն իսկ տվել էր այդ
երկիրը, բայց նորից ետ էր վերցրել—և Միհրդատ Իբե-

րացում, որին Գայոսը կանչել էր իր մոտ և կալանավորել,
ետ ուղարկեց իր երկիրը, որպեսզի նորից վերցնի իշխա-
2 նությունը։ Մեկ ուրիշ Միհրդատի ևս, որն ուղղակի նրա[272]
սերնդից էր, պարգևեց Բոսպորոսը և Պոլեմոնին դրա փո-
խարեն տվեց Կիլիկիայից որոշ մասեր։

* * *

28, 7 Իբերների թագավոր Միհրդատը[273] ապստամբեց և
պատրաստվում էր հռոմայեցիների դեմ պատերազմել։ Նրա
մայրը, սակայն, դեմ լինելով այդ ամենին և չկարո-
ղանալով համոզել նրան, որոշեց փախչել։ Այնժամ Միհրդա-
տը, ցանկանալով թաքցնել իր ծրագրերը, քանի որ ինքը
պատրաստություններ էր տեսնում, իր եղբորը՝ Կոտյուսին,
որպես դեսպան ուղարկեց Կլավդիոսի մոտ բարեկամական
ուղերձով։ Բայց Կոտյուսը, դավելով դեսպանությանը, ամեն
ինչ հայտնեց նրան և Միհրդատի փոխարեն դարձավ իբեր-
ների թագավոր։

## ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

32, 4ա Միհրդատը՝ իբերների թագավորը, երբ կռվեց հռո-
մեական զորքերի դեմ և պարտվեց, կյանքում հուսահա-
տության մատնվեց և (հռոմայեցիներից) խնդրեց իրեն
խոստանալ, որ ոչ բռնի կերպով պետք է սպանվի, ոչ էլ
հաղթահանդեսի տարվի. երբ իրոք այդ խոստացան, Կլավ-
դիոսը Հռոմում նրան ընդունեց բեմի վրա և սպառնագին
խոսեց նրա հետ. իսկ նա համարձակ պատասխանեց նրան
ու վերջացրեց ասելով, թե՝ «Ես ոչ թե բերվեցի քեզ մոտ,
այլ ժամանեցի. եթե կասկածում ես, ազատ արձակիր ինձ
և փորձիր փնտրել»։

* * *

Լելիանոսը, որը Պոլիոնի փոխարեն ուղարկվել էր Հա-
յաստան, նախկինում եղել էր գիշերապահների հրամանա-
տար և ոչնչով ավելի լավ չէր Պոլիոնից, այլ ինչքան իր
պաշտոնով ավելի բարձր էր նրանից, այնքան անհագուրդ
շահամոլ էր։

## ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

19, 1 Մինչ նա[274] այս գործերով էր զբաղված, լուր ստացվեց
Հայաստանից և միաժամանակ հաղթության դափնի։ Քան-

դի Կորբուլոնը[275] (հռոմեական) ցրված զորամասերը միա-
վորելուց և լքվածներին վարժեցնելուց հետո, թե՛ Վոլո-
գեսոսին[276], պարթևների թագավորին, թե՛ Տիրիգատեսին[277],
Հայաստանի առաջնորդին, ահաբեկեց սոսկ իր մոտիկ գա-
2 լու հաղորդումով իսկ։ Քանզի նա նման էր առաջին հռոմա-
յեցիներին ոչ միայն իր պայծառ ծագումով և ուժեղ մարմնով,
այլև ուներ խորաթափանց միտք. և նա մեծ քաջություն,
մեծ արդարություն և խորը հավատարմություն էր ցուցա-
բերում բոլորի՝ թե՛ յուրայինների և թե՛ թշնամիների հան-
3 դեպ։ Այդ իսկ պատճառով Ներոնը պատերազմը վարելու
համար իր փոխարեն ուղարկեց նրան, տրամադրելով այն-
քան զորք, ինչքան չէր տվել ոչ մեկ ուրիշի, հավասարա-
պես վստահ լինելով, որ սա կկարողանա թե՛ հաղթել բար-
4 բարոսներին և թե՛ իր դեմ չապստամբել։ Եվ նա այս երկու
հարցում էլ նրան հուսախաբ չարեց, թեպետև Կորբուլոնը
շատ մարդկանց վշտացրեց հենց այս անգամ, քանի որ
հավատարիմ մնաց Ներոնին. որովհետև նրանք այնքան
ցանկանում էին նրան իմպերատոր տեսնել Ներոնի փոխա-
րեն, որ նրա այս վարմունքը համարում էին նրա միակ
թերությունը[278]։

* * *

20, 1 Ահա այս Կորբուլոնը առանց դժվարության վերցրեց
Արտաշատը և քաղաքը հիմնահատակ կործանեց։ Այս ա-
նելուց հետո նա շարժվեց դեպի Տիգրանակերտ, խնայե-
լով բոլոր իրեն հանձնվողների երկիրը, բայց ավերելով
դիմադրողների երկիրը, իսկ Տիգրանակերտը նրան հանձն-
վեց կամովին։ Նա այլ պայծառ ու փառավոր գործեր ևս
կատարեց, որոնց պատճառով էլ նույնիսկ Վոլոգեսոսին,
որը թեպետև ահեղ էր, ստիպեց հռոմայեցիների պատվին
արժանի հաշտություն կնքել։
2 Եվ Վոլոգեսոսը տեղեկանալով, որ Ներոնը Հայաստանը
պարգևել է ուրիշներին, իսկ Ադիաբենե երկիրն էլ ավեր-
վում է Տիգրանի[279] կողմից, ինքը պատրաստվեց արշավելու
Սիրիա՝ Կորբուլոնի վրա, իսկ Ադիաբենեի թագավոր Մոնո-
բազոսին և պարթև Մոնեսեսին[280] ուղարկեց Հայաստան։
3 Սրանք Տիգրանին պաշարեցին Տիգրանակերտում։ Ու քանի
որ իրենց պաշարումով սրանք ոչ մեկ վնաս չէին կարողա-

նում հասցնել (Տիգրանին) և ամեն անգամ հարձակվելիս
ետ էին մղվում թե՛ նրա և թե՛ նրա զորքում գտնվող հռո-
մայեցիների կողմից, իսկ Կորբուլոնն էլ մեծ ճշտությամբ
4 պահպանում էր Սիրիան, ապա (Վոլոգեսոսը) հրաժարվեց
իր մտադրությունից ու թողեց պատրաստությունը և Կոր-
բուլոնի մոտ (բանագնաց) ուղարկելով, կարողացավ զինա-
դադար կնքել այն պայմանով, որ պետք է մի նոր դեսպա-
նություն ուղարկի Ներոնի մոտ, վերացնի (Տիգրանակեր-
տի) պաշարումը և իր զինվորներին Հայաստանից դուրս
բերի։ Իսկ Ներոնը նույնիսկ այդ ժամանակ նրան ոչ իս-
կույն, ոչ էլ հստակ պատասխան չտվեց, իսկ Լուկիոս Կե-
սեննիոս Պետոսին ուղարկեց Կապպադովկիա, հետևելու
համար, որ Հայաստանում ոչ մի ապստամբություն չբարձ-
րանա։

21,1 Վոլոգեսոսը հարձակվեց Տիգրանակերտի վրա և Պե-
տոսին, որը եկել էր նրանց օգնելու, ետ շպրտեց. և երբ
վերջինս դիմեց փախուստի, հալածեց նրան. կոտորեց նրա
կողմից Տավրոսի վրա հաստատված պահակազորը և նրան
պաշարեց Հռանդեայում[281], որը գտնվում էր Արսանիաս[282]
2 գետի մոտ։ Եվ նա ետ էր վերադառնալու ոչինչ չարած—
քանզի որևէ կետում ամրության մոտենալ չէր կարողա-
նում, քանի որ նա չուներ հոպլիտներ, ու թեև զորքի մեծ
բազմությամբ, բայց առանց անհրաժեշտ պատրաստության
եկած լինելով, զրկված էր պարենամթերքից— եթե Պե-
տոսը չվախենար մինչև ռազմական ճամբարը հասնող նե-
տահարումներից, ինչպես նաև ամեն տեղ հայտնվող նրա
հեծյալներից և հաշտության համար լուր չուղարկեր նրան
ու չընդուներ նրա պայմանները. նա երդվեց, որ կթողնի
ամբողջ Հայաստանը, և որ Ներոնը այն կպարգևի Տիրի-
3 դատեսին։ Պարթևն ուրախացավ այս ամենից, որովհետև
կարծում էր, թե առանց դժվարության կգրավի երկիրը և
հռոմայեցիներին իր ողորմածությամբ կդնի մեծ պարտքի
տակ. մյուս կողմից էլ նա տեղեկացել էր, որ Կորբուլոնը,
որի մոտ Պետոսը, նախքան պաշարվելը, մարդ էր ուղարկել
4 օգնություն խնդրելով, արդեն մոտենում է, ուստի թողեց
պաշարվածներին, նախապես պարտադրելով նրանց իր հա-
մար կամուրջ կապել Արսանիաս գետի վրա, ոչ այն պատ-
ճառով, որ ինքը կամուրջի կարիքն ուներ—քանզի ինքը

հետիոտն էր գետն անցել—այլ ցույց տալու համար նրանց
իր գերազանցությունը[283]։ Բայց այս դեպքում ևս ինքը կա-
մուրջի վրայով չհեռացավ, այլ մեկնեց փղի վրա նստած.
իսկ մնացածները՝ ինչպես և առաջ։
22, 1 Երբ դեռ նոր էր կապիտուլյացիան կատարվել, ահա
և Կորբուլոնը անհնարին արագությամբ մոտեցավ Եփրատին
և այնտեղ սպասեց։ Երբ երկու զորքերը[284] հանդիպեցին
իրար, ամեն ոք կարող էր նկատել լեգեոնների և նրանց զո-
րավարների միջև եղած մեծագույն տարբերությունը. սրանք
ուրախանում և հրճվում էին իրենց արագության համար, իսկ
2 նրանք վշտացած և ամոթահար՝ հաշտության համար։ Իսկ
Վոլոգեսոսը Մոնեսեսին ուղարկելով Կորբուլոնի մոտ, պա-
հանջեց նրանից լքել Միջագետքի ամրությունը. ու նրանք
երկար բանակցեցին իրար հետ Եփրատի վրա գցած նույն
այդ կամուրջի վրա, նախապես քանդելով դրա միջին մասը։
3 Քանի որ Կորբուլոնը խոստացավ հեռանալ երկրից, եթե
Պարթևը թողնի Հայաստանը, ապա այդ երկուսն էլ կատար-
վեց, մինչև որ Ներոնը, իմանալով տեղի ունեցածների մա-
սին և ընդունելով Վոլոգեսոսի իսկույն ևեթ ուղարկած դես-
պաններին, պատասխանեց նրանց, թե Հայաստանը կտա
4 Տիրիդատեսին, եթե սա Հռոմ գա. իսկ Պետոսին իշխանու-
թյունից զրկելով և նրա հետ եղած զինվորներին այլ վայրեր
ուղարկելով, Կորբուլոնին դարձյալ կարգադրեց պատերազ-
մել նրանց դեմ։ Թեև ինքն անձամբ ուզում էր մասնակցել
այդ արշավանքին, սակայն զոհ մատուցելիս ընկել էր. ուս-
տի և չհամարձակվեց արշավանքի դուրս գալ, այլ մնաց
երկրում։
23, 1 Կորբուլոնը թեպետև բացահայտ պատերազմի էր պատ-
րաստվում Վոլոգեսոսի դեմ, հարյուրապետի[285] ուղարկե-
լով, պատվիրեց Վոլոգեսոսին հեռանալ երկրից. հատկապես
խորհուրդ տվեց իր եղբորն ուղարկել Հռոմ և համոզեց նրան,
2 քանզի թվում էր, թե ինքը նրանից առավել ուժեղ է։ Այսպի-
սով, նրանք գումարվեցին այդ նույն Հռանդեայում, թե՛
Կորբուլոնը, թե՛ Տիրիդատեսը. քանզի այս վայրը հաճելի
էր երկուսին էլ. մեկին՝ որովհետև այստեղ պաշարելով հռո-
մայեցիներին, կապիտուլյացիայի ենթարկեցին ու բաց թո-
ղեցին, իբրև ապացույց ողորմած վերաբերմունքի, իսկ
մյուսին՝ այդ վայրը նախկինում յուրայինների կրած ան-

3 պատվությունը ջնջելու հնարավորություն էր տալիս։ Այս-
տեղ բարձր բեմ պատրաստվեց, և դրա վրա կանգնեցվե-
ցին Ներոնի պատկերքը[286], և Տիրիդատեսը հայերի, պար-
թևների ու հռոմայեցիների բազմության առաջ մոտեցավ
դրանց ու խոնարհվեց, այնուհետև զոհ մատուցելով դրանց
և հանդիսավոր կոչելով, իր գլխից խույրը[287] վերցրեց ու
4 դրեց դրանց վրա. և Մոնոբազոսն ու Վոլոգեսոսը ևս եկան
Կորբուլոնի մոտ ու պատանդներ տվեցին նրան։ Եվ այդ
դեպքերի առթիվ Ներոնը մի շարք անգամ իմպերատոր հռչա-
կվեց և, հակառակ ընդունված կարգի, հաղթահանդես
կատարեց։
5 Եվ ահա Կորբուլոնը, թեպետ ուներ և՛ մեծ ուժ, և՛ ոչ
պակաս փառք, և կարող էր հեշտությամբ դառնալ նույնիսկ
իմպերատոր—քանի որ մարդիկ խստագույնս ատում էին
Ներոնին, իսկ իրենով ամեն կերպ հիանում—բայց ինքը ոչ
որևէ խռովություն բարձրացրեց, ոչ էլ մեղադրվեց նման
6 բանում։ Նա այժմ իրեն ավելի խոհեմ էր պահում. նա Ան-
նիոսին՝ իր փեսային, որն իր փոխհրամանատարն էր, Հռոմ
ուղարկեց, Տիրիդատեսին ուղեկցելու պատրվակով, բայց
իրականում նրան դիտավորյալ կերպով ուղարկեց Ներոնի
մոտ պատանդության։ (Ներոնը) այնքան վստահ էր, թե նա
չի ապստամբելու, որ նրա փեսային, որը թեև նախկինում
պրետոր[288] էր եղել, թույլատրեց վերցնել իրեն տեղակալ։

## ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ

1, 1 Երբ (Հռոմում) կոնսուլներ էին Գայոս Տելեսինոսը և
Սուետոնիոս Պավլինոսը, տեղի ունեցավ ամենափառահեղ
մի բան, միաժամանակ նաև մեկ ուրիշ ամենաամոթալի
դեպք։ (Մի կողմից) Ներոնը մասնակցեց կիթառահարների
մրցությանը, և երբ Մենեկրատեսը, կիթառահարության
ուսուցիչը, ձիարշավարանում նրա պատվին հաղթահանդես
2 կազմակերպեց, ինքը հանդես եկավ իբրև կառավար։ (Մյուս
կողմից) Տիրիդատեսը ներկայացավ Հռոմ, իր հետ բե-
րելով ոչ միայն իր, այլև Վոլոգեսոսի և Պակորոսի[289] և
Մոնոբազոսի որդիներին. ու նրանց ամբողջ երթը Եփրատի
մոտից սկսած նմանվում էր հաղթահանդեսի։ Քանզի ին-
քը՝ Տիրիդատեսը թե՛ տարիքով, թե՛ գեղեցկությամբ և թե՛

2, 1 ծագումով ու խելքով ծաղկուն վիճակում էր. և նրա ամբողջ
շքախումբն ու արքունի հանդերձանքը ուղեկցում էր նրան.
ու երեք հազար պարթևական, ինչպես նաև մեծ թվով հռո-
2 մայեցի հեծյալները հետևում էին նրան։ Նրանց թե՛ քա-
ղաքներն էին դիմավորում տոնազարդ և թե՛ ժողովուրդը՝
բարձրագոչ և հրճվագին. և ամբողջ պարենը նրանք ստա-
նում էին անվճար, այնպես որ նրանց ամենօրյա ծախսը
հանրային գանձարանից հաշվվում էր քսան բյուր (դրաք-
մե)[290]։ Եվ այս նույն ձևով կատարվում էր շարունակ ինն
ամիս տևած նրանց ամբողջ ուղևորության ընթացքում։
3 (Տիրիդատեսը) ամբողջ ճանապարհը, մինչև Իտալիա հեծ-
յալ անցավ և նրա կողքին հեծյալ գնում էր նրա կինը, գըլ-
խին քողի փոխարեն ոսկե սաղավարտ դրած, որպեսզի ոտ-
նահարած չլինի (մարդկանց) չերևալու իր հայրենի սովո-
րույթը։ Իսկ Իտալիայում նա փոխադրվեց Ներոնի կողմից
ուղարկված երկձի (կառքով) ու Պիկենումի ճանապարհով
4 եկավ Նեապոլիս, (Ներոնի) մոտ։ Նա Ներոնին մոտենա-
լիս հրաժարվեց մինչև իսկ իր ակինակեն մեկ կողմ դնել.
թեպետև իրեն պատվիրել էին, այլ գամերով այն ամրաց-
րեց պատյանին. հետո նա ծնկի եկավ ու ձեռները խաչաձևեց
3, 1 և նրան կոչելով իր վեհապետը[291], երկրպագեց։ Ներոնն ահա
այս բանի համար ևս նրա վրա հիացավ և նրան ամեն կերպ
հյուրասիրելուց բացի, Պուտեոլիում (գլադիատորական)
մենամարտեր կազմակերպեց։ Ագոնոթետեսն էր[292] Պատ-
րոբիոսը՝ ազատ արձակված իր ստրուկը, որն այնքան շքե-
ղություն և ծախս էր ներդրել, որ ամբողջ օրը ուրիշ ոչ ոք,
բացի եթովպացիներից—այրեր, կանայք և երեխաներ—
2 չերևաց թատրոնում։ Այս ամենի համար Պատրոբիոսին
ինչ-որ պատիվ պետք էր մատուցել, ուստի Տիրիդատեսը իր
բարձրադիր աթոռից նետահարեց գազաններին և մեկ նե-
տումով—եթե կարելի է հավատալ—միանգամից երկու ցուլի
վարսեց և սպանեց։
4, 1 Սրանից հետո Ներոնը նրան Հռոմ առաջնորդեց և խույրը
դրեց նրա գլխին։ Ամբողջ քաղաքը զարդարված էր լույսերով
և պսակներով և ամենուրեք երևում էին մարդկանց հոծ
բազմություններ. առանձնապես բազմամարդ էր ֆորումը։
2 Կենտրոնում, իրենց աստիճանների համեմատ, կանգնած
էին քաղաքացիները, սպիտակազգեստ և դափնեզարդ. իսկ

մնացած բոլոր տեղերում՝ պայծառորեն հանդերձավորված
զինվորներ, որոնց զենքերն ու դրոշները փայլատակում էին։
Եվ նույնիսկ շրջակա բոլոր շենքերի կղմինդրե կտուրներն
անգամ չէին երևում (այնտեղ) բարձրացած բազմությունից։
3 Այս ամենն այսպես պատրաստվել էր գիշերվա ընթացքում,
իսկ լուսաբացին Ներոնը մտավ ֆորում, հագած հաղթահան-
դեսի զգեստը, սենատի և պրետորականների[93] հետ ու բարձ-
րանալով բեմ, նստեց արքունի գահավորակի վրա։ Դրանից
հետո Տիրիդատեսը և նրա ուղեկիցներն անցան երկուստեք
կանգնած հոպլիտների շարքերի միջով ու մոտենալով բե-
5, 1 մին, երկրպագեցին նրան, ինչպես նախկինում։ Երբ այս
առթիվ աղաղակ առաջացավ, Տիրիդատեսը ահաբեկվեց և
որոշ ժամանակ մնաց անխոս, վախենալով, թե արդեն
կորստի է մատնված։ Այնուհետև, երբ լռություն ազդարար-
վեց, նա վերագտավ իր կորովը, և բռնադատելով իր հպար-
տությունը, պատեհության և անհրաժեշտության առաջ դար-
ձավ ծառայամիտ, առանց ուշադրություն դարձնելու, թե
ստորացուցիչ ինչ խոսք էր բարբառելու իր ստանալիք պար-
2 գևի հույսով։ Նա խոսեց այսպես. «Ես, ո՜վ վեհապետ, Արսա-
կեսի հետնորդն եմ, Վոլոգեսոս և Պակորոս թագավորների եղ-
բայրը, իսկ քո ծառան։ Ու եկել եմ ես դեպի քեզ, իմ աստծուն,
երկրպագելու քեզ, ինչպես Միթրային, և թող ինձ համար
կատարվի այն, ինչ դու ինքդ կամենաս. քանզի դու ես իմ
3 վիճակը և իմ բախտը»։ Իսկ Ներոնը նրան այսպես պա-
տասխանեց. «Եվ դու լավ արեցիր անձամբ գալով այստեղ,
որպեսզի քո ներկայությամբ իմ ներկայությունը վայելես. և
այն ամենը, ինչ ոչ քո հայրը քեզ ժառանգություն թողեց,
ոչ ևս քո եղբայրները քեզ տալուց հետո պահպանեցին, ես
բոլորը քեզ պարգևում եմ և դարձնում Հայաստանի թագա-
վոր, որպեսզի թե՛ դու և թե՛ նրանք հասկանաք, թե ես կա-
րող եմ թագավորություններ և՛ վերցնել, և՛ պարգևել»։ Այս
ասելով նա պատվիրեց բեմի առաջ հատկապես այդ առթիվ
պատրաստված աստիճանի վրա բարձրանալ. և երբ (Տիրի-
դատեսին) նստեցրին նրա ոտքերի առաջ, նա խույրը դրեց
նրա գլխին։ Այնժամ մեծ և բազմապիսի աղաղակ բարձրա-
6, 1 ցավ։ Այնուհետև, (սենատի) հատուկ որոշման համաձայն,
թատերական հանդիսություն տեղի ունեցավ։ Եվ թատրոնը,
ոչ միայն նրա բեմը, այլև նրա ամբողջ շրջադիծը ներսից

ոսկեպատած էր, և այնտեղ եղած ամեն ինչ ոսկով էր զար-
2 դարված. ուստի և այդ օրը կոչեցին «ոսկե»։ Արևից պաշտ-
պանվելու համար գլխավերևում պարզած վարագույրները
ծիրանեգույն էին, և դրանց մեջտեղում ասեղնագործած էր
Ներոնը՝ ռազմակառք վարելիս, իսկ նրա շուրջը փայլփլում
էին ոսկե աստղեր։
3 Ամեն ինչ ահա այսպես կատարվեց. և պարզ է, որ
նրանք շքեղ խրախճանք ևս ունեցան։ Եվ Ներոնն այս ամե-
նից հետո հրապարակով կիթառահարեց և ռազմակառք վա-
րեց, հագած կանաչ համազգեստ և գլխին դրած կառապանի
4 սաղավարտ։ Այս բոլորից Տիրիդատեսը զզվանք զգաց նրա
հանդեպ, բայց փովաբանեց Կորբուլոնին, որին միայն մեկ
բանում մեղադրեց. այն, որ այսպիսի վեհապետ ունենալով
համբերում էր։ Իսկապես նա իր այս խոսքերը չթաքցրեց
նույնիսկ Ներոնից, այլ մի անգամ ասաց նրան. «Ո՛վ վե-
5 հապետ, հանձին Կորբուլոնի լավ ստրուկ ունես»։ Բայց այս
ամենն ասաց նրան առանց հասկացվելու. իսկ բոլոր մյուս
դեպքերում նա շողոքորթեց և շատ վարպետորեն փորձեց
հաճոյանալ նրան, որի համար էլ նա բազմապիսի նվերներ
ստացավ, ինչպես ասում են, հինգ հազար բյուր (դրաք-
մե)[294] արժողությամբ և Արտաշատը վերաշինելու թույլտը-
6 վություն[295]։ Այս ամենից բացի նա բազմաթիվ վարպետներ
վերցրեց իր հետ, մի մասին ստանալով Ներոնի կողմից,
մյուս մասին համոզելով փողի միջոցով։ Այսուհանդերձ
Կորբուլոնը այդ բոլորին չթույլատրեց անցնել Հայաստան,
այլ միայն նրանց, ում պարգևել էր Ներոնը։ Դրա համար էլ
7, 1 Տիրիդատեսը (Կորբուլոնի վրա) առավել հիացավ, իսկ Նե-
րոնին՝ արհամարհեց։ Ու նա վերադարձավ ոչ իր եկած ճա-
նապարհով—իլլիրիական երկրով՝ Հոնիական ծովի հյուսի-
սով—այլ Բրենդեսիումից նավեց մինչև Դյուրրաքիոն։ Նա
տեսավ նաև Ասիայի քաղաքները, որի հետևանքով էլ նա
զարմացել էր հռոմեական տերության հզորությունից և գե-
ղեցկությունից։
10 Մի անգամ Տիրիդիատեսը պանկրատիոն (մրցու-
թյուն)[296] դիտելիս, տեսնելով, որ մենամարտողներից մեկը
վայր ընկնելուց հետո ծեծվում էր հակառակորդի կողմից,
բացականչեց. «Մարտն անարդար է, քանզի արդարացի չէ
ընկնողին ծեծելը»։

2 Տիրիդատեսն ահա վերաշինելով Արտաշատը, այն անվանեց Ներոնեյա. բայց Վոլոգեսոսը չցանկացավ իսկ գալ Ներոնի մոտ, թեպետև բազում անգամներ հրավիրել էր. և, ի վերջո, երբ (այդ հրավերները) ձանձրալի դարձան, պատասխան ուղարկեց նրան, թե՝ «Ավելի քեզ համար է հեշտ, քան թե ինձ համար, այսքան ծովեր անցնելը. ուստի և եթե դու գաս Ասիա, այնժամ մենք կպայմանավորվենք, թե որտե՞ղ հանդիպենք իրար»։ Վերջում այսպիսի հաղորդում հղեց Պարթևը (Ներոնին)։

8, 1 Ներոնը, թեպետև զայրացել էր նրա վրա, չնավեց նրա
դեմ, ոչ էլ եթովպացիների կամ Կասպյան դռների կողմը,
2 ինչպես նախկինում ծրագրել էր։ Այսուհանդերձ նա ուրիշ
գործերի հետ միասին, այս երկու կողմերն էլ լրտեսներ ուղարկեց, բայց տեսնելով, որ այդ երկրների հպատակեցումը
կարոտ է ժամանակի և ջանքերի, հույս էր տածում, որ
դրանք ինքնաբերաբար կմիանան իրեն։

ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

11, 3 Երբ Վոլոգեսոսը նրան[297] նամակ ուղարկեց այսպիսի ողջույնով՝ «Արքայից արքա Արսակեսը Փլավիոս Վեսպասիանոսին ողջույն», կայսրը բոլորովին չմեղադրեց նրան և փոխադարձաբար պատասխանեց նույն եղանակով, առանց ավելացնելու իր կայսերական տիտղոսներից և ոչ մեկը։

ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ

19, 3b Նրա[298] օրոք հայտնվեց նաև կեղծ-Ներոնը, որը ասիացի էր, Տերենտիոս Մաքսիմոս անունով. նա նման էր Ներոնին թե՛ իր տեսքով և թե՛ իր ձայնով, քանզի նա կիթառահարում էր նաև։ Եվ Ասիայում նա ոմանց իր կողմը գրավեց ու դեպի Եփրատ առաջանալիս, շատ շատերին ևս գրավեց իր կողմը և վերջապես ապաստան գտավ Արտաբանոսի պարթևների առաջնորդի մոտ, որը Տիտոսի հանդեպ ունեցած թշնամանքի պատճառով, ընդունեց նրան և պատրաստություն էր տեսնում նրան Հռոմում հաստատելու համար։

ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

17, 1 Այնուհետև նա[299] ռազմերթի ելավ հայերի և պարթևների դեմ այն պատրվակով, որ հայոց թագավորը[300] թագը

ոչ թե իրենից էր ստացել, այլ պարթևների թագավորից.
մինչդեռ իրականում նա տոգորված էր խիստ փառամոլու-
թյամբ։
2 Երբ Տրայանոսը պարթևների դեմ արշավելիս հասել էր
Աթենք, այնտեղ նրա մոտ ժամանեցին Օսրոեսի[301] ուղար-
կած դեսպանները, որոնք եկել էին խաղաղություն հայցելու
և բերել էին ընծաներ։ Եվ որովհետև (Պարթևին) հայտնի
էր, թե նա հարձակվելու է և դրանով իսկ պատրաստ է իրա-
գործելու իր սպառնալիքները, խիստ վախեցավ և մեղմելով
իր գոռոզությունը, (դեսպաններ) ուղարկեց, աղերսելով
նրան չպատերազմել իր դեմ. միաժամանակ խնդրում էր
նրան, որ Հայաստանը տրվի Պարթամասիրիսին, որը նույն-
պես Պակորոսի որդին էր, և թախանձում, որ թագն ուղարկ-
3 վի սրան։ Քանզի, ասում էր նա, Եքսեդարեսին[302], որը
հարմար չէր ոչ հռոմայեցիների, ոչ էլ պարթևների համար,
ինքը գահընկեց էր արել։ Իսկ (Տրայանոսը) ոչ ընծաներն
ընդունեց, ոչ էլ որևէ բանավոր պատասխան տվեց կամ նա-
մակ ուղարկեց. այլ հայտնեց միայն, որ բարեկամությունը
որոշվում է գործերով և ոչ թե խոսքերով. հետևաբար, երբ
ինքը ժամանի Սիրիա, պատշաճ ամեն ինչ կանի։ Եվ այս-
պիսի մտադրությամբ նա Ասիայի, Լյուկիայի և սահմա-
18. 1 նակից երկրների վրայով գնաց Սելևկիա։ Եվ երբ նա հա-
սավ Անտիոք, Ավգարոս Օսրոենացին[303], թեև ինքը անձամբ
չհայտնվեց, սակայն ընծաներ և բարեկամական խոսքեր
ուղարկեց. քանզի նա նույնքան վախենում էր թե՛ Տրայանո-
սից և թե՛ պարթևներից, ուստի և չցանկացավ հանդիպել
նրա հետ։

* * *

19. 1 Պարթամասիրիսը կամայական մի բան կատարեց։
Տրայանոսին ուղարկած իր առաջին նամակը նա հղել էր
իբրև «Հայաստանի թագավոր». բայց քանի որ պատասխան
չստացավ, ապա նորից նամակ ուղարկեց, բայց այդ տիտ-
ղոսը հանած և խնդրեց իր մոտ ուղարկել Մարկոս Յու-
նիոսին՝ Կապպադովկիայի կառավարչին, որպեսզի նրա մի-
2 ջոցով իր խնդրանքը հաղորդի։ Սակայն Տրայանոսը նրա
մոտ ուղարկեց Յունիոսի որդուն, մինչդեռ ինքը առաջըն-
թացավ մինչև Արսամոսատա[304] և այն առանց կռվի վերց-
նելով, եկավ Սատալա[305] և Անքիալոսին՝ հենիոքների ու

մաքելոնների թագավորին, ընծաներ ուղարկեց։ Նա Հայաս-
տանի Ելեգեայում[306] ընդունեց Պարթամասիրիսին։ (Կայս-
3 րը) նստած էր պատնեշի եզրին կանգնեցրած բեմի վրա։ Եվ
(Պարթամասիրիսը) ողջունելով նրան, գլխից թագը հանեց
ու դրեց նրա ոտքերի մոտ, լուռ կանգնեց, սպասելով, որ նա
կվերցնի այն։ Երբ այս բանի վրա զինվորները մեծ աղա-
ղակ բարձրացրին և Տրայանոսին, որպես ինչ-որ հաղթու-
4 թյուն տանելու համար կոչեցին իմպերատոր—քանզի նրանք
առանց կարոսի[307] և անարյուն հաղթանակ էին համարում
այս, երբ տեսան, որ Արշակունի թագավորը՝ Պակորոսի
որդին՝ Օսրոեսի եղբորորդին, կանգնած է (կայսեր) առաջ
առանց թագի, որպես գերեվարված—(Պարթամասիրիսը),
ահաբեկվեց և կարծեց, թե ինքը ծանակվում է և մատնվելու
5 է կորստի։ Նա շուռ եկավ և ուզեց փախչել, բայց, տեսնելով,
որ ինքը շրջապատված է, խնդրեց շնորհ անել, որ ամբոխի
առաջ չխոսի։ Եվ այսպիսով, նա ներս տարվեց վրանը,
սակայն դարձյալ չկարողացավ անել այն, ինչ ցանկանում
20, 1 էր։ Եվ երբ նա զայրացած դուրս եկավ զորաճամբարից,
Տրայանոսը ետ կանչել տվեց նրան և նորից բարձրանալով
բեմ, հրամայեց, որ նա ի լուր բոլորի ասի այն ամենը, ինչ
կամենում է, որպեսզի մարդիկ, անգետ լինելով իրենց եր-
կուսի միջև առանձին խոսվածներին, այդ մասին չտան զա-
2 նազան հնարովի տեղեկություններ։ Այս լսելով, Պարթա-
մասիրիսն այլևս չկարողացավ լռել, այլ խոսեց մեծ հա-
մարձակությամբ և, իմիջիայլոց, ասաց, որ ինքը ոչ (պա-
տերազմում) պարտվել է, ոչ իսկ գերի է վերցվել, այլ եկել
է կամավոր կերպով, հավատացած լինելով, որ ինքը ոչ մի
վիրավորանք չի կրի և կստանա թագավորությունը, ինչպես
3 որ Տիրիդատեսն ստացել էր Ներոնից։ Տրայանոսը նրա բո-
լոր ասածներին պատշաճ կերպով պատասխան տվեց և ա-
սաց, որ Հայաստանը ոչ ոքի չի տալու—քանզի այդ երկիրը
պատկանում է հռոմայեցիներին և ունենալու է հռոմայե-
ցի կառավարիչ—իսկ իրեն թույլ կտա գնալ ուր որ կամե-
4 նում է։ Այսպես Պարթամասիրիսին և նրան ընկերակցող
պարթևներին նա բաց թողեց, տալով նրանց հեծյալ ուղե-
կիցներ, որպեսզի ոչ մեկի հետ չբանակցեն և որևէ խռո-
վություն չբարձրացնեն։ Իսկ նրա հետ եկած բոլոր հայե-

*րին հրամայեց մնալ իրենց գտնված երկրում, քանի որ
նրանք այժմ իր հպատակներն էին։*

21, 1 *Տրայանոսը, բոլոր հարմար վայրերում պահակազոր-
ներ թողնելով, եկավ Եդեսսա և այնտեղ առաջին անգամ տե-
սավ Ավգարոսին։ Քանզի նախապես նա թեպետև շատ ան-
գամ էր դեսպաններ և ընծաներ ուղարկել արքային[308], բայց
անձամբ ինքը այս կամ այն պատճառաբանությամբ եր-
բեք չէր եկել նրա մոտ. այսպես նաև Մաննոսը՝ սահմանա-
մերձ Արաբիայի տիրակալը, ինչպես և Սպորակեսը՝ Ան-*
2 *թեմուսիայի[309] ցեղապետը։ Ինչևիցե, Ավգարոսը այս առ-
թիվ մասամբ համոզվելով իր որդու՝ Արբանդեսի[310] պըն-
դումներից, որը գեղեցիկ էր և երիտասարդ և դրանով իսկ
շնորհ էր գտել Տրայանոսի մոտ, մասամբ էլ ահաբեկված
նրա ներկայությունից, դիմավորեց նրան ճանապարհին,
սկսեց արդարանալ և ներման արժանացավ. քանզի որդին*
3 *նրա համար պայծառ միջնորդություն էր։ Այս պատճառով էլ
նա դարձավ Տրայանոսի բարեկամը և խրախճանք տվեց նրա
պատվին և ընթրիքի ընթացքում բերեց իր որդուն բարբա-
րոսական եղանակով պարելու համար։*

22, 1 *Երբ Տրայանոսը եկել էր Միջագետք, Մաննոսը նրա
մոտ պատգամաբեր ուղարկեց, և Մանիսարոսը[311] դեսպան-
ներ ուղարկեց խաղաղության ի խնդիր. քանզի Օսրոեսը
արշավանք էր սկսել իր դեմ, պատրաստվելով իրենից խլե-
լու Հայաստանի և Միջագետքի այն մասերը, որ ինքը նվա-
ճել էր. (Տրայանոսը) պատասխանեց, թե ինքը չի հավա-
տալու նրան, մինչև տրված խոստման համաձայն չգա իր*
2 *մոտ և իր գործերով չհաստատի իր խոստումները։ Միև-
նույն ժամանակ նա կասկածներ ուներ Մաննոսի հանդեպ,
այն բանի համար, որ նա Մեբարսապեսին՝ Ադիաբենեի թա-
գավորին, զինական ուժ էր ուղարկել, որը և ամբողջությամբ
կորստի էր մատնվել հռոմայեցիների կողմից։ Ուստի և
(Տրայանոսը) այդ ժամանակ չսպասեց նրանց գալուն, այլ
ինքը շարժվեց դեպի Ադիաբենե՝ նրանց դեմ. և այսպիսով
Սինգարան[312] և մի քանի այլ վայրեր առանց պատերազմի
նվաճվեցին Լուսիոսի[313] ձեռքով։*

3 *Ադենյուստրեն պարսպապատ ամրություն էր, որտեղ
ոմն հարյուրապետ Սենտիոս ուղարկվեց իբրև դեսպան
Մեբարսապեսի մոտ և այնտեղ կապանքի տակ դրվեց։*

Բայց հետագայում, երբ հռոմայեցիները մոտեցան ամրությանը, նա իր հետ գերվածներից ոմանց կազմակերպեց և նրանց հետ ազատվելով իր կապանքներից, բերդապահների հրամանատարին սպանեց և դարպասները բաց արեց իր հայրենակիցների առաջ։

* * *

26, 1 Տրայանոսը գարնանամուտին ներխուժեց թշնամու եր-
կիրը։ Եվ քանի որ Տիգրիսին մերձակա երկիրը զուրկ էր նա-
վաշինության համար պիտանի անտառանյութից, նա սայ-
լերի վրա դեպի գետը բերեց այն նավերը, որ պատրաստ-
վել էին Նիսիբիսի անտառներում. քանզի դրանք այնպես
էին պատրաստված, որ հնարավոր էր ամբողջովին քանդել
2 և ապա միակցել։ Նա մեծագույն դժվարությամբ կամրջեց
գետը Կարդյուենե լեռան դիմաց. քանզի բարբարոսները
հակադիր ափին կանգնած խանգարում էին։ Բայց Տրայա-
նոսը բազմաթիվ նավեր ու զինվորներ ուներ իր տրամա-
դրության տակ. այնպես որ նավերի մի մասը հապճեպ
միացվում էր իրար, դրանց առջևում շարված նավերի վրա
կանգնած էին հոպլիտներ և աղեղնավորներ, մինչդեռ մյուս-
3 ները փորձում էին գետն անցնել այս կամ այն կետում։ Այս
բոլորի հետևանքով, ինչպես նաև անտառազուրկ երկրում
այսքան մեծ թվով նավերի հայտնվելուց շփոթահար,
4[1] բարբարոսները տեղի տվեցին։ Եվ հռոմայեցիներն անցան
մյուս ափը և գրավեցին ամբողջ Ադիաբենեն, իսկ այս եր-
կիրը Նինվեին սահմանակից Ասսյուրիայի մի մասն է, և Ար-
բելան ու Գավգամելան, որտեղ Ալեքսանդրը հաղթեց Դարե-
հին[314], գտնվում են այս երկրում. այս երկիրը բարբարոս-
ների լեզվով կոչվել է նաև Ատյուրիա, զույգ սիգմա (տա-
ռերը) տաու (տառով) փոխարինելու հետևանքով[315]։
4[2] Ու դրանից հետո նրանք առաջացան մինչև Բաբելոն,
մեծապես ազատ մնալով որևէ խոչընդոտից, քանի որ պար-
թևների ուժերը քայքայվել էին ներքին երկպառակություն-
ներից, մի բան, որը այդ ժամանակ էլ շարունակվում էր։

* * *

28, 1 Տրայանոսը մտադիր էր Եփրատը ջրանցքով բերել
Տիգրիս, որպեսզի այդ ջրանցքով կարողանա իր նավերը
տանել և դրանցով հնարավորություն ունենա կամուրջ պատ-

րաստելու. բայց տեղեկանալով, որ (Եփրատը) ավելի բար-
ձրր է Տիգրիսից. այդ բանը չկատարեց, վախենալով, որ
Եփրատը հորդառատ հունով կհոսի դեպի ցած և դրանով
2 իսկ կդառնա աննավարկելի։ Ուստի և նա ձգափոկերով նա-
վերը քաշեց ու փոխադրեց երկու գետերի միջև եղած նվա-
զագույն տարածության վրայով—քանի որ Եփրատի ամ-
բողջ հոսանքը թափվում է ճահճի մեջ և այնտեղից ինչ-որ
կերպ խառնվում Տիգրիսին—անցավ Տիգրիսը և մտավ
Կտեսիփոն. այն նվաճելուց հետո նրան ողջունեցին իբրև
3 իմպերատոր և նա իրավունք ստացավ Պարթիկոս[316] կոչ-
վելու։ Այլ պատիվներից բացի, սենատի որոշմամբ նրան
իրավունք շնորհվեց հաղթահանդեսներ տոնել ինչքան ինքը
ցանկանա։

Կտեսիփոնը գրավելուց հետո նա ցանկացավ նավել
Էրյութրեյան ծովով[317]։ Այս ծովը օվկիանոսի[318] մի մասն է,
և այդպես է կոչվում մի ժամանակ այստեղ տիրապետած
4 իշխանավորի անունով[319]։ (Տրայանոսը) հեշտությամբ իր
կողմը գրավեց Տիգրիս գետում գտնվող Մեսենե կղզին,
որտեղ թագավորում էր Աթամբելոսը. սակայն նա վտանգի
ենթարկվեց մեծ փոթորկի պատճառով, որն առաջացել էր
Տիգրիսի սրընթաց հոսանքից և օվկիանոսի տեղատվու-
թյունից։

Աթամբելոսը՝ Տիգրիս գետում գտնվող կղզու տիրակա-
լը, հավատարիմ մնաց Տրայանոսին, թեպետև հարկադրվել
էր տուրք վճարել, և այսպես կոչված Քարակս Սպասի-
նուի[320] բնակիչները ևս, որոնք Աթամբելոսի տիրապետու-
թյան տակ էին, նրան բարեկամաբար ընդունեցին։

29, 1 Այստեղից էլ նա եկավ մինչև օվկիանոս և երբ իմա-
ցավ դրա բնույթը և տեսավ դեպի Հնդկաստան ընթացող մի
նավ, ասաց. «Ես հաստատ կարշավեի հնդիկների վրա, եթե
դեռևս երիտասարդ լինեի»։ Քանի որ նա մտածում էր հըն-
դիկների մասին և հետաքրքրվում էր նրանց գործերով,
ապա երանի էր տալիս Ալեքսանդրին։ Նա ասում էր, թե
նրանից ավելի հեռու կգնա և այդ մասին էլ կհաղորդի սե-
նատին, բայց իր նվաճածն իսկ արդեն ի վիճակի չէր պահ-
2 պանել։ Իր բոլոր գործերի համար նա այլ պարգևներ ևս
ստացավ և իրեն իրավունք տվեց իր ցանկությամբ հաղ-
թահանդես տոնելու իր կողմից նվաճված ամեն մի երկրի

համար։ Քանզի (Հռոմ) ուղարկած իր զեկուցագրերում մրշ-
տապես այնքան շատ ժողովուրդների անուններ էր հաղոր-
դում, որ (սենատորները) երբեմն չէին կարողանում պատ-
կերացնել նրանց և նույնիսկ չէին կարողանում ճիշտ ան-
3 վանել։ Եվ (ժողովուրդը Հռոմում) նրա համար այլ պատիվ-
ներից բացի քաղաքի ֆորումում իսկ հաղթության ·կամար
կանգնեցրեց և պատրաստվում էր նրա վերադարձին առա-
վել հեռու գնալով, դիմավորել նրան։ Բայց նրան վիճակված
չէր այլևս ոչ Հռոմ ժամանել, ոչ իսկ իր նախկին սխրանք-
ներին արժանի որևէ գործ կատարել և մինչև իսկ կորցնելու
4 էր իր նախորդ նվաճումները։ Քանզի այն ժամանակամի-
ջոցում, երբ նա նավարկում էր օվկիանոսում և այնտեղից
վերադառնում, նվաճված բոլոր երկրները փոթորկվեցին և
ապստամբեցին, և այդ երկրներում տեղադրված (հռոմեա-
կան) պահակազորները կամ դուրս քշվեցին, կամ կոտոր-
վեցին։
30, 1 Այս ամենի մասին Տրայանոսն իմացավ Բաբելո-
նում[321]։ Քանզի նա եկավ այստեղ թե՛ նրա համբավի պատ-
ճառով, թեպետև նշանակալից ոչինչ չտեսավ, այլ միայն
հողաթմբեր ու քարեր, ավերակներ, և թե՛ Ալեքսանդրի
պատճառով, որին էլ նրա վախճանված տանը զոհաբերու-
թյուն կատարեց։ Ահա իմանալով այդ ամենի մասին, Լու-
սիոսին և Մաքսիմոսին ուղարկեց ապստամբների դեմ։
2 Վերջինս մարտում պարտվելով, սպանվեց. մինչդեռ Լու-
սիոսը, այլ հաջողություններից բացի, վերանվաճեց նաև
Նիսիբիսը, իսկ Եդեսսան պաշարեց, գրավեց և հրի մատ-
նեց։ Սելևկիան նույնպես գրավվեց փոխհրամանատարներ
Երյուկիոս Կլարոսի և Հուլիոս Ալեքսանդրի կողմից և հըր-
կիզվեց։ Տրայանոսը վախենալով, որ պարթևները ևս կա-
րող են խռովություն բարձրացնել, ցանկացավ նրանց թա-
գավոր տալ հենց իրենցից։ Ուստի և գալով Կտեսիփոն, մի
մեծ հրապարակում ի մի կանչեց բոլոր հռոմայեցիներին և
բոլոր պարթևներին, որոնք այն ժամանակ այնտեղ էին ու
ելնելով բարձր բեմ և պարծենալով իր կատարած գործերի
համար, Պարթամասպատեսին[322] պարթևների թագավոր
կարգեց, թագը նրա գլխին դնելով։

ՀԱՏՎԱԾ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ ԳՐՔԻՑ

9, 6 Երբ Վոլոգեսոսը[323], Սանատրուկեսի[324] որդին, պատ-
րաստվել էր Սևերոսի[325] զորքի դեմ ճակատամարտելու և

ընդհարումից առաջ զինադադար էր խնդրել և կնքել, (Տրայանոսը) նրա մոտ դեսպաններ ուղարկեց և Հայաստանի մի մասը շնորհեց նրան խաղաղության առթիվ։

## ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ

31, 1 Այնուհետև (Տրայանոսը) եկավ Արաբիա[326] և գործողություններ ձեռնարկեց Հատրայի[327] բնակիչների դեմ, քանի որ սրանք ևս ապստամբել էին։ Այս քաղաքը ոչ խոշոր է, ոչ էլ բարգավաճ. շրջակա երկիրն էլ մեծ մասամբ անապատ է և ոչ ջուր ունի—բացի փոքր մի քանակից, այն էլ
2 վատ—ոչ անտառ, ոչ իսկ խոտ։ Եվ այս պատճառով էլ անհնարին է դառնում մեծ ուժերով այն երկար պաշարման ենթարկել. նրանց փրկում է նաև Հելիոսը[328], որին էլ քաղաքը ձոնված է. ուստի և ոչ այդ ժամանակ Տրայանոսի կողմից նվաճվեց, ոչ ևս հետագայում՝ Սևերոսի կողմից, թեպետև քաղաքի պարիսպների որոշ մասեր նրանք տապալեցին։
3 Տրայանոսն իր հեծյալներին ուղարկեց առաջ, դեպի պարիսպները, բայց ձախողվեց, ուստի և նրանք ետ շպրտվեցին իրենց ճամբարը, իսկ ինքը՝ Տրայանոսը, հեծյալ անցնելիս, քիչ էր մնացել վիրավորվեր, թեպետև չճանաչվելու համար հանել էր արքայական հանդերձը։ Բայց թշնամիները նկատելով նրա ալեխառն հպարտ գլուխը և դեմքի վեհությունը, կռահեցին նրա ով լինելը, նետեր արձակեցին նրա վրա և սպանեցին նրա հեծյալ ուղեկիցներից
4 մեկին։ Ու որոտ էր լինում, և ծիածան երևում, փայլակներ էին շողում, և տեղատարափ թափվում, ու կարկուտ տեղում, և կայծակներ էին զարկում հռոմայեցիներին, երբ սրանք փորձում էին հարձակվել։ Երբ ուզում էին ճաշել, ճանճեր էին նստում նրանց ուտելիքի և ըմպելիքի վրա, ամեն ինչ տհաճությամբ համակելով։ Տրայանոսը այդտեղից հեռացավ այդ վիճակում և ոչ շատ ժամանակ անց սկսեց հիվանդանալ։

* * *

33, 1 Տրայանոսը պատրաստվում էր նորից արշավել Միջագետք, բայց քանի որ հիվանդությունից ճնշվում էր, ապա նավով ճանապարհվեց Իտալիա, Պուբլիոս Էլիոս Հադրիանոսին զորքի հետ մեկտեղ թողնելով Սիրիայում։ Եվ այս-

պիսով հռոմայեցիները Հայաստանի և Միջագետքի մեծ
մասը գրավելով և պարթևներին հաղթելով իզուր վտանգ-
2 վեցին և իզուր տանջվեցին։ Քանզի պարթևները ևս Պար-
թամասպատեսին գահազրկելով, նորից սկսեցին կառա-
վարվել իրենց սեփական եղանակով։ Իսկ Տրայանոսն էլ
հիվանդացավ, ինչպես ինքը կասկածում էր, իրեն տրված
թույնի հետևանքով. մինչդեռ ուրիշները ասում են, թե
պատճառը արյունն էր, որն ամեն տարի խուժում էր նրա
մարմնի ստորին մասերը, իսկ այս դեպքում կանգ էր առել։
3 Նա նաև կաթվածահար եղավ, ու նրա մարմնի մի մասը
անդամալույծ դարձավ, իսկ ամբողջ մարմինը քրտինք
պատեց։ Եվ նա գալով Կիլիկիայի Սելինուս քաղաքը, որը
մենք անվանում ենք նաև Տրայանուպոլիս, հանկարծ հոգին
փչեց, իշխելով տասնինը տարի վեց ամիս և տասնհինգ օր։

ԳԻՐՔ ՎԱԹՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ

15, 1 Հրեաների պատերազմն այսպես ավարտվեց. մի երկ-
րորդ պատերազմ սկսեցին ալանները—սրանք մասսագետ-
ներ են—Փարասմանեսի դրդմամբ։ Այն մեծապես վնասեց
Ալբանիային և Մեդիային, շոշափեց նաև Հայաստանն ու
Կապպադովկիան, որից հետո ալանները մասամբ համոզվե-
ցին Վոլոգեսոսի ընծաներից, մասամբ էլ վախեցան Կապպա-
դովկիայի կառավարիչ Փլավիոս Արրիանոսից և դադարեցրին
(պատերազմը)։
15, 3 Երբ Փարասմանես Իբերացին իր կնոջ հետ եկավ
Հռոմ, (Անտոնինոսը)[329] ընդարձակեց նրա իշխանությունը
և թույլատրեց նրան զոհ մատուցել Կապիտոլիոնում, ձի
նստած մի արձան կանգնեցրեց Էնիևսի[330] տաճարում ու
դիտեց նրա և նրա որդու և մյուս երևելի իբերների վար-
ժանքը զենքերով։

ԳԻՐՔ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՄԵԿԵՐՈՐԴ

1, 1 Մարկոս Անտոնինոսը[331], փիլիսոփան, երբ իրեն որ-
դեգրած Անտոնինոսը մահանալուց հետո իշխանությունն
ստացավ, անմիջապես իրեն իշխանակից դարձրեց Լուկիոս
Կոմոդոսի որդուն՝ Լուկիոս Վերոսին[332]։ Քանզի ինքը մարմ-
2 նապես թույլ էր և, բացի այդ, շատ էր զբաղվում ճառեր
գրելով—և ասում են, թե նա կայսր լինելով հանդերձ, ոչ ա-
մաչում էր, ոչ էլ ծուլանում ուսուցչի մոտ հաճախելու, այլև

աշակերտներից բեռվտիացի փիլիսոփա Սեքստոսին[333] և չվա-
3 րանեց հաճախելու և լսելու Հերմոգենեսի հռետորական
ճառերը. բայց ինքը առավելապես հակված էր ստոիկյան-
ների ուսմունքին — մինչդեռ Լուկիոսը ուժեղ էր և առավել
երիտասարդ, իսկ ռազմական գործերի համար առավել
հարմար. ուստի և Մարկոս (Ավրելիոսը) նրան ամուսնաց-
րեց իր դստեր՝ Լուկիլլայի հետ և ուղարկեց պարթևների դեմ
պատերազմի։
2, 1 Մինչ այդ Վոլոգեսոսն[334] արդեն պատերազմն սկսել
էր և նա, բոլոր կողմերից շրջապատելով Սևերիանոսի հրա-
մանատարության տակ եղած հռոմեական լեգեոնը, որը
գտնվում էր Ելեգեայում, Հայաստանի մի ինչ-որ վայրում,
բոլորին նետահար էր արել և ոչնչացրել, հրամանատարնե-
րի հետ միասին. այժմ էլ նա ուժեղ հարձակվում էր Սիրիայի
2 քաղաքների վրա և ահաբեկում։ Լուկիոսն, ահա, եկավ Ան-
տիոք և մեծ քանակությամբ զորք հավաքելով և իր հրամա-
նատարության տակ լավագույն զորավարներ ունենալով,
ինքը հաստատվեց քաղաքում, կարգավորեց ամեն ինչ,
հոգալով պատերազմի կարիքները, իսկ զորքերը հանձնեց
3 Կասսիոսին։ Սա քաջաբար դիմադրեց Վոլոգեսոսի ներ-
խուժմանը և ի վերջո, որովհետև դաշնակիցները լքել էին
նրան՝ նահանջելու ժամանակ հալածեց և ետ վանեց մինչև
Սելևկիա և Կտեսիփոն. նա հրդեհելով կործանեց Սելևկիան
և Կտեսիփոնում գտնվող Վոլոգեսոսի պալատները հիմնա-
4 հատակ քանդեց. իսկ վերադարձի ճանապարհին թեպետ
նա կորցրեց իր զինվորների մեծագույն մասին սովի և հի-
վանդության պատճառով, սակայն զորքի մնացորդների հետ
3, 1 նա ետ վերադարձավ Սիրիա։ Այս հաջողությունները Լու-
կիոսին փառավորեցին, և նա մեծապես գոռոզացավ. բայց
իր ծայրագույն բարեբախտությունը իրեն բարիք չբերեց։
Քանզի ասում են, որ այս դեպքերից հետո նա դավեր նյու-
թեց իր աներհոր՝ Մարկոսի դեմ և նախքան կկարողանար
որևէ բան ձեռնարկել, թունավորման միջոցով մատնվեց
կորստի։

Մարտիոս Վերոսն ուղարկել էր Թուկիդիդեսին, որպես-
զի նա Սոեմոսին[335] վերստին բերի Հայաստան։ Սա զենքի
սպառնալիքով, ինչպես և իրեն հանդիպողների նկատմամբ
բոլոր դեպքերում ցուցաբերած բարեմտության շնորհիվ,

արագ թափով առաջ էր ընթանում։ Այս Մարտիոսն ընդունակություն ուներ ոչ միայն զենքերով զսպել իր հակառակորդներին, կամ արագ գործողությամբ կանխել վտանգը, կամ էլ խաբել խորամանկությամբ. մի բան, որ զորավարների ուժն է, այլև համոզիչ խոսքերով հանգստացնել նրանց և բարեկամություն շահել վեհապանծ պարգևներով կամ հրապուրել՝ բարի հույսեր տալով։ ...Արդ՝ (Մարտիոսը) գալով Նոր քաղաք[336], որն իր ձեռքում պահում էր Պրիսկոսի դրած հռոմեական կայազորը, ապստամբության փորձ անողներին թե՛ խոսքով և թե՛ գործով հնազանդեցնելուց հետո հայտարարեց, որ (այդ քաղաքը) կլինի գլխավորը Հայաստանում։

ԳԻՐՔ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

14,2 Նույնպես և Տիրիդատես սատրապին, որը Հայաստա-
նում խռովություններ էր բարձրացրել և սպանել էր հե-
նիոքների[337] թագավորին և իր սուրը թափահարել էր (Մար-
տիոս) Վերոսի վրա, երբ վերջինս հանդիմանել էր նրան
այդ բաների համար, (Մարկոս Ավրելիոսը) չսպանեց, այլ
ուղարկեց Բրետանիա։

ԳԻՐՔ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ

1,1 Մինչ շարունակվում էր (Բյուզանդիոն քաղաքի) պա-
շարումը, Սևերոսը[338], փառքի տենչով արշավեց բարբա-
րոսների՝ օսրոենցիների, ադիաբենցիների և արաբների դեմ։
2 Օսրոենցիները և ադիաբենցիները ապստամբելով պա-
շարեցին Նիսիբիսը, բայց պարտվեցին Սևերոսից. բայց
ահա Նիգերի[339] մահից հետո նրանք դեսպանություն ու-
ղարկեցին նրա մոտ, ոչ թե իրենց գործած որևէ սխալի առի-
թով ներողություն խնդրելու, այլ նույնիսկ նրանից բարե-
գործություն պահանջելով, քանի որ, իբր իրենք ևս նրա
օգտին գործ են կատարել. Նրանք ասում էին, թե Նիգերի
կողմնակից զինվորներին իրենք ոչնչացրել են հանուն նրա։
3 Նրանք նույնպես մի շարք ընծաներ ուղարկեցին նրան և
խոստացան ետ վերադարձնել գերվածներին և իրենց ձեռ-
քըն ընկած ամբողջ ավարը։ Բայց նրանք չէին կամենում
իրենց գրաված ամրությունները թողնել և կամ կայազոր-
ներ ընդունել, այլև պահանջում էին եղածներն իսկ դուրս

բերել երկրից։ Այդ էր պատճառը, որ այս պատերազմը տե-
ղի ունեցավ։

2, 1 Երբ Եփրատն անցնելով մտավ թշնամու տիրույթները,
որտեղ երկիրը միշտ էլ ջրազուրկ է, իսկ այնժամ ամառվա
պատճառով դարձել էր առավել չորային, նա իր զորքերի
2 մեծագույն մասը կորցնելու վտանգի առաջ կանգնեց։ Քան-
զի նրանք արդեն հոգնած էին ռազմարշավից և արևի տա-
պից, երբ հողմափոթորիկ բարձրացավ և նրանց մեծապես
սանջեց, այնպես որ ոչ կարողանում էին քայլել, ոչ էլ
նույնիսկ խոսել, այլ միայն ձայնել՝ «Ջո՜ւր, ջո՜ւր»։ Ու երբ
(ջուր) երևաց, դրա անսովոր լինելու պատճառով թվաց,
որ նույնն է, թե բոլորովին չեն գտել. մինչև որ Սևերոսը
գավաթ պահանջեց և այն ջրով լցնելով, բոլորին ի տես
3 խմեց։ Այսպիսով, ոմանք ևս խմեցին ու կազդուրվեցին։ Այ-
նուհետև Սևերոսը գալով Նիսիբիս, ինքն այնտեղ մնաց, իսկ
Լատերանոսին, Կանդիդոսին և Լետոսին ուղարկեց վերոհիշ-
յալ բարբարոսների մոտ, տարբեր ուղղություններով. և
նրանք տեղ հասնելով, ավերում էին բարբարոսների եր-
կիրը և գրավում քաղաքները։

3, 1 Այդ ժամանակ, թեպետև սկյութները ձգտում էին պա-
տերազմելու, բայց քանի որ հավաքվել էին խորհրդի, սկսեց
որոտալ և փայլատակել, և տեղատարափ սկսվեց, ու կայ-
ծակներ ընկան նրանց վրա, և ավագներից երեքն սպանվե-
ցին, ապա նրանք ետ կանգնեցին։

2 Սևերոսը դարձյալ իր բանակը բաժանեց երեք մասի և
մի մասը Լետոսին, մյուսը՝ Անյուլլիոսին և երրորդը Պրո-
բոսին տալով, ուղարկեց Արքե[340]։ Նրանք երեք հատվածով
ներխուժեցին և նվաճեցին երկիրը, թեպետև ոչ առանց դըժ-
վարության. իսկ Սևերոսը շնորհ արեց Նիսիբիս քաղաքին և
այն հանձնեց հեծյալի կառավարմանը։ Նա ասում էր, որ
ընդարձակ մի երկիր է միացրել (կայսրությանը) և այն
3 դարձրել է պատվար Սիրիայի համար։ Բայց գործնակա-
նում բոլորովին էլ այդպես չէր, քանի որ փաստորեն այն
պատճառ էր դառնում մշտական պատերազմների և խոշոր
ծախսերի, մինչդեռ քիչ• եկամուտ տալով, խոշոր (գումար-
ներ) էր վատնում. իսկ այսպիսով մենք առավել մոտենալով
մեդացիներին և պարթևներին, մշտապես կարծես թե նրանց
համար պատերազմում ենք նրանց հարևանների դեմ։

9,1 Այնուհետև (Սևերոսը) արշավեց պարթևների դեմ.
որովհետև, մինչդեռ ինքը զբաղված էր քաղաքացիական
պատերազմով, նրանք (գործողությունների) ազատություն
ստանալով գրավել էին Միջագետքը, մեծ բազմությամբ ար-
շավելով այնտեղ. դույզն ինչ և նրանք կգրավեին նաև Նի-
սիբիսը, եթե Լետոսը, որն այնտեղ պաշարման էր ենթարկ-
2 վել, չփրկեր քաղաքը։ Այս պատճառով էլ (Լետոսը) առավել
ևս հռչակվեց, թեև նա գերազանց էր նաև այլ գործերում՝
թե՛ մասնավոր և թե՛ հասարակական, ինչպես պատերազմ-
ների ընթացքում, նույնպես և խաղաղ ժամանակ։ Սևերոսը,
ժամանելով վերոհիշյալ Նիսիբիս, այնտեղ պատահեց մի
շատ խոշոր վարազի։ Այն սպանել էր մի հեծյալի, որն ա-
պավինելով իր սեփական ուժին, փորձել էր տապալել նրան.
այն դժվարությամբ բռնվեց մի մեծ խումբ զինվորների օգ-
նությամբ և մորթվեց. նրան բռնած զինվորների թիվը ե-
3 րեսուն էր.ահա (այս վարազը) բերեցին Սևերոսին։ Իսկ
պարթևները չմնացին մինչև Սևերոսի գալը, այլ մեկնեցին
իրենց երկիրը։ Նրանց առաջնորդը Վոլոգեսոսն[341] էր, որի
եղբայրը[342] ուղեկցում էր Սևերոսին։ Արդ. Սևերոսը Եփրա-
տի վրա նավակներ պատրաստելով, մասամբ նավակնե-
րով, մասամբ էլ հետիոտն իջավ նրա երկարությամբ։ Պատ-
րաստված նավակները շատ սրընթաց էին և արագասահ և
ամրակառույց—քանզի Եփրատի երկայնքով և շրջակա վայ-
րերում անտառները առատ նյութ էին մատակարարում—
ուստի և նա արագ կերպով գրավեց Սելևկիան և Բաբելո-
4 նը, որոնք նախապես լքված էին։ Այնուհետև, գրավելով
նաև Կտեսիփոնը, նա թույլ տվեց, որ զինվորները թալանեն
ամբողջ քաղաքը և մեծ թվով մարդկանց կոտորեց և մոտ
տասը բյուր կենդանի վերցրեց։ Բայց և այնպես ոչ Վոլոգե-
սոսին հետապնդեց, ոչ էլ Կտեսիփոնում հաստատվեց. այլ,
ասես թե այդ արշավանքը կատարվել էր միայն այդ քա-
ղաքը թալանելու նպատակով, նա ետ եկավ, որովհետև մի
կողմից երկիրն անծանոթ էր և մյուս կողմից՝ պարենի պա-
5 կաս էր զգում։ Նա վերադարձավ այլ ճանապարհով, որով-
հետև նախորդ արշավանքի ընթացքում պատահած անտա-
ռանյութը և խոտը սպառվել էր. զինվորների մի մասը վերա-
դարձավ հետիոտն Տիգրիսի ափին ի վեր, մյուս մասն էլ նա-
վակներով։

10, 1 Այնուհետև Սևերոսը անցնելով Միջագետք, մի փորձ
կատարեց նաև Հատրայի դեմ, որը հեռու չէր գտնվում,
բայց ոչ մի հաջողություն չունեցավ. այլ, ընդհակառակը,
նրա պաշարողական մեքենաները այրվեցին, և շատ զին-
վորներ կործանվեցին, իսկ շատ շատերն էլ վիրավորվե-
ցին։ Այս պատճառով էլ Սևերոսը հեռացավ այնտեղից և
2 վերադարձավ։ Այս պատերազմի ընթացքում էլ նա մահվան
ենթարկեց երևելի այրերից երկուսին. պրետորյանների տրի-
բուն Հուլիոս Կրիսպոսին, որովհետև սա դժգոհելով պա-
տերազմի աղետներից, պոետ Մարոնի մի խոսքն ասաց,
որտեղ Տուրնոսի հետ Էնեասի դեմ կռվող զինվորներից մեկը
ողբալով ասում է. «Որպեսզի Տուրնոսը ամուսնանա Լավի-
նիայի հետ, մենք, առանց որևէ մեղքի, կործանվում
ենք»[343]։ Ու Վալերիոսին՝ նրան մեղադրող զինվորին, Սևե-
3 րոսը նրա փոխարեն կարգեց տրիբուն։ Նա սպանեց նաև
Լետոսին, որը խելամիտ էր և սիրված էր զինվորներից,
որոնք ասում էին, թե չեն գնա արշավանքի, եթե իրենց Լե-
տոսը չառաջնորդի։ Եվ քանի որ ինքը ոչ մի ակնառու պատ-
ճառ չուներ, բացի նախանձից, ապա փորձում էր նրա սպա-
նության մեղքը գցել զինվորների վրա, որ իբր այդ բոլո-
րը նրանք կատարել են հակառակ իր ցանկության։

11, 1 Ինքը նորից արշավեց Հատրայի վրա, նախապես ամ-
բարելով մեծ քանակությամբ պարեն և պատրաստելով բազ-
մաթիվ պաշարողական մեքենաներ։ Քանզի նրան թվում
էր, թե անպատվաբեր է, որ երբ մնացած բոլոր վայրերը
նվաճվել են, այս մեկը, գտնվելով այդ բոլորի մեջտե-
ղում, դեռևս դիմադրում է։ Սակայն նա թե՛ մեծ քանա-
կությամբ փող վատնեց և թե՛ իր (պաշարողական) մեքե-
նաների մեծ մասը, բացի Պրիսկոսի[344] պատրաստածներից,
ինչպես ասել ենք վերևում, կորցրեց. և այդ բոլորից բացի
2 նաև մեծ թվով զինվորներ։ Քանզի շատերը կործանվեցին
անասնակեր հայթայթելու համար կատարված արշավանք-
ների ընթացքում, քանի որ բարբարոսների հեծելազորը
—ես նկատի ունեմ արաբականը—ամենուրեք ուժգին և մեծ
արագությամբ հարձակվում էր նրանց վրա. հատրացիներն
էլ իրենց նետահարումներով շատ հեռու էին հասնում—քան-
զի նրանք իրենց նետերի մի մասն արձակում էին մեքե-
նաների միջոցով, այնպես որ նրանք հարվածեցին նույնիսկ

3 Սևերոսի թիկնապահներից շատերին. նրանք երկու նետ
միանգամից էին արձակում և բազում ձեռքեր ու բազում
աղեղներ միանգամից էին նետում—բայց հռոմայեցիները
ամենամեծ կորուստը կրեցին, երբ մոտեցան պարիսպնե-
րին և առավել ևս, երբ պարիսպների մի (փոքր) մասը քան-
4 դեցին. քանզի նրանց վրա, այլ բաներից բացի, թափեցին
նաև կուպրալից այն նավթը, որի մասին գրել եմ վերևում[345],
և հրկիզեցին (պաշարողական) մեքենաները և բոլոր զին-
վորներին, ում վրա այն թափվեց։ Այս ամենը Սևերոսը
12, 1 դիտում էր բարձր բեմի վրա նստած։ Երբ արտաքին պարսպի
մի մասը քանդվեց, և բոլոր զինվորները ձգտում էին բռնու-
նությամբ ներխուժել մնացած մասը, Սևերոսը արգելեց
նրանց այդ անել, հրամայելով ամեն կողմից հստակորեն
2 շեփորել վերադարձի ազդանշանը։ Քանզի այդ վայրը մե-
ծապես հռչակված էր այն բանով, որ իբր դրամական մեծ
հարստությունից բացի, այնտեղ կային նաև Հելիոսին ձոնված
բազմաբազում ընծաներ. և Սևերոսը հույս ուներ, որ արաբ-
ները կամովին կգան համաձայնության, որպեսզի բռնու-
3 թյամբ չնվաճվեն ու գերեվարվեն։ Եվ այսպես, մի օր բաց
թողնելուց հետո, քանի որ ոչ ոք նրա մոտ չեկավ բանակցու-
թյուն վարելու, նա զինվորներին հրամայեց դարձյալ գրո-
հել պարիսպները, թեպետև դրանք գիշերվա ընթացքում
վերակառուցվել էին։ Բայց եվրոպացիներից[346], որոնք և
միայն ի վիճակի էին ինչ-որ բան կատարել, ոչ մեկը չհնա-
զանդվեց նրան նրա հանդեպ ունեցած զայրույթի պատճա-
ռով, ոչ իսկ մյուսները՝ սիրիացիները, որոնք նրանց փո-
4 խարեն ստիպված էին գրոհել, չարաչար կործանվեցին։ Եվ
այսպիսով, աստված, որը փրկել էր քաղաքը, նախ զինվոր-
ներին, որոնք կարող էին ներխուժել (քաղաք), ետ կանչեց
Սևերոսի միջոցով, ապա երբ Սևերոսը հետագայում ցան-
կացավ գրավել այն, զինվորների միջոցով խանդարեց
5 նրան։ Ահա այս պատճառով էլ Սևերոսը այնքան շփոթվեց,
որ երբ նրա մերձավորներից ինչ-որ մեկը խոստացավ, որ
եթե իրեն տրամադրի եվրոպացի զինվորներից միայն հինգ
հարյուր հիսուն մարդ, ապա ինքը առանց մյուս զորքերը
վտանգի ենթարկելու, կգրավի քաղաքը, ի լուր բոլորի՝ պա-
տասխանեց. «Իսկ որտեղի՞ց ես այդքան զինվոր գտնեմ»․

այդ ասում էր զինվորների անհնազանդությունն ակնարկելով։

13, 1 Այսպես, քսան օր (քաղաքը) պաշարելուց հետո մեկնեց Պաղեստին և զոհեր մատուցեց Պոմպեոսի պատվին։

## ԳԻՐՔ ՅՈԹԱՆԱՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ[347]

12, 1a Ավգարոսը[348], Օսրոենեի թագավորը, երբ մի անգամ արդեն տիրել էր իր ցեղակիցներին, ոչ մի դաժան միջոց չթողեց, որ չկիրառեր նրանց երևելիների դեմ։ Նա խոսքով հորդորում էր նրանց հրաժարվել հռոմեական բարքերից, մինչդեռ գործնականում իր անսահման իշխանությունն էր կիրառում նրանց վրա։

1[2] Արդ՝ (Անտոնինոսը)[349] խաբելով Օսրոենեի Ավգարոս թագավորին, համոզեց նրան իբրև բարեկամի գալ իր մոտ, որից հետո նրան ձերբակալելով կալանավորեց և այդպիսով Օսրոենեն, որը մնացել էր առանց թագավորի, հպատակեցրեց։

Իսկ հայոց թագավորին[350], որը վեճի մեջ էր իր որդիների հետ, բարեկամական նամակներով նույնպես կանչեց, իբր նրանց հաշտեցնելու պատրվակով, բայց սրանց հետ ևս
2 վարվեց այնպես, ինչպես Ավգարոսի հետ։ Սակայն հայերը չհանդուրժեցին նրան, այլ դիմեցին զենքի, ու այլևս նրանցից ոչ ոք երբևիցե ոչ մի բանում նրան չէր հավատում, այնպես որ նա գործով սովորեց, թե որքան վնասաբեր է կայսեր համար խաբեությամբ վերաբերվել բարեկամներին[351]։

2a Նա մեծապես պարծենում էր, որ պարթևների թագավոր Վոլոգեսոսի[352] մահից հետո նրա որդիները կռվում էին գահի համար, պատահաբար կատարվող այդ դեպքերը վերագրելով իր կատարած նախապատրաստական աշխատանքին։

* * *

18, 1 Այսպիսի գործեր կատարեց (Անտոնինոսը) Նիկոմեդիայում ձմեռելու ժամանակ. նա մարզեց նաև մակեդոնական փաղանգը և երկու շատ խոշոր մեքենաներ կառուցեց հայկական և պարթևական պատերազմների համար այնպես, որ դրանք քանդած վիճակում նավերի վրա կարողանար փոխադրել Սիրիա...

* * *

19,1 Երբ նա արշավեց պարթևների դեմ, այդ պատերազմը
պատճառաբանեց նրանով, որ Վոլոգեսոսը, երբ ինքը նրա-
նից պահանջեց Տիրիդատեսին[353] և նրա հետ ոմն Անտիո-
քոսի, նրանց չհանձնեց։ Այս Անտիոքոսը կիլիկեցի էր և
սկզբում իբրև թե կիլիկյան փիլիսոփա էր և դրանով պատե-
2 րազմում մեծապես օգնել էր զինվորներին. քանզի երբ
զինվորները ցրտաշունչ ձմռան պատճառով հուսահատվել
էին, նա կարողանում էր սրտապնդել նրանց՝ իրեն նետե-
լով ձյան մեջ և թավալվելով դրա վրա։ Ուստի և նա շատ
դրամ և պատիվներ ստացավ թե՛ Սևերոսից և թե՛ Անտո-
նինոսից։ Այս ամենից նա այնքան գոռոզացավ, որ հարեց
Տիրիդատեսին և սրա հետ միասին փախավ պարթև (թա-
գավորի) մոտ։

* * *

21,1 Երբ պարթև (թագավորը) վախեցավ և Տիրիդատեսին
ու Անտիոքոսին հանձնեց (կայսեր), սա իսկույն ևեթ հրա-
ժարվեց արշավանքից. բայց Թեոկրիտոսը, որին զորքով նա
ուղարկել էր հայերի դեմ, նրանց կողմից պարտության մատ-
նըվեց և ծանր դժբախտության մեջ ընկավ։

## ԳԻՐՔ ՅՈԹԱՆԱՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ[354]

1,1 Այնուհետև (Անտոնինոսը) արշավեց պարթևների դեմ
այն պատրվակով, որ Արտաբանոսը[355] չէր ցանկացել իր
դստերը ամուսնության տալ իրեն—քանզի (Արտաբանոսը)
լավ էր հասկանում, որ նա խոսքով իբր ուզում էր իր աղջկա
հետ ամուսնանալ, բայց իրականում ցանկանում էր սեփա-
2 կանել պարթևների թագավորությունը— ուստի (Անտոնի-
նոսը) հանկարծակի հարձակվելով, մեծ տարածության վրա
երկիրը ավերեց Մեդիայի շուրջը, մեծ թվով բերդեր նվա-
ճեց, գրավեց Արբելան[356] և բաց անելով պարթևների ար-
քունի դամբարանները, ցրիվ տվեց ոսկորները, քանի որ
3 պարթևները նույնիսկ չկռվեցին նրա դեմ։ Հետևաբար և ես
այդ ժամանակ կատարվածների մասին ոչ մի բացառիկ
բան չունեմ գրելու, բացի այն, որ երկու զինվորներ, գինով
լիքը մի տիկ հափշտակած, դիմեցին նրան, յուրաքանչյու-

րը իր համար պահանջելով ամբողջ այդ ավարը։ Երբ (կայս-
րը) նրանց հրամայեց գինին հավասարապես բաժանել
իրար միջև, ապա նրանք մերկացրին իրենց թրերը և տիկը
կիսեցին, այն գինու հետ կես առ կես ստանալու համար։
4 Նրանք այնքան էին հարգում իրենց կայսեր, որ նույնիսկ
նման հարցերով էին նրան անհանգստացնում և այնքան
խելք ունեին, որ կորցրին թե՛ տիկը և թե՛ գինին։ Ահա և
բարբարոսներն ապաստանեցին լեռներում, Տիգրիսից այն
կողմ, որպեսզի պատրաստություն տեսնեն, իսկ Անտոնի-
նոսը թաքցնում էր այս, ասես ինքը վերջնականապես հաղ-
թել էր նրանց, որոնց նույնիսկ չէր էլ տեսել. և հատկապես
պարծենում էր, որ ինչպես ինքը հաղորդել էր, հանկարծ
լեռից իջած մի առյուծ կռվում օգնել էր իրեն։

* * *

26, 2 Մակրինոսը[357] տեսնելով, որ Արտաբանոսը խիստ կայ-
րացած է իր կրած այս չարիքների պատճառով և մեծ զոր-
քով ներխուժել է Միջագետք, նախ ինքնակամ նրան ուղար-
կեց գերիներին և բարեկամական ուղերձ, խաղաղություն
հաստատելու առաջարկով, տեղի ունեցածների պատճառը
3 համարելով Տարավտասին[358]։ Բայց (Արտաբանոսը) չըն-
դունելով այդ, միաժամանակ հրամայեց, որ (Մակրինոսը)
վերաշինի քանդված բերդերն ու քաղաքները և ամբողջովին
հեռանա Միջագետքից և հատուցում տա ինչպես մյուս բո-
լորի, այնպես էլ թագավորական գերեզմանների պղծման
4 համար. քանզի նա հույսը դրել էր իր հավաքած մեծաքա-
նակ զորքի վրա և արհամարհելով Մակրինոսին որպես անար-
ժան ինքնակալի, անհագ զայրույթով էր լցված նրա դեմ և
հույս ուներ, որ առանց նրա համաձայնության իսկ ինքը
5 կկատարի իր կամեցած ամեն ինչը. Մակրինոսը նույնիսկ
ժամանակ չունեցավ խորհրդակցելու, այլ հանդիպելով
նրան դեպի Նիսիբիս առաջանալիս, պարտվեց, երբ ճամ-
բարած իր զինվորները ջրի համար կռվի բռնվեցին թշնամու
հետ։ Քիչ էր մնացել, որ նա նույնիսկ ռազմական ճամբարը
կորցներ. բայց այնտեղ գտնվող վահանակիրները և գումա-
կայինները փրկեցին այն. քանզի սրանք քաջալերվելով
դուրս եկան ճամբարից և հարձակվեցին բարբարոսների
վրա. այս հանկարծակի հարձակումը օգնեց նրանց և թվում

էր, թե նրանք ոչ թե սպասավորներ են, այլ զինված մար-
տիկներ[359]...
8 ...Այնժամ ահա այս դեպքերը կատարվեցին. իսկ աշ-
նանն ու ձմռանը, երբ կոնսուլներ էին Մակրինոսը և Ադ-
վենտոսը, նրանք այլևս իրար հետ կովի չբռնվեցին, այլ
դեսպանություններ և բանագնացներ փոխանակելով, իրար
27, 1 հետ համաձայնության եկան։ Քանզի Մակրինոսը բնածին
երկչոտությունից —նա, որպես մավր, շատ էր վախկոտ—
ինչպես նաև զինվորների անկարգության պատճառով,
չհամարձակվեց պատերազմել, այլ խաղաղության համար
շատ առատ ընծաներ պարգևեց ու դրամ ուղարկեց թե՛ Ար-
տաբանոսին և թե՛ նրա հզորագույն մերձավորներին, այն-
քան, որ ամբողջ ծախսը կազմեց հինգ հազար բյուր (դրաք-
2 մե)[360]։ Իսկ (Պարթևը) նույնպես դեմ չէր հաշտության թե՛
այս (նվերների) պատճառով, և թե՛ քանի որ նրա զինվոր-
ները անհանգստանում էին, որովհետև երկար ժամանակ է,
ինչ տնից հեռացել էին —իսկ այդ բանին նրանք սովոր
չէին— որով և պարենի պակաս էին զգում. քանզի նրանք
այդպիսի պատրաստություն չեն տեսնում, իսկ տեղում էլ
չէին կարողանում պարեն ձեռք բերել, քանի որ այն կամ
3 ոչնչացված էր, կամ էլ գտնվում էր բերդերում։ Այսուհան-
դերձ Մակրինոսը բոլոր կատարվածների մասին ճշգրիտ
զեկույց չէր ուղարկել սենատին, ուստի և որոշվեց նրա
պատվին հաղթանակի զոհեր մատուցել և միաժամանակ
նրան շնորհվեց «պարթևական» տիտղոսը։ Բայց նա մեր-
ժեց այդ, ամաչելով, իհարկե, վերցնել տիտղոսն այն թըշ-
նամու համար, որից ինքը պարտվել էր։
4 Այսուհանդերձ հայոց (թագավորի) դեմ նրա մղած
պատերազմը ևս, ինչպես ասել եմ, դադարեց, երբ Տիրի-
դատեսը[361] ընդունեց Մակրինոսի կողմից իրեն ուղարկված
թագը, ինչպես նաև մորը, որին Տարավտասը տասնմեկ ա-
միս պահել էր բանտում, ինչպես նաև ստացավ այն ամբողջ
ավարը, որ տարված էր Հայաստանից և բոլոր այն երկրր-
ները, որ նրա հայրը ձեռք էր բերել Կապպադովկիայում.
Նա հույս ուներ նաև ստանալու այն փողը, որ ամեն տարի
ուղարկում էին հռոմայեցիները[362]։

* * *

39, 1 Արդ՝ պարտվելով հունիսի ութին, (Մակրինոսը) իր
որդուն Եպագաթոսի և մի քանի այլոց միջոցով ուղարկեց

Արտաբանոսին, իսկ ինքը մտավ Անտիոք իբրև հաղթանա-
2 կած, որպեսզի ընդունեն իրեն. բայց երբ նրա պարտու-
թյունը հայտնի դարձավ, ու շատերը սպանվեցին ճանա-
պարհներին և քաղաքում, այս կամ այն կողմին համակրե-
լու պատճառով, նա այստեղից ևս ձիով փախավ գիշերով.
գլուխն ու ամբողջ մորուքը սափրած, ծիրանի (թիկնոցի)
վրայից գորշագույն արտաքգեստ հագած, որպեսզի առավե-
3 լագույն չափով նմանվի սովորական քաղաքացու։ Այս ձևով
նա փոքր խմբի հետ հասավ Կիլիկիայի Այգե քաղաքը, որ-
տեղ ներկայացավ իբրև սուրհանդակ զինվորներից մեկը և
ստանալով մի կառք, դրանով անցավ Կապպադովկիան, Գա-
լատիան և Բյութանիան, մինչև Երիբոլոն նավահանգիստը,
որը գտնվում է Նիկոմեդիա քաղաքի դիմաց. նա մտադիր
էր վերադառնալ Հռոմ, որտեղ հույս ուներ սենատի և ժո-
4 ղովրդի օգնությունն ստանալ։ Եթե նա իրոք խուսափեր, ա-
պա գուցե կարողանար ինչ-որ հաջողության հասնել. քանզի
ժողովուրդը առավելապես համակրում էր նրան, սիրիացի-
ների հանդգնության, կեղծ Անտոնինոսի դեռատի տարիքի
և Գաննյուսի ու Կոմազոնի ինքնագլուխ վարվեցողության
պատճառով. այնպես, որ զինվորներն իսկ կամ սիրահո-
ժար պետք է փոխեին իրենց վերաբերմունքը, կամ էլ, հա-
5 կառակ դեպքում, պետք է ենթարկվեին։ Արդ՝ իր անցած
(երկրներում) ժողովրդի միջից և ոչ մեկը, եթե նույնիսկ
նրան ճանաչած լիներ, նրա վրա ձեռք չէր բարձրացնում։ Իսկ
Երիբոլոնից Քաղկեդոն նավելիս —քանզի նա չհամարձակ-
վեց մտնել Նիկոմեդիա, վախենալով Բյութանիայի կառա-
վարիչ Կեկիլիոս Արիստոնից—պրոկուրատորներից մեկի
մոտ մարդ ուղարկեց դրամ պահանջելով և դրանով իսկ
ճանաչվեց և ձերբակալվեց Քաղկեդոնում[363]... Հարյուրա-
պետ Ավրելիոս Կելսոսի կողմից և մինչև Կապպադովկիա
40, 1 բերվեց իբրև ամենաանարգված մարդկանցից մեկը։ Այս-
տեղ էլ իմանալով, որ իր որդին ևս բռնվել է—նրան ձեռք էր
գցել Կլավդիոս Պոլլիոնը՝ լեգեոնի հարյուրապետը, Զևգման
անցնելիս, որտեղ նախորդ անգամ կեսար էր հռչակվել—
իրեն կառքից ցած նետեց—քանի որ կապված չէր—և իր
ուսը միայն ջարդեց. բայց քիչ հետո, երբ արդեն որոշվել էր
նրան մահվան ենթարկել Անտիոք չմտած, սպանվեց հար-
յուրապետ Մարկիանոս Տավրոսի կողմից...

3, 1 Շատ երկրներում շատ ապստամբություններ ծագեցին,
և դրանցից մի քանիսը թեև խիստ ահեղ էին, սակայն
ճնշվեցին։
Իսկ Միջագետքում կատարված դեպքերը առավել ա-
հավոր էին և իրականում սարսափ էին գցել բոլորի վրա. ոչ
միայն Հռոմի բնակիչների, այլև մյուս վայրերի։ Քանզի ոմն
2 Արտաքսերքսես[364], պարթևներին երեք ճակատամարտում
հաղթելուց և նրանց թագավոր Արտաբանոսին սպանելուց
հետո, ռազմի ելավ Հատրայի դեմ, այն (գրավելով) հռո-
մայեցիների դեմ իր համար հենարան դարձնելու նպատա-
կով։ Նա թեև կործանեց պարիսպը, բայց կորցնելով իր զին-
վորներից շատերին, որոնք դարանի մեջ էին ընկել, ետ նա-
3 հանջեց Մեդիա և, այս երկրում, ինչպես նաև Պարթիայում,
մասամբ բռնությամբ, մասամբ էլ ահաբեկմամբ, գրավե-
լով մի շարք շրջաններ, շարժվեց դեպի Հայաստան։ Այս-
տեղ նրան դիմադրեցին տեղի բնակիչները և մեդացիներից
ոմանք, ինչպես նաև Արտաբանոսի որդիները և նա, ինչ-
պես ոմանք ասում են, փախավ. իսկ ուրիշները ասում են,
թե նա ետ քաշվեց, ավելի մեծ զորք պատրաստելու հա-
4 մար։ Այսպիսով, նա մեզ համար ահավոր եղավ. քանզի
նա մի խոշոր բանակով պատրաստ նստել էր, սպառնա-
լով ոչ միայն Միջագետքին, այլև Սիրիային։ Նա սպառ-
նում էր, որ վերստին կնվաճի այդ ամենը, որպես նախնի-
ներից իրեն հասնող ժառանգություն, (ինչպես և) այն բո-
լոր (երկրները), ինչ հնում պարսիկները ունեին մինչև հել-
լենական ծով[365]։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1 Այստեղ Դիոն Կասսիոսն ընդհանրապես նկատի է ունեցել հռոմայեցիններին։

2 Լրիվ անունը՝ Titus Quinctius Flamininus: Հռոմայեցի զորավար. ծնվել է մ. թ. ա. 225 թ.։ Կոնսուլ է ընտրվել 198 թ.։ Արշավելով Հունաստան և Մակեդոնիա, 197 թ. հաղթեց Փիլիպպոս V-ին և ազատ հռչակեց հունական քաղաքները։ 195 թ. հրահրեց հունական քաղաքների պատերազմը Նաբիսի դեմ։ 189 թ. ուղարկվեց Բյութանիա և տեղի Պրուսիաս թագավորից պահանջեց Հաննիբալին հանձնել։ Վերջինս ստիպված դիմեց ինքնասպանության։

3 Նաբիսը 207 թ. Սպարտայում անցնելով իշխանության գլուխ, ձեռնամուխ եղավ հին կարգերն ու հարաբերությունները վերացնելու և նորերը հաստատելու գործին։ Պատմագրության մեջ հիրավի Նաբիսի ձեռնարկած բարենորոգումների բնույթը դիտվում է իբրև հեղափոխիչ։ Սկզբնական շրջանում Նաբիսին հաջողվեց իր կողմը գրավել շահագործվող և իրավազուրկ խավերին, բայց ի վերջո Հռոմին հաջողվեց հունական պոլիսները ոտքի հանել Նաբիսի դեմ, որը և 192 թ. սպանվեց։

4 Էտոլիա կոչվում էր Կենտրոնական Հելլադայի արևմտյան մասը։ Մ. թ. ա. III—II դդ. այստեղ կազմվել էր հունական պոլիսների բավական հզոր մի ֆեդերացիա։

5 Խոսքը վերաբերում է Մակեդոնիայի թագավոր Փիլիպպոս V-ին (221—179 թթ.)։

6 Սա Սելևկյան Անտիոքոս III թագավորն է (224—187 թթ.)։

7 Հելլենիստական Եգիպտոսի թագավորները կրել են միևնույն՝ Պտղոմեոս անունը։ Սա Պտղոմեոս V Եպիփանեսն է (205—181 թթ.)։

8 Կապպադովկիայի թագավորներից շատերը կրել են Արիարաթես անունը, քանի որ այդ եղել է թագավորության հիմնադրի անունը։ Այստեղ հիշատակվածը Արիարաթես IV-ն է, որը ժամանակակից է եղել հայոց Արտաշես I թագավորին։

9 Եվմենես II-ը (197—159 թթ.) Պերգամոնի ամենաեռանդուն թագավորներից է եղել, Սելևկյանների մրցակիցը Փոքր Ասիայում. ուստի և մեծապես օգնել է հռոմայեցիներին՝ Սելևկյանների տերության դեմ նրանց պատերազմներում։ Եվմենեսը, ինչպես հետևում է Պոլիբիոսի կարևոր մի հաղորդումից

*(Polyb., XXV, 2, 1—12), քաղաքական հարաբերությունների մեջ է եղել Արտաշես I-ի հետ։*

10 *Սելևկյան Դեմետրիոս I Սոտերը թագավորել է 162—149 թթ.։*

11 *Հռոմի արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ էր գրավում այս կամ այն երկրի տիրակալին «Հռոմի բարեկամ և դաշնակից» հայտարարելը։ Դա, փաստորեն, նշանակում էր այդ երկրի որոշակի կախվածությունը Հռոմից։*

12 *Սա Ատտալոս II-ն է (159—138 թթ.), որը իր եղբոր՝ Եվմենեսի մահից հետո գահ բարձրացավ Պերգամոնում։*

13 *Բնագրում՝ Միթրիդատես։ Խոսքը Պոնտոսի թագավոր Միհրդատ VI Եվպատորի մասին է (111—63 թթ.)։*

14 *Բյութանիայի Նիկոմեդես III թագավորը (91—74 թթ.) երկու անգամ իր երկրից հեռացվեց Միհրդատ Եվպատորի արշավանքներից հետո, բայց երկու անգամ էլ վերադարձավ հռոմայեցիների օգնությամբ։ 74 թ. անզավակ մեռնելիս նա իր երկիրը կտակեց Հռոմին. այս էլ առիթ ծառայեց Միհրդատյան երրորդ պատերազմին։*

15 *Կապպադովկիայի թագավոր Արիոբարզանես I-ին (99—63 թթ.) երկրից վտարել էր Միհրդատ Եվպատորը Տիգրան Մեծի հետ դաշնակցած։ Միհրդատյան պատերազմների ժամանակ Կապպադովկիան դարձել էր կռվախնձոր Հռոմի և Միհրդատ-Տիգրան Մեծ կոալիցիայի միջև։ Այս մասին մանրամասն տե՛ս* Հ. Հ. Մանանդյան, *Տիգրան Երկրորդը և Հռոմը, Երևան, 1940, էջ 30 և հաջ.։*

16 *Տրալլես—հնագույն քաղաք Լյուդիայում, որն արդեն վաղուց է ինչ լրիվ հելլենականացել էր։*

17 *Դոդոնե—գեղատեսիլ ձոր Եպիրոսում, նույնանուն քաղաքով, որտեղ կար Զևսին նվիրված տաճար-պատգամատուն։*

18 *Այս գրքի սկիզբը Դիոն Կասսիոսի ձեռագրերում չի պահպանվել։ Կորած մասերի բովանդակությունը պարունակում է Քսիփիլինոսի կոնսպեկտի այս հատվածը։*

19 *Բարբարոսներ ասելով հեղինակն այստեղ նկատի ունի Տիգրանակերտի պաշտպաններին։*

19ա *Դիոն Կասսիոսի այս վկայությունը՝ Հայաստանում հրկիզող նավթի օգտագործման մասին իր սքրճախոս հաստատումը գտավ վերջերս պատմական Արտաշատի միջնաբերդի տարածքի վրա կատարված հնագիտական պեղումների ժամանակ, որտեղ պարիսպների մոտ հայտնաբերվեց մեծ քանակությամբ նավթ, որն արդեն ստացել էր սև, չորացած կուպրի տեսք։*

20 *Նույնպիսի վկայություն կա նաև Պլուտարքոսի* (Lucull., *27) և Մեմնոնի (գլ. 57) մոտ։*

21 *Այս միջադեպը տարբեր ձևերով պատմում են նաև Պլուտարքոսը, Մեմնոնը և Փրոնտինոսը։ Ահա նրանց վկայությունները.*

*«Իսկ Տիգրանը դեռ սկզբում դուրս գալով քչերի հետ՝ փախավ. և տեսնելով, որ իր որդին ևս հաղորդակից է նույն բախտին, վերցրեց գլխից խույրը և արտասվելով այն հանձնեց նրան ու հրամայեց, որ նա ինքն իրեն փրկի մի այլ ճանապարհով, ինչպես կարող է։ Իսկ պատանին չհամարձակվեց խույրը դնել իր գլխին, այլ տվեց այն պահելու իր ամենահավատարիմ ծառային։ Սա պատահմամբ գերի ընկավ և տարվեց Լուկուլլոսի մոտ ու այսպիսով մյուս ավարի հետ վերցրին նաև Տիգրանի խույրը» (Plutarch*, Lucull., 28, 8—9)։

«Իսկ Տիգրանն իր արքայական խույրը և ապարոշը տվեց որդուն և ինքը փախավ իր ամրոցներից մեկը» (Memn., 57)։

«(Լուկուլլոսը) հարձակվեց նրա դեռևս չկարգավորված մարտաշարքերի վրա և իսկույն ևեթ այնպես ցրիվ տվեց, որ նույնիսկ իրենք թագավորները, դեն նետելով պատվանշանները՝ փախան» (Frontin., Strateg., II, I, 14)։ Նույն միջադեպի մասին վերոհիշյալ հեղինակների հաղորդումներում նկատվող էական տարբերությունները, ինչպես նաև այդ տվյալների բացակայությունը Ապպիանոսի մոտ հիմք են տվել Մոմզենին (Римская история, т. III, էջ 57) և Մանանդյանին (Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 130) պնդելու, որ այդ բոլորը հնարովի են։

22 Դիոնի ձեռագրի այս մասի հատվածայնության պատճառով դժվար է երաշխավորել այս նախադասության թարգմանության ճշտությունը։

23 Սա Պարթևական Հրահատ III թագավորն է (մ. թ. ա. 70—57 թթ.)։

24 Այս երկրամասը, հավանաբար, ընդգրկել է Տիգրանի՝ պարթևներից գրաված Միջագետքը, Ադիաբենեն և «յոթանասուն հովիտները» (Հ. Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 141)։

25 Այս նախադասությունը կրկնակի կարևորություն ունի Տիգրանակերտի պատմության համար. նախ այն, որ συνοικούντων դերբայը ցույց է տալիս, թե Տիգրանի քաղաքը ևս, Մերձավոր Արևելքի հելլենիստական մի շարք քաղաքների նման, հիմնվել և բնակեցվել էր սինոյկիսմոսի միջոցով (այս երևույթի մասին մանրամասն տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Սինոյկիսմոսը հելլենիստական Փոքր Ասիայում և Հայաստանում, ՊԲՀ, 1964, № 1, էջ 107—118։ Նույնի՝ Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, Երևան, 1970, էջ 169—192)։ Այնուհետև, պարզվում է, որ Լուկուլլոսը քաղաքը գրավել է ոչ այնքան ռազմական ուժի միջոցով, որքան քաղաքում ապրող օտարերկրացիների ապստամբության հետևանքով։ Նույնը որոշ տարբերակներով պատմում են նաև Պլուտարքոսը, Մեմնոնը և Ապպիանոսը։ Ահա նրանց վկայությունները.

«Իսկ Տիգրանակերտում հելլեններն ապստամբեցին բարբարոսների դեմ և մատնեցին քաղաքը Լուկուլլոսին. ուստի և սա հարձակվեց ու վերցրեց այն» (Plut., Lucull., 29)։

«Բայց Լուկուլլոսը, վերադառնալով Տիգրանակերտ՝ պաշարեց քաղաքը ավելի համարձակորեն։ Իսկ քաղաքում գտնվող Միհրդատի զորավարները, որ բոլորովին հուսահատվել էին, իրենց փրկելու համար քաղաքը հանձնեցին Լուկուլլոսին» (Memnon., 57)։

«Մանկայոսը, որը Տիգրանակերտից տեսել էր տեղի ունեցած պարտությունը, կասկածելով հելլենների վրա, որոնք նրա մոտ վարձկաններ էին, բոլորին զինաթափ արեց։ Սրանք, վախենալով, որ կկալանավորվեն, բրերով զինված գնացին և բանակ դրին բացօթյա։ Իսկ երբ Մանկայոսը նրանց դեմ զինված բարբարոսներ ուղարկեց, նրանք, վերնազգեստները վահանների փոխարեն կապկպելով ձախ ձեռքերին, խիզախաբար հարձակվեցին դրանց վրա։ Եվ ում որ սպանում էին, իսկույն նրա զենքերը բաժանում էին իրար մեջ։ Իսկ երբ նրանք իրենց, որքան կարող էին, բավարարեցին, գրավեցին երկու աշտարակների միջև եղած պարսպի տարածությունը, դրսից կանչեցին հռոմայեցիներին և ներս թողեցին վեր եկողներին։ Այսպես առնվեց Տիգրանակերտը, և նրա մեծ հարստությունները մատնվեցին կողոպուտի» (Appian., Mithr., 86)։

26 Դժվար է գերագնահատել Դիոնի այս հաղորդման նշանակությունը Արածանիի ճակատամարտի ընթացքը պարզելու համար։ Բանն այն է, որ այս ճակատամարտի մասին աղբյուրներում մենք չունենք այլ վկայություն, բացի վերոհիշյալից և Պլուտարքոսի հաղորդումից (Plut., Lucull., 31)։ Այդ երկու հաղորդումները հիմնովին հակասում են իրար։ Պլուտարքոսի համաձայն, որին հետևում են արևմտաեվրոպական պատմաբանները, Արածանիի ճակատամարտում Լուկուլլոսը հաղթանակ էր տարել, և Տիգրանն ու Միհրդատը ծանր պարտություն էին կրել։ Մինչդեռ, ինչպես իրավացի նկատում է Հ. Մանանդյանը (Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 153—154), Դիոնի այս վկայությունից հետևում է, որ Տիգրանը ոչ միայն պարտություն չէր կրել, այլ, ընդհակառակը, ինքն էր ծանր հարված հասցրել հակառակորդին։

27 Նիսիբիս քաղաքը հայկական աղբյուրների Մծբինն է։

28 Նույն այս դեպքերի մասին պատմող Պլուտարքոսը (Lucull., 32) Տիգրանի եղբորը տալիս է Գուրաս (Γοῦρας) անունը։

29 Այստեղ նկատի է առնված Փոքր Հայքը, որն այդպես էլ երբեք չմիացվեց Մեծ Հայքի թագավորությանը, քանի որ դեռ մինչև Տիգրան Մեծը, դեռևս 115 թ., Միհրդատ Եվպատորը այն միացրել էր իր թագավորությանը։ Տիգրանն, անկասկած, հարաբերությունները չսրելու համար իր դաշնակից Միհրդատի հետ, ստիպված էր հանդուրժել Փոքր Հայքի միացումը Պոնտական թագավորությանը։ Միհրդատի պարտությունից հետո այդ երկիրն անցավ Հռոմի տիրապետության տակ։

30 Դիոնն այստեղ նկատի ունի Միհրդատ Պոնտացուն։

31 Այս հատվածում Դիոնի ձեռագիրը աղավաղված է։

32 Կաբիրա—բերդաքաղաք Պոնտոսի կենտրոնական շրջանում (այժմ՝ Նիկսար կամ Նեոկեսարիա, Գայլ-գետի մոտ)։

33 Տրիարիոս—հռոմայեցի հրամանատար Լուկուլլոսի բանակում, որը վերջինիս կողմից ուղարկվեց Փաբիոսին օգնելու, որին էլ փրկելուց հետո պաշտոնանկ արեց ու փոխարինեց։

34 Կոմանա անունով հայտնի են կապպադովկիական երկու քաղաք, որոնք առևտրի և պաշտամունքային խոշոր կենտրոններ էին. դրանցից մեկը գտնվում էր բուն Կապպադովկիայում, մյուսը՝ Պոնտական Կապպադովկիայում։ Տվյալ դեպքում խոսքը վերաբերում է Պոնտական Կոմանային, որի մասին, որպես տաճարական կենտրոնի, հետաքրքիր տեղեկություններ է հաղորդում Ստրաբոնը (XII, 3, 32)։

35 Ձեռագրի այս մասում նկատելի է ինչ-որ բացթողում։

36 Ագամեմնոնը տրոյական ասքի հերոսներից է։ Նա աքայական զորքերի ընդհանուր զորահրամանատարն էր։ Տրոյայի դեմ նավարկելուց առաջ, պատգամախոսի գուշակության համաձայն, նա պետք է իր դստերը՝ Իփիգենիային, զոհաբերեր Արտեմիս դիցուհուն, որպեսզի վերջինս մեղմեր իր զայրույթը և նպաստավոր հողմ բարձրացներ։ Վերջին պահին, սակայն, երբ պետք է կատարվեր զոհաբերությունը, Արտեմիսը փախցրեց Իփիգենիային և տարավ Տավրիկյան երկիր, որպես իր տաճարի քրմուհի։ Տրոյան նվաճելով տուն վերադառնալուց անմիջապես հետո, Ագամեմնոնը սպանվեց իր կնոջ կողմից։ Ագամեմնոնի որդին՝ Օրեստեսը, սպանելով մորը, լուծեց հոր վրեժը, սակայն վրիժառության ոգիները հալածում են մայրասպանին և նրան նետում Տավրիկյան երկիր, որտեղ ափ դուրս եկող օտարերկրացիներին զոհաբերում էին աստվածնե-

րին. զոհաբերությունը կատարում էր քրմուհի Իփիգենիան՝ Օրեստեսի քույրը։ Այստեղ քույր ու եղբայր իրար ճանաչում են և միասին փախչում Փոքր Ասիա։

37 Ըստ ավանդության, այդ թրով է Իփիգենիան կտրել սրբավայրին ձոնած իր վարսերը։

38 Կոմանայի մասին համապատասխան մի ավանդություն պահպանել է նաև Ստրաբոնը (XII, 2, 3)։ Նա պատմում է. «Թվում է, թե Արտեմիս Տավրոպոլոսի պաշտամունքը Տավրիկյան Սկյութիայից այստեղ բերել է Օրեստեսն իր Իփիգենիա քրոջ հետ։ Պատմում են, թե նա այստեղ թողել է իր սգո վարսերը, որից էլ քաղաքն ստացել է իր անունը»։

39 Գազիուրա—Միհրդատի բերդաքաղաքներից, որը գտնվում էր Կոմանայից ոչ հեռու։

40 Պոնտական Տալավրա բերդաքաղաքի տեղադրությունը, ինչպես նշում է Հ. Մանանդյանը (Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 82), դեռևս բավարար չափով լուսաբանված չէ։ Ըստ երևույթին, այն գտնվում էր Հայաստանի սահմաններից ոչ հեռու, քանի որ մ. թ. ա. 71 թ. Լուկուլլոսից հալածական Միհրդատը Տալավրայի վրայով անցել էր Հայաստան։

41 Սա Ատրպատականի թագավոր Միհրդատն էր, Տիգրանի փեսան և մինչև վերջ հավատարիմ վասալը։

42 Հռոմեական լեգեոնները ունեին իրենց համարները և անունները, Վալերիական (valeria) կոչվում էր հռոմեական XX լեգեոնը (Tit. Liv., VI, 9)։

43 Այստեղ Դիոն Կասսիոսը նկատի ունի Տիգրան II-ին և Միհրդատ Պոնտացուն։

44 Հոպլիտներ կոչվում էին հունական և հռոմեական բանակի ծանրազեն հետևակայինները։

45 Սոլին այն հելլենական 12 քաղաքներից էր, որ Տիգրանը նվաճելով, բնակիչներին բռնի տեղափոխել էր Հայաստան։ Պոմպեոպոլիս բառացի նշանակում է Պոմպեոսի քաղաք։

46 Բնագրում՝ Μάλλιος—Մալլիոս։

47 Մարկոս Լիկինիոս Կրասսոսը հարստացել էր Սուլլայի կոնսուլության ժամանակ. նա անփառունակ վախճան ունեցավ Խառանում պարթևական հեծելազորի դեմ ճակատամարտելիս։

48 Մետրոփանեսը նախկինում Միհրդատի դեսպանն էր, որը դասալքել էր հռոմայեցիների մոտ։

49 Սա Հրահատ III-ն է, Արշակ XI-ի՝ Սանատրուկի (*) որդին։ Այստեղ, երևի, Դիոնը շփոթել է Արշակի մահվան ժամանակը. այն տեղի է ունեցել ոչ թե 66 թ., այլ ավելի շուտ, հավանաբար 70 թ.։

50 Հայաստան (բնագրում՝ ('Αρμενία) ասելով, Դիոնը այստեղ նկատի ունի Փոքր Հայքը, որը միացված էր Միհրդատի Պոնտական թագավորությանը (հմմտ. Հ. Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 176)։

51 Բնագրում՝ τὴν 'Αναϊτιν χώραν. «Անահտական երկիրը» հիշատակվում է նաև Պլուտարքոսի (Lucull, XXIV, 2—8) մոտ։ Այդպես է կոչվել պատմական Հայաստանում Եկեղյաց գավառի մի ամբողջ շրջան, որը հայտնի էր Անահիտ դիցուհու պատվին կառուցված տաճարով և այնտեղ կատարվող տոնախմբություններով (հմմտ. Strabo, XI, 14, 16 և XII, 3, 37)։

52 Մարկիոս Ռեքսին վստահելով հռոմեական երեք լեգեոն, Պոմպեոսը հանձնարարել էր պաշտպանել Կիլիկիան և Կապպադովկիան։ Սակայն, ըստ

երևույթին, Պոմպեոսն այդ զորամասերի կարիքն զգալով՝ Մարկիոսին կանչել էր օգնության։

53 Այս հատվածի առաջին մասը բոլորովին սխալ է թարգմանել Հ. Մանանդյանը, Պոմպեոսի գործունեությունը և հաջողությունը վերագրելով Միհրդատին։ Ահա այդ հատվածը նրա թարգմանությամբ. «Արդ՝ Միհրդատը, երբ այդ ամենը աջող անցավ՝ գրավեց առժամանակ Արմենիայի Անահիտյան երկիրը, որը նվիրված էր մի ինչ-որ համանուն աստվածության, և այնուհետև այստեղ նրան հարեցին ուրիշ շատերը։ Իսկ երբ Պոմպեոսին ևս միացան Մարկիուսի զինվորները՝ նա վախեցավ և այլևս չմնաց այդ երկրում...» (Տիգրան Երկրորդը և Հռոմը, էջ 180)։

54 Մայոտիս (Μαιῶτις) կոչվում էր Ազովի ծովը և նրա շրջակա երկիրը։

55 Սա Կիմմերյան Բոսպորն է (այժմ՝ Կերչի նեղուց)։

56 Փասիս—գետ Կոլխիդայում (այժմ՝ Ռիոնի)։ Հ. Մանանդյանը Փասիսի տակ հասկացել է Փոթի քաղաքը (Տիգրան Երկրորդը..., էջ 185)։

57 Այսինքն՝ Նիկոպոլիսի քաղաքացիներ։ Նիկոպոլիս նշանակում է «հաղթանակի քաղաք»։ Այս քաղաքի տեղադրության մասին տարակարծություններ են եղել, որոնք ի վերջո պարզեցին Ն. Ադոնցը (Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, էջ 54) և Հ. Մանանդյանը (Տիգրան Երկրորդը..., էջ 181—182)։ Նրանք, համադրելով բոլոր տվյալները, եկել են այն ճիշտ եզրակացության, թե Նիկոպոլիսը գտնվում էր Փոքր Հայքում, Գայլ-գետի ափին, Պյուրկ գյուղի մոտ։ Այդ մասին ունենք նաև Ապպիանոսի հետևյալ վկայությունը. «Պոմպեոսը... այն վայրում, որտեղ հաղթեց Միհրդատին, հիմնեց քաղաք, որն ի նշանավորումն իր հաղթության կոչվեց Նիկոպոլիս։ Քաղաքն այդ գտնվում է այսպես կոչված Փոքր Հայքում» (Appian., Mithr., 105)։

58 Բնագրում՝ τῶν πρώτων. նշանակում է՝ առաջիններից։

59 Բնագրում՝ Ἀρτάξατα. չեզոք սեռի հոգնակի ձևով։

60 Բնագրում՝ μισολευκον. բառացի նշանակում է՝ կիսասպիտակ։ Հ. Մանանդյանը այն թարգմանել է՝ «մեջընդմեջ սպիտակ» (Տիգրան Երկրորդը..., էջ 191)։

61 Բնագրում՝ χιτών—խիտոն. սա գոտիով մեջքին կապվող հագուստն էր։

62 Բնագրում՝ κάνδυς—կանդիս. սա թևեր ունեցող արևելյան վերնազգեստ էր։

63 Խույրը (բնագրում՝ τιάρα—տիարա) և ապարոշը (բնագրում՝ ἀνάδημα—անադեմա) լավագույնս պատկերված են Տիգրան Մեծից մեզ հասած դրամների վրա դրոշմված հայոց արքայի դիմանկարում։ Դրանք արքայի թագավորական իշխանության տարբերանշաններն էին։

64 Բնագրում՝ ῥαβδοῦχος—ռաբդուխոս (հունարեն ῥάβδος «մական» բառից). Համապատասխանում է լատինական lictor-ին։ Հռոմայեցիների մոտ այդպես էին կոչվում բարձրաստիճան պաշտոնյաների առջևից գնացող հատուկ պաշտոնատար անձինք, որոնք իբրև իշխանության տարբերանշան, տանում էին ձողիկների (ῥάβδοι) մի կապոց, ծայրին կացին ամրացրած։ Այդ ձողիկների թվով էլ որոշվում էր պաշտոնը։ Այսպես, հռոմեական կոնսուլների իշխանության տարբերանշանն ուներ 12 ձողիկ, դիկտատորներինը՝ 24, քաղաքային պրետորներինը՝ 2, իսկ պրովինցիաների կառավարիչներինը՝ 6։ Մանանդյանը ῥαβδοῦχος բառը թարգմանել է՝ «թիկնապահ» (Տիգրան Երկրորդը..., էջ 191)։

65 Բնագրում՝ διάδημα—դիադեմա։ Հ. Մանանդյանը այն թարգմանել է՝

խույր (Տիգրան Երկրորդը..., էջ 191), որը Դիոնի նույն հատվածում արտահայտված է τιάρα—տիարա բառով։

66 Բնագրում՝ Συρία—Սյուրիա, որը համապատասխանում է հայկական աղբյուրների Ասորիքին։

67 Բնագրում՝ Σωφανηνή—Սոփանենե. անտիկ մյուս հեղինակների մոտ՝ Σωφηνή—Սոփենե։

68 Բնագրում՝ Κύρνος—Քուռ գետի անվան հունական ձևերից մեկը. այլ հեղինակների մոտ հանդիպում է ընդհանրապես Κύρος ձևով։

69 Բնագրում՝ ἀλβανῶν. սրանք հայ մատենագրության մեջ հայտնի աղվաններն են։

70 Բնագրում՝ Ἀλβανίδα (ուղղ. = Ἀλβανίς). հայ մատենագրության Աղվանքը։

71 Բնագրում՝ Κρόνια, այսինքն՝ Կրոնոս աստծուն նվիրված տոն։ Հույների պատկերացմամբ Կրոնոսը ավագ սերնդի աստվածների ներկայացուցիչն է՝ Զևսի հայրը, որը աստվածների միջև գերիշխանության համար մղված պայքարում պարտվեց իր որդուց։ Հունական Կրոնոսը, որը նույնացված էր լատինական Սատուռն աստվածության հետ, սկզբնապես եղել է հողագործությունը հովանավորող աստվածություն։ Սատուռնալիայի տոնախմբությունները Հռոմում կատարվում էին ամեն տարի բերքահավաքից հետո, դեկտեմբերի 17-ին, և տևում 7 օր։

72 Սա պետք է լինի վրացական Արմաստիկա (Արմազի բերդ) քաղաքը (տե՛ս Dio's Roman History, transl. by E. Cary. Loeb Classical Library. vol. III էջ 99, ծան. 1)։

73 Անկյունավոր փակագծերի մեջ առնված այս բառերը բացակայում են շատ հրատարակություններում։

74 Պելորոս գետը Քուռի ձախ վտակներից էր (այժմ՝ Արագվի)։

75 Բնագրում՝ ἐθνῶν—ազգերի։ Դիոնը այդ ցեղերին համարում է թշնամական, որովհետև չէին հպատակվում հռոմայեցիներին։

76 Սա Կամբեճ գետն է Աղվանքում (այժմ՝ Յորա)։ Նկատելի է, որ Կյուրոս և Կամբյուսես գետերի անունները համընկնում են պարսկական արքաներ Կյուրոսի և նրա որդի Կամբյուսեսի անուններին։

77 Աբաս գետն այժմ կոչվում է Ալազանի։

78 Բնագրում՝ „ἰώ, Κρόνια“ (տե՛ս ծանոթ. 71)։

79 Բնագրում՝ ὑποστράτηγοι—բառացի նշանակում է՝ ենթազորավարներ։

80 Գաբինիոս. Խորենացու մոտ (Բ, ժզ)՝ Գաբիանոս։ Մ. թ. ա. 66 թ. տրիբուն, հետագայում՝ հռոմեական զորավար, որին Պոմպեոսը թողեց որպես իր փոխանորդը Արևելքում։

81 Խոսքը 68 թ. Պոմպեոսի և Հրահատ III-ի միջև Միհրդատի և Տիգրան Մեծի դեմ կնքված հաշտության մասին է, որի համաձայն, ամբողջ Միջագետքը, մինչև Եփրատ, պետք է ստանար պարթև թագավորը (տե՛ս Dio Cass., XXXVI, 45, 3)։

82 Սրանք, հավանաբար, Ալեքսանդր Մակեդոնացու արշավանքների ժամանակ այդ վայրերում հաստատված հունամակեդոնական գաղութարարների սերունդներն էին։ Հովսեպոս Փլավիոսը (Հրեական հնախոսություն, XX, 24) հիշատակում է Կարրոն, այսինքն՝ կարրացիների, երկիրը Ասորիքում։

83 Տիգրան Կրտսերի գերեվարման մասին տե՛ս վերևը (Dio, XXXVI, 53, 1—4)։

84 Պլուտարքոսի հաղորդման համաձայն, նույն այս միջոցին մի քանի տարի առաջ դիմել էր նաև Լուկուլլոսը, որն իր կնոջ եղբոր՝ Ապպիոս Կլավդիոսի միջոցով Տիգրանին ուղարկած իր նամակում նրան անվանել էր սոսկ «արքա» և ոչ «արքայից արքա», մի բան, որ շատ էր վշտացրել Տիգրանին (Plut., Lucull., XXI, 8)։ Ճշմարիտն այն է, որ Տիգրանը դեռևս շատ առաջ կրում էր «արքայից արքա» տիտղոսը։ Այդ բխում է ոչ միայն Պլուտարքոսի վերոհիշյալ վկայությունից, այլև հետևում է Տիգրանի հատած դրամների վրա դրոշմված արձանագրություններից, որտեղ կարդում ենք՝ ΒΑΣΙΛΕΥΣ ΒΑΣΙΛΕΩΝ—արքայից արքա։ Ուրեմն ե՞րբ և ի՞նչ հանգամանքներում Տիգրանը կարողացել էր սեփականել այդ տիտղոսը։ Ըստ Հ. Մանանդյանի, դա կատարվել էր այն բանից հետո, երբ «պարտված պարթևները.... ստիպված եղան Տիգրանին տալ ամբողջ Միջագետքը և նրա մեջ գտնվող Միգդոնիան և Օսրոյենը։ Միևնույն ժամանակ... նրանք կնքեցին նրա հետ դաշնակցության հատուկ պայմանագիր և հրաժարվեցին «թագավորների թագավոր» տիտղոսից, որը կրելու էր այնուհետև Տիգրան Բ-ն» (Տիգրան Երկրորդը..., էջ 49)։

Բոլորից հավանականն այն է, որ Տիգրանն «արքայից արքա» տիտղոսն սկսեց կրել այն բանից հետո, երբ նվաճել էր մի շարք երկրներ, ուստի և այս նոր տիտղոսը ոչ այնքան հետևանք էր պարթևների դեմ նրա տարած հաղթանակի, որքան փաստական այն դրության, ըստ որի Տիգրանի գերիշխանության տակ էին գտնվում արդեն մի շարք երկրների թագավորներ (տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Բդեշխությունների առաջացումը Հայաստանում, ՊԲՀ, 1966, № 4, էջ 259—260)։

85 Ակնհայտ է, որ Դիոնի այս հաղորդման մեջ շփոթություն կա։ Հայտնի է, որ Տիգրանի որդին արդեն 66 թ. Պոմպեոսի հրամանով կալանավորվել էր և այնուհետև տարվել Հռոմ, հռոմայեցի զորավարի հաղթահանդեսին շուք հաղորդելու համար։ Հետևաբար, 64 թ., երբ կատարվել են այս հատվածում նկարագրվող դեպքերը, Տիգրան Կրտսերը չէր կարող Հրահատի մոտ եղած լինել։ Դիոնի մոտ նկատվող այս շփոթությունը, հավանաբար, գալիս է նրա կողմից օգտագործված մի երկրորդ աղբյուրից։

86 Բնագիրն այստեղ պակասավոր է. փակագծերի մեջ առնված բառերը վերցրել ենք „Loeb Classical Library“ հրատարակությամբ լույս տեսած Դիոնի անգլերեն թարգմանությունից. տե՛ս Dio's Roman History, transl. by E. Cary, vol. III, էջ 111։

87 Բարբարոս ասելով Դիոնն այստեղ նկատի ունի պարսից արքա Հրահատին։

88 Բնագրում՝ ἐν τῇ ᾽Ασπίοι։ Ասպիս տեղանունը այլ առիթով հայտնի չէ։ Հավանաբար, ճիշտ կլինի ենթադրել, որ ձեռագիրը այս մասում աղավաղված է և սկզբնական բնագիրը պետք է եղած լիներ ἐν τῇ ᾽Αναϊτιοι—Անահիտի երկրում։ Այս ենթադրությանը մղում է ոչ միայն ᾽Ασπιοι և ᾽Αναϊτιοι անունների գրության մոտիկությունը, այլև բնագրի «Պոմպեոսը այդ ժամանակ դարձյալ ձմեռեց» արտահայտությունը, եթե հիշենք, որ Պոմպեոսը նախորդ տարին ձմեռել էր Անահտական երկրում։

89 Սիմփորիոնը նույն Սինորիա բերդն է։

90 Այստեղ Դիոն Կասսիոսի բնագիրը դարձյալ ընդհատվում է։

91 Սա Անտիոքոս XIII Ասիացին է, վերջինը Սելևկյան թագավորներից, որի թագավորությանը 84 թ. վերջ դրեց Տիգրան II-ը։ Լուկուլլոսի արշավանքի պատ-

ճառով Տիգրանը հեռացավ Ասորիքից, որից հետո վերադարձած Անտիոքոսին Հռոմի ծերակույտը և Լուկուլլոսը ճանաչեցին Ասորիքի օրինական թագավոր։ Սակայն քիչ անց, 64 թ. Պոմպեոսը Սելևկյանների իշխանությունը Ասորիքում հայտարարեց վերացված, և երկիրը վերածվեց հռոմեական նահանգի՝ «պրովինցիա Սիրիա»։ Ասորիքի փոխարեն հիշյալ Անտիոքոսը, որպես հատուցում, ստացավ Հայաստանի սահմանակից Կոմմագենեի փոքր թագավորությունը, դառնալով Հռոմի վասալը (տե՛ս Հ. Հ. Մանանդյան, Տիգրան Երկրորդը..., էջ 137 և 209)։

92 Պրոսկրիպցիան (proscripti ᴼ) քաղաքական ակտ էր, որով մ. թ. ա. I դարում Հռոմում իշխանության գլուխ անցած կոնսուլը ձգտում էր ոչնչացնել կամ վնասազերծել իր քաղաքական հակառակորդներին։ Պրոսկիպցիայի էությունն այն էր, որ հատուկ ցուցակներով առանձին հարուստ և անվանի մարդիկ հայտարարվում էին շնորհազրկված։ Այդ ցուցակները հրապարակով ցուցադրվում էին և այստեղ նշված անձինք զրկվում էին հռոմեական օրենքների պաշտպանությունից, նրանց հետնորդները զրկվում էին ունեցվածքից և առանձնաշնորհումներից, նրանց ինչքը բռնագրավվում էր հօգուտ պետության։ Առաջին անգամ պրոսկիպցիաները մտցրեց Սուլլան. երկրորդ անգամ այդ քայլին դիմեցին տրիումվիրներ Անտոնիոսը, Օկտավիանոսը և Լեպիդոսը։

93 Գայոս Հուլիոս Կեսարը եղել է հանրապետական Հռոմի վերջին տարիների խոշորագույն քաղաքական ու ռազմական դեմքը։ Ծնվել է մ. թ. ա. 100 թվին։ Դեռ պատանի հասակից մասնակցում է Հռոմի քաղաքական կյանքին։ Փոթորկալից քաղաքական գործունեությունից հետո, 59 թ. ընտրվում է կոնսուլ, որից հետո Պոմպեոսի և Կրասսոսի հետ կազմում է այսպես կոչված առաջին տրիումվիրատը՝ եռապետությունը։ Մ. թ. ա. 49-ին սկսված քաղաքացիական պատերազմում Կեսարը հաղթեց իր հակառակորդներին և դարձավ ամբողջ հանրապետության միանձնյա կառավարիչ։ Կեսարի անվան հետ է կապված հռոմեական տերության սահմանների նշանակալից ընդարձակումը Եվրոպայում և Մերձավոր Արևելքում։ Քաղաքական գործիչ լինելուց բացի Կեսարը նաև տաղանդավոր մատենագիր էր, փայլուն ոճաբան և պերճախոս հռետոր։ Նրանից մեզ հասել են «Նոթեր Գալլական պատերազմի մասին» և «Նոթեր քաղաքացիական պատերազմի մասին» գործերը, որոնք ոչ միայն կարևորագույն պատմական սկզբնաղբյուր են իրենց բովանդակությամբ, այլև լեզվի օրինակելի նրբագեղությամբ մինչև օրս օգտագործվում են իբրև լատիներենի ընթերցանության դասագիրք։ Սպանվեց Կեսարը դավադիրների ձեռքով 44 թ. մարտի 15-ին։ Նրա անունը հետագայում դարձավ Հռոմի կայսրերի տիտղոսը։

94 Կատիլինան Հռոմի հանրապետության քաղաքական դեմքերից էր՝ հայտնի իր անսկզբունքայնությամբ, անբարոյականությամբ և դավադիր նկարագրով։ Սուլլայի կողմնակիցն էր և գործոն մասնակցություն է ունեցել վերջինիս պրոսկրիպցիաները իրագործելու ժամանակ։ Իր նպատակին հասնելու համար խտրություն չի դրել միջոցների մեջ, կանգ չառնելով նույնիսկ ոճրի առաջ։ Կատիլինայի սկզբունքային հակառակորդներից էր հռետոր Կիկերոնը, որն ի վերջո բացահայտեց նրա դավադրությունը պետության դեմ։ Կատիլինայի դավադրության պատմությունը շարադրել է նրա կրտսեր ժամանակակից Գայոս Սալլուստիոս Կրիսպոսը։

95 Կիկերոնը մ. թ. ա. I դարում հռոմեական հանրապետության ականավոր

պետական գործիչներից էր, հայտնի մատենագիր և խոշորագույն ատենաբան։

96 Գայոս Անտոնիոս Հիբրիդա. ապագա տրիումվիր Մարկոս Անտոնիոսի հորեղբայրը, հայտնի իր գիշատիչ և ընչաքաղց նկարագրով։ Եղել է Կիկերոնի կատաղի հակառակորդը և Սուլլայի պրոսկրիպցիաների ժամանակ մեծ թվով մարդկանց է ոչնչացրել։

97 Իստրոս—հնում այսպես է կոչվել Դանուբ գետը։

98 Այստեղ խոսքը Միհրդատ Պոնտացու մասին է։

99 Պանտիկապեյոն—հունական գաղութ Ղրիմի թերակղզում, այժմյան Կերչ քաղաքի վայրում։

100 Այլ աղբյուրների համաձայն, Միհրդատը ոչ թե սպանվել է Փառնակեսի ձեռքով, այլ պաշարված լինելով Պանտիկապեյոնի ամրոցում, չի ուզեցել անձնատուր լինել ապստամբներին և իր կյանքին վերջ է տվել ինքնասպանությամբ 63 թ. գարնանը։

101 Տե՛ս ծանոթ. 96։

102 Նախորդող հատվածներում (XXXVIII, 17—29) Դիոն Կասսիոսը պատմում է, թե Կիկերոնը, արտաքսվելով Հռոմից, ստիպված եղավ ապաստանել Մակեդոնիա, որտեղ և ապրում էր հուսահատ վիճակում, ողբալով իր դրությունը։ Այնտեղ հանդիպում է հելլեն փիլիսոփա Փիլիսկոսին, որը երկար զրույցի բռնվելով Կիկերոնի հետ, ամեն կերպ քաջալերում է նրան և հուսադրում։

103 Կլոդիոսը Հռոմի տրիբուն էր ընտրվել 58 թ.։ Նա մեծ դեր էր խաղացել Հռոմից Կիկերոնի արտաքսման գործում, հրկիզել էր նրա տունը և բռնագրավել ունեցվածքը։

104 Տե՛ս ծանոթ. 64։

105 Այս հատվածը մեջբերում է այն ճառից, որ արտասանել է Հուլիոս Կեսարը իր ստորադրյալների առաջ, Արիովիստոսի գլխավորած գերմանական ցեղերի դեմ իր ձեռնարկած արշավանքի ժամանակ, բանակի մարտական ոգին բարձրացնելու համար։

106 Կեսարն այստեղ նկատի ունի Հռոմի առաջին բնակիչներին։

107 Բնագրում Τυρσηνούς—տյուրսեններին։

108 Բնագրում՝ Ὀπικούς—օպիկներին։

109 Խոսքը հիմնականում կարթագենացիների արշավանքի մասին է։

110 Բնագրում՝ τὴν Ἀσίαν τὴν περὶ τὴν Ἰωνίαν—Հոնիայի շուրջ գտնվող Ասիան։

111 Սա Մակեդոնիայի Փիլիպպոս V թագավորն է (221—179 թթ.), որը երկարատև պայքար մղեց Հռոմի դեմ Հունաստանի տիրապետության համար, սակայն բոլոր դեպքերում անհաջող։

112 Պերսևսը (179—168/6 թթ.) Մակեդոնիայի վերջին թագավորն էր, Փիլիպպոս V-ի որդին, որի վերջնական պարտությունից հետո Մակեդոնիան ընկավ Հռոմի տիրապետության տակ։

113 Խոսքը Սելևկյան թագավոր Անտիոքոս III-ի մասին է (224—187 թթ), որը հորջորջվում էր «Մեծ»։

114 Ասիական Իբերիան պատմական Վիրքն է։

115 Խոսքը Աղվանքի մասին է։

116 Խոսքը Եփրատ գետից այն կողմ գտնվող Փոքր Հայքի և Եփրատից այս կողմ գտնվող Մեծ Հայքի մասին է

117 Տե՛ս ծանոթ. 80։

118 Օրոդեսը (Արշակ XIV) պարթևների հզորագույն թագավորներից էր, որը գահին տիրացավ իր հորը՝ Հրահատ III-ին սպանելուց հետո։ Կարճ ժամանակով (56—55 թթ.) գահընկեց արվեց իր եղբոր՝ Միհրդատի կողմից, բայց նորից գրավեց իշխանությունը և թագավորեց մինչև 37 թիվը։

119 Սա եգիպտոսի թագավոր Պտղոմեոս XIԱվլետեսն է (80—52 թթ.), հայտնի Կլեոպատրա թագուհու հայրը, որին մի անգամ, 58—55 թթ., ժողովուրդը արտաքսել էր երկրից, բայց հռոմայեցիների օգնությամբ վերահաստատվեց եգիպտական գահի վրա։

120 Մարկոս Լիկինիոս Կրասսոսը Պոմպեոսի և Հուլիոս Կեսարի հետ Հռոմում կազմեց I եռապետությունը՝ տրիումվիրատը (տե՛ս ծանոթ. 93)։ Եռապետները հռոմեական տիրույթները բաժանեցին իրար միջև։ Իր ընչաքաղցությամբ հայտնի Կրասսոսին բաժին ընկավ Ասորիքը։ Նա ցանկացավ իր կատարելիք նվաճումներով չափվել Ալեքսանդր Մակեդոնացու հետ և արշավեց պարթևների վրա։ Սակայն իր տաղանդով չփայլող այս զորապետը Կարրայի (Խառան) մոտ 53 թ. չարաչար ջախջախվեց պարթևների զորավար Սուրենի կողմից և գլխատվեց։ Պլուտարքոսն իր «Զուգակշիռք»-ում մանրամասն շարադրել է Կրասսոսի կենսագրությունը։ Այն կարևոր սկզբնաղբյուր է հայոց Արտավազդ II թագավորի գահակալության առաջին տարիների պատմության համար։

121 Տե՛ս ծանոթ. 118։

122 Նիկեփորիոն—հելլենական քաղաք Միջագետքում (Նփրկե՞րտ)։

123 Փակագծերի մեջ առնված բառերը չկան բնագրում. դրանք ավելացնում է Բեքերը (տե՛ս „Loeb Classical Library". Dio's Roman History, vol. III, էջ 422, ծան. 5)։

124 Զենոդոտիոն—հելլենական ոչ մեծ քաղաք Միջագետքում։

125 Կտեսիփոն (Κτησιφῶν)—պարսկական թագավորանիստ քաղաք, որն առանձնապես բարձրացավ հետագա դարերում, Սասանյանների թագավորության ժամանակ։ Հայկական աղբյուրներում՝ Տիզբոն։

126 Այստեղ խոսքը Աքեմենյանների թագավորության մասին է։

127 Բնագրում Ἀρσάκης (Արսակես)։ Սա մ. թ. ա. III դ. կեսերին ապստամբեց Սելևկյանների տիրապետության դեմ և իրեն հռչակելով անկախ, հիմք դրեց պարթև Արշակունիների թագավորությանը։

128 Բնագրում՝ Ἀρσακίδαι։

129 Խոսքը վերաբերում է Տիգրան II-ին։

130 Բնագրում Ἀρταβάζης—Արտաբազես։

131 Սելևկյան թագավորների հիմնադրած բազմաթիվ քաղաքներից մի քանիսը կոչվել են Սելևկիա։ Այստեղ հիշատակված Սելևկիա քաղաքը գտնվում էր Միջագետքում, Տիգրիսի արևմտյան ափին, ուղիղ Տիզբոնի դիմաց և այդ ժամանակ վերջինիս հետ հանդիսանում էր պարսից թագավորների ձմեռային նըստավայրը։

132 Հունարեն՝ ὕπατος, նույնն է՝ ինչ լատիներեն consul-ը։ Կոնսուլ կոչվում էին հանրապետական Հռոմի երկու բարձրագույն աստիճանավորները։ Նրանք ընտրվում էին ամեն տարի, մեկ տարի ժամանակով և իրենց պարտականությունների կատարմանն անցնում էին ձմռանը՝ հունվարի 1-ից։

133 Հունա-հռոմեական աշխարհում մեծ նշանակություն էր տրվում բնության տարբեր երևույթների, նշանների և հավքերի թռիչքի հիման վրա գուշակի-

յու արվեստին։ Կարծում էին, թե այդ նշաններն ուղարկվում են աստվածների կողմից. կյանքում մարդկանց առաջնորդելու համար։

134 Զեգմայի գետանցը գտնվում էր վերին Եփրատի աջ ափին, Կոմմագենեի Սամոսատ քաղաքի մոտ. իր անունը ստացել է գետի վրա գտնվող նավակների կապովի կամրջից։

135 Բնագրում՝ στρατηγὸς αὐτοκράτωρ—բառացի նշանակում է՝ զորավար իմպերատոր, զորավար ինքնակալ։ Հռոմում պատերազմի ժամանակ այդպիսի կոչում շնորհվում էր ռազմական հրամանատարին, որն այդպիսով ստանում էր գործողությունների բացարձակ ազատություն, մինչև ռազմական կամպանիայի ավարտը։

136 Բարբարոս ասելով Դիոն Կասսիոսն այստեղ նկատի ունի պարթևների թագավոր Օրոդեսին։

137 Սա Օսրոենե (Եդեսսա) ոչ մեծ թագավորության տիրակալ Աբգար II-ն է։

138 Այստեղ խոսքը Սելևկիա քաղաքի հելլեն բնակիչներին է վերաբերում։

139 Ֆալանգը (հայ մատենագրության մեջ՝ փաղանգ) հին աշխարհում ծանըր հետևակի որոշակի դասավորությամբ առաջացած ռազմական միավոր էր։

140 Կարրա—քաղաք Միջագետքում (այժմ Խառան)։

141 Քվեստորը (բնագրում՝ ταμίας—գանձապահ) հռոմեական պետության մեջ այն պաշտոնյան էր, որն ուղեկցում էր կոնսուլ զորավարին, վարելով նրա բանակի տնտեսական գործերը։

142 Բնագրում՝ ὁπλῖται—հոպլիտներ։ Անտիկ բանակներում հոպլիտները զորքի հարվածային ուժն էին։

143 Դիոն Կասսիոսն այստեղ, հավանաբար, նկատի ունի Պլուտարքոսին, որը մանրամասն գրել է Կրասսոսի կենսագրությունը։

144 Բնագրում՝ Πάκορος—Պակորոս. այդպես է նաև հունական մյուս աղբյուրներում (Հովսեպոս Փլավիոս, Պլուտարքոս և այլն). Մովսես Խորենացու մոտ՝ Բակուր։

145 Այս Օսակեսին Գր. Խալաթյանը (Очерк истории Армении, М., 1910, էջ 230) ենթադրաբար համարում է հայ, նրա անունը նույնացնելով Վասակ անվանը։ Նրան համամիտ է նաև Հ. Մանանդյանը (Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, Երևան, 1944, էջ 254)։

146 Անտիոքը Սելևկյան թագավորների մայրաքաղաքն էր, որը կարճ ժամանակով դարձավ նաև Տիգրան Մեծի գահանիստը։

147 Խոսքը Գնայոս Պոմպեոսի մասին է։

148 Դիոնն այստեղ նկատի ունի պարթև արքա Օրոդեսին։

149 Այստեղ ենթադրվում է Հռոմը և նրա տերությունը։

150 Այստեղ վերջին ակնարկությունը Միջերկրականի ծովահենների դեմ Պոմպեոսի մղած հաղթական գործողությունների մասին է։

151 Անտիկ հեղինակների մոտ Իբերիա կոչվում են թե՛ Վրաստանը և թե՛ Իսպանիան։ Այստեղ խոսքը Իսպանիայի մասին է։

152 Անտիկ հեղինակները հաճախ Հայաստան ասելով հասկանում են Փոքր Հայքը։ Դիոն Կասսիոսի այս հատվածում ևս Հայաստան անվան տակ պետք է հասկանալ Փոքր Հայքը, քանի որ դրա մի մասն էր, որ միացված էր Պոնտական

թաղավորությանը։ Մեծ Հայքը այդ ժամանակ անկախ թագավորություն էր, որտեղ գահակալվում էր Տիգրան II-ի որդին՝ Արտավազդ II թագավորը

153 Դեյոտարոսը Փոքր Ասիայի կենտրոնական մասում կազմավորված Գալատիայի հելլենիստական պետության թագավորն էր։

154 Տե՛ս ծանոթ. 152։

155 Բնագրի այս հատվածում նկատելի է ինչ-որ աղավաղում։

156 Հռոմայեցիները Ասիա ասելով հաճախ հասկանում էին Փոքր Ասիա թերակղզու արևմտյան հատվածը, որը կազմակերպվել էր որպես պրովինցիա Ասիա։

157 Հունական քաղաք Սև ծովի պոնտական ափին (այժմ Սամսուն)։

158 Խոսքը Միհրդատ Պոնտացու նվաճողական ձգտումների մասին է։

159 Սա Կիմմերյան Բոսպորն է (այժմ՝ Կերչ)։

160 Զելա—ոչ մեծ քաղաք, որը գտնվում էր պոնտական Ամասիա քաղաքի մոտ. այնտեղ կառուցվել էր տաճար՝ նվիրված Անահիտ դիցուհուն, որին պաշտում էին նաև հայերը։ Հնում այն եղել է պարսկական աստվածների սրբավայր (*Strabo*, XII, 3, 37, C. 559)։

161 Սա Պտղոմեոս XII Դիոնիսոսն է (52—48 թթ.), Կլեոպատրայի ամուսինը։

162 Այստեղ խոսքը Փառնակեսի մասին է։

163 Այստեղ հունարեն թարգմանաբար մեջ է բերված Կեսարի լատիներեն հայտնի արտահայտությունը՝ (veni, vidi, vici) (վենի, վիդի, վիկի—եկա, տեսա, հաղթեցի)։

164 Հմմտ. Դիոն Կասսիոս, XXXVI, 12—13։

165 Այս Միհրդատին չշփոթել Միհրդատ Պոնտացու հետ։

166 Բնագրում՝ τετραρχία։

167 Այս տողերը հատված են այն ճառից, որ, Դիոն Կասսիոսի պատմելով, արտասանել է Կեսարի դիակի առաջ Անտոնիոսը, գովաբանելով նրա գործունեությունը։

168 Մարկոս Անտոնիոս—հռոմեական հայտնի քաղաքական գործիչ, Հուլիոս Կեսարի հետևորդներից։ Մ. թ. ա. 44 թ. Օկտավիանոսի և Լեպիդոսի հետ կազմեց այսպես կոչված երկրորդ եռապետությունը՝ տրիումվիրատը։ Հանրահայտ է նրա կրքոտ սերը եգիպտական թագուհի Կլեոպատրայի հանդեպ, որը և դարձավ նրա կործանման հիմնական պատճառներից մեկը։ Մահացավ մ. թ. ա. 30 թ.։

169 Կլեոպատրա—եգիպտական թագուհի, հայտնի իր արտակարգ գեղեցկությամբ և սանձարձակ կրքոտությամբ (տե՛ս նախորդ ծանոթ.)։

170 Եփեսոսում գտնվող Արտեմիսի տաճարը, որը կառուցվել էր մ. թ. ա. VI դ., համարվել է հին աշխարհի յոթ հրաշալիքներից մեկը։

171 Սենատորներ Գայոս Կասսիոսը և, հատկապես, Դեկիմոս Բրուտոսը նախկինում եղել են Հուլիոս Կեսարի կողմնակիցները, բայց հետագայում, տեսնելով, որ նա ձգտում է վերացնել ռեսպուբլիկան և հաստատել իր միանձնյա իշխանությունը, դավադրաբար սպանեցին նրան։ Հուլիոս Կեսարը, տեսնելով մերկացրած դաշույնով իր վրա հարձակվող Բրուտոսին, որին իր ամենամերձավոր ընկերն էր համարում, բացականչում է. «Եվ դո՛ւ, Բրուտոս»։ Այս արտահայտությունը անցել է թևավոր խոսքերի շարքը։

172 Խոսքը Փիլիպպեի (Հյուսիսային Հունաստան) ճակատամարտի մասին

է, որը տեղի ունեցավ մ. թ. ա. 42 թ. մի կողմից Հուլիոս Կեսարի ժառանգներից Օկտավիանոս Կեսարի (հետագայում՝ Օգոստոս կայսր) և մյուս կողմից Հուլիոս Կեսարին սպանած Գայոս Կասսիոսի և Դեկիմոս Բրուտոսի (տե՛ս նախորդ ծանոթ.) միջև։ Ճակատամարտը վերջացավ վերջինների ջախջախմամբ։

173 Խոսքը Կասսիոսի և Բրուտոսի պարտության մասին է։

174 Սա Օկտավիանոս Կեսարն է (հետագայում՝ Օգոստոս կայսր)։ Այսուհետև բոլոր հատվածներում Կեսար ասելով պետք է հասկանալ այս Օկտավիանոսին։

175 Բնագրում՝ ἐθνη. բառացի նշանակում է՝ էթնոսներ, ազգեր։ Խոսքը Հռոմին ենթակա պրովինցիաներում բնակվող ժողովուրդների մասին է։

176 Ապամեան եղել էր Սելևկյանների տերության խոշորագույն քաղաքներից մեկը, այդ պետության հիմնական ռազմական կենտրոնը։

177 Այստեղ բնագրի արքոնտ բառը, որը հիմնականում նշանակում է «իշխանավոր», պիտի հասկանալ իբրև «զորավար»։

178 Բնագրում՝ βιβλια (բիբլիա—գրքեր, նամակներ)։ Այստեղ խոսքը ակներևաբար վերաբերում է խռովարարական թերթիկներին։

179 Այս հաղորդումը պիտի համարել Դիոն Կասսիոսի կամ ինչ-որ արտագրողի վրիպումը, քանի որ այլ հավաստի աղբյուրների, ինչպես նաև իր իսկ Դիոնի հետագա վկայությունների համաձայն, այդ ժամանակ հրեաների թագավոր նշանակվածը ոչ թե Արիստոբուլոսն էր, այլ նրա որդին՝ Անտիգոնոսը (տե՛ս *Jos. Flav.*, Antiq., XIV, 13, 9—10 և նույնի Bell. Jud., I, 13, 9—11. *Dio Cass.*, XLVIII և XLIX, 22)։

180 Կիլիկիայից Սիրիա տանող Կիլիկյան դարպասի մասին հիշատակում են նաև Քսենոփոնը (Anabasis, I, 4, 4. հայերեն թարգմ., էջ 17) և Ստրաբոնը (XIV, 5, 18 և XVI 2, 8)։ Այդ դարպասը գտնվում էր այն վայրում, որտեղ Ամանոս լեռը ճյուղավորվում է Տավրոսից ու ձգվում Կիլիկիայի արևելյան սահմանով մինչև ծով։ Այս լեռնանցքը կոչվում էր նաև Ամանոսյան դարպաս։

181 Տե՛ս ծանոթ. 179։

182 Սա Կոմմագենեի Անտիոքոս I թագավորն է (մ. թ. ա. 69—34), որը Երվանդյանների տոհմից էր։

183 Բնագրում՝ δυνάστης—դինաստ։

184 Խոսքը Պակորոսի դեմ տարված հաղթանակի և Անտիոքոս Կոմմագենացու հպատակեցման մասին է։

185 Պոմպևոս Ստրաբոնին չպետք է շփոթել հայտնի հույն մատենագիր Ստրաբոնի հետ. նա եղել է հռոմեական հայտնի քաղաքական գործիչ, եռապետ Պոմպեոս Մեծի հայրը։

186 Սամոսատա—Կոմմագենե երկրի մայրաքաղաքը։

187 Տե՛ս ծանոթ. 179։

188 Բնագրում՝ Կրոնոսի օր. տե՛ս ծանոթ. 71։

189 Φραάτης—հայ մատենագրության մեջ Հրահատ։

190 Տե՛ս ծանոթ. 182։

191 Այս հատվածի շարահյուսությունից դժվար է որոշել, թե խոսքը ո՞ւմ է վերաբերում, պարսից Որոդես թագավորի՞ն, թե՞ Անտիոքոս Կոմմագենացուն։

192 Պուպլիոս Կանիդիոս Կրասսոսը Անտոնիոսի նշանակած կուսակալն էր Արևելքում։

193 Հռոմայեցիները Արևելքում իրենց հպատակեցրած տիրակալներին հըռչակում էին «Հռոմեական ժողովրդի բարեկամ ու դաշնակից». սա նշանակում էր ընդունել Հռոմի հովանավորությունը։

194 Այրանիան հայ մատենագրության Աղվանքն է։

195 Բնագրում՝ μείζονος Ἀρμενίας — բառացի նշանակում է՝ առավել մեծ Հայաստանի։

196 Բնագրում՝ Πραάσπα — Պրաասպա։ Հ. Մանանդյանը նշում է, որ այս Փրաասպա — Գանձակ մայրաքաղաքի տեղադրությունը ենթադրում են այժմյան Թախտ-ի-Սուլեյմանի մոտ, Ուրմիա լճի հարավ-արևելյան կողմում (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, էջ 263—264)։

197 Խոսքը հայոց Արտավազդ II թագավորի մասին է (55—31 թթ.)։ Հատկանշական է, որ անտիկ հեղինակները (Ստրաբոն, Պլուտարքոս, Դիոն Կասսիոս) խոսելով Տիգրան Մեծի կամ նրա որդի Արտավազդի մասին, հաճախ չեն հիշատակում նրանց անունը, այլ բավարարվում են նրանց անվանելով Արմեն։

198 Այստեղ Դիոն Կասսիոսը հավանաբար նկատի ունի Պլուտարքոսին, որի պատմած այս հատվածը հիմնված է «Անտոնիոսի բարեկամ ու զինակից Դելլիոսի կասկածելի հաղորդագրության վրա» (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 1, էջ 266)։

199 Հռոմեական բանակում՝ բարոյալքվող լեգեոնների կարգապահությունը բարձրացնելու նպատակով, հաճախ կիրառվում էին պատժիչ միջոցներ, որոնցից մեկն էլ «դեցիմացիան» էր, որի ժամանակ յուրաքանչյուր տասներորդին պատժի էին ենթարկում։

200 Հ. Մանանդյանը Անտոնիոսի զորքերի վերադարձի ճանապարհը ենթադրում է այժմյան Թավրիզի ու Մարանդի շրջաններով դեպի այժմյան Ջուլֆա (Քննական տեսություն..., հ. 1, էջ 265)։

201 Մեզ թվում է, թե Դիոն Կասսիոսի վկայության այս կետը ճիշտ չէ։ Անտոնիոսն ընտրում է վերադարձի այլ ճանապարհ, հավանաբար, այն պատճառով, որ իր լեգեոնները դեպի Փրաասպա առաջանալիս ճանապարհին արդեն ամայացրել էին երկիրը, ուստի և նույն տեղերով նահանջելիս, նրանք կարող էին սովահարվել։

202 Կրիա (բնագրում՝ χελώνη — քելոնե) — հին աշխարհի ռազմական արվեստում ընդունված հատուկ պաշտպանական միջոց։ Հաջորդ հատվածում (XLIX, 30) Դիոն Կասսիոսը մանրամասն նկարագրում է կրիա կոչված ռազմական դասավորությունը։

203 Ակինակե — կարճ թուր, որը տղամարդիկ դաշույնի նման կրում էին իրենց գոտկատեղում։

204 Բնագրում՝ γυμνοί, նշանակում է՝ մերկեր։

205 Տե՛ս ծանոթ. 197։

206 Դրաքմա — հունական դրամի միավոր, որը հավասար էր հռոմեական 4 սեստերցի։

207 Գալատիան գտնվում էր Փոքր Ասիա թերակղզու կենտրոնական մասում։ Այս թագավորությունը կազմվել էր մ. թ. ա. III դարում, Եվրոպայից Փոքր Ասիա անցած կելտական ցեղերի այս վայրում բնակություն հաստատելուց հետո։

208 Լյուկաոնիան և Պամփյուլիան Փոքր Ասիա թերակղզու մասերն էին. ա-

առաջինը գտնվում էր Կիլիկիայից հյուսիս, իսկ երկրորդը տարածվում էր Կիլիկիայից արևմուտք՝ Միջերկրական ծովի ափին։

209 Այստեղ նկատի են առնված Հռոմի քաղաքացիները։

210 Կյուրենե կոչվում էր Եգիպտոսից արևմուտք ընկած և Եգիպտական թագավորությանը ենթակա երկրամասը (այժմ՝ Լիբիա)։

211 Այստեղ խոսքը մեդական թագավոր Արտավազդի մասին է։

212 Բնագրում՝ τὴν μικροτέραν Ἀρμενίαν—առավել փոքր Հայաստանը։

213 Օկտավիան Օկտավիանոս Կեսարի քույրն էր, որին կնության էր առել Անտոնիոսը՝ Օկտավիանոսի հետ իր կապերը ամրացնելու համար։

214 Խոսքը Հայոց Արտավազդ թագավորի աղջկա մասին է։

215 Բնագրում՝ χρυσοφύλακες—բառացի նշանակում է ոսկու պահապաններ։

216 Բնագրում՝ Ἀρταξῆς—Արտաքսես։ Հույն այլ հեղինակների մոտ (Պոլիբիոս, Ստրաբոն) նույն Արտաշես անունը հաղորդվում է քիչ այլ՝ Ἀρτάξιας—Արտաքսիաս ձևով։

217 Բարբարոսներ ասելով Դիոն Կասսիոսն այստեղ նկատի ունի հայոց Արտավազդ թագավորին ընտանյոք հանդերձ։

218 Խոսքը Հուլիոս Կեսարի մասին է։

219 Սա թագուհի Կլեոպատրայի դուստր Կլեոպատրան է։

220 Այս նախադասությունը Հ. Մանանդյանը ճիշտ չի հասկացել. նա թարգմանել է՝ «Մեդացին վերցրեց նորանված Հայաստանի զորքի մի մասը» (Քննական տեսություն..., հ. I, էջ 278)։ Այստեղ խոսքը ոչ թե Հայաստանի զորքի, այլ հայոց երկրի մասին է։

221 Տե՛ս *Dio Cass.*, XLIX, 33, 2։

222 Այլ հրատարակություններում Փլավիոսի փոխարեն՝ Կլուվիոս. Հ. Մանանդյանի մոտ՝ Կլոււյոս (Քննական տեսություն..., հ. 1, էջ 278)։

223 Ամյունտասը Գալատիայի թագավորն էր, իսկ Արքելաոսը՝ Կապպադովկիայի թագավորը։

224 Տարկոնդիմոտոսը Կիլիկիայի թագավորն է եղել։

225 Այս Յամբլիքոսը արաբների առաջնորդն էր։

226 Խոսքը մ. թ. ա. 31 թ. մի կողմից Օկտավիանոս Կեսարի և մյուս կողմից Անտոնիոսի ու Կլեոպատրայի ուժերի միջև Հունաստանի Ակտիոն հրվանդանի մոտ տեղի ունեցած ճակատամարտի մասին է, որի ընթացքում Անտոնիոսի և Կլեոպատրայի նավատորմը ջախջախվեց։

227 Անտիկ աղբյուրներում երկրի երևելիները և պետության բարձրաստիճան պաշտոնյաները հաճախ կոչվում են οἱ πρῶτοι—առաջիններ։

228 Վերևում (XLIX, 44, 2) հիշատակված է, որ Յոտապեն Մեդիայի թագավոր Արտավազդի դուստրն էր, որին Անտոնիոսը տարել էր իր վեց տարեկան որդի Ալեքսանդրի հետ ամուսնացնելու համար։

229 Սա Արտավազդի որդի Արտաշես II-ն է, որին հայերը, ի հեճուկս հռոմայեցիների, հռչակել էին Հայաստանի թագավոր նենգաբար սպանված Արտավազդի փոխարեն։ Արտաշես II-ը իր հոր եղեռնական սպանության վրեժը լուծում է սրի քաշելով Հայաստանում մնացած բոլոր հռոմայեցիներին։ Նա թագավորեց 30—20 թթ.։

230 Տիրիգատես— Τιριδάτης անունը հայտնի Տրդատ անվան հունականացված ձևն է։ Տիրիդատես գրելաձևը հանդիպում է ոչ միայն անտիկ պատ-

միչների մոտ, այլև նույնությամբ պահպանված է նաև Գառնիի և Ապարանի հունարեն արձանագրություններում։

231 Խոսքը Ակտիոնի նավամարտի մասին է (տե՛ս ծանոթ. 226), որից հետո պարտված Անտոնիոսը կործանվեց և քաղաքական ասպարեզը մնաց Օկտավիանոս Կեսարին։

232 Սա Կոմմագենե երկրի Անտիոքոս II թագավորն է (34—29 թթ.)՝ Անտիոքոս I Կոմմագենացու (63—34 թթ.) որդին։

233 Պոլեմոնը, ինչպես նախապես նշել էր Դիոն Կասսիոսը (XLIX, 44, 3), բացի Պոնտոսի թագավորությունից, Անտոնիոսից իբրև պարգև ստացել էր նաև Փոքր Հայքը։

234 Հռոմայեցիների արտաքին քաղաքականության բնորոշ գծերից մեկն էլ այն էր, որ նրանք հաճախ պարտված երկրի տիրակալին հայտարարում էին «հռոմեական ժողովրդի բարեկամը և դաշնակիցը». սա նշանակում էր, որ տվյալ տիրակալը կախման մեջ էր Հռոմից։

235 Բնագրում՝ προεδρία—բառացի նշանակում է՝ նախագահություն, առաջին աթոռին նստել։

236 Տե՛ս Դիոն Կասսիոս, LI, 18, 3։

237 Հ. Մանանդյանը ճիշտ կերպով նշում է, թե Արտաշես II-ի դեմ բողոքողները եղել են հռոմեասեր հոսանքի ներկայացուցիչները և ոչ թե ժողովուրդը, քանի որ նա հետևողականորեն վարում էր ինքնուրույն ազգային քաղաքականություն (Քննական տեսություն..., հ. 1, էջ 290—291)։

238 Սա դարձավ հայոց Տիգրան III թագավորը (20—8 թթ.)։

239 Տիբերիոս Կլավդիոս Ներոնը Օգոստոսի որդեգիրն էր։

240 Հ. Մանանդյանը (նույն տեղում) հավանական է համարում, որ Արտաշեսն սպանվել էր հռոմայեցիների դրդմամբ։

241 Խոսքը Միհրդատ Եվպատոր Պոնտացու մասին է։

242 Ագրիպպաս Մարկոս Վիպսանիոս. Օգոստոս Կեսարի ամենամտերիմ խորհրդատուն. դարձավ նրա փեսան և նույնիսկ պետք է ժառանգեր Օգոստոսի իշխանությունը, սակայն մահացավ մ. թ. ա. 12 թ.։ Սրա անվան հետ է կապված Հռոմի հայտնի Պանթեոնի հիմնադրումը.

243 Խոսքը Օգոստոսի թոռներ Գայոսի և Լուկիոսի մասին է։

244 Նկատի է առնված Տիգրան III-ը։

245 Տե՛ս ծանոթ. 243։

246 Քիոսը էգեյան ծովի հունական կղզիներից է, որը գտնվում է Փոքր Ասիայի արևմտյան ափերին մոտիկ։

247 Փրատակեսը (Հրահատ V կամ Հրահատակ) պարթև Հրահատ IV-ի և իտալուհի Թեա Ուրանիայի որդին էր. իր հորը սպանելով թագավորել է մ. թ. ա. 2—մ. թ. 4 թթ.։

248 Սա Տիգրան IV-ն է, որը իր քրոջ՝ Էրատոյի հետ թագավորել է երկու անգամ՝ մ. թ. ա. 8—5 թթ. և մ. թ. ա. 2—մ. թ. 1 թթ.։

249 Արտավազդ III-ը թագավորել է մ. թ. ա. շուրջ 5—2 թթ.։

250 «Ծովից այն կողմ» ասելով Փրատակեսը նկատի ուներ Հռոմը։ Իր եղբայրներին Հռոմում պատանդ թողնելով, նա ոչ այնքան կախման մեջ էր մնալու Հռոմից, որքան իրեն ապահովելու էր գահի մերձավորների կողմից թագավորական իշխանության նկատմամբ հնարավոր ոտնձգություններից։

251 *Տե՛ս* Դիոն Կասսիոս, *LI, 18, և ծանոթ. 230։*

252 *Բնագրում՝* Ἀρτάγειρα—*Արտագերս։ Հին Հայաստանի ամրագույն բերդերից մեկը, որտեղ գտնվում էր արքունի գանձարանի մի մասը։ Գտնվում էր Արշարունյաց գավառում, այժմյան Կաղզվանից հյուսիս-արևմուտք։*

253 *Ատրպատականի Արտավազդ թագավորի որդի Արիոբարզանեսը Հայաստանում թագավորել է մ. թ. 2—4 թթ., իսկ նրա որդին՝ Արտավազդ IV-ը՝ շուրջ 4—6 թթ.։*

254 *Խոսքը Օգոստոսի մահից հետո կայսերական աթոռին նրան հաջորդած Տիբերիոս կայսեր մասին է (14—37 թթ.)։*

255 *Հռոդոս—էգեյան ծովում գտնվող Դոդեկանեսոս (Տասներկու կղզիներ) կոչվող կղզեխմբի ամենախոշոր կղզին, Փոքր Ասիայի հարավ-արևմտյան ափին մոտիկ. եղել է անտիկ աշխարհի տնտեսական ու մշակութային խոշորագույն կենտրոններից մեկը։*

256 *Բնագրում՝* ἐπίτροπος. *Նշանակում է՝ կառավարիչ, տեղապահ, պահապան. հաճախ համապատասխանում է հայկական աղբյուրներում հանդիպող «գործակալ» և հատկապես «հազարապետ» տերմիններին։*

257 *Հեծյալները Հռոմում առաջացած արտոնյալ նոր դասն էր, որն աստիճանաբար ներգրավվում էր պետության կառավարման գործերի մեջ։*

258 *Հայ պատմագրության մեջ՝ Արտավան III (11—40 թթ.)։*

259 *Սա Հայաստանի Արտաշես III կամ Զենոն (18—34 թթ.) թագավորն է, որին գահ էր բարձրացրել Տիբերիոս կայսեր որդեգիր Գերմանիկոսը։ Այս Զենոն-Արտաշեսը Պոնտոսի Պոլեմոն թագավորի և նրա երկրորդ կնոջ, հռոմեական կայսերական տան ազգակից Պիթոդորիսի որդին էր, որը փոքր հասակից մեծացել էր հայկական միջավայրում և ընտելացել էր հայկական սովորություններին (տե՛ս* Հ. Հ. Մանանդյան, *Քննական տեսություն..., հ. 1, էջ 309)։*

260 *Այս Արսակեսը (հայկական Արշակը) Արտավանի ավագ որդին էր և Հայաստանում թագավորել է 34—35 թթ.։*

261 *Այս Միհրդատը (Միթրիդատես) Հայաստանում թագավորել է երկու անգամ՝ 35—37 թթ. և 43—51 թթ., երբ վերջնականապես դուրս քշվեց Տրդատ Արշակունու կողմից։*

262 *Խոսքը Գայոս Կեսար Գերմանիկոս Կալիգուլայի մասին է (37—41 թթ.)։*

263 *Սա Հրեաստանի թագավոր Հերովդես Մեծն է։*

264 *Տիբերիոսի թոռը այստեղ կոչված է Գայոսի «եղբայրը», որովհետև նրա հետ միասին հանդիսանում էր Տիբերիոսի ժառանգը. իսկ «որդին»՝ քանի որ որդեգրված էր Գայոսի կողմից։*

265 *Տե՛ս ծանոթ. 262։*

266 *Այս Սոեմոսը Եմեսայի իշխանների տոհմից էր և հետագայում (շուրջ 54 թ.) ստացավ Ծոփքի թագավորությունը։*

267 *Իտուրիան գտնվում էր Պաղեստինից հյուսիս-արևելք, Փյունիկիայից արևելք։*

268 *Այս Կոտյուսը Պոնտոսի թագավոր Պոլեմոնի թոռն էր, սրա Անտոնիա Տրիփոնա դստեր (Զենոն-Արտաշեսի քույր) և Թրակիայի Կոտյուս թագավորի որդին։*

269 *Ռյումետալկեսը թրակիական ցեղերի առաջնորդներից էր։*

270 *Խոսքը պարթևների թագավոր Արտավան III-ի մասին է, որը պարթև*

Ժեծամեծների դժգոհությունից վախեցած, ստիպված փախել էր Վրկանաց աշխարհ։

271 Այստեղ արդեն խոսքը վերաբերում է Կալիգուլայի սպանությունից հետո սրան հաջորդած Կլավդիոս Կեսարին (41—54 թթ.)։

272 Այստեղ նկատի է առնված Միհրդատ Եվպատոր Պոնտացին։

273 Ոմանք կարծում են, թե հետագա արտադրողների կողմից սխալ է թույլ տրվել և անունների նույնությունից առաջացել է շփոթ. ուստի այս հատվածում խոսքը ոչ թե իբերների թագավոր Միհրդատի մասին է, այլ Բոսպորոսի թագավոր Միհրդատի (տե՛ս Dio's Roman History, transl. by E. Cary, vol. VII, London, 1955, p. 441, note 1)։

274 Խոսքը Ներոն կայսր (54—68 թթ.) մասին է։

275 Գնայոս Դոմիտիոս Կորբուլոնը եղել է Հռոմի ամենահայտնի և ամենատաղանդավոր զորավարներից մեկը։

276 Բնագրում՝ Οὐολογαισος։ Սա հայ պատմագրության մեջ շատ հայտնի Վաղարշ Ա-ն է՝ Հայաստանի Արշակունյաց թագավորության հիմնադիր Տրդատ Ա-ի ավագ եղբայրը և հովանավորը, որը պարթևական գահին նստեց 51—75 թթ.։ Նա պարթևական ամենաընդունակ և ամենաուժեղ թագավորներից մեկն էր։

277 Սա Հայաստանում Արշակունյաց թագավորության հիմնադիր Տրդատ Ա-ն է (52/66—շուրջ 80 թթ.)։

278 Այս և հաջորդ մի քանի հատվածներում նկարագրված դեպքերը իրականում կատարվել են 58—62 թթ., մինչդեռ E. Cary-ն (Dio's Roman History, vol. VIII, pp. 118—127) դրանք սխալմամբ դնում է 64—65 թթ. տակ։

279 Այստեղ խոսքը Տիգրան VI-ի մասին է, որը Հայաստանի Տիգրան V թագավորի Ալեքսանդր եղբոր որդին էր. սա երկար ժամանակ պատանդ էր եղել Հռոմում և ստրկահոգի վերաբերմունք ուներ Հռոմի նկատմամբ. թագավորել է կարճ 60—61 թթ.։

280 Ադիաբենեի թագավոր Մոնոբազոսը մինչև վերջ դաշնակից մնաց Վաղարշին և Տրդատին. նրա կողքին հիշատակված Մոնեսեսը պարթևական պատերազմական հեծելազորի հրամանատարն էր։

281 Հռանդեան Ն. Ադոնցը ենթադրաբար նույնացնում է Փավստոսի մոտ հիշատակված Եռանդ տեղանվան հետ (Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908, стр. 36—37)։

282 Բնագրում՝ 'Αρσανιας. սա Արածանի գետն է։

283 Տակիտոսի մոտ ավելի վառ ու պատկերավոր է հռոմայեցիներին անարգելու նպատակով Հռանդեայում ձեռնարկվածը։ Հռոմայեցի պատմիչը գրում է. «Լուր էր պտտվում, որ լեգեոններն անց էին կացրել լծի տակով» (Tacit., Annal., XV, 15)։ Այս արարողությունը կատարվում էր հետևյալ կերպ. գետնին խրված երկու նիզակների վրա դրվում էր երրորդը և պարտվածներն անցնում էին դրանց միջով, դեն գցելով իրենց զենքերն ու վերնազգեստը։

284 Խոսքը Պետոսի ջարդված զորաբանակի մնացորդների և նրան օգնության շտապած Կորբուլոնի զորքերի մասին է։

285 Բնագրում՝ ἑκατοντάρχης — հեկատոնտարքես (հեկատոն՝ հարյուր), որը համապատասխանում է լատինական ցենտուրիոնին։

286 «Պատկերք» արտահայտությունը հաճախ է օգտագործում Մովսես Խորենացին (Բ, ժբ), երբ խոսում է Հայաստանում կռապաշտության, ինչպես նաև

թագավորի և նրա նախնիների պաշտամունքի մասին։ Գ. Խ. Սարգսյանը (Հելլենիստական դարաշրջանի Հայաստանը և Մովսես Խորենացին, Երևան, 1966, էջ 44) գտնում է, որ «պատկերք» ասելով պետք է հասկանալ Հայաստանում կանգնեցված աստվածների կուռքերը։ Հ. Մանանդյանի կարծիքով (Քննական տեսություն..., հ. 1. էջ 248), այս դեպքում եղել է «Ներոնի անդրի-պատկերը»։

287 Բնագրում՝ διάδημα—դիադեմա։

288 Բնագրում՝ ὕπαρχος—հյուպարքոս։

289 Սա Տրդատի մյուս եղբայր Բակուրն էր, որին ավագ եղբայրը՝ պարթևների Վաղարշ Ա թագավորը տվել էր Ատրպատականի թագավորությունը։

290 200,000 հունական դրաքմե=800,000 հռոմեական սեստերց=մոտ 200,000 ոսկի ֆրանկ։

291 Բնագրում՝ δεσπότης—դեսպոտես։ Այս բառի մեկնաբանման մասին տե՛ս Ս. Մ. Կրկյաշարյան, Թագավորական իշխանությունը Արշակունյաց Հայաստանում, ՊԲՀ, 1971, № 1, էջ 198։

292 Ագոնոթետես (ἀγωνοθέτης) անտիկ աշխարհում կոչվում էին մրցումների կազմակերպիչները, ֆինանսավորողներն ու դատավորները։

293 Բնագրում՝ δορυφόροι, նշանակում է՝ նիզակակիրներ։

294 Հինգ հազար բյուր=50 միլիոն դրաքմե=200 միլիոն հռոմեական սեստերց=մոտ 50 միլիոն ոսկի ֆրանկ։

295 Ինչպես հայտնի է, հռոմեական զորքերը, Կորբուլոնի ղեկավարությամբ, հիմնահատակ կործանել էին Արտաշատը 59 թ.։

296 Պանկրատիոնը—Παγκράτιον (խառնամարտ) մենամարտի մի տարատեսակն է, որի ժամանակ մենամարտող կողմերն օգտվում են ըմբշամարտի և բռնցքամարտի տարրերից։

297 Խոսքը Ներոնին հաջորդած Վեսպասիանոս Փլավիոս կայսեր մասին է (69—79 թթ.)։

298 Խոսքը Վեսպասիանոսի որդի և հաջորդ Տիտոս Փլավիոս կայսեր մասին է (79—81 թթ.)։

299 Այսինքն՝ Տրայանոս կայսրը (98—117 թթ.)։

300 Այստեղ խոսքը հայոց Աշխադար (Դիոն Կասսիոսի մոտ՝ Ἐξηδάρης—Եքսեդարես) թագավորի մասին է (110—113 թթ.). սա պարթևական թագավոր Բակուր II-ի (77—110 թթ.) որդին էր։

301 Սա պարթևների թագավոր Խոսրովն է (110—130 թթ.)։

302 Տե՛ս ծանոթ. 300։

303 Սա Եդեսիայի (Օսրոենե) Աբգար VII թագավորն է (109—116 թթ.)։

304 Սա նախկինում Ծոփքի հայկական թագավորության մայրաքաղաքն է եղել, որը, Պոլիբիոսի վկայությամբ (VIII, 25), գտնվել է Եփրատի և Տիգրիսի միջև, այսպես կոչված Գեղեցիկ դաշտում։

305 Սա Փոքր Հայքի Սատաղ (Σάταλα) քաղաքն է, ուր տեղակայված էին հռոմեական լեգեոնները. ուներ ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակություն։

306 Ելեգեան գտնվում էր Էրզրումի մոտ (այժմ՝ Իլիջա)։

307 Հին Հունաստանում Իսթմական և Պյութիական խաղերում հաղթողներին զարդարում էին կարոսից հյուսած պսակով։

308 Արքա ասելով Դիոնը նկատի ունի Տրայանոսին։

309 Անթեմուսիան գտնվում էր Միջագետքում, Եդեսիայից ոչ հեռու, Ապամեայից արևելք։

310 Գ. Խալաթյանցը (Армянский эпос в истории Армении Моисея Хоренского, М., 1896, էջ 219 և 226) և Հ. Մանանդյանը (Քննական տեսություն..., հ. 1, էջ 126—127) գտնում են, որ այս Արրանդեսը Խորենացու մոտ շփոթվել է Օրոնտաս-Երվանդի հետ։

311 Մանիսարոսը այդ ժամանակ Կորդուքի իշխանն էր, որը Հայաստանի Պարթամասիրիս թագավորի մահից հետո, օգտվելով բարենպաստ իրադրությունից, տիրապետել էր Հայաստանի և Միջագետքի որոշ մասերին (Հ. Հ. Մանանդյան, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հ. 2, մ. Ա, Երևան, 1957, էջ 27)։

312 Սինդարա—քաղաք Միջագետքում, Մծբինից հարավ-արևելք։

313 Քվետոս Լուսիոս Մավրոսը մավրերի հեծելազորի առաջնորդն էր, որը ծառայում էր Տրայանոսին։

314 Խոսքը Ալեքսանդր Մակեդոնացու և Աքեմենյան վերջին թագավոր Դարեհ III Կոդոմանոսի մասին է։

315 Ըստ Դիոնի, ստացվել է 'Ασσυρία>'Ατυρία ձևը։

316 Պարթիկոս (Παρθικός) բառացի նշանակում է՝ պարթևական։ Դիոն Կասսիոսի այս հաղորդումը մեզ համար մեծապես արժեքավորվեց վերջերս պատմական Արտաշատի տարածքի վրա հայտնաբերված լատիներեն արձանագրությամբ, որի մեջ Տրայանոսի բազում տիտղոսների շարքում կա նաև Պարթիկոս (Parthicus) տիտղոսը, որով և ճշտորեն որոշվում է այդ արձանագրության թվականը՝ 116 թ. (տե՛ս Բ. Առաքելյան, Լատիներեն արձանագրություններ Արտաշատ մայրաքաղաքից, ՊԲՀ, 1967, № 4, էջ 302—311)։

317 Բառացի նշանակում է՝ Կարմիր ծով։ Այս անվան տակ անտիկ հեղինակները նկատի են ունեցել ոչ թե այժմյան Կարմիր ծովը, այլ, նախապես, Հնդկական օվկիանոսը և հետագայում՝ Պարսից ծոցը։

318 Խոսքը Հնդկական օվկիանոսի մասին է։

319 Խոսքը վերաբերում է Էրյութրաս անունը կրած առասպելական մի տիրակալի, որն, իբր, նետված է եղել այս ծովը։

320 Քարակս Սպասինուն առևտրական խոշոր քաղաք էր Տիգրիսի գետաբերանում, Պարսից ծոցի ափին։

321 Այլ ձեռագրերում՝ «նավի վրա»։

322 Հ. Մանանդյանը (Քննական տեսություն..., հ. 2, մ. Ա, էջ 29) Պարթամասպատեսին համարում է պարսից Խոսրով թագավորի որդին, մինչդեռ, ինչպես նշում է Հ. Մանանդյանը (նույն տեղում, ծան. 1), «Անգլիական պատմաբան Լոնգդենը (տե՛ս Cambridge Ancient History, XI, էջ 248), հիմնվելով Մաղաղասի ժամանակագրության խառնաշփոթ վկայությունների վրա (Malalas, XI, էջ 270—274, հրատ. Դինդորֆի), ենթադրում է, որ Պարթամասպատը որդին էր ոչ թե Խոսրովի, այլ Սանատրուկի, որը, նրա կարծիքով, հավանորեն, հայոց թագավոր Պարթամասիրի եղբայրն էր։ Իսկ Գաթրճյանը (Տիեզ. պատմ., Բ, էջ 174) և Գարագաշյանը (Քննակ. պատմ., Բ, էջ 258) կարծում են, որ Պարթամասպատը եղբայրն էր հայոց Աշխադար թագավորի։ Մեջ բերված այս կռահումները համարվում են անհավանական»։

323 Այս Վոլոգեսոսը Հայաստանի Վաղարշ Ա թագավորն է, որը իշխել է 117—140/3 թթ.։ Այս թագավորի անվան հետ է կապված Վաղարշապատ քաղաքի կառուցումը։

324 Սանատրուկը հաջորդել է Տրդատ Ա-ին։

325 Այս հատվածում հիշատակված Սևերոսին չպետք է շփոթել կայսր Սեպտիմիոս Սևերոսի հետ (193—211 թթ.)։ Սա Կատիլիոս Սևերոսն է, որը 114 թ. Տրայանոսի կողմից նշանակված էր Կապպադովկիայի, Փոքր Հայքի և Մեծ Հայքի կառավարիչ։ Այսպիսի շփոթի հետևանքով Դիոնի առաջին հրատարակիչները (օրինակ՝ Ursinus-ը) այս հատվածը սխալմամբ տեղագրել են LXXV գրքից մեզ հասած հատվածների մեջ, որտեղ խոսվում է կայսր Սեպտիմիոս Սևերոսի մասին։ Այս սխալը ուղղեց Boissevain-ը (տե՛ս „Hermes, XXV, էջ 329), որի ուղղումն ընդունվեց։

326 Առաբիա անվան տակ պիտի հասկանալ ոչ թե այժմյան Արաբիան, այլ այն երկրները, որտեղ այդ ժամանակ բնակվում էին արաբական ցեղերը։ Սրանց, հավանաբար, այստեղ բնակեցրել էր Տիգրան Մեծը։

327 Հատրա քաղաքը Հատրենե ոչ մեծ թագավորության մայրաքաղաքն էր։ Այս թագավորությունը գտնվում էր Օսրոենեի և Ադիաբենեի միջև և իր ժամանակին, նվաճվելով Տիգրան Մեծի կողմից, մտել էր հայկական թագավորության սահմանների մեջ։

328 Հելիոս (Ἥλιος) բառացի նշանակում է՝ «արև». այստեղ նկատի է առնված Արևի աստվածությունը։

329 Սա Անտոնինոս Պիոս կայսրն է (138—161 թթ.)։

330 Էնիևս—ռազմի Արես աստծու մակդիրներից մեկը։

331 Սա Մարկոս Ավրելիոս Անտոնինոս կայսրն է (161—180 թթ.)։

332 Բնագրում՝ Βῆρος—Բերոս։ Դիոնի սկզբնական ձեռագրում պետք է լինեի Οὐῆρος—Վերոս. այս փոփոխությունը, հավանաբար, կատարվել է XI դ. Դիոնին համառոտագրած բյուզանդական պատմիչ Քսիփիլինոսի կողմից, երբ միջին հունարենում B տառը արդեն կորցրել էր իր «բ» հնչումը և կարդացվում էր «վ»։

333 Սեքստոս Քերոնեացին եղել է հայտնի մատենագիր Պլուտարքոսի եղբորորդին։

334 Սա պարթևական Վաղարշ III թագավորն է (148—191 թթ.)։

335 Այս Սոեմոսը, որին հետագայում տրվել է նաև Տիգրան անունը, Հայաստանում թագավորել է երկու անգամ՝ 140/3—161 և 164—185 թթ.։ Հ. Մանանդյանը (Քննական տեսություն..., հ. 2, մ. Ա, էջ 38) նշում է, որ «սա Եմեսայի (այժմ Հոմս) իշխանական տոհմից էր և, ըստ երևույթին, իր երակների մեջ ուներ Արշակունյան արյուն և ազգական էր նաև Կոմմագենեի թագավորների... Նա միևնույն ժամանակ հռոմեական հպատակ էր և հռոմեական ծերակույտի անդամ»։

336 Բնագրում՝ Καινὴ πόλις (Նոր քաղաք)։ Սա Վաղարշապատ քաղաքն է։ Խորենացու մոտ (Բ, կե) կարդում ենք՝ «Վաղարշապատ, որ և Նոր քաղաք»։ Հռոմայեցիները Վաղարշապատը հայտարարում են Հայաստանի մայրաքաղաք, հավանաբար, հին մայրաքաղաք Արտաշատի ապստամբած բնակչությանը պատժելու նպատակով (տե՛ս К. В. Тревер, Очерки истории культуры древней Армении, М.—Л., 1953, էջ 228—230, Ս. Մ. Կրկյաշարյան, Հին Հայաստանի և Փոքր Ասիայի քաղաքների պատմության դրվագներ, էջ 120—121)։

337 Հենիոքները ապրում էին Սև ծովի հյուսիս-արևելյան ափին՝ ասիական Սարմաթիայում, և սկսած մ. թ. I դարից, նրանք, որպես Հռոմին «դաշնակիցներ», գործիք էին դարձել հռոմեական դիվանագիտության ձեռքին և վերջինիս դրդմամբ հաճախ ավերիչ արշավանքներ էին գործում Հայաստանի և Պարսկաստանի վրա։

338 Սա Սեպտիմիոս Սևերոս կայսրն է (193—211 թթ.)։

339 Գայոս Պեսկեննիոս Նիգեր. հռոմեական հայտնի զորավար և քաղաքական գործիչ։ 192 թ. նշանակվեց Սիրիայի կառավարիչ և Պերտինաքս կայսեր մահից հետո Արևելքում հռչակվեց կայսր, բայց 193 թ. պարտվեց Սեպտիմիոս Սևերոսից։

340 Այստեղ ձեռագիրը վնասված է և ենթադրվում է, որ Արքե ('Αρχή) անվան փոխարեն պետք է լինի Հատրենե ('Ατρηνή) կամ Ադիաբենե ('Αδιαβηνή) կամ Արբելիտիս ('Αρβηλῖτις). տե՛ս Dio's Roman History, transl. by E. Cary, vol. IX, London, 1955, էջ 198—199։

341 Սա պարթևների Վաղարշ IV թագավորն է (191—208 թթ.)։

342 Հ. Մանանդյանի ենթադրությամբ (Քննական տեսություն..., հ. 2, մ. Ա, էջ 54 և 59) Վաղարշի այս եղբոր անունը Տրդատ է։

343 Այս հատվածում հիշատակված պոետը հռոմեական խոշորագույն դյուցազներգակ Վերգիլիոս Մարոնն է (մ. թ. ա. 70—19 թթ.), իսկ վկայակոչված տողերը՝ նրա «Էնեական» պոեմից (XI, 371—373)։

344 Պրիսկոսը եղել է ռազմական մեքենաների հայտնի գյուտարար։

345 Տե՛ս Դիոն Կասսիոս, XXXVI, 1, 1—2։

346 Նկատի են առնված բուն հռոմայեցի լեգեոնականները։

347 Այստեղ բերված 78-րդ գրքի հատվածները այլ հրատարակություններում (Dionis Cassii Cocceani, Historia Romana, ed. Dindorf, vol. I—V, Lipsiae, 1863—1865) համարվում են 77-րդ գրքի մասեր։

348 Բնագրում՝ "Αγβαρος (Ագբարոս), փոխանակ Αὔγαρος կամ "Αβγαρος ձևի։ Սա Օսրոենեի Աբգար Ժ թագավորն է։

349 Սա Հռոմի Անտոնինոս Կարակալլա կայսրն է (211—217 թթ.)։

350 Հ. Մանանդյանի կարծիքով (Քննական տեսություն..., հ. 2, մ. Ա, էջ 59—60), սա պետք է լինի հայոց Խոսրով Ա թագավորը։

351 Այս դեպքերը Հ. Մանանդյանը (նույն տեղում) թվագրում է 215—216 թթ.։

352 Սա պարթևների Վաղարշ V թագավորն է (208—215 թթ.)։

353 Այս Տրդատին Հ. Մանանդյանը (նույն տեղում) համարում է պարթևների Վաղարշ թագավորի եղբայր. մինչդեռ Թ. Մոմզենը (Römische Geschichte, V, Berlin, 1886, էջ 418), Գ. Խալաթյանցը (Очерк истории Армении, М., 1910, էջ 323—324) և ուրիշներ, ինչպես նշում է Հ. Մանանդյանը, առանց ապացույցի սրան նույնացրել են հայոց Խոսրով Ա թագավորի որդու՝ Տրդատ Բ-ի հետ։

354 Այստեղ բերված 79-րդ գրքի հատվածները այլ հրատարակություններում (տե՛ս ծանոթ. 347) համարվում են 78-րդ գրքի մասեր։

355 Սա պարթև Արշակունիների վերջին գահակալ Արտավան V-ն է (215—224 թթ.)։

356 Արբելա քաղաքը գտնվում էր հին Նինվեի ավերակների մոտ։ Պատմության մեջ հայտնի է նրանով, որ այստեղ մ. թ. ա. 331 թ. Ալեքսանդր Մակե-

դոնացին վերջնականապես ջախջախեց աքեմենյան զորքերին և Դարեհ III Կոդոմանոս թագավորին։

357 Մակրինոս—Հռոմի կայսր 217—218 թթ.։

358 Տարավտաս—Անտոնինոս Կարակալլա կայսեր մականունը։

359 Այս մասում ձեռագիրը մեծապես վնասված է. բայց պահպանված հատ ու կենտ բառերից կարելի է եզրակացնել, որ Մակրինոս կայսրը պարտվելով լքում է Միջագետքը։

360 Տե՛ս ծանոթ. 294։

361 Սա հայոց Տրդատ Բ թագավորն է (216—252 թթ.)՝ Խոսրով Ա-ի որդին և հաջորդը։

362 Ուսումնասիրողները ենթադրում են, որ հռոմայեցիները այս ամենամյա գումարը վճարում էին Հայաստանին, հյուսիսային սահմանների պաշտպանության համար (*Th. Mommsen*, Römische Geschichte, V, Berlin, 1885, էջ 411 և հաջ.; *J. Marquart*, Eranšahr, Berlin, 1901, էջ 95 և 102, ծան. 4; *К. В. Тревер*, Очерки по истории культуры древней Армении, М.—Л., 1953, էջ 199)։

363 Այս հատվածում ձեռագիրը զգալիորեն վնասված է։

364 Բնագրում՝ 'Αρταξέρξης. սա Արտաշիր Պապականն է (224—241 թթ.), որը Պարսկաստանում տապալելով պարթև Արշակունիների իշխանությունը, հաստատեց թագավորական նոր դինաստիա՝ Սասանյանների դինաստիան։

365 Հելլենական ծով կոչվում էր Էգեյան ծովը։

# ՑԱՆԿԵՐ

## ՀՈՎՍԵՊՈՍ ՓԼԱՎԻՈՍ

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Տպագրվում է հայկական ՍՍՀ ԳԱ
պատմության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ

Հրատարակչական խմբագիր
Հ. Գ. ՀԱԿՈԲՅԱՆ

Նկարիչ
Կ. Կ. ՂԱՖԱԴԱՐՅԱՆ

Տեխնիկական խմբագիր
Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ

Սրբագրիչ
Զ. Խ. ՕՐՄԱՆՅԱՆ

*ՎՖ 06767 Պատվեր 817 Հրատ. 4230 Տպաքանակ 3000*
*Հանձնված է շարվածքի 18/XI 1975 թ.։ Ստորագրված է տպագրության 15/X1 1976 թ.։ Տպագրական 16,75 մամուլ, հրատ. 14,3 մամուլ, պայման. 16,75 մամուլ, թուղթ № 1, $60 \times 90^{1}/_{16}$։ Գինը 1 ռ. 24 կ.։*

*Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան, 19, Բարեկամություն 24 գ.*
Издательство АН Армянской ССР, Ереван, Барекамутян, 24-г
*Հայկական ՍՍՀ ԳԱ հրատարակչության Երևանի տպարան*

